# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Բուղթ+ | | | | | | |
| 48 | Թուղթ | 767 (34×25×11) | բոլորգիր | 1438 | Ազարիա եւ Մարգարայ | Նախավկայի վանք | Յովհաննէս արքեպիսկոպոս Թումայ քհ. Խաչատուր եւ Յակոբ վրդ. | Յայսմաւուրք |
| 49 | " | 555 (39×28×18) | " | 1418–1678 | Աւագ եւ Գրիգոր | ? | | " |
| 50 | " | 51 (19×11) | " | ? | ? | ? | ? | Աւետարանի հատուածներ |
| 51 | " | 10 (21×15.5) | " | ? | ? | ? | ? | Մաշտոցի հատուածներ |

## Բ. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻՆ ԹԱՒՐԻԶՈՒ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Թուղթ | 489 (24×19×8) | բոլորգիր | 1653 | ? | Շոռոթ գիւղ Երնջակի | Վարդան քահանայ | Վարք հարանց |
| 2 | " | 318 (24×19·5×6) | " | ? | Մխիթար | ? | ? | Մայր Մաշտոց |
| 3 | " | 215 (20×14·5×4·5) | նոտր | ? | ? | ? | ? | Ժողովածու |
| 4 | " | 199 (20·5×15·5×2·5) | " | ? | Յովհաննէս | ? | ? | Մեկնութիւն Եզեկիէլ մարգարէի |
| 5 | " | 58 (20×15×1) | անցման բլրգ. | ? | ? | ? | ? | Բժշկարան |
| 6 | " | 180 (20×15×3) | նոտր | 1614 | Գրիգոր Տամաթիրցի | Իւլով | Յովհաննէս քահանայ | Ժողովածու |
| 7 | " | 535 (19×12×6) | " | 1667 | Պետրոս վրդ. | Նախավկայի վանքը | Գրիչը | " |
| 8 | բամբ. թղթ. | 190 (18×13·5×4·8) | բոլորգիր | 1658էն առաջ | Յովհաննէս քհ. | ? | ? | " |
| 9 | Թուղթ | 409 (16×12·5×6) | " | ԺԵ–ԺԶ դ. | Մանուէլ | ? | ? | Փիլիսոփայական գրութիւնք |
| 10 | " | 221 (14·5×10·5×3) | նոտր | ԺԷ–ԺԸ դ. | Գաբրիէլ | ? | ? | Ժողովածու |
| 11 | " | 236 (14×9·5×3) | " | 1630 | ? | Նոր-Ջուղայ? | Ջուղայեցի Պօղոս | " |
| 12 | Թղթ. եւ մագ. | 239 (12·5×9×5) | բոլորգիր | 1352 | Կիրակոս քհ. | Ագրակու Խաչենց գիւղ | Կարապետ քհ. | Գրութիւնք Ն. Շնորհալւոյ |
| 13 | Թուղթ | 167 (12×9×3) | նոտր | ? | ? | ? | ? | Հաւաքումն վկայութեանց |
| 14 | " | 376 (10×7×5) | " | 1678 | Յովհաննէս աբեղայ | Շատիկ անապատ | Գրիչը | Բառարան |
| 15 | " | 266 (12×8×6) | բոլորգիր | ? | ? | ? | ? | Մաշտոց |
| 16 | " | 175 (12×9×3) | " | ? | ? | ? | ? | Ժամագիրք |
| 17 | բամբ. թղթ. | 317 (13×9×6) | անցման բլրգ. | 1441 | Դաւիթ | ? | Գրիչը | Քարոզգիրք |
| 18 | մագաղաթ | 87 (18·5×14×3) | նոտր | ? | ? | ? | ? | Տաղարան եկեղեցական |
| 19 | Թուղթ | 316 (19×12×7) | բոլորգիր | ? | ? | ? | ? | Մայր Մաշտոց |

## Գ. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԱԲՈՎԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ ԼԻԼԱՒԱ ԹԱՂԻ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Թուղթ | 165 (15×10×9) | նոտր | ? | ? | ? | ? | Հարցմունք Աթանասի |
| 2 | " | 82 (15×10×1·5) | " | ԺԹ. դար | ? | ? | ? | Տաղարան |
| 3 | " | 62 16×10×1·3) | " | " | ? | ? | ? | Տաղարան |

## Դ. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԼԻԼԱՒԱ ԹԱՂԻ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Թուղթ | 279 (17×12×5) | բոլորգիր | 1661 | Յարութիւն դպիր | Գանձակու Քարթման գիւղ | Հայրապետ | Աւետարան |
| 2 | " | 303 (20×15×6) | " | 1450 | Յովհաննէս քահանայ | Արճէշ | Վարդան գրակալ | " |
| 3 | " | 140 (23×16×5) | " | ? | Յովհաննէս | ? | ? | " |
| 4 | " | 204 (26×18×4) | " | 1562 | Պետրոս աբեղայ | Հաւատուս կամ Ընկուզակ գիւղ | Մահտեսի Ովէլ | " |
| 5 | " | 257 (21×15×5) | " | 1458 | ? | Ագրակու Ասփաթան գիւղ | Յովհաննէս աբեղայ | " |
| 6 | " | 297 (25×19×7) | " | 1683էն առաջ | ? | ? | ? | " |

## Ե. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՂԱԼԱՅԻ ԿԱՄ ԲԵՐԴԱԹԱՂԻ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Թուղթ | 348 (38×27×11) | բոլորգիր | 1311 | Ծեր քահանայ | ? | Գրիչը | Աւետարան |
| 2 | " | 267 (21×16×7) | " | 1581 | Իսրայէլ երէց | Որոտան Ցղուրծ գիւղ | " | " |

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ

## Զ. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԱՍՆԱՒՈՐ ԱՆՁԱՆՑ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն | Արդի տէր |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Թերթ | | | | | | | |
| 1 | Թուղթ | 99 (15×10×2) | նոտր | ԺԹ. դար | ? | ? | ? | Տաղարան | Վաչան Բժշկեան |
| 2 | " | 78 (16·5×10·5×1·5) | " | " " | ? | ? | ? | " | " " |
| 3 | " | 244 (12·5×10×3·5) | բոլորգիր | ? | Վարդանէս | ? | ? | Հաւաքումն հոգւոյ եւ զօրութեանց | Տիգր. Մելիք-Զոհրաբեան |
| 4 | " | 377 (19×13×5) | նոտր եւ բլրգ. | 1668 | Սիմէոն քհ. եւն | ? | ? | Գիրք Պիտոյից եւ Սաղմոս. | " " " |
| 5 | " | 272 (25×20×6) | բոլորգիր | 1619 | Ղուկաս քհ. | Որոտանի Գետաթաղ գիւղ | Ղազար քհ. եւ Սարգ. եպս. | Ն. Լամբրոնացի | " " " |
| 6 | " | 220 (13·5×9·5×3) | " | ? | ? | ? | ? | Շարական | Ալէքսան Բաղդասարեան |
| 7 | " | 244 (20×15×4) | նոտր | ? | Եսայի քհ. | ? | Յովհաննէս եպս. | Քարոզգիրք Տաթեւացւոյ | Տիգր. Մելիք-Զոհրաբեան |
| 8 | բամբ. թղթ | 343 (12×9×6) | բոլորգիր | 1393 | Բարսեղ քհ. | ? | ? | Աւետարան | Ալէքսան Տէր-Օհաննեան |
| 9 | Թուղթ | 36 (10×8×0·7) | " | 1689 | Պետրոս | Կոստանդնուպոլիս | Տիրացու Աբրէհամ | Մեղեդիք | Խաչիկ Սարաճեան |
| 10 | " | 56 (21×17×1) | նոտր | 1826 | ? | ? | ? | Ցուցակ աստուածային կատարելութեանց | Տիգր. Մելիք-Զոհրաբեան |
| 11 | " | 68 (15×10×2) | " | ? | ? | ? | ? | Եփրեմ խուրի | - " " |
| 12 | " | 242 (13×9·5×4) | բոլորգիր | 1669 | Աւետիս | ? | Տէր Եղիա աբեղայ | Աղօթագիրք | Ալէքսան Տէր-Օհաննեան |
| 13 | մագաղաթ | 153 (10×7·5×3) | " | ? | ? | ? | ? | Տօնացոյց եւ խազգիրք | Կ. Բ. եւ Ս. Յովհաննէսեան |
| 14 | Թուղթ | 203 (20×15×3·5) | նոտր եւ բլրգ. | ԺԷ դար | ? | ? | ? | Առակագիրք, Պատմ. Աղէքս. | Սիսակ Բժշկեան |
| 15 | " | 106 (20·5×15×2·5) | նոտր | 1784էն առաջ | ? | ? | ? | Բժշկարան | Գարեգին Սարաֆեան |
| 16 | " | 108 (21×15·5×3) | բոլորգիր | 1434էն ետքը | ? | ? | ? | Տաղարան Ա. Բաղիշեցւոյ | Գարեգին Սարաֆեան |
| 17 | " | 117 (26×17·5×2) | " | 1535էն առաջ | ? | ? | ? | Աւետարան | Արմենակ Աղասեան |
| 18 | " | 218 (21×17×4) | նոտր եւ շղագ. | ԺԸ. դար | ? | ? | ? | Ժողովածու | Սիսակ Բժշկեան |
| 19 | " | 163 (21·5×16·5×3) | նոտր | ԺԹ. դար | ? | ? | ? | Բժշկարան | Հ. Տէր Կարապետեան |
| 20 | " | 60 (19×13×1·3) | " | " | ? | ? | ? | " | " " " |
| 21 | " | 36 (17×10·5) | " | ԺԷ—ԺԸ դ. | ? | ? | ? | Ռամկարկի գիրք | " " " |
| 22 | " | 28 (15×10×0·8) | " | ԺԸ—ԺԹ դ. | ? | ? | ? | Վիճակարան | " " " |
| 23 | " | 215 (13×10×3) | " | ? | ? | ? | ? | Բանք իմաստասիրականք Լեհացւոյ | Յովհաննէս Յովհաննէսեան |
| 24 | " | — (417×10) | " | 1680? | ? | Կոստանդնուպոլիս | ? | Համայիլ | Սրապիոն Գրիգորեան |
| 25 | " | 80 (21×17×1·2) | շղագիր | 1857 | Ստեփան Բժշկեանց | Դուրէմ | Գրիչը | Տաղարան | Սիսակ Բժշկեան |
| 26 | " | 136 (21·5×17·5×1·8) | " | ԺԹ. դար | ? | ? | ? | Բժշկարան | Հ. Տէր Կարապետեան |
| 27 | " | 264 (21 5×17×4) | անցման նոտր | ? | ? | ? | ? | Ախտարք | " " " |
| 28 | " | 120 (17·5×10×2) | " " | ? | ? | ? | ? | " | Սիսակ Բժշկեան |
| 29 | " | 213 (20·5×16·5×4·5) | բոլորգիր | 1681 | Եսայի քահանայ | Շաքիի Գուլասան գիւղ | Գրիչը | Աւետարան | Սողոմ. Մել. Աբրահամեան |
| 30 | մագ. եւ թղթ. | 315 (13 5×10×6) | " | 1633 | ? | ? | ? | Տոմարագիտութիւն | " " " |
| 31 | Թուղթ | 442 (17·5×12×6) | նոտր | 1676 | Զաքէոս | ? | Յովհաննէս վրդ. | Գիրք մեկնութեանց | " " " |
| 32 | " | 280 (17×11×5·5) | բոլորգիր | 1766 | Ստեփաննոս քհ. | Կախոյ Քարվանսարայ | Գրիչը | Սաղմոս եւ Թուղթք առաքելոց | " " " |
| 33 | " | 125 (15×11×2) | նոտր | 1747 | ? | ? | ? | Բնազննութիւն | " " " |
| 34 | " | 194 (20·5×15×4·5) | բոլորգիր | 1683 | Մխիթար երէց | Մոկաց Նանենց գիւղ | ? | Սաղմոսարան, Ժամագիրք, Տօնացոյց | " " " |
| 35 | " | 389 (24×19×8) | նոտր | 1613 | Մինաս քհ. | Եճանանու Եղնկեան գիւղ | Միաբանութիւն Սոաթէի Վ. | Վարք հարանց | " " " |
| 36 | " | 261 (15×10×6) | բոլորգիր | 1647 | Մարիամ | Քաշթաղու Խանածախ գիւղ | Մարկոս եպիսկոպոս | Ն. Շնորհալւոյ բանք չափաւ | " " " |
| 37 | " | 53 (22×18×0·7) | շղագիր | ԺԹ. դար | ? | ? | ? | Ցուցակ ռամկարկի | " " " |
| 38 | " | 2?9 (30 5×18×3·5) | " | " " | ? | ? | ? | Ախտարք | " " " |
| 39 | " | 668 (31×21×17) | բոլորգիր | 1457 | Ղազար եւ այլք | Լիմկղզի, Քաջբերունիք եւն | Մահտեսի Ստեփանոս Ղարիպշայ | Ցայսմաւուրք | " " " |
| 40 | " | 413 (14·5×11×5) | նոտր եւ բլրգ. | ? | ? | ? | ? | Բառարան | " " " |

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՑԱՆՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ

## Գ. ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԱՍՆԱՒՈՐ ԱՆՁԱՆՑ

| Թ. | Նիւթ | Մեծութիւն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Տէր | Բովանդակութիւն | Արդի տէր |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Խազ. | | | | | | | |
| 41 | Թուղթ | 146 (15×10×3·5) | Նօտր եւ բլրգ. | ? | ? | ? | ? | Տաղարան | Սողոմոն Մելիք Աբրահամեան |
| 42 | Մագաղաթ | 119 (14·5×10×3·5) | բոլորգիր | ? | Կարապետ? | ? | ? | Մաշտոց | Ալեքսան Աֆթանդիլեան |
| 43 | Թուղթ | 130 (20×13×2·5) | Նօտր | 1776 | Ստեփաննոս քարտուղար | Կոստանդնուպոլիս? | ? | Նշտարք | " " |
| 44 | " | 421 (27×17×8) | բոլորգիր | 1702էն առաջ | Մկրտիչ վրդ. Մեծոփեցի | ? | ? | Ճաշոց | Ղազար Մելիք Բաբաջանեան |
| 45 | " | 176 (16×10×4) | շղագիր | 1850 | ? | ? | ? | Ժողովածու | Սիմակ Բժշկեան |
| 46 | " | 84 (21×16·5×1·3) | " | 1880 | Մկրտիչ Բժշկեան | Թաւրիզ | Գրիչը | " | " " |
| 47 | Մագաղաթ | 217 (8×6×3) | բոլորգիր | ? | ? | ? | ? | Սաղմոս | Վարդան Վարդանեան |
| 48 | Թուղթ | 437 (35×26×9) | " | 1421 | Կարապետ աբեղայ | Աղէթ. վանք Ս. Յակոբայ | Հիւսն Յովհաննէս | Ճաշոց | Աւետիս Բուլղեան |
| 49 | " | 337 (20·5×15×5) | Նօտր | 1631 | Կարապետ երէց | Բերիա կամ Հալէպ | Ներսէս վրդ. | Մեկն. Մատթէի, Դաւիթ Յամար | Դաւիթ Շահգելդեան |
| 50 | " | 73 (19×12×1) | " | 1820 | Յովհաննէս | ? | Ստեփաննոս եպիսկոպոս Ենովքեան | Համառօտ Ուղղութիւն Եկեղեցւոյ | Երուանդ Փորջեան |
| 51 | " | 377 (16×11×4) | " | 1738 | Աբրահամ վրդ. | Երուսաղէմ | Գրիչը | Ժողովածու | Դաւիթ Շահգելդեան |
| 52 | " | 189 (12×9×3) | բոլորգիր | 1724էն առաջ | Յովհաննէս | ? | ? | Աւետարան | Հմայեակ քհ. Ներսէսեան |
| 53 | " | 195 (13×10×4) | " | ? | Նիկողայոս սարկաւագ | ? | ? | Առձեռն Սաղմոս | " " " |
| 54 | Մագաղաթ | 100 (12×9×2·5) | " | ? | ? | ? | ? | Ժամագիրք | " " " |
| 55 | Թուղթ | 243 (22×18×6) | " | 1614 | Մարտիրոս | Ալջանանի Բեխ գիւղ | Մարգար քհ. | Աւետարան | " " " |
| 56 | " | 529 (30×21×13) | " | 1447 | Մատթէոս քհ. | Ագուլիս | Ստեփաննոս արքեպիսկոպոս | Տօնական | " " " |
| 57 | " | 173 (16×12×3) | " | ? | ? | ? | ? | Մաշտոց | Յակոբ Պօղոսեան |
| 58 | " | 156 (16×11×2·5) | Նօտր | 1750 | Սիմէոն վարդապետ Երեւանցի | Ս. Էջմիածին | Գրիչը | Մեկնութիւն Պրոկղի | Ալեքսան Աւետեան |
| 59 | " | 524 (40×27×8) | բոլորգիր | ? | Սարգիս | ? | Ազարիա, Յակոբ, Յոհան աբեղայք | Յայսմաւուրք | " " |
| 60 | " | 40 (16×11×0·5) | Նօտր | 1789 | Կարապետ | ? | Գրիչը | Կոնդակ խաչելութեան | " " |
| 61 | " | — (403×12) | անցման նօտր | ? | Տիրացու Գէորգ | ? | " | Հմայիլ | Սննեքերիմ Տէր Յակոբեան |
| 62 | " | 165 (22·5×17·5×3) | շղագիր | 1840 | Դանիէլ Մելքոնեան | Թաւրիզ | " | Պատմ. Յովհան կաթուղիկոսի | Մուշեղ Շահրազեան |
| 63 | " | 62 (20×14×1) | Նօտր | 1785 | Հաննա Ամասիացի | Սիս | Սոյ վանքը? | Մեկնութիւն Յոհաննու | Նարիման Մելիք-Ջահբարեան |
| 64 | " | 316 (22×16×5) | բոլորգիր | 1713 | Եղիա Մարզուանցի | Եւդոկիա | Ոսկան աստապատցի | Աւետարան | Վահան Թամզարեան |
| 65 | " | 213 (12×9×5) | " | 1625էն առաջ | ? | ? | Ալէքսան կրօնաւոր | Ն. Շնորհալի | Տիգրան Թովմասեան |
| 66 | " | 252 (20×15·5×6·5) | " | 1469 | Անանիա աբեղայ | Հերմոնի վանքը | Ստեփանոս քահանայ | Աւետարան | Միսաք Տէր-Աբրահամեան |
| 67 | " | 153 (15×11×4) | " | 1663 | ? | ? | ? | Ժողովածու | " " " |
| 68 | " | 229 (10×7×4) | Նօտր | ? | ? | ? | ? | Առձեռն Սաղմոս | " " " |
| 69 | " | 292 (32×22×6) | բոլորգիր | 1712էն առաջ | Արիստակէս քահանայ | ? | Մարգարէ երէց | Ճաշոց | " " " |
| 70 | " | 328 (18×14×6) | " | 1453 | Յակոբ քահանայ | ? | Գրիչը | Աւետարան | Յովսէփ Մովսիսեան |
| 71 | " | 154 (16×12×4) | " | 1364 | Ստեփանոս քահանայ | Ամիթ | ? | Մաշտոց | Միխիթար Վլիսոն |
| 72 | " | 147 (10×7·5×3) | Նօտր | ? | Մելքոն | ? | ? | Աղօթագիրք | Նիկոլա Տէր Օհանեան |
| 73 | " | 87 (15×10×1) | " | 1679 | Յովհաննէս | ? | ? | Երազահան եւ Տնօրինականք | Ղազար Մելիք-Բաբաջանեան |
| 74 | " | 184 (26×18×5) | բոլորգիր | 1295—8 | Թորոս քահանայ | Սիս | ՍՄԲԱՏ Գ. ԱՐՔԱՅ ԿԻԼԻԿԻՈՅ | Անասնաբուժութիւն | Գերձակ Շիրմազեան |
| 75 | " | 260 (20·5×15·5×3) | Նօտր | 1817 | Թովմաս Սարկաւագ | Պոլիս | Պօղոս վրդ. արեւելցի | Քարոզգիրք | Տիգրան Մելիք-Ջոհրաբեան |

# Ա.

# ՅՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻՆ ՂԱԼԱՅԻ ԿԱՄ ԲԵՐԴԱԹԱՂԻ

---

## 1.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**22 = 1330։**

*ԹՈՒՂԹՔ 271, էջ 542 (Նշանակուած է 273 թուղթ. բայց փախցուած են 77 եւ 177. աւելի են 153* bis, *227* bis, *227* ter, *230* bis*): — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×19×5 սմ: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 16,50×6 սմ. միջին լուսանցք 1 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ. սկզբնատողերը եւ սկզբնատառերը կարմիր զարդարուն. տող՝ 21: — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ. մագաղաթեայ պահպանակ չունի: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական մաքուր. տեղ տեղ միայն հինցած, բորբոսնած, եւ նորոգողի մը կողմէն կարկտաններ դրուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 10բ, 11ա բ, 85ա բ, 134բ, 213ա բ, 273ա բ: Էջ 213 բաց է թողուած Յովհաննու կիսատ գլխակարգութիւնը շարունակելու համար, որ յետոյ մոռցուած է: Լուսանցազարդեր եւ խորաններ շատ կան. բոլորն ալ լաւ գծուած, բայց անյաջող ներկուած: ԳՐԻՉ Յովանէս. ստացող՝ Սարգիս քահանայ որդի Յովհաննէս քահանայի: ՏԵՂ՝ Բզնունեաց գաւառի Աղէթ գիւղը. նորոգող կազմի Խաչատուր վարդապետ ՌՂԹ — 1650 թուին:*

**Մատեանս է Աւետարան.**

**Էջ 1բ—2բ կանոն քառասնօրեայ մանկան. էջ 3ա Աւրհնութիւն աղի. էջ 3բ—8ա Եւսեբի Կարպիանոսի եւ կանոնք համաձայնութեան Աւետարանչաց. էջ 8բ—10ա Նախադրութիւն եւ գլուխք Մատթէի. էջ 12ա—83բ Աւետարան ըստ Մատթէոսի. էջ 83բ—84բ Նախադրութիւն եւ գլուխք Մարկոսի. էջ 86ա—132ա Աւետարան ըստ Մարկոսի. էջ 132բ—134ա “ուկայ աւետարանին գլուխք„. էջ 135ա—212ա Աւետարան ըստ Ղուկասու. էջ 212բ Նախադրութիւն եւ գլուխք Յովհաննու. էջ 214ա—268ա Աւետարան ըստ Յովհաննու. էջ 268ա—բ Իրք կնոջն շնացելոյ, էջ 269ա—272ա գլխաւոր յիշատակարանք. էջ 272ա օրհնութիւն աղի։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. էջ 1ա՝ պարապ էջին վրայ. **«Նք աւտէնչք զիմ յոյն թողէ շնորհեցք զինքն գոյք զի այր մի մէր եմ անըրժն։**

**Էջ 10ա. Ով եղբայր եթէ ուրինակես, դու զմեծ գիրն մեծ գրէ, եւ զմանր մանր. եւ թէ կարգաս, զմեծն կարգա, ու զմանր թող, զի մի այլ եւ այլ, լիցի գրեալն եւ ուրինակն։ Վն զի անմար գրաւղքն գրեցին զմեծն եւ զմանրն ի կարգն, գիտացին խալատ է գրած, եւ գրեցին ի չարն եւ գրեալքն այլայլեցաւ։ սոուգէ ի յայլ գրոց զախալն, եւ ի չարն գրէ։ եւ զայլն հայնց մանր գրէ, զի մի զանազանեսցին։ Զյովանէս գծագրողս յիշես ի տր յն։**

**Էջ 83բ. Զգրող սորին յիշեցէք ի քն։**

**Էջ 132ա. Զգծագրաւղ նք եւ երջանիկ աւետարանիս, զյովանէս, յիշման արժանի առնել յաղաւթս։**

**Էջ 271ա. Լուսանցքին վրայ կայ թուրքերէն մեծ կնիք մը, որուն վրայ կրնամ որոշել** “على بن مصطفى ... الله ...„.

**Էջ 272բ. Զանազան աւետարաններու գլուխներու նօտրագիր ցանկ մը։**

**Գիւտաւոր Յիշատակարանք. էջ 269ա. փառք անըսկըզբանն, եւ սկըզբանն ամենայնի։ անեղ էին եւ գոյացուցչին բնաւից, անվախճան, եւ անսահման էացուցչին, սահմանիչ եւ կատարումն բոլոր էից, երից միակին, եզակի եւ միում ածութեն։ որ անշարժ գոլով շարժէ զարարածս ի կեանս եւ ի փրկութի։ էից էակն, եւ կենդանեաց կեանքն։ որ անփոփոխ գոլով միշտ յէութեն, անեղ եւ անվայրափակն, լըրումն եւ բովանդակիչ ամենայնի, եւ յամենայնս է. եւ յամենայնէ անհաս է։ որպէս խմաս[269բ]--նս եւ ի բոլորս, եւ ինքն ոչ մասն՝ եւ ոչ բոլոր, որպէս թէ զմասն եւ զբոլոր զամենայն ինքն ունելով։ եւ կրէ զամենայն բանիւ զաւրութե իւրոյ։ Գերալիր գոլով լնու զամենայն, եւ անհաս է յամենայնէ։ որում բան եւ իմաստութի եւ լեզու տուեալ բոլոր էիցս։ Ի բոլոր էիցս հանցուք աւրհնութի եւ փառս հաւր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։**

Իսկ չորից աւետարանչացն խորհուրդ, բազմաւրինակ իմն ցուցմամբ տեսանի։ զի ոմանք ասեն թէ չորից աւետարանչացն են. չորք անկիւնք արարածոց, արեւելք։ արեւմուտք։ հիւսիս։ հարաւ։ պարտ էր համասփիւռ քարոզել զաւետարանն։

Իսկ ոմանց հաճոյ թուեցաւ ըստ չորից մշտահոս գետոցն, յադենական աղբերէն յառաջ խաղացեալ առ ի տիեզերաց ոռոգումն. փիսոն։ գեհոն։ տիգրիս։ եփրատէս։ եւ սոցա գոլով նմանապէս թուով, ուռճացեալք ի կենդանական աղբերէն։ ոռոգանել զպապաքեալ միտս մարդկային բնութեանս. [270 ա]։ Նոյն աւրինակ՝ ըստ տեսութեան եզեկիէլի. քառակերպեան աթոռոյ, Մարդ։ Առիւծ։ Եզն։ Արծիւ։ զանմարմնոցն տր տեսանելով բազմեալ ի փառացն աթոռ, իմանալի ցուցմամբ, զխնամս բոլոր բնութեանս զակնարկումն, որ աստուածապէս եւ տիրաբար, բերմամբ նշանակէ զլինելն, առ ի հողածինս հոգեղինացն անմահից, զմահկանացուս առնել հաղորդս։ Եւս եւ ի գերակատար հանել ի փառս։ Վասն զի փառաց թագաւորն քս, փառակիցն հաւր եւ հոգւոյն սրբոյ, զմերս առնլով բնութի։ ինքեան միացոյց աստուածութեան, ուսուցանելով, մի ն որդի դաւանել որ յայ հաւրէ, եւ որ ի մարիամայ նր կուսէ։ անճառ միութբ, զոր աւետարանականն ուսուցանեն բանք, մինչ ի կատարած հաւանութբ, հաւատահաստատ կարգաւք ի նոյն յարելով յառաքելաւանդն քարոզութին։ որ զածախաւսն վարդապետութի դրոշմեալ, զաւակաւս ի բազմացն, առ ի հաւատալ, թէ յն քս է որդի այ, ըստ վեհին յովհաննու՝ հաւատալ, եւ զկեանսն յաւիտենականս ընդունել յանուն նորա։

Ուստի եւ տեսեալ զսորայս անճառ փրկագործութն խորհուրդ, Ոմն քահանայ անուն սարգիս, որդի Սր եւ մաքուր քհին, յոհաննէսին որ բարի գործովք հանգուցեալ է ի քս, նա ստացաւ զնր աւետարանս յիշատակ իւր եւ կենակցին իւրոյ, եւ ծնաւղաց իւրոց, եւ ի վայելումն հարազատ որդւոց իւրոց։ Սուքիասին, եւ անդրէասին։ զոր վայելել տացէ տր աձ խաղաղական կենաւք, ամէն. [270 բ] Արդ յայսքան եւ յայսպիսի մեծափառ նր աւետարանչացս գումարս, բարեխաւս աշխարհի եւ ապաւէն ապաստանի, քաւութի մեղուցելոց։ դիմեալ մեծաւ յուսով բարի արմատոց շառաւեղն եւ սրբասընունդ քահայն սարգիս, կամեցաւ զածաշունչ նր աւետարանս զայս ստանալ. զոր ի վաղուց հետէ փափաքեալ ցանկայր բաղձանաց, այսմ լուսալըական եւ հոգիաբուխ մատենիս։ Եւ արդ ես յետինս ի քահայս եւ անարժանս ի մանկունս եկեղեցւոյ, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն որ ասէ յոր կոչումն կոչեցար ի նմին կացջիր։ եւ արդ իմ ոչ բերելով զայսպիսի վստահութի, այլ ունայն յամենայն բարեվայելչութենէ որ առաքինեացն է համարձակութիւն։ Այլ ի բարեխաւսութի մաղթելով զամենայն նրս, եւ ի մարդասիրութին այ յուսադրել։ զկործանեալ, եւ զլքեալ անձն իմ եղկելի։ Ո՞վ դիւրակործան մարմին երկրածին։ որո՞վք ձայնարկութբ զքեզ աւաղեցից։ Կամ զի՞րդ ի գիր յառեցից։ եւ կամ զորոց նշանակեցից, զմարմնական տածմանց, եթէ զհոգեկան սխալանաց, զկամայից. եթէ զակամայից, զոր ոչ բաւէ նամակս վերաբերել, եւ կամ ի գիր շարաբանիլ։ այլ գիտողին զգաղտներեւականն, նմա առաջի արկեալ հեղից զանձն իմ մաղթանաւք, որ կարողն է կեցուցանել եւ վերըստին հրաշագործել յիս աղաւթիւք ամենայն սրբոց։ Այլ եւ գրեցաւ նր աւետարանս, ձեռամբ յովանէսի. [271 ա] անիմաստ եւ ախմար գրչի. եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութե, եւ բազում մեղաց ցնորիւք պաշարել, այլ ըստ կարի մերում զոր պարգեւեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրել, իմ ի սմա գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր եւ ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք, եւ բազում պանդխտութբ։ Ի մեծ թուիս ի յեղանական շրջագայութե արեգական ստորիջիւք երկնաշու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով ըստ արարչութեցն. չափեալ յելանելոյն ադամա ի դրախտէն, զռ. եւ զճ եւ ա ամ. ըստ եւթանասնիցն որում մեք վարիմք։ եւ է ի մարդեղութենէ բանին այ անժամանակ էին եւ փրկչին յի քի, ամս, ռյլ։ Իսկ ըստ թուոյ խոսրովային յաբեթեանս տումարի։ չձ։ եւ էր մեծ շրջանին, մոէ։ ի յառաջնորդութե տր աձատրոյ։ Եւ յաշխարհակալութե մեծ ինքնակալին բուսայիտ խանին, որ տիրէ բազում ազգաց, ունելով ի ծովէն պոնտոսի մինչեւ ի ծովն կասբից, եւ մինչեւ ի գետն ջահուն կոչեցեալ։ Ի կաթողիկոսութե հոկազանց սեռի, Տն յակովբայ։ Եւ ի թագութե լեւոնի։ Նստեալ ի գահն կիլիկեցւոց։ զոր տր աձ պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական. եւ զթագաւորական։ զի յիշել զանուանս նոցա՝ սասանել սաքրին եւ ոչ եւս երեւին թշնամիք ճշմարտութեն։ Այլ եւ գրեցաւ նր աւետարանս. ի գաւառիս՝ բզնունեաց. ի գեղս առ ափն ծովու, որ կոչի աղէթ, ընդ հովանեաւ սրբոյ կարապետին. ի վայելումն, սուքիասին. եւ անդրէասին։ Արդ որք ճաշակէք յածային [271 բ] բուրաստանէս, եւ յամենայն սեղանոյս։ Որք պատահիք սմա. վայելողք, կամ ընթերցաւղք։ յիշեսջիք աղաւթիւք զստացաւղ նր աւետարանիս։ զսարգիս քահ. եւ զծնաւղսն իւր. եւ զկենակից նորա։ եւ զորդիսն իւր։ զսուքիասն, եւ զանդրէասն. եւ զամենայն արեան մերձաւորսն. ի տր յս. ընդ նոսին զանպիտան գրիչ. զյովանէս, եւ զիմսն զամենայն։ եւ որք զմեզ յիշէք սրտի մտաւք, յիշեալ լիջիք յառատ ողորմութեն այ, որ է աւրհնեալ յաւիտեանս։ ամէն։

Զտուող աւրինակի, զթաթուլ, եւ զհայր նորա զպարոնշահ յիշման արժանի առնել ի քս աղաչեմ։ (Այսր տակ կարմիր թանաքով գրուած է). Զմարտիրոս բազե որդին յիշեցէք ի քս ուր մեղացն թողութի հայցեցէք յայ զի բազում ծախաւք աւգնական եղեւ...

Էջ 272 ա (Յիշատակարան նորոգողին. Ի հազար երրորդում եւ իննսներորդում. եւ յիններորդում. ամի թուահաշութեան հոկազեանս տոմարի։ Ես նուաստ խաչատուր վրդպն. ետու նորոգ կազմել զնր աւետարանս, ի սփոփանս բազմամեղ անձին իմ. եւ եդի սր աթոռ թումայի առաքելոյ։ Ի վանս ազուլեաց. որում եւ էրն յառաջագոյն։ Իսկ արդ՝ որք հանդիպիք աղաչեմ զի յիշեսջիք զիս. հանդերձ ծնողօք իմովք. եւ դուք յիշեալ լիջիք առաջի այ։ ամէն։

## 2.

## ԱՒԵՏԱՐԱՆ

(1627-էն առաջ):

*ԹՈՒՂԹ.Ք 265, էջ 520, առանց հաշուելու ձեռագրին սկիզբը դրուած երկու թերթ թղթեայ պահպանակը՝ որ դատարկ է: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 24×18×7 սմ: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 17×5 սմ. միջին լուսանցք 1 սմ. ստորին լուսանցքները մինչեւ 6 սմ. լայնութիւն ունին. — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ. սկզբնատողերը եւ սկզբնատառերը կարմիր զարդարուն. տող՝ 23: ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ Թուղթ. Թղթեայ պահպանակ սկիզբէն երկու թերթ (դատարկ) եւ վերջէն մէկ թերթ՝ որ բոլորգիր աւետարանի մը կիսատ մնացորդն է: ԿԱԶՄ՝ մետաքսապատ հաստ փայտէ: ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր. յիշատակարանին վերջի մասը՝ մէկ կամ երկու Թուղթ հանուած է: ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ պահպանակին չորս էջերը, էջ 1 ա, 6 բ, 7 ա, 130 ա, 152 բ, 153 ա (գրիչը երկու Թուղթ միասին դարձուցած է սխալմամբ), 208 բ – 210 ա, 265 բ՝ պահպանակի մնացորդը: Լուսանցազարդերը, խորանները եւ աւետարաններու սկիզբը դրուած պատկերները յաջող չեն: Գրիչ եւ տեղ անծանօթ. ստացող "յոհաննէս կրօնաւոր". Թուական ՌՀՁ = 1627-էն առաջ:*

**Մատենանս է Ա-եփորան.**

**Էջ 1բ—6ա Եւսեբի Կարպիանոսի եւ կանոններ. էջ 8ա—82բ աւետարան ըստ Մատթէոսի. էջ 83ա տեղեկութիւն Մատթէոսի վրայ. էջ 84ա—129բ աւետարան Մարկոսի. էջ 131ա—208ա Աւետարան Ղուկասու. էջ 211ա—264ա Աւետարան Յովհաննու. էջ 264բ գլխաւոր յիշատակարանը:**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1բ եւ 264բ կնիք մը այս մակագրութեամբ. "Ք. Ծ. Տր Յովսէփ. 1776":**

**Էջ 83ա. "Զմեղապարտ Գրիչս. զսուտ անուն քահնա յիշեցէք ՚ի տր ածն ամի ամէն:"**

**Էջ 84բ. "Զջան փաշէն յիշեցէք ՚ի քն որ հանպղ կու կերակրէ զմեզ անուշ ուտելօք եւ ըմպե- լօք ած զուր հոգին լուսաւորէ յաւուր դատաստանին, ամէն:"**

**Էջ 129բ. "քն ած քո ՚նք յարութեդ ողորմեա՛ ստացողի սորա. յոհաննէս կրօնաւորին. եւ ծնօղաց իւրոց. եւ ինձ մեղ՚ր գծողիս:"**

**Գլխաւոր յիշատակարան. Էջ 264ա (բուն գրչէն). Փառք պատիւ իշխանութի էականին. եռանձնական եզակի տէրութեն. եւ միաանական սրբոյ երրորդութե: Այժմ եւ յաւիտեանս եւ յաւիտենին յաւիտեանս Ամէն:**

**Ցանվրդով յորդորմունս. յարախաղաց գետոց մշտահոսս ծաւալման. աւետարանական խորհրդեանս ՚ի նախաձայնեալ մեծն մարգարէից երջանիկն մովսէս. ասէ աղբեւր ելանէ յեդովմա. եւ քառառաջեա բաժանեալ վտակօք զքառեզերեանս արբուցանէր տիեզերց որով զուարճացեալ ճոխանայր երկիր բուսովք եւ տնկաւք. բարգաւաճեալ զբոլո՛-մն տարւոյն քաղից յեղանակաց. ՚ի մեծութի եւ ՚ի փառս քաղանիւթեայ հաստեալ մարդոյն ՚ի դրախտի անդ. այն որ քաղից յայտնեալ պատճառից զպատուիրանին մերկանայր զպահպանութին. եւ պատ-ակորոյս եղեալ. Նսեմացուցանէր յինքեան զկազմածն լուսա-տեսակ. զոր (մնացեալը հանուած է ձեռագրէն):**

**Էջ 265ա (երկրորդ ստացողէ մը) "Զվերջին ըստացողի ՚նք աւետարանիս. որ մեծաւ փափագանօք. եւ հաստատուն յուսով ի հալալ ընչից իմոց ստացայ զ՚նք աւետարանս. ժառանգ եւ յիշատակ ինձ խօջա սափարին. եւ հաւրն իմոյ շամշադինն. եւ ծնօղաց իմոյ. փաշախաթունին եւ կողակցին իմոյ եղիսաբեթին եւ դստերացն իմոյ վառվառին, գշխոյնին, եւ որդոցն իմոյ զաքարին, գալոցին, եւ ամ արեան մերձաւորաց իմոց ամէն.. ի թվին. ռ. հ. գ. ստացայ զսայ.. ամէն:"**

## 3.

## ԱՒԵՏԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹ 308, առանց հաշուելու սկիզբէն երկու եւ վերջէն մէկ թերթ մագաղաթեայ պահպանակները. էջ 616. (նշանակուած է 309 թերթ. բայց թղ. 72, 73. 190 եւ 253 կրկին անգամ կու գան, իսկ 77, 78 եւ 184 փախցուած են): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 18,5×14×5,4 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13,5×4 սմ. միջին լուսանցք 8 մմ.: ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ. սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 21: — ՆԻՒԹ՝ մագաղաթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — Հանգամանք՝ նոր եւ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ բացի պահպանակներէն՝ էջ 86 ա (գրուած միայն չորս տող առաջին սիւնակէն), 86 բ, 145, 178 բ (գրուած միայն վեց տող ա սիւնակէն եւ յետոյ ուղղակի շարունակուած էջ 179 ա), 240 ա—բ (որովհետեւ 239 բ աւե-*

*տարանը կիսատ թողուած է), եւ 309: Լուսանցազարդներն սակաւաթիւ, անարուեստ եւ աննշան: ԳՐԻՉ՝ Պօղոս, տեղ՝ Նորաշէնք գիւղ. ստացող ջնջուած. թուականը մոռցուած է:*

**Մատեանս է Աւետարան.**

Էջ 1ա—86ա Մատթէոս. 87ա—143բ Մարկոս. 143բ—144բ "Յարուցեալ յառաւօտուն,,. 146ա—239բ Ղուկաս (մինչեւ իգ. 50 եւ ամբարձեալ զձեռս. Մնացեալը կիսատ մնացած՝ յետոյ շարունակելու համար 240 պարապ էջին վրայ). 241ա—306ա Յովհաննէս. 306ա—307բ յիշատակարանք. էջ 308ա—բ իբր կնոջն շնացելոյ տարբեր գրչէ:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Մագաղաթեայ պահպանակին վրայ նօտրագիր այբուբեն իբր գրչափորձ եւ "յն քն ծառա պիղծս (= պօղոս) դարով ա դարով տր̃ տր̃ին կօսանին Թարանի գաղան,,:

Էջ 144բ (առաջին գրչէն). Ով սուրբ քահանայք. եւ սարկաւագունք որք հանդիպիք 'ի սուրբ աւետարանիս, կարդալով կամ աւրինակելով: ուղիղ սրտիւ լի բերանով ած ողորմի ասացէք անարժան գրչիս լոկղնուն պաւղոսիս: ած զձեզ ողորմի: ամէն:,,

Էջ 145բ. նօտրագիր "Քանզի բազումք յօժարեցին ... (ՂԿ. Ա. 1—2),,:

Էջ 309բ. նօտրագիր երկիցս գրուած է "Ես չեմ արել մէ+ բարութի. գործել եմ ամէն չարութի. հոգիս ձգել տկարութի. պէիլամ եմ անճարիս ճար չունիմ տր̃ ողորմեա տր̃ ողորմեա քն տր̃ ած տր̃ ողորմեա,,:

Վերջին մագաղաթեայ պահպանակին վրայ մատիտով եւ նոր գրով "ի յիշատակ Սուրէն Մ Խալաֆեանց 1903 թիւ,,:

Գլխաւոր յիշատակարանը. (Էջ 306ա բուն գրչէն). Փառք համագոյ անբաժանելի եւ միաանական նը երրորդութեն հօր եւ որդւոյ եւ նը հոգւոյն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

Ի ծագման ճշմարիտ արեգականն եւ ի յայտնիլ ածն բանի. Նորազուարճ բերկրանօք պայծառացան արարածք ամ̃ զի թափանցիկ եւ զգերազանցեալ լոյսն ընդ յաւիտենիս խառնելով: Գեղազարդեալ փարթամութբ. անպարագիծ եւ ածունակ բնութբ ղորբ եւ նախահայրն յըստուերամած նիրհմանէն: Եւ խաչակարկառ եւ բեւեռապինդ բազկաւք ազատեցաւ ի խաւարային եւ ի մեղսասէր բանդէն: Եւ ի ձեռն չորից աւետարանչաց որ գետաւրէն եւ բղխէահոս բղխեն ի տանէն տերունի ի յայգիս հայրատունկ ծաղկեցաւ արգանդ մաւր մերոյ սիոնի: Եւ ծնաւ անթիւ կաճառս ատեաղաց եւ տրամափայլեաց գունակ գունակս: Զդասս մարգարէից: Զջոկս առաքելոց: Զպարս եւթանանից: Զերամս հաղարաց Զթիւս հայրապետաց: Զընտրավարդապետաց. Զխորանս մարտիրոսաց: Զպասկս վկայից: Այսքանեաւք իմաստութբ լցաւ արարածս ամ̃յ. քան զջուրս բազումս որ ծածկեն զծովս: Արդ այսմ ածեղէն եւ երկնապարգեւ գանձիս եւ լուսափայլ մարգարտիս ցանկացաւ ածասէր տր սիմոն ՀՅն որ (նօտրագիր մասը խարդախուած) եւ ետ գրել զաս յիշատակ իւր եւ բարի ծնաւղացն իւր: հօրն ամիրէն .. եւ մօրն էօր մէլէքն (նօտրագիրները խարդախուած) եւ ամ̃ արեան մերձաւորաց իւրոց: Արդ ընկալեալ կատարեցաւ նը աւետարանս, եւ բերանս քի. եւ քարոզս յի Տն ամյ մերոյ, 'ի գեօղս որ կոչի Նորաշէնք. ընդ հովանեաւ սբ ածածնին եւ նը եկեղեցեացս: Եւ ես թափուրս ի բարեաց գործոց. պօղոս սուտանուն դպիր. եւ գործովք ունայն տըկար անձամբ յանձն առի, եւ ամենակարող զօրութբն ամյ կատարեցի նը աւետարանս մեղամած մատամբս յաւրինեցի միթէ քաւի մեղս 'ի մարմնի է մերոյ: Այլ երեսս անկեալ եւս աղաչեմ զձեզ յիշեցէք ի քն եւ 'ի նը յաղաւթս ձեր եւ զիս զանարժան գծողս զպօղոս եւ զծնօղքն իմ. առաքելն, եւ մայրն իմ խանին: եւ եղբայրն իմ մարտիրոսին. եւ այլ եղբարքն իմ հանգուցեալն 'ի քն, եւ ըզկենակիցն իմ մարեան. զդեռաքուսիկն իմ ներսէս: եւ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս եւ զհանգուցեալս. եւ բոլոր սրտիւ եւ լի բերանով ած ողորմի ասացէք: Դարձեալ յիշեցէք զաշխատող մագաղաթիս +ատպար դպիրն ած զձեզ ամէն:

Էջ 307բ (վերջին ստացողէն). "Դարձեալ յիշեցէք զտր սիմոն քհն եւ իւր կողակիցն եղիսաբէթ. եւ որդին իւր մարտիրոս. եւ իւր կողակցին գարեանին. եւ կրսեր որդին իւր կրիգոր որ պխտակամբ (= պխտակ անուամբ) նրաւակ կոչի. եւ այլ ննջեցել որդոցն, եւ դստերացն. եւ երկ[ու] դստերացն մարգարտին, եւ զանազանին. եւ այլ ամ̃ յարեն մերձաւորտ—ոցացն լի սրտիւ ած ողորմի ասացէք. եւ ած ձեզ ողորմեսցի ամէն:,,

Էջ 308բ (Շնացեալ կնոջ պատմութիւնը գրողէն). Յիշեցէք զորբագրաւղ տէրս կրիգոր եւ զատհակ առաջի քնի:

## 4.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

?

*ԹՈՒՂԹ 495, էջ 990 (Նշանակուած է 492 թուղթ, բայց փախցուած է էջ 166, աւելի են 85* bis, *284* bis, *290* bis, *291* bis*): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×15×8 սմ.: ԳՐՈՒԹԻՒՆ միասին: Գրուածքը կը պարունակէ երկու որոշ մասեր. առաջինը էջ 1–230 բ եւ երկրորդն ասոր շարունակութիւնը (231–492), որոնք տարբեր անձերու գործերն են: ԳԻՐ՝ Ա. մասին մէջ մեծ եւ մաքուր նօտր, իսկ Բ. մասին մէջ մանր եւ տգեղ նօտր. տող՝ Ա. մասին մէջ 27, Բ. մասին մէջ զանազան, այն է 30–37. Թանաք՝ սեւ: ՆԻՒԹ՝ Ա. մասը մաքուր եւ ողորկ թուղթ, Բ.ը անողորկ եւ նուազ լաւ: ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ Ա. մասը մաքուր, Բ.ը քիչ մը*

աղտոտ եւ շատ խառնակ: ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 3 բ, 384 բ, 392 բ եւ 468 բ, որոնց վրայ յետոյ գրչափորձ մը՝ նոյնպէս թղ. 230, 468եւն կիսովին կտրուած հանուած են. Լուսանցազարդեր եւ կարմրատառ սկզբնատողեր կան Ա. մասին մէջ. իսկ Բ. մասին մէջ լուսանցազարդերը հասարակ ուրուագծեր են առանց ներկի եւ շատ անյաջող. իսկ կարմրատողեր քիչ կան: ԳՐԻՉ. Ա. մասին Կիւրեղ երէց, Բ. մասին Ղուկաս վարդապետ. որուն տեղ տեղ օգնած է ստացողը Յովհաննէս քահանայ: Տեղ, կազմող եւ թուական չեն նշանակուած:

Մատեանս է Քարոզգիրք, որ կը պարունակէ.

Էջ 1—3ա Ցանկ: Էջ 4ա - 384ա քարոզները. էջ 385ա—392ա քաղուածներ ուկեփորիկէն, ինչպէս "Նախ եւ առաջին որ ասէն թէ իմաստասիրութիւն է գիտութիւն գոյից„, "եւ արդ դառնալ եղեւ գիր նախ առ քաղքեեացիսն„, "Առոտանութիւնք են տասն„, "Ազգայնամար սկսեալ յադամայ„, "Չորեքտասան մարգարէք„, "Աղօթք. Ով տր ած իմ յս քս բան հօր„, "Տաղ. գոհար վարդ ինքնայգուն„: Էջ 393ա քարոզները կը շարունակուին մինչեւ վերջ՝ 489ա—492բ խառն կերպով եւ աղտոտ գրութեամբ յիշատակարանք, թաթարերէն երգեր "Թայղալ ղալմիշամ սանկայդ„, "պու կուն բլպուլի կաւրտում„ եւն, Տաղ "Սաղմոսն հաց է երկնային„, "Հնչեալ հողմունքն զանազան (հովերուն անուններն տառանաւորով)„, Քառանկիւն թուերու բացատրութիւնը, դեղերայս բոլորը իբր բուն գրքէն դուրս են:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Ա. մասէն. էջ 51 ա. "եւ զիս զանարժան գծողս արժանի արասջէ ողորմութե իւրոյ քս փրկիչն մեր. ամէն:„ — Էջ 63 ա. "եւ զիս զմեղաւոր գծողս յիշեա՛„: — Էջ 215 ա "որ արդարութե է ամենեցուն արդարացնէ զմեղաւոր գծողս նը զմեղասէր Կիւրեղ երէցս եւ զմանուէլ քհյն զհզր ծնաւղն իմ. եւ նմ փառք յաւիտս ամէն„:

Բ. մասին մէջ յիշատակութիւնները շատ բազմաթիւ են. գրեթէ ամէն քարոզէ վերջ՝ քարոզին օրհնէնքներուն հետ յարմարցնելով յիշուած է ստացող Յովհաննէս վարդապետը, եւ հազիւ ուրեք գրիչը: Կարեւոր յիշատակութիւններն են.

Էջ 274 ա. "Յորոց փրկեսցէ քն ած զգծող գրոցս զղուկաս վդպ. եւ զստացող զտէր յոհաննէս գրոց աշակերտն եւ զծնաւղս իւր, զհայրն զպրն ջահանշէն. եւ զմայրն զպրն շահ սուլթանն եւ զեղբարքն զպարոն միրզայ ջանն (մէկ տող բաց) եւ զազգականքն առհասարակ ամէն. եւ եղիցի եղիցի ամէն„: Գրեթէ նոյն բառերով նաեւ էջ 283 բ, ուր բաց թողուած մասը կը լրացուի "եւ զպրն միրզալին եւ զորդիքն իւրեանց„:

Էջ 285 բ—288 ա, ստորին լուսանցքներուն վրայ "թէ կուզես. որ մեղաց ազատիս յառաջն ի մեղաց պատճառէն հեռու կաց...„ եւն խրատներ:

Էջ 290 bis բ (ստորին լուսանցքին վրայ). Այլ եւ զտէր Յոհնէս արի եւ քաջ ճաքինի եւ սոփէստէս գրոց աշկերտն, որ զարդարել էր յայս իմաստուք, խոհհեմ. համբերութ, սրբութ, եւ մաքրութ որ էր կերպն փոց ճշմարտին այ. որ խնդրող եղեւ փափագանաւք, այս ծծայլն բանիս, յիշեցէք զնա ի ժամ սրբ պտրգին, առաջի անմահ գառին այ. եւ ած զձեզ յիշէ յիւր առատ բրին ամէն:

Էջ 348 ա (ստորին լուսանցքին վրայ կարմրատառ) Զմեղաւք զառածեալս թորոս աղաչեմ յիշել ի տր:

Էջ 354 բ (ստորին լուսանցքին վրայ բուն գրչէն) "Այլ եւ ի ժամ արտասուացն յիշեցէք յաղաւթս ձեր զտէր թորոս գրոց աշկեռտն որ բանիս պատճառ եղեւ, եւ հպզ բրց պատճառ լինի. խնդրեցէք յայս նր մեղացն թողութի, եւ ի մեղաց ազատութի. եւ ած զձեզ յիշէ յիւր արքայութին ամէն:„

Էջ 358 բ (ստորին լուսանցքին վրայ) "Այլ եւ զտէր ղուկաս գրոց աշկրտն յիշեցէք ի մաքրափայլ յաղթս ձեր. եւ ած զձեզ յիշէ. Որ էր նայ ի գաղթան գաւառէն խիստ հեզ եւ խոնարհ մարդ այ յորս հանգչի ու բնակի ած. եւ խնդրեցէք յայս որ փրկէ զնայ յամ չարէ:„

Էջ 366 բ (ստորին լուսանցքին վրայ). Այլ եւ զտէր միրախ գրոց աշկրտն որ էր յերկրէն քաջբերունեաց, որ զարդարել էր յայս յ. ե. արփեան շնորհաւք. եւ սրբութ, ճշմրտութ, եւ առքինութ. յիշցէք առջի միածին անմահ թգրին ի նը յաղաւթս ձեր, եւ ած զձեզ յիւր արքայութին ամէն:

Էջ 367 բ. Որ եւ արժանի արասցէ տր ած ողրմութե եւ մեղաց թղութե զտէր յհաննէս գրոց աշակերտն եւ զծնաւղսն իւր զհայրն զպրն ջահանշէն եւ զմայրն զշահսաւլթանն եւ զեղբարքն եւ զամ ազգականքն. ընջէ զձեռագիր յանցանաց նց. եւ գրէ զանուն նց ի գիրն կենաց. եւ զտէր յոհանէսն բարով հասուցանէ ի յատուհան վզդութե, եւ անփորձ ի մեղաց եւ անսասան պահէ մինչեւ ի խորին ծերութի. ամէն:

377 ա. Անմեղադիր լերուք ով նըք ընթերցողք զի կար մեր այս էր ողալանացն անհարմար շարագիրիս:

383 ա. Ով նըք ընթերցողք յիշեցէք ի քն զմեղաւք մեռեալ ոգիս զմեղապարտ ոհանէսս թողութի շնորհեցէք անուշիւ. թէպէտ փափաք ունէինք զքարոզս գրելոյ մեք անծանաւթ էաք գրագրութե. ու թուխտս ուեր էր թողութի արէք մեր տկարութեա:

Էջ 421 ա. Որ իջեր ի մէջ հնոցին, եւ փրկեցեր զերիս մանկունս նոյն ողրմութբն փրկեաց զյհանէս վդպն ի մեղաց եւ յամ չար փորձանաց. եւ արժնի արայ անմահ կենացն. եւ երկնից արքայութեն. զինքն եւ զծնաւղս իւր եւ զամ ազգկնս ամէն:

Էջ 440 բ. Զոս իմում աղքատ կարի զկնդիրս քո կատարեսցի, տէր յոհանէս այր ցանկալի եւ հրշկց փափագելի, այս շնորհաւոր քեզ եղիցի եւ փրկութե հագուդ լիցի. տրն տացէ քեզ բիւր բարի. յիշման առնես զմեզ արժանի. եւ քո ծնաւղացն ամի, որք կենդանի որք 'ի հողի, ամենեցուն առհասարակ տրն տերանց ողորմեսցի: ամէն եւ եղիցի եղիցի ամէն: Ո՜վ որ անէ կիրակաբան, շաբթն 'ի բուն կենայ խափան, հետ սատանին է միաբան, բաժին չունի յարքայութեն, ինչ աւգուտ է շատ գատիլն երբ ած չտայ: միայն ջանալն է, այ տալն. թէ ած չտայ ջանալն զուր եւ անօգուտ է:

Էջ 453 ա. "եւ յայժմ առել է մի ձեռնադրութե որոյ արժանի արասցէ տր ած զանարժանս եւ զանպի-

տանս եւ զհօ—ր քանքարոյ պարտականս զոհանէս մեղաց թողութեն ամէն:„

Էջ 468 ա. Եւս առաւել զոհանէս մեղաւք լցեալս մեղաց թողութեն արժան առնէ եւ իւր արքայութենէն մասն եւ բաժին պարգեւէ արարիչն ած ամէն:

Էջ 485 բ. Ով պատուական եւ սրբազան ուսումնասէր եւ ածասէր եղբայր տէր յոհանէս: աշակերտ բանին կենաց, ի ժմլի ձմերան ծաղիկ վարդ խնդրես. այժմ բարձլ է իմաստուէին եւ սրբուէին աշխարհէս. եւ ես մղմեղաւո՞ր եւ մնաւք կուրցլ եւ տրտմուէ տարակուսնլ, գրեցի զքո՞ղս ըստ խնդրուածոց սրտի քո. սայ շնորհաւոր քեզ եղիցի, եւ քո հոգւոյդ եւ քո ծնաւղացն հոգոյ փրկութեան պատճառ լինի. խղճուէ վայելես զդայ եւ հաստնիս ի խորին ծերուէ անփորձ եւ անսասան կենաւք ամէն եւ եղիցի եղիցի ամէն: (Ասոր տակ Նոր գրչէ մը՝) Որ զշօրէքշէթ կամ զուրէթ կամ զպահք ազուհացիցն... լուծանէ եւն:

Էջ 490 բ (տարբեր գրչէ). յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զխաթուն խանաղէն որ գնեց զսբ գիրքս եւ ետուր յիշատակ սբ մկրտչին. եւ իւր տղին փանոսին. որչափ կարդան զողորմին ասեն ամէն:

Էջ 491 ա (Նոյն գրչէն) “յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զխաթուն խանաղէն եւ զհայրն զկիրակոսն եւ զմայրն զմարգարիտն եւ զմիրզէն... եւ զմեծ պապն իւր զարղութն .:. լի բերանով եւ բոլոր սրտիւ ած ողորմի ասացէք իւրեանց հոգոյն որ զ(6)զաշ ետուր ու զգիրքս ի գերութենէ ազատեց. ած զիւր հոգին ազատէ ի դառն դժոխոց. ամէն:„

Էջ 492 ա. ած ողորմի ասացէք խանին եւ իւր ծնօղացն եւ իւր կողակցին պետրոսին փշին որ մասնակից եղեւ այս գրոցս եւ ետուր ազատել ի ձեռաց անաւրինաց.

Էջ 492 բ. ած ողորմի խոնդաղին ա խալիջեայ (= գործ) երեւ ժամու:„

Չենք յիշեր մանրամասն մնացեալ բազմաթիւ յիշատակութիւնները՝ որոնց մէջ միայն ստացողը կը յիշուի. ինչպէս 450 ա “որով ողորմի ըստացողի գրոցս մեղաւպարտ օհանիսին եւ ծնաւղաց նր ամէն„. կամ 406 բ “եւս առաւել զյոհանէս վրդպն եւ զծնաւղս իւր. ամէն:„ Ասոնց մօտաւորապէս նման ձեւերով 241 բ. 245 բ. 271 բ. 292 ա. 295 ա. 304 բ. 310 բ. 318 ա. 325 ա. 329 ա. 333 ա. 339 բ. 340 ա. 346 ա. 355 ա. 359 ա. 361 ա. 362 բ. 363 բ. 371 բ. 385 ա. 388 ա. 390 ա. 392 ա. 408 ա. 412 բ. 417 ա. 424 բ. 428 բ. 434 ա. 438 ա. 477 ա. 489 ա.:

Գլխաւոր յիշատակարան (էջ 489 բ). Ած ողորմի յոհանիսին. զգիրքս գրել տվել վարդապետին. քս հանգչի յիւր հոգին, եւ ողորմի իւր ծնաւղին. եւ որ յիշէ զնայ ի բարին, իւր գիր մեղացն ջնջեսցին. Ով պատուական նր քահանայ թէ վարդապետ ես կամ աբեղայ կաթողիկոս կամ մահրասայ որք հանդիպիք առ ի սմայ թէ քարոզս քեզ պիտենայ. եւ կարդալոյ սիրտ քո ցանկայ կանչնեայ, առեանն եւ քարոզեայ եւ զքո մեղաց աղտն լուայ: Եղբայր լաւ զքանս ի սմայ եւ զքարոզս կատարեայ, քարոզս գանձ է հատ չկայ անմահութե աղբիւր է սայ զգաստ կացիր եւ քարոզեայ ած զքո մեղքն ջնջեայ. եւ զյոհանէս ծառայս յիշեայ. եւ զըստացողս քարոզիս եւ զյոհանէսս ծարեցիս սաւ—ս քս իւր ողորմեայ եւ զամենիս մեղքն ոչ յիշեայ ամն. արարիչն ած իւր մեղաց թողութի շնորհեայ ամէն:„

## 5.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐ. ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

(1679-էն. առաջ:)

*ԹՈՒՂԹՔ 616, առանց հաշուելու սկիզբի մէկ եւ վերջի երկու թուղթ մագաղաթները. (Նշանակուած է թղ. 619, բայց մոռցուած են սկիզբէն երկու պարապ թուղթ: 233, 374, 588 եւ 599. կրկին են նշանակուած 112, 130, 236, 321, 405, 415, 458, 471, 527): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25×20×9 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, մաքուր եւ խնամոտ ուշադրութեամբ: — ԳԻՐ՝ բոլորգիր. տող՝ 30. Թանաք՝ սեւ. սկզբնատողերը եւ սկզբնատառերը կարմիր զարդարուն: — ՆԻՒԹ՝ մաքուր թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ լաւ: ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ սկիզբէն երկու թուղթ, էջ 11 ա–բ, 617 բ–619 բ, նոյնպէս եւ պահպանակները: Լուսանցազարդեր կան գլուխներուն սկիզբը եւ մէկ խորան՝ միջակ արուեստով: — ԳՐԻՉ՝ Մարկոս դպիր եւ Գրիգոր. ստացող՝ Միքայէլ վարդապետ. տեղ եւ թուական չեն յիշուած:*

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. (առաջին պարապ էջին վրայ օտար գրչէ) ծառայ այ սբ ղազար. Յի քսի ծառայ այ թվն ռճիը. ռճձթ յուլիս ամսոյ տասն:

306 բ. Որ ողորմի ստացողի գրոյս միքայէլ րաբունապետին: Ամէն:

312 բ. Յիշեցէք զստացող սորա զերջանիկ զքաջ րաբունապետն: ԶՏէր Մ––քայէլ վրդպն: Ո՞վ նր ընթերցողք. եւ զիս զանպիտան գրիչս մարկոս դպիրս:

429 բ. Մանաւանդ զստացող նր տառիս զքաջ րաբունապետն մեր զտր Միքայէլ վրդպն. եւ նմ փոք յատնս ամէն:

464 բ. Յիշեցէք 'ի քս զստացող տառիս զՄիքայէլ վրդպն եւ զգրիգոր փծուն գրիչս յիշեցէք ի քս:

478 ա. Ստորին լուսանցքին վրայ կնիք մը կայ “պետրոս եպիսկոպոս„ մակագրութեամբ:

Վերջին մագաղաթեայ պահպանակին վրայ օտար գրչէ “չըթաղքին մօտն տնկիր ուռի, յետոյ ուռին ծակիր չըթաղքին ծակին միջէն անցու թող Է տարի կենայ յետ. Է. տարոյն. ուռւոյն գլուխն կտրեա եւ չթաղքին տակն. ապա տա լաւ պտուղ:„

Գլխաւոր յիշատակարանին տեղը բաց թողուած է:

## 6.

## Ն. ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ

?

*ԹՈՒՂԹՔ 183, էջ 364 (կրկին նշանակուած են 102 եւ 103): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 27×20×2,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւն՝ իւրաքանչիւրը 22×6,5 սմ. — ԳԻՐ՝ նօտր, մօտ շղագրին. տող՝ 33. Թանաք՝ սեւ: — ՆԻՒԹ՝ Թուղթ: — ԿԱԶՄ՝ նոր կաշեկազմ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — Դատարկ կամ պակաս Թուղթ, լուսանցազարդ եւ կարմրատողեր չկան: ԳՐԻՉ եւն անծանօԹ:*

**ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ** *եւն չկայ. միայն ամէնէն վերջը, էջ 364՝ երկրորդ սոտացողէ մը գրուած է. "պատարագի (կէս տող բաց) Եղեւ սոացեալ զսա 'ի հալալ արդեանց իւրոց պղ̃ս (= պօղոս) եւ եԹէ քհ̃նյն, եղբօր որդի տան Ջ.քրէյ Ազգաւէր ...ի (այսպէս) մեծի պօլսոյ՝ կզղվնցւոյ ի ռմխԹ. ԵԹէ ոք զսա ընԹերցցի եւ 'ի բանիցն շահեսցի՝ յիշեսցէ զվերոգրեալ քհ̃նյն 'ի միոյ հայր մերիւ եւ ինքն յիշեալ լիցի ի քն̃է յն̃է մերմէ ամէն.„ Աւելի դուրս հատարակ գրչափորձ մ'անգամ չկայ:*

## 7.

## ԺԱՄԱԳԻՐՔ, ՍԱՂՄՈՍ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

(1656-էն առաջ.)

*ԹՈՒՂԹՔ 225, նշանակուած է 224, որովհետեւ 207 երկու անգամ է դրուած: Էջք 450: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 24×19,5×5,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 18×6 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր, տօնացոյցի մասն աւելի մանր. Թանաք՝ սեւ. տող 24: — ՆԻՒԹ՝ Թուղթ, որուն իւրաքանչիւր Թերթը կազմուած է իրարու փակցուած կրկին Թերթերէ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լիչ մը վնասուած. միջին մասերէն տեղ տեղ ցեցակեր, փտած եւ պատառատուն: — Դատարկ Թուղթ 1 ա, 85 բ–87 բ, 224 ա–բ. դատարկ չենք կրնար հաշուել միւս բազմաԹիւ պարապ Թերթերը՝ որոնք առաջ եկած են իրարու փակցուած Թերթերուն բացուելէն: — Լուսանցազարդները, էջ 4 ա եւ 88 ա դրուած խորաններ յաջող են. սկզբնատողերը կարմիրով: — Գրիչ՝ Առաքել? եւ ՎրԹանէս: Թուական՝ 1656-էն առաջ:*

**Մատեանս կը պարունակէ երեք տարբեր գրքեր. 1—87 բ Ժամագիրք. 88 ա—197 բ Սաղմոս. եւ 198 ա—223 բ Տօնացոյց.**

**Առաջին երկուքը կրնան ըլլալ նոյն գրչէն, որ է Առաքել երէց, իսկ երրորդին գրիչն է ՎրԹանէս:**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ.** *Ժամագրքին մէջ, էջ 66 բ. "Արդ գրեցաւ տետրս այս եւ նորոգեցաւ գիրս այս. Թվին ռ. ճ. խ. եւ վեց (= 1697). ձեռամբ մեղաւոր առքլ երիցէ. որք հանդիպիք Յշեք. եւ դուք յիշեալ լիջիք 'ի քն̃է ա̃յ„:*

*Էջ 85 ա, տարբեր գրչէ. "Որ ողորմի ըստացողի. ն̃ք գրոյս. խանդվէլուն. եւ իւր կողակցին. մարինոսին. եւ իւր որդոցն խաչիկին. ենովքին. ադամին. աբելին եւ իւր դստերացն շիրազին. խէրին. եւ մօրն իւր կուլդաստին. եւ յարեան մերձաւորացն. ողորմի սոսացէք. եւ ա̃ծ ձեզ ողորմի իւր միւսանգամ գալստեանն. ամէն. Թվ. ռ ճէ. (= 1656) առայ ն̃ք Ժամագիրքս. եւ տուայ վախմ. ն̃ք ամենափրկչին. Եւ ով ոք հանել ջանայ ն̃ք եկղ̃ցյ. նզովեալ եղիցի. ն̃ք առաքելոց. եւ ն̃ք մարգարէից ամէն.„*

*Սաղմոսին մէջ ոչ մի յիշատակագրուԹիւն:*

*Տօնացոյցէն, էջ 208 ա բուն գրչէն "Եւ զիս մղւր վրԹանէս երեցս Յիշեայ 'ի ն̃ք յք̃ւէն.„*

*Էջ 223 բ, օտար գրչէ. "Ա̃ծ ողորմի միքայէլին եւ իւր ծնողացն շիրազին եւ որդոյն նահապետին որ նորոքեցաւ յայս յատենիս իւր հալալ ընչիցն որ եստու ն̃ք ամենափրկիչ եկղ̃յն Թվ ռճխա (= 1692) ա̃ծ ողրմի իւր հանգուցլ որդոյն խաչիկին„:*

*Աւոր տակ ուրիշ գրչէ. "Ես տր̃ վրդանէս եկի ադարատ Թվ ռճխդ (1695).„*

*ԵԹէ երկրորդ յիշատակագրուԹեան Թուականը (1856) ստոյգ է, պէտք է կարծել Թէ Առաքել երէցը երրորդ նորոգող մ'է միայն՝ 1697 Թուին, որով ձեռագիրը աւելի շատ աւելի հին Թուէ է. Թերեւս եւ բուն գրիչը վրԹանէսն ըլլայ՝ որ գրեր է նաեւ Տօնացոյցը:*

*Գլխաւոր յիշատակարաններուն տեղը բաց է Թողուած էջ 85—87 եւ 224:*

## 8.

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ՍԻՄԷՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

**ՌՄԿԹ = 1820։**

*ԹՈՒՂԹՔ 165, էջ 330, չհաշուելով սկիզբէն եւ վերջէն երեք թերթ՝ իբր պահպանակ։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 33×21×2,5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, մաքուր գրչով։ ԳԻՐ՝ արդի նօտր. թանաք՝ սեւ. տող՝ 34։ ՆԻՒԹ՝ թուղթ։ — ԿԱԶՄ՝ նոր լաթակազմ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր. կազմը քիչ մը քրքրուած։ Դատարկ թուղթ առանց հաշուելու պահպանակները՝ էջ 330։ Լուսանցազարդեր չկան. գլուխներուն վերնագրերը պարզ կարմրատառ. առաջին տառերը թռչնագիր զարդարուն. էջ 1ա սիւնաւոր համար մը գրքին խորագրին համար, էջ 1բ Էջմիածնի տաճարի մեծադիր նկարը, էջ 2ա խորանազարդ մը՝ ըստ կարեւոյն յաջող։ Գրիչ՝ Գէորգ Գեղամեան. տեղ Ս. Էջմիածին. թուական 1820։*

Գրքին խորագիրն է՝ էջ 1ա. «Գիրք քարոզից յօրինեալ ի Սիմէօն սրբազան կաթողիկոսէ ամ Հայոց Երեւանցւոյ։ Եւ այժմ օրինակեցաւ աշխատասիրութեամբ ի Գէորգ Գեղամեան, խակամիտ Դպրէ Երեւանցւոյ Ներգեւեալ միաբանէ սրբ. Էջմիածնի ի վայելս անձին իւրոյ եւ ի վայելս եղբարց սիրելեաց եւ յատուկ իսկ բարեկամաց։ Ի Հայրապետութեան Տն Եփրեմայ գերերջանիկ սրբազնակատար կաթողիկոսի ամ Հայոց, եւ հեզահամբոյր հովուապետի ինքեան բանաւոր հօտից յանձնեցելոյ ի Տեառնէ։ Ցամի տն 1820, փետր. 20. եւ՚ի թուականիս Հայոց ՌՄԿԹ։ Ի լուսակառոյց եւ երկնահանգէտ մայր սբ Աթոռն Էջմիածին»։

## 9.

### ԱՍՏՈՒԱԾԱՄԱՆՄԱՆՈՒԹԻՒՆ ՊԵՏՐՈՍ ՎՐԴ. ՓԵՐԹՈՒՄԵԱՆ

**ՌՄՀԳ = 1824։**

*ԹՈՒՂԹՔ՝ 76, նշանակուած է միայն էջ 1–137, ուր 135 երկու անգամ։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 27×19.5×1,5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, կանոնաւոր։ – ԳԻՐ՝ նօտր, թանաք՝ սեւ, տող՝ 31։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ ԿԱԶՄ՝ նոր կաշեկազմ; – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր։ – Դատարկ թուղթ սկիզբէն 5 էջ, վերջէն երեք թուղթ, մէջէն էջ 93, 94։ – Զարդեր չունի. ընդ ամէնը երկու թռչնագիր. վերնագրերը միայն կարմիր։ ԳՐԻՉ՝ Սարգիս Պուտաղեան։ ԹՈՒԱԿԱՆ՝ ՌՄՀԳ յուլիս 1։*

Առաջին էջին վրայ գրուած է խորագիրը. «Գիրք որ կոչի Աստուածամանմանութիւն։ Արարեալ Տռն Պետրոսի Վարդապետի Նախիջեւանցւոյ Աղամալեան՝ որ կոչի փերթումեան. էր սա բնիկ միաբան սրբոյ Էջմիածնի՝ Մեծի գահին Հայկազեան։ Որ եւ շարագրեալ եւ ի լոյս ածեալ ի փառս Այ, եւ ի յօգուտ լուսաւորութեան մանկանց սբյ եկեղեցւոյ. եւ մանաւանդ ուսումնասէր բաբունեացն Քարոզչաց։ Ի Հայրապետութեան Տեառն Սիմէօնի Սրբազան եւ գիտնական կաթուղիկոսին Ամ. Հայոց։ Եւ ի Պատրիարգութեան Սբյ Երուսաղեմի եւ Կոստանդնուպօլսոյ, Տռն Յովակիմայ եւ Տռն Զաքարիա՝ ճգնակիր եւ Ազգասէր Սրբոյն Արքեպսաց։ Ցամի կենարարին մերոյ 1773, եւ մերումս թուականի ՌՄԻԳ։ Արդէն իսկ օրինակեցաւ մեծաւ զգուշութեամբ (ակնածութեամբ վարժչին իմոյ Մովսիսի բազմաշխատի կարնեցւոյ), ձեռամբ նուաստ եւ նորակիրթ Սարգսիս Պուտաղեան։ Ի ՌՄՀԳ թուոյս, եւ յուլիսի ա{ին}։ Ի վարժարանի յեկեղեցւոյ Պանդոկին Հաստատելոյ։ Հրամանաւ յիշեալ վարժչիս։

## 10.

### ԱՆՏԱՌ ՆՈՐԱԳՈՅՆ ՄՏԱԾՄԱՆՑ ԵՒ ԿՏԱԿ ՉԱՐՉԱՐԱՆԱՑ

**1817 եւ 1842։**

*ԹՈՒՂԹՔ՝ 88, էջ 176։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 32×22×2 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 29×8 սմ.։ – ԳԻՐ՝ նօտր, թանաք սեւ, տող 41, տեղ տեղ մինչեւ 63։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեայ առանց տախտակի։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական լաւ։ – Զարդեր եւ կարմրատողեր չկան։ – Գրիչ՝ Իսրայէլ եպս. Կ.Պօլսեցի եւ տիրացու Մեսրոբ. թուական՝ 1817 եւ 1842. տեղ՝ Ս. Էջմիածին։*

Առաջին էջին վրայ կը կարդանք. "Գիրք կոչեցեալ սէր Ա. որ ասի Անտառ նորագոյն մատամանց, հիմնեալ ի հեղինակութենէ Սբ. գրոց. ի սրց հարց եւ յայլոց վրդպտց եկեղեցւոյ սբյ: Ցարմարացուցանելի ամեց յուր աւուրցն կիւրակէից ի մէջ տարւոյն եւ հասարակ տօնից: Ի յարգելի Տն Աղէքսանդր Քալամաթօ կոչեցեալ մեսինացւոյէ ընտիր քարոզէ: Թարգմանեալ յիտալական լեզուէ ի հայկական բարբառ ի Ղուկաս Վրդպտէ խարբերդցւոյ: Ցամի փրկչին մերոյ Ցսի 1741. ըստ խնդրոյ Արհի եւ պանծալի եպսին Տն Տն Ցոհաննու պատրիարգին Կոստանդնուպոլսոյ. ի Կոստանդնուպոլիս քաղաքի: Վերստին օրինակեալ մեծաւ գգուշութեամբ եւ աշխատութեամբ ձեռմբ Կոստանդնուպոլսեցի Խորայէլ խոնարհ եպսիս. ի հայրապետութեան լուսակառոյց գահոյն Սբյ Էջմիածնի հոգեւածիր ծնողին իմոյ Եփրեմի սրբազնակատար հայրապետին ամ Հայոց. Ցամի փրկութեան մերոյ 1817 եւ յամսեանն փտրվարի 20ին սկսեալ մեծաւ ջանիւ. ի լուսակառոյց Աթոռն Սբ Էջմիածին":

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Առաջին էջին գրչափորձերուն մէջ կը նկատենք "Յարութիւն պէհանօվ", "Մարտիրոս ծայրագոյն վրդպտ", "Թովմաս վրդպտ", "Նազար մուրատխանօվ", "յիշատակ է սէր այս գիրք քարոզի Խորայէլ Արքեպնի, որ ետ յիշատակ Թովմաս վրդպտի, ի վանս Նոյն բարեթուղիմէոսի, 1835 ամի եւ ի Թ–ին փրկչի", "Ցիշատակ է սէր այս գիրքըս անժան տէր ըստփոսի յան 1843 ն:"

Էջ 9բ, 15բ, 51բ լուսանցքներու մէջ կնիք մը "Ք. Ծ. Թովմաս վրդպտ. 1831" մակագրութեամբ:

Էջ 75ա. "Մինչեւ ցայսվայր գրելս իմում, հրաման եղեւ ի հոգեւածիր ծնողէն իմմէ, լինել ի պաշտօնի Առաջնորդութեան, ի վերայ Նախկին լուսաւորչին մերոյ՝ Ներքն Առաքելոյն բրթուղմէի ի հրաշալի վանիցն, եւ բոլոր Թէմի ու վիճակի նորին. որոյ հնազանդեալ, առժամայն ի նոյն պաշտօնի զբաղանաց հետեւելով, մնաց այս գործ անկատար: Ուստի ի նոյն ամի 1817 եւ յունիսի 15ին, ելաք ի Նբ Աթոռէն եւ եկաք ի պաշտօն Առաջնորդութեան մերոյ՝ յԱծապարգեւ վիճակս մեր ի Սլմստ. որ եւ Ամենակարող Ածն մեր մշակ թարց ամոթոյ արասցէ":

Սէր Աստուծոյ լէ. գլխուն սկիզբը կիսկատար թողլով, էջ 75բ կը սկսի "կտակ չարչարանաց եւ խաչելութեան Տեառն մերոյ եւ փրկչին Ցի Քի, շարադրեցեալ ի Ցակոբ պատրիարքէ Ածաբան վրդպտէ": Այս կտակը կը բռնէ էջ 75բ—87բ:

Էջ 75բ. "Իսահակեան տիրացու Առքել":

Էջ 86բ. "Ես վարդան տիրացու կաղապաթցի քաշալ սաւքիս յավգիվանցի որ կոչի ժամյարօվ. թիվին ամըը":

Էջ 87բ. "Ծանօթութիւն ինչ առ բարեսէր յանձինս: Արդ գիտելի զի 1842 ամին եւ յունուարի իբր 9ին հանդիպեաց եղկելույս Թովմաս շնորհունակ վրդպտն միաբան սբզն առաքելոյն բարդուղիմէոսի եւ Նստեալ առ ընթեր միմեանս առ ի վայելել սէրն այն որ ի վաղուց իսկ հետէ ունէաք մեք առ իրեար. է անկեղծ սրտէ զոր միջոց իմն չէաք տեսել միմեանս: յետ վայելման սիրոյս այսմիկ ծածկին տեսչութեն տեսայ զայս սէր այն ի Նմա: Քանիցս համարձակեցայ խնդրել զայս մատեան ի Նմանէ բայց պատկառանք երեսացս արգել. Եւ զկնի ինչ աւուր սիրահարեցայ վայելման Նր մերժելով պատկառանս խնդրեցի. եւ Նա որ փոյթն է առ բարին շնորհեաց գիրքս հինգյս բայց աւանդեաց ինչ գրել զկտակն ի վերջ գրքոյս որ կայր տեղի գրելոյ եւ ես Նուաստս յանձն առի ի գրել սկսեալ ի 1842ին եւ յունուարի 17ին եւ աւարտեալ նոյն յունվրի 21ին շնորհիւն այս եւ օգնականութ սբյն բարդուղիմէոսի առ ի լինել անջինջ յիշատակ հոգոյ իմոյ եւ յիշատակ ծնողցս եւ յեղբարցս եւ համայն իմայնոցս եւ ի փառս ամենեբանեցելոյ կուսին մարիամու Ածածնին. եղեւ ի Նբ գեւղորդ եկեղեցին ի տեցւ մաքովքէ արզւմնեն հաւատավանցւոյ":

## 11.

## ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ Ս. ԿԻՒՐՂԻ

ՌՃԽ = 1691:

*ԹՈՒՂԹՔ՝ 274. առաջին գրիչը սկիզբէն չորս եւ վերջէն եօթը պարապ թերթերը թողլով թուագրած է թուղթերը ա–մկզ. նոր ցուցակագրողին դրած թուանշանները սխալաշատ են: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22×16×5 սմ.: ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 16×5, մաքուր եւ գեղեցիկ գրութեամբ: – ԳԻՐ՝ բոլորգիր, թանաք սեւ, տող 28: – ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ: ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ. կաշիին վրայ փորագրուած են Նուրբ զարդեր եւ հետեւեալ յիշատակութիւնը. "գրեցաւ եւ կազմեցաւ ձեռամբ ազարիէ թվն. Ռճխ": – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ արտաքինը եւ գրքին սկզբի մասերը շատ մաքուր. բայց միջին մասերը խոնաւութենէ այնպէս սեւցած ու փտած, որ ձեռքի պարզ շօշափում մը անմիջապէս կը փշրէ թղթերը: – Դատարկ թուղթ, սկիզբէն 5 թերթ, վերջէն 7 թերթ, եւս էջ 225 ա–բ եւ 263 բ.: – Լուսանցազարդեր կան գլուխներուն սկիզբը. վերնագիրները կարմիր, 4ա մէկ խորան՝ բաւական յաջող: — ԳՐԻՉ՝ Ազարիա դպիր. տեղ Նոր Ջուղայ թուական 1691:*

Մատեանս կը պարունակէ էջ 2 ա—բ ցանկ. էջ 4 ա — 224 բ Գիրք պարապմանց, որ այստեղ խէ գլխով կիսատ կը մնայ. մէկ թերթ բաց թողէ յետոյ կը շարունակուի էջ 226 ա՝ Սրբոյն Կիպրիանոսի եպկսի Ափրիկեցւոյ. ...յաղագս ողորմութեան ճառէն եւն մինչեւ 228 ա, ուր կը գրուի

11. (*անվերնագիր*) *փայտ կենաց բարեբանեալ երկրպագեալ* (*Հագներգութիւն*). *էջ* 313*բ*—318*ա*։

12. *Ողբ Եդեսիոյ. էջ* 318*բ*—347*ա*։

13. (*Ներսէսի առ Մխիթար բժիշկ*) *Միշտ էիդ անեղ բնութիւն. էջ* 347*ա*—348*բ*։

14. *Ներսէսի... յաղագս երկնի եւ զարդուց նորա. Ի մեղական գոլով բնութիւն. էջ* 348*բ*—352*բ*։

15. *Ներսէսի... բանս մաղթանաց առ որ հրեշտակն. Այլ պաղատիմք առ հոգեղէնդ. էջ* 352*բ*—355*ա*։

16. *Բան յիշատակի տաւիս գծողի. Ածեղէն հոգւոյն իմաստ. էջ* 355*ա*—356*ա*։

17. *Անդրադարձութիւն տաւից յիշատակիս. Քաղցրայգունիս այս բաղձանաւք. էջ* 356*ա*—*բ* (*կիսատ*)։

18. (*կիսատ*) *Ի քէն հայցեմ կողկողագած. ցոյց ուր հանգչիս... Գրեցաւ այս գիրք սաղմոնի իմով ձեռամբն գրիգորիսի... Որում շնորհացս այս ցանկայի. էջ* 357*ա*—363*բ*։

19. *Յովհաննիսի եզնկացւոյն. Յամենայնհրաշ գործս արարչին. էջ* 365*ա*—385*բ*։

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. *էջ* 109*ա*—110*բ լուսանցքի վրայ ագեղ տառերով՝ տեղն մը բացատրութիւնը*։ *էջ* 313*ա. Ես առաքել մեղաւք ի լի որ անարժան հարպետ կոչի վարդապետին քուրոջն որդի.*

*Գլխաւոր յիշատակարան. էջ* 127*ա*—*բ. փառք ամենայնի երրորդութեն յաւիտեանս ամէն. Կարողութբ տն սկսա. եւ ողորմութբ նորին կատարեցի. Ջթուխթ պատգամաց, Ի խնդրո ածասէր եւ հետաքրքիր ածային աւրինացս, պր աւշնի եղբաւր պր հեթմոյ, որ է տր կիւռիկոսոյ. եւ որդիք պր աւշնի եւ թոռունք աւագ պրի եւ ազն թագաւորին հայոց լեւոնի. ի վայելումն մարմնոյ եւ յիշատակ հոգւոյ իւրոյ եւ նախնեաց նորին.*

*Արդ որք կարդայք եւ աւգտիք ի սմա մեղաց թողութի խնդրեցէք իւր եւ իւրոցն։ Գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ եւ անպիտան սուտանուն քհ. կոստ. որ մականուն քուռաթ կոչի. ի թվ. Չլգ. ի մայրաքաղաքիս ատանւոյ. ընդ հովանեաւ նր ածածնիս. Մշակքդ քի. յիշեցէք զիս զեղկելի. յորժամ գայցէ տր հայրենի. տացէ ձեզ վարձս անհատնելի. եւ քի փառ յաւիտեանս ամէն*

(*Ասոր տակ նոտր գրով*) *Արդ գիրքս այս հոգելից որ ի նախնեաց հնոց սրբոց շարադրեալ վասն սրբոյ հայաստանեայցս սահմանադրութեն ստացա նուաստ խաչատուր վարդապետս վերատեսուչ Սրբազան Առաքելոյն բարդղմէի ի ռմի թուին։ յունիսի մէկ։*

*Էջ* 363*բ*—364*ա. Փառք հաւր եւ որդւո եւ նր հոգոյն. եւ այժմ եւ յաւիտեանս ամէն։ Գրեցաւ սա ձեռամբ անարժան քհ. կոստ. մականուն քուռաթ կոչի։*

*Ի վայելումն հոգեկիր եւ ուսումնասէր, եւ ածասէր եւ բար է պաշտ իշխանի աւշնի. որ է որդի իշխանին աւշնի. եւ թագաւորաղնի. որ է եղբայր հեթմի եւ տր կիւռիկոսի. ի վայելումն մարմնոյ եւ յիշատակ հոգւոյ եւ ծնողաց իւրոց, որ եւ փոխեալ ի քս։*

*Արդ որք ընթեռնոյք կամ աւրինակէք յիշեսջիք զբարեպաշտ իշխանն զաւշին. քանզի յոյժ փափաքանաւք ետ գրել զսայ. զի յոյժ սիրէր զընթերցումն գրոց եւ զի էր լցեալ սա ածային շնորհիւ։ Արդ գրեցաւ սա ի թվ հայոց. չլգ ի քաղաքիս ատանայ. ընդ հովանեաւ նր ածածնին. եւ որք յիշէք յիշեալ լիջիք ի քէ ած մերոյ որ է աւրհնեալ յաւիտեանս։*

*Էջ* 385*բ. Փառք ամենայնի երրորդութեն յաւիտեանս ամէն Աղաչեմ յիշել զաւշին իշխանն զյոյժ ածասէր եւ զուսումնասէր զորդին զպր աւշնին ըզտր կիւռիկոսու որ եւ սայ ետ շարագրել զսա ձեռամբ անարժան կոստ. մականուն քուռաթ կոչեցեալ Աղաչեմ չմեղադրել. զի ժամանակս ցաւագին եւ ի գրել սմա շատ հիւանդ եւ ունայն կեցա։*

*Մնացեալը կորսուած է։*

## 15.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՋԼԳ = 1484։

*ԹՈՒՂԹՔ 276: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25×18×7 սմ.: -- ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 19×5 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերը եւ վերնագրերը կարմիր. տող 22: — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բոլորովին փճացած. թերթերուն մեծ մասը փտած, խոնաւութենէն իրար կպած, փոշիացած. Կ'երեւայ թէ ինկած է կարմիր ներկի կարասի մէջ, որովհետեւ լուսանցքները բոլոր կարմիրով ներկուած են: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 1ա, 2ա, 3ա–բ. 4բ, 5ա, 6աբ, 7բ, 8ա, 9աբ, 10բ, 11ա, 14աբ, 89ա, 163ա: — Լուսանցազարդեր շատ կան եւ յաջող են. իսկ աւետարաններու սկիզբի մեծադիր նկարները եւ մեծ խորանները նուազ յաջող: — ԳՐԻՉ՝ Գրիգոր աբեղայ. ստացող՝ Յովանէս աբեղայ. թուական 1484:*

*Մատեանս է Աւետարան։*

*Էջ* 1—13*ա Եւսեբիոս Կարպիանոս, նախադրութիւն եւ ցանկ Մատթէի.* 15*ա* — 86*բ Մատթէոս.* 87*ա* — 88*բ Ցանկ եւ նախադրութիւն Մարկոսի.* 90*ա* — 136*բ Մարկոս.* 137*ա* — 140*ա Ցանկ եւ նախադրութիւն Ղուկասու.* 141*ա* — 215*բ Ղուկաս.* 215*բ* — 217*ա Ցանկ եւ նախադրութիւն Յովհաննու.* 218*ա* — 274*ա Յովհաննէս.* 274*ա*—*բ իրք կնոջն շնացելոյ.* 274*բ* — 276*բ գլխաւոր յիշատակարան։*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. *Էջ* 86*բ. Եւ զանպիտան գծողս զգրիգր եւ զյովաննէս ստացող նր աւետրնիս։*

136բ. Համբարձմանն կարգս զսա եւ զանարժան գծողս զգրիգորս յիշեա եւ ած զձեզ յիշէ։

217ա. Զերիցս երանեալ՝ եւ զարժանապատիւ, զորբասէր գյովանէս սրբակրաւն աբեղայ ստացաւղ նր աւետարանիս հանդերձ ծնաւղաւքն եւ ամենայն արեան մերձաւորաւք. եւ զիմ անարժանութիս գրիգորի գծողի սորա յիշեցէք ի քն։

Գլխաւոր՝ յիշատակարանը կը գտնուի շատ պատառատուն վիճակի մէջ. կը շտապենք հրատարակել զայն ամբողջովին որքան կայ, որովհետեւ շուտով պիտի ջնջուի անշուշտ (պակասները կէտադրուած են, Նօտրերը գուշակուիլ)։

Էջ 274բ։

Սիւն բ։

Փառք ա . . . իւրքն էին որ
էնն յէէն ծնեալ անժամա-
նակ որդւոյն եւ էակից եւ
փառակից նր հոգւոյն. երեք
անձնաւորութեն եւ միածո-
ւթեն հաւր եւ որդւոյ եւ
հոգւոյն սրբոյ այժմ եւ
յանբաւ յաւիտեանս ամէն։
Ածային եւ երկնային շնորհն՝
որ պարգեւէ ամենե-
ցուն բազմապատիկ պար-
գեւս՝ ըստ իւրաքանչիւր
աւգտի, եւ յաւժար կամաց
հաւատով խնդրողաց . . .
Նոյն ինքն ած բնաւ—իցս՝
որ ատն . . . . . . . .
եւ բարերարութ—ք որ եւ
զիս զանարժան

Էջ 275ա։

Սիւն ա։

. . . ուժանէ տրար խորում
ողորմութենս Նոյն ինքն զկա-
տարումն ըստ հաճոյիցն իւր
պահեսցէ։ Զի պարգեւելն
ածային է. Բայց բարիոք
վայելեալն ըստ յաջողելոյն
է՝ եւ ի՛կամս վայելողին։
Արդ՝ եղեւ զրաւ գրչութե
այսմ ածաշունչ նր աւե-
տարանիս, ՚ի թվկնութե
հայկազան տումարի, ՋԻԳ՝
ի դառն եւ ի դժնեա,
յանբարի եւ ի վշտաշատ
ժամանակի՝ յորում նեղ
եալ յանաւրինաց. եւ անի-
րաւ պահանջողաց ի երկնա-
հանդէս եւ Ֆծահաշակ եք
ուխտիս՝ վերի նոր

Սիւն բ։

. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
բ . . . . . . . . . .
աւժան . . . . . . . .
գւոյն . . . . . . . .
պետութեան[1] [Յովհաննի]
սի. ի յաթոռն եք Էջմածնի
վաղուցուպատ գր ու՝ այրա-
րոդեան նահանգի։ Ձեռամբ
ամենամեղ. փծուն եւ անար-
հեստ գրչի գրիգր անարժան
եւ ծոյլ աբեղայի՝ որ զա-
նունս միայն ունիմ կրաւնա-
ւորի։ Ի խնդրոյ եւ յար-
գեանց երիցս՝երանեալ։ երջա
նիկ եւ որբասէր. աբեղայի՝
յովանէս վերածոյնելոյ։ Առ
որ մե

Էջ 275բ։

Սիւն ա։

. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
. . . . . . . . եւ ընդ
. . . . . . . եւ ի բանն
. . . . . . . եցէք ձեզ
. . յերկինս. որ ոչ գող
. . . . . . . եւ ոչ ցեց
ապականէ . . . բարեմիտ այս
Յվնս քհ. ես գրել զնք
ածւտրնս։ ըստ այսմ յուսոյ
եւ պայմանի՝ ի հալալ ըն-
չից իւրոց՝ ըստացաւ եւ
ետ գրել ինչ ասացաւնիս ի
վայելս անձին իւրոյ՝ եւ յի-
շատակ հոգւոյ՝ ի մխարութի
եւ ՚իսփոփանս ցաւալից կե-
նաց եւ ի բժշկութի ախ-
տալից մտաց եւ խորհրդոց

Սիւն բ։

գոց . . . . . . . եա . .
եւ ի մահ եւ յետ մահու մա-
նակից լինելով նր աւտին
չացն եւ պաշտաւ անդարձ ճա-
նապարհին։ Վն որոյ աղա-
չեմ զամեն որք լուսաւո-
րիք սովաւ կարդալով եւ
կամ աւրինակելով։ յիշեցէք
ի նր յաղօթս ձեր՝ գյվնն
քհՅն խնդրելով ի տնէ
զթողութի մեղաց եւ անջինջ
յիշատակաւ գրելով զնա ի
գիր կենաց ամէն։
Նաեւ բարեպաշտ եւ ածա-
սէր ծնաւղաց նորին հաւրն
իւրոյ. կոստանդին եւ
մաւրն . . . . . . .
եւ եղբարցն . . . . . պ
իոնին եւ արէսն . . . .
եւ յ . . . ին։ եւ . . . .
. . . . . . . . . . .

Ցիշատակարանէն ետք կայ եւ թերթի մը փշրտանքները, որմէ կը հետեւցուի թէ աւետարանը երկրորդ անգամ նորոգուած է, թէ առուծախ մը կայ վկայութիւններով հանդերձ, բայց կարդալ զանոնք այլեւս ուշ է։

[1] Նոյն ժամանակ կաթուղիկոս էին. Յովհաննէս Է. Աջակիր (1474–1484). Սարգիս Գ. (1484–1507։

# 16.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԲ. ՄԱՐԳԱՐԷԻՑ

### ՌՄԻԴ = 1775:

*ԹՈՒՂԹՔ 327: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×16×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ, միասիւն, սխալաշատ, բայց շատ պարզ: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը եւ սկզբնատողերը վարդագոյն. տող՝ 26—27: — ՆԻՒԹ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 86ա, 101ա, 141ա, 187ա: — Լուսանցազարդեր կան, բայց բոլորն ալ արդէն արուեստով եւ միջակ յաջողութեամբ: Ունի եւ 14 մեծադիր պատկերներ. էջ 2բ Ս. Ներսէս Լամբրոնացի, իւրաքանչիւր մարգարէութեան սկիզբը մարգարէի պատկերը, ինչպէս եւ Յայտնութեան սկիզբը Ս. Յովհաննու պատկերը: — ԳՐԻՉ՝ Գէորգ Նաղաշ վարդապետ. տեղ Վարագայ վանք. Թուական 1775:*

**Մատեանս կը պարունակէ.**

**Էջ** 1ա — 11բ. **գուշակութիւն հիասնեաց (իմա գովաբանութիւն հայաստանեայց) ուր կը մեկնուի թէ Դրախտը Հայաստանի մէջ է, հայերէնը առաջին լեզուն է եւն եւն։** 13ա — 40բ **Ովսէ.** 40բ — 49բ **Յովէլ.** 49բ — 68ա **Ամովս.** 69ա — 71բ **Աբդիու.** 72ա — 85բ **Յովնան.** 85բ — 100բ **Միքիէ.** 102ա — 109բ **Նաւում.** 110ա — 122բ **Ամբակում.** 123ա — 132ա **Սոփոնիա.** 132ա — 140ա **Անգէ.** 140բ — 186բ **Զաքարիա.** 188ա — 198ա **Մաղաքիա։**

**Էջ** 198բ — 299բ **Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու.**

**Էջ** 300ա — 301բ **գլխաւոր յիշատակարան.**

**Էջ** 302ա — 325բ **Ոմանք անծանօթ բանք գտեալ զայլ եւ այլ գիրս եւ ի վր այբուբէնից տաչից շարադրեցի եւ սատ եդի (տեսակ մը համանուագիտական բառարան)։** 326ա — բ **ծանիր սիրել բարեմիտ ընթերցող զի տեսական իմաստութիւն բաժանի երիս . . .։** 327ա — բ **որ իբր պահպանակ է խրատներ, Թուաբանութիւն եւ այլ գիտելիք։**

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. 11բ. **Եղեւ ի խնդրոյ աւետիս վրդպետին եւ սրապիոնին։**

41ա. **Եւ զիս Թարմատարս անարժար գծողս սորին մեղանամեղ գէորգ անիմաստ եւ չնչէ սեվարս յիշեցէք հնդերձ ննջեցելովք իմովք ամէն։**

49բ. **Եւ զիս Թարմատարս գծողս յիշեցէք . . .։**

50ա. **Եւ զիս անարժար գրիչս անիմաստ աբեղաս ի գիտութենէ խմարս ի հանճարս օտարս ի գրչածս տխմարս ի կրօնս չվարս ի գործս մոլարս ի բանս չիթարս ի բարս չվարս ի աղօթս տկարս ի չարիս օժարս ի քունս երկարս եւ ի բոլորս անկատարս. յիշեցէք հայր մեղաւիւ հանդերձ ամէն։**

68ա. **Եւ զիս գծողս տարիս (= տառիս) աւարա մեղանմեղս գէորգս էշեցէք եւ ողորմի բարբառեցէք յորժամ օգտիք ի սմանէ ։**

85բ. **Եւ զիս գծողս տաչիս իշեցէք հյր մեղայլ։**

100բ. **Եւ զիս չնչին եւ Թարմատար գէորգս գծող սորին յիշեցէք հնդերձ ննջեցելովք իմովք խոր ամէն։**

109բ. **Եւ գծողս իշէոյ ով բարեմիտ ընթերցող հայր մեղայէ.**

123ա. **Եւ զգծողս գէորգս անիմաստս յիշեցէք ամէն։**

140ա. **Եւ զիս Թարմատարս գէորգ վարդապետս եւ գծողս սբ տաչիս յիշեցէք հնդերց ննջեցելովք իմով ամէն։**

198ա. **Ամենազօր կարողութեամբ հօր երկնաւորի եւ շնորհօք քի այն եւ նպաստութեամբ հոգոյն սբյ աւարտեցաւ գիրքս մեկնութե եւ լծմանց երկոտասան մարգարէից շարադրեցեալ սբյն ներսեսի լամբրոնացոյն ի անարժան ձեռօք ապիկար նաղաշ գէորգ անիմաստ վարդապետին ի դուռն վարագա վանից ամէն։**

199ա. **(ամբողջ 2 էջ Յայտնութեան գրքին օգուտները տալէ ետք Յառաջաբանի մը մէջ, որ իր հեղինակութիւնը կը Թուի, կ'աւելցնէ) Վսյ ես ապիկարս չնչէ գէորգս խաչնեցի ի հուպ ժամն մարգարէից կարգս զի մի ուստ կարօտ մնասցէ սորին գեղեցիկ գեղուն եւ քաղցրաբան մարգարէութեանց նորոյս եւ զիս Թարմատարս գէորգս յիշեսջէք։**

Գլխաւոր յիշատակարան. **Էջ** 300ա — 301բ. **յիշատակարան գրքոս. Գոյութին պատիւ եւ փառք էութեն ինքնագոյի տէրութե առակայի Երրեակնի անձնաւորութե եւ միականի աստուածութե հօր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ ծնողի եւ ծնեցելոյ եւ բխողի ի նոցա էութենէ բղխումն ի հօրէ միայնոյ եւ ոչումն անճառաբար ի որդուն այլ համապատուաց համագոյոց եւ համազօրաց ի հանուրց արարածոց եւ բնաւից ստեղծուածոց իմանալեաց եւ զգալեաց ի նիւթականաց տարրեչինաց եւ աննիւթից հրաբունից սէրից յանցելով ամանակաւ եւ ներկայս կենցաղիւ եւ ապառնիաւ յաւիտենիւ զի ի ժամանակս յետինս որ է դարն եւ անբարի որ տատանեալ ծփիմք ամ ներհակայ արկածիւք ի ներքուստ եւ արտաքուստ որ ափշութեն գործէ տէսականին Սակոն ի սիրոյ եւ գեղեցիկ գեղոյ բանից սորա շարժեալ ի հնութեան ժամանակիս ոչինչ համարելով զաշխատութեն զոր աչաջի կար մանաւանդ լոս աչաց պակասեալ եւ ոժեղութեն անձանցս նուաղեալ ի գործ արկի գծագրել աչաջ քան սայ մեկնութեն ի մեծամեծ աստուածաբան մարգարէից պատգամք այլ Եսայայ եւ Եզեկիելի եւ. շնորհօք սբ հոգոյն աւարտեցի ի Թւականութե հաիկայն (= հայկեան) սէրից ամիդ ի մուտ ապրիլին Ապա ետ այնորիկ մտեալ ի մայսոյ ամսոյն սկիզբն արի գծագրել պատգամք երկոտասան մարգարէից պարզաբանեցեալ սբն ներսէսի տարսոյն կիլիկոյ արքեպիսկոպոսին եւ եւս Սա աւարտեցեալ օգնականութեամբ ամենակարողին այլ որ ապաւած քարինքս ի պողաբերութին ածէ որ Եւ յետ կարողութեն մեղապարտ մատանցս ի աւարտ հասուցանել որ եւ արկի ի գանձանակս**

ձոյ իբրեւ զլուման այրուն ։ Եւ դուք սիրողք գեղեցիկ եւ քաղցրիկ բանին սորին ցանկացողք եւ մտադիւրութեամբ ընթերցողք թէ օգտիցէս սակաւիկ կաթիլ մեղրածորան վարդապետութեան գրքուս հեղինակին Շնորհակալութեանն հոգոյն շնորհաց եղիցի եւ կաթ աղօթից ձերոց ցողեսցէ ինձ ի տապանս իմ գերեզմանին եւ եղկելի մատանցս յայս վաստակս ձեզ օգուտ եղիցի եւ քնի տն մերոյ փառք ամէն Արդ գծագրեցաւ գեղեցիկ մատեանս ի հայրապետութեան հանուրց հեկաղեանց տոմս տ՟ն Սիմէոնի սրբազնակատար կաթողիկոսին որ եւ տ՟ր երկար կենօք եւ խաղաղական ամօք անդրդուելի պահեսցէ ի փառս տառապեալ ազգին հայոց եւ ի դիտապետութեան տ՟ր ուխտիս տն բաղդասար արքեպիսկոպոսին եւ առաջնորդ եւ նուիրակ ամենայն քաղաքին վանայ եւ ի թագաւորութեան ի բագրատունեաց սեռից հերակլ արքայն վրաց որ ամ Նստէր ի քաղաք փայտակարան այսինքն Թիփլիզ ի թուականութեանս մեր ռմիդ ի մուտ հոկտեմբերի ամսոյն եղեալ ձեռամբ անարժան անարմար գծագրողիս գէորք նազաշ վարդապետիս որ եմ ի Նհանգէն տփխիսոյ եւ ի գիւղաքաղաքէն գորոյ այսինքն Սեփիաբաթ կոչեցելոյն Աստանօր ժամ աղերսիւ Ո՞վ բարեմիտ ընթերցողդ անմեղադրելի առնել մեր խակութեանս եւ անարմարագրութեանս զի ես ինձնէն վկայեմ աղալանաց ուլոռանց տառից եւ վանկից վ՟յ մաղթեմ յիշել ի ամամբդ աղօթս ձեր հոգւոյ ծնող իմ հանգուցեալ խ՟ր երեմիայ. եփիսկոպոս Ջորդ նր ուխտին դիզափայտ կոչեցելոյն Երկրի Գիզակոյ իսկ մարմնաւոր ծնողք իմ որք են ծառայակիցք ձեր ալթանդիլ եւ միրանդուխ զորաբ եւ թինաթին գասպար եւ դարեջան ղիաթանդար եւ խաթուն գաբրիէլ եւ մարէխ մերհաբ եւ դաւիթ իսկ քորք իմ թինաթին եւ խանում բուտդամ եւ անաստասիայ եւ այլ մերձաւորք իմ կենդանիք եւ հանգուցեալք ի քն եւ զձեզ մեղ յիշողաց վարձս բարիս հատուսցէ քն տ՟ն մեր ամէն եւ եղեւ գծագրել սորին ի դուռն մեծի հռչակաւոր վարագայ վանից ի խնդրոյ աւետիս վարդապետին եւ տիրացու սրապիոնին որք են միաբանք սորին ծառա եւ ծառայակից ձեր գէորգ աբեղայ (վերջինս իբր ստորագրութիւն դրուած գլխաբաց աղօթող վարդապետի մը նկարին տակ)։

Էջ 300բ. (իբր ծանօթութիւն կ'ըսուի) ծանիր զի ոչ է լիապէս գրեալ մեկնիչ այլ լծոմն արտհնեալ միոն։

## 17.

## ԳԱՒԱԶԱՆԱԳԻՐՔ ՖՐԱ ՄԱՐԴԻՆՈՍԻ

ՌՃԾ = 1701։

*ԹՈՒՂԹ.Ք 211, առանց հաշուելու սկիզբի 3 և վերջի 1 պարապ թերթերը: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 21×15×4 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ միասիւն և բաւական կանոնաւոր: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սև, վերնագրերը, սկզբնատառերն ու սկզբնատողերը կարմիր կամ վարդագոյն. տող 31: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ լաւ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 3 սկիզբէն և 1 վերջէն: — Լուսանցազարդեր չկան. առանց տեղ լուսանցքներուն վրայ կան վարդագոյն ձեռանիշեր: — ԳՐԻՉ՝ Սարգիս եպիսկոպոս. տեղ Պոլիս. Թուական 1701:*

Մատեանս է "Սկսանի գիրքս պատմութեանց որ կոչի ըստ Հայոց Գէրք ժողովոց, որ պատմէ զծայրագոյն քհնյպտցն. նա եւս եւ զկայսերացն Հռոմայ. զկարգ ժամանակագրութեան նոցին... զոր շարագրեալ է ... Փրատր Մարդինուն ի կարգէ քարոզողացն։ Եւ թարգմանեցի զսոյն ի լատին գրոյ 'ի հայումս. Ես տրուպս Ներսէս պալիաննենց կոչեցեալ...»։

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ. Էջ 211բ. Փառք փրկչին որ ետ տկարիս կարողութի հասանել յաւարտ գ՟քիս այս որ կոչի գաւազանագիրք քհնյպտից եւ կայսերաց. թվին հայոց. ռճծ. սեպտեմբերի Ե. ի թգ՟րանիստ քղքս ստամպօլ 'ի պէկօղլի կչւ թաղին. Ես սարգիս Եպոս անուամբ միայն եւ գծվ դատարկս որ կոչիմ եւ եմ սահէթճի. գծագրեցի ձեռամբ իմով որ ճզմ ժմկց փափաքէի այսմ գրքի. 'ի վայելումն անձին իմոյ. եւ յետոյ ո՟մ որ հանդիպի յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր. եւ դուք յիշեալ լիջիք ի քէ տնէ մերմէ։ Արդ եղեւ գծագրումն սորա 'ի դառն եւ 'ի դժնեա ժմկիս, որ ճզմք յարեան 'ի վր ճշմարտասի...

Յիշատակարանը՝ որ պիտի չարունակուէր յաջորդ պարապ երեսին վրայ, հոս կ'ընդհատուի. կիսատ է նոյնպէս էջ 211ա Պօնիֆացիոս Թ.-ի պատմութիւնը։

## 18.

## ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ

(1639էն առաջ)։

*ԹՈՒՂԹ.Ք 337, առանց հաշուելու սկիզբէն 3 և վերջէն 4 թերթ դատարկ թղթերը: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×16×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ պարզ և մաքուր. երկսիւն, իւրաքանչիւրը 15×4.5 սմ.: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սև, հազիւ ուրեք կարմիր վերնագրերով: Տող՝ 21: — ՆԻՒԹ՝ ընտիր, սպիտակ, ողորկ և շատ փայլուն թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ բացի 7 թերթ*

պահպանակներէն, էջ 336 բ եւ 337 բ: — Լուսանցազարդ եւն գոյութիւն չունին: — ԳՐԻՉ եւն անծանօթ: Էջ 200 բ յիշուած է ռձը = 1639 թուականը, ուստի գիրքն աւելի հին է:

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ.** (պահպանակներուն առաջին թերթին վրայ) 1. ես խոյեցի խալիֆայ դաւիթս վանքին ժամասացս։ 2. միխայէլ տարոյ պատմուէն. ես նը յէմ նէրկ պետրոս տրուպ աբեղայ ընթերցայ ի քոյն պղծիդ. ի ամս թուին. եւ ամենայն դեմքըի 2 ին ալարտ: Հայր մեր որ: 3. ծառայ եմ խաչին ծնվանես վարդապետին գաստուր ծաչա... (անընթեռնլի)։

Էջ 200 բ. Վն այն տաճկէք իմամ սամարայ կոչէն զնա որ է ի մէջ հին բաբիլոնի եւ բարձր գումպեթիւ է շինած սպիտակ իբրեւ թէ նոր է զուգած։ տեսա թվին ռձը: արզրումեցի աւետիքս:

Էջ 337 ա. Ես խոյեցի ղասումս տուի այս պատմագիրքս յիշատակ ինձ եւ իմ ծնողացն եւ իմ տղին հօրս իմոյ յովանիսին եւ մօրս իմոյ շահպակուն եւ որդոյն իմոյ մելքոնին ես ղասումս իմ յօժարութեն եսու պատմագիրս յիշատակ, ի դուռն թադէոսի առաքելոյն մի ոք իշխեսցէ հանել ի դրանէ առաքելոյն թադէոսի եւս մէկ առակաց գիրք տուի յիշատակ սահակ վրդպին տանէ վանքն ած ողորմի իւր ննջեցելոց հոգոյն ամէն հայր մեր յերկինս։

Օտար գրիչ մը լուսանցքներուն վրայ գրած է միշտ զանազան դիտողութիւններ պատմուած դէպքերուն մասին: Առաջին գրչէն եւ ոչ մի տող յիշատակութիւն:

## 19.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

?

ԹՈՒՂԹՔ ՃԺ2. պակաս են 109—110, աւելի է 10 bis, ուստի նշանակուած 113 թերթ: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×16×1 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ միասիւն, խառնակ եւ կեղտոտ: — ԳԻՐ՝ նոր նօտրագիր, թանաք՝ սեւ, տող 28: — ՆԻՒԹ՝ հասարակ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշի առանց տախտակի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ թափթփած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, զարդեր եւ կարմրատողեր չկան: — ԳՐԻՉ եւն անծանօթ յիշատակարան չգտնուելուն պատճառաւ: Յայտնի կ'երեւայ որ շատ նոր ձեռագիր է:

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ.** Էջ 12 ա. գերուին թիֆլիզու քիւքին եղեւ 'ի թւին ամոդ. ին։

Էջ 95 բ. 'ի 6 մարտի 1840 ամի Տէր խօսեցաք զայս ինչ տէր տացէ բարուն խօսիմք բառ ժամանակին

## 20.

## Ն. ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ս. ՊԱՏԱՐԱԳԻ

?

ԹՈՒՂԹՔ 125. Նշանակուած է էջ 1—242 (մոռցուած է 101 եւ սկիզբէն երկու թերթ): — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×16×2 սմ.: ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: — ԳԻՐ՝ նօտր. թանաք՝ սեւ. կարմրատառեր, զարդեր եւն չկան. տող 26: — ՆԻՒԹ՝ ընտիր թուղթ: — ԿԱԶՄ՝ նոր կիսակաշի խաւաքարտէ կողով: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ ընդ ամէնը 6 էջ: — ԳՐԻՉ եւն անծանօթ, որովհետեւ տող մ'անգամ յիշատակութիւն չկայ: Կը թուի բոլորովին նոր ձեռագիր:

## 21.

## ԱՒԵՏԱՐԱՆ

?

ԹՈՒՂԹՔ 339: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×13×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ կանոնաւոր, երկսիւն, իւրաքանչիւրը 12,5×4 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 19: — ՆԻՒԹ՝ թուղթ, որուն իւրաքանչիւր թերթը կազմուած է երկու իրարու կցուած թերթերէ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը քայքայուած, որով սկիզբէն եւ վերջէն թերթեր կը պակսին: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1 ա, 264 ա—բ, 265 ա: — Լուսանցազարդերն ու աւետարաններուն սկզբի պատկերները շատ անարուեստ: — ԳՐԻՉ եւն անծանօթ:

**Մատեանս է Աւետարան։**

Էջ 1—97 բ **Մատթէոս.** 98 ա — 99 ա ցանկ **Մարկոսի.** 100 ա — 161 ա **Մարկոս.** 163 ա — 263 բ **Ղուկաս.** 266 ա — 339 բ **Յովհաննէս։** Նախա-

գրութիւններ եւ Ղուկասու եւ Յովհաննու ցանկերը չկան։

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. 161 բ. Այն տարին որ աւետարանս առի. իմ որդին գրիգոր. ժա տարեկան էր. պօղոսն. ե. տարեկան էր։ Անդրիասն. գ տարեկան էր։ Պետրոսն. մէկ ամսական էր։

՚Ի յերկիրս մացրի. ՚ի գեօղս որ կոչի նաւսան։ Աւետարս առի տաճկայ չորիցի. տր պաղտասարին անի։ Նորա հօրեղբէր ղազար պարոն (մնացեալը պատռած)։

162 ա. Ես նաւասարդս առի զսբ աւետարանս յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց. հաւրն իմոյ ամիր պէկին, մօրն իմոյ պահալուին. պապն իմոյ աղապակին. մամն իմոյ մարիամին. կողակցին իմոյ մահին. որդոցն իմոց գրիգորին. պօղոսին. անդրէասին պետրոսին, դստերացն իմոց. մարնոսին. քուերացն իմոյ. հռիփսիմին։ մախմուրին. մամն մամն (երկիցս) իմոյ մէհմանին Ես նաւասարդս առի զսբ աւետարանս հալալ վաստակոց իմոց. որ կարդամ կամ աւրինակէ ած ողորմի ասա մեզ եւ մեր ծնողացն ... որ հանել կամայ զսբ աւետարանս ծախելոյ կամ... լոյ կամ ազգակ... կամ որդի... յգճժը հայ...եղիցի եւ մ...Այն...թվական (կէտագրեալները պատռած)։

Գրչութեան յիշատակարան. Էջ 339 բ. փառք ամենասուրբ երրորդութեն հաւր եւ որդւոյ. եւ ճշմարիտ սբ հոգւոյ ամէն։ Շնորհիւ տն այ իմոյ. սկսա. եւ ողոր... (մնացեալը ինկած թերթերուն մէջ է)։

## 22.

## ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ ԵՒ ԵՂԻՇԷ

(1689-էն առաջ։)

*ԹՈՒՂԹՔ 185, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն մէկ-մէկ թերթ պարապ պահպանակները: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×15×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն եւ կանոնաւոր: – ԳԻՐ՝ նոտր. թանաք՝ սեւ. վերնագրերն, սկզբնատառերն ու սկզբնատողերը կարմիր. տող 33: – ՆԻՒԹ՝ ողորկ եւ փայլուն բարակ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբները մաքուր. բայց մէջերը խոնաւութենէ փտած, սեւացած, ղիւրափշուր: – Լուսանցազարդեր չկան. միայն սկիզբը կայ հասարակ խորան մը: – Դատարկ են պահպանակները միայն, որոնցմէ առաջինը ունի յետին յիշատակութիւններ: – ԳՐԻՉ եւն անծանօթ. թուական թուի ՌՃՀԸ թուէն առաջ:*

Մատեանս կը պարունակէ Պատմութիւն Մովսէսի Խորենացւոյ՝ էջ 1 ա — 105 բ. որմէ անմիջապէս յետոյ, առանց տող մ'իսկ բաց ձգելու կ'սկսի Եղիշէի Պատմութիւն Վարդանանց՝ էջ 105 բ — 185 բ։ Խորենացւոյն պատմութեան մէջ չկան գլխակարգութեանց ցանկերը. Եղիշէէն ալ պակաս է վերջին թերթը. կը հասնի մինչեւ "ի ճաշատեղս նց հայեցան եւ արտասուեցին. եւ յամ ատեանս յիշեցին զանուանս նոցա։„ Յաջորդ թերթը, ուր պիտի գտնուէր ասոր շարունակութիւնն ու յիշատակարանը, բոլորովին դատարկ է։ Բարեբախտաբար կազմին վրայ փորագրուած է խոշոր երկաթագիր տառերով "Յշտկ է պարոն Մնացականին եւ ծնողացն իւրոց գրիգորին եւ մօրն թագուհէ թուին ՌՃԼԸ„։ Յիշեալ պարոն Մնացականը ստացող մըն է անշուշտ կամ առ առաւելն կազմել տուողը. չկրնար գրիչն ըլլալ, որովհետեւ պահպանակին վրայ գրած համառօտ յիշատակութեան եւ ստորագրութեան գիրը (տես տակը) նոյն չէ բնագրին գրութեան հետ. հետեւաբար գրութեան թուականը պէտք է որ ըլլայ աւելի հին քան ՌՃԼԸ=1689։

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ (պահպանակին վրայ). տր Յս յաւելլ արդարութեն եւ արեգակն պայծառութեան ողորմեա անարժն ծառայիդ որ է մնցկն որդի գրիգորի. մնցկն. մնցկն. (երկիցս).

2. Վարպետ գալուստն եւ սիմէօն վրդպտս Առաջնորդ սբ՛զն առաքելոյն թադէոսի ի յիշատակ ծնողացն թուին ՌմԾէ ապրիլէ ժգ որ ի թարուէ քաղաքի.

3. Ի վայելումն տն Յովհաննէսի սրբազան կթղկոսի յամ Աղուանից. յոր ի սբ Աթոռն Գանձասու։

4. Վրացերէն տող մը։

## 23.

## ԱՒԵՏԱՐԱՆ

(1606-էն առաջ։)

*ԹՈՒՂԹՔ 287: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×14×7 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13×4 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատառեր եւն կարմիր. տող 21: – ՆԻՒԹ՝ հաստ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը քայքայուած. թերթերէն ոմանք պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1 ա 281 ա–284 բ, 285 բ: – Լուսանցազարդներն ու մեծադիր պատկերները չափազանց անարուեստ:*

— ԳՐԻՉ եւն անծանօթ: – Ձեռագրին սկիզբը իբր պահպանակ դրուած է պատառիկ մը մագաղաթ՝ հին նրկաթագիր աւետարանի մը մնացորդ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ· Բոլորն ալ երկրորդական գրիչներէ են. որովհետեւ խարդախիչ ձեռք մը կտրած է բոլոր գլխաւոր յիշատակարանները, այսպէս թուրքանչիւր աւետարանի վերջին թերթը՝ ուր առաջին գրիչը կրնար յիշած ըլլալ զինքը եւ ամենէն վերջի գլխաւոր յիշատակարանը:

Էջ 1ա. ծծայրուր խլխաթա... որ աւետար... լին եփրայր?... մինչեւ ի է... քան խորհրդ... գատաստա... (պատռուած):

Էջ 280ա. փառք ամնէ երրորդութե հաւր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ այժմ եւ անզրաւ յաւիտեանս յաւիտենից Ամէն: Արդ գնեցաւ ձեռամբն. զըրուանդլին, տուայարին. զնը աւետարանս. հայալ ընչից իւրեանց. յիշատակ իւրեանց եւ իւրեանց ծընօղաց իւրեանց ամէն: Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, զըրուանդն. եւ իւր կողակիցն գուլնիգարն. եւ իւր որդոյն խլղաթին եւ իւր դստերն շահմալիքին. եւ իւր ծնօղացն. խըլղաթին. եւ իւր մաւրն շահմէլիքին: Դարձեալ յիշեցէք ի մաքրափաւ յաղօթս ձեր. զա... այտաւրն. եւ իւր կողակիցն. սանդուխն. եւ իւր որդոյն ղազարին. եւ իւր խաւրն ղազարին. եւ իւր մաւրն նարուղին: ամէն: գնեցաւ 'ի թուականս հայոց. ածե. ի հայրապետութի հայոց Տէր Քէռէթ կաթողիկոսին, առաջնորդութի պարոամ եպնկսին. փոյթշահութի շահայրաղին. Պարոնութի ամիրխանին: ամէն: (Նոյն գրով տակը) գնեցաւ այգիս. բուէս շաղաւթի տարին. իւր ձեռոմբ. ամէն: (Առոր տակ ուրիշ գրով) դարձեալ. յիշեցէք սարգիս յովաբ. խաչատուր. է թարին. մեծ պապին ոխսոփոսէն:

284բ. ամիրի վկայութի ներսեսի վկայթե զուպաթի. տղայն պետրոսի վկայութե ատտայպատցի աղայվալին ծախեցի զրվանդլին: աղբեր: գնվ աովատուրին տն հաւր վկայուե:

285ա. Ես ղուկասս տէրի նը սարքիսին: տ խալի. տ ֆուրվառ: եւ թռվանդէս: ղուկասի. գին: վախմ արի էն: նը սարքիսին: մեր յիշայտակն. ով որ կարդէպյ տ հայր մեղայ սաի: տծ ողորմի ուրենց հոգին:

(Անդ). տծ ողորմի ճանպակի որդի: վարդանէսի հոգոյն: տ խալի տվեց նը սարքիսին իւր յիշայտակ: ով որ կարդայ տծ ողորմի սաի: տ հայր մեղայ սաի: գերեցօ թվին ...ճիգին (փոքր ծակ մը բացուած է, ուր թուի գրուած ռբ. այն է ՌՄԻԳ = 1774):

(Անդ). ամիրի վկայութե. ներսեսի... (նոյն ընդ նախկինը, էջ 284բ. միայն հոս վերջընթեր բառն է "տն յուսէփի„. իսկ "ծախեցի„ կը գրուի "չախեցի„):

## 24.

## ՄԱՇՏՈՑ

(1469-էն յետոյ)

ԹՈՒՂԹՔ 242, չհաշուելով սկիզբէն եւ վերջէն մի մի թերթ իբր պահպանակ, որոնք սակայն նոյն Մաշտոցէն հանուած կ'երեւան: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×13×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ, միասիւն: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերը, սկզբնատառերն ու վերնագիրները կարմիր, կանաչ կամ վարդագոյն: Տող 16: – ՆԻՒԹ՝ հաստ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ թերթերը թափած, թղթերը ղեղնած, սկիզբէն եւ վերջէն 1-2 թերթ պակաս: – ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ. լուսանցազարդեր խիստ քիչ: – ԳՐԻՉ եւն անծանօթ: – ԹՈՒԱԿԱՆ 1469էն յետոյ պիտի ըլլայ:

Ձեռագրիս մէջ ոչ մի յիշատակութիւն, ոչ առաջին գրչէն, ոչ ալ ուրիշ ստացողէ մը: Միայն գրքին վերջը գրուած նշխեցելոց ողբերէն երկուքին վերջի տուներուն մէջ ստացողը կը խառնէ նաեւ զինքը, այնպէս որ կարծես ողբին բուն մասն ըլլայ. այսպէս էջ 240բ. "Եկայք այսօր եղբարք„ ողբին վերջին տունն է. "Ստացող սորին ծոյլ եւ յիմար բայց ի բնութէ մարմնովս տկար եւն...„: Նոյնպէս 242բ. "Արարիչն արարածոց մեզ բարկացաւ„ ողբին վերջին տունն է. "Ես Ներսէս եպս ծառայ կուսին աչօք տեսս դառըն կըսկիծ ողորմագին. դառն արտասուօք զողբս գրեցի խիստ լալագին տը յս դու ողորմեա բոտացողին եւ գծողին„:

Ասկէ անմիջապէս ետք կ'սկսի գլխաւոր յիշատակարանը. "Փառք ամենասբ երրորդութեն հօր եւ որդւոյ եւ սբ հոգւոյն այժմ եւ միշտ եւ յլտնս յաւիտենից ամէն: Թվ. ջժլ„: Այս թուականը անշուշտ խարդախուած է. որովհետեւ նախ՝ գրուած է կապոյտ գոյնով, մինչդեռ մնացեալը սեւ է. երկրորդ թուականը կը յիշուի առհասարակ անձին յիշատակութենէն յետոյ. եւ երրորդ որ Ներսէսի յիշեալ ողբը գրուած է արդէն 1469 թուականին. ուստի ձեռագիրն ալ անպատճառ այս թուէն յետոյ պիտի ըլլայ:

## 25.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՋԽԵ = 1496:

*ԹՈՒՂԹՔ 277: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×13×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13×4 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող 21. Թանաք սեւ. սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր: – ՆԻՒԹ՝ հաստ. բամբակեայ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական հինցած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 1ա-4ա, 138ա, 274ա-277բ: – Լուսանցազարդերը միջակ. բայց մեծադիր պատկերները շատ անարուեստ: – ԳՐԻՉ Յովաննէս աբեղայ. ստացող Սպահան. տեղ Սաղմոսավանք. թուական ՋԽԵ = 1496:*

**Մատեանս է Աւետարան:**

**Բայց չունի ոչ Եւսեբեայ կանոնք, ոչ նախադրութիւններ եւ ոչ ցանկ:**

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. էջ 137բ. Զանարժան գծողս յովանէս. սուտանուն աբեղայ. յիշեցէք ի քս. եւ ած զձեզ էշէ ամէն:

213ա. Եւ զգծաւղ սբ աւետարանիս. ովանէս. սուտ անուն աբեղայ. յիշեցէք ի քս. եւ ած զձեզ յիշէ ամէն:

273ա. Ես մարկոս քահանայս գնեցի սբ աւետարանս. զան չի էվատէն հալալ արդ-նց իմոց եւ էշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց. հաւրն իմոյ սարգիս քհյն եւ մօրն իմոյ մարթային. եւ հարազատ եղբարցն իմոց մարտիրոսին ստեփանոսին ... սիրաւուն որդոյ իմոյ ... րին ... եւ քվերցն իմոյ խոնդշին. սանոսպարին. մարիանին. նիկարին. եղիսաբեթին. անայխաթին. թամամին. նարկեզին. ոչ ոք չիշխէ իւ րոց կամ աւտից պյլուպյլ առնել որք առնեն պատժին այ: Ես էվատս ծախեցի աւետարանս մրկն քհյն ... ք պատարագ այլ անձնեցուցի. կողակցին իմոյ հաւ-մանիմին իմոց աւտարաց ով ոք դաւ առնէ ...... մառոն ... ջանիկին ... անչին վկայութ:

276բ. Սբ աւետարան ողորմեայ ծայռայիս մեղաւոր յարութենին ամէն: յիշատակ է: իւտէր յիս. քրիս. ածոյ ծառայ: մալխսի: որդի յարութենս գրեցի: թվն ռճձգին յունվարի յամս: զին:

277ա. Սբ աւետարան ողորմեայ ծառայի մեղաւոր վարդանին ամէն:

Գլխաւոր յիշատակարան. 271բ. փառք ամենասբ երրորդութե հաւր. եւ որդոյ. եւ հոգոյն սբոյ այժմ եւ անզրաւ յաւիտեանս յաւիտենին ամէն: Արդ աւրհնեալ ես քն ած մեր. ստեղծաւղ եւ արարիչ համայ գոյից. արարածոց քոց. որդի այ կենդանոյ եւ կենդանարար. միածինդ եւ մարդասէր ած. ի քէն սարսեալ դողան իմանալի զաւրութիւք. սրբասնեալ ածն բոլորից սբ սբ սբ տր ած սաբաովդ. լի են ամ արարածք փառաւք քո: Դու տր տերանց եւ ած աստուծոց. ի լրման ժամանակաց. վասն մերոյ փրկութե. կամաւ հօր եւ հաճութբ սբ հոգոյդ. խոնարհեցաւ յերկնից. եւ մարմնացար ամէն աճհեալ սբ կոյս ածածնին մարիամ-. եւ դաստապարտեցեր զմեղս մեր ի մարմնի քում: խաչեցար. թաղեցար. եւ յարեար. զդժոխս աւերեցեր. եւ զհոգիսն ազատեցեր. համբարձար. փառաւք յերկինս. եւ միւս անգամ գալոց ես դատել զերկոյտասան ազգն իլի. նովին բարէ խաւսութբ սբ ածածնին. ազատեա զհոգի ստացողի. սբ աւետարանիս. բապայհանին. եւ իւր ծնողացն. աթապակին. եւ նազլիկին: եւ մեղապարտ գրչիս. ովանէս. սուտանուն աբեղի. եւ անարժանի ամէն. եւ եղ:ցի Արդ գրեցաւ սբ աւետարանս ձեռամբ յոգնայմեղ եւ փծուն գրչի. ովանէս. սուտանուն աբեղի. անարժանի. եւ գործաւքս եմ չարաւք ի լի. ով ոյս տրութե ունի. լի բերանով. եւ բոլոր հաւատով. ողորմի ասի. եւ ինքն այ տեսոյն արժան լինի. Գրեցաւ սբ աւետարանս. առաջի գլուխն ընկիզբն արարաք. ի մաքենիսն. եւ աւարտն վճարեցաք. ի սղմնավանս. ընդ հովան սբ սիոնիս. եւ սբ նշանացս որ աստ կան. հաւաքեալ. եւ ի սոցին սպասաւորացս; Կրակոս. քաջ հեռետորին: Ի հայրպտութեն տն սարգսի. Ղանութե բռնատամ պէկի. ի թուականիս հայոց. ջխե: Ի նեղութե ժամանակի: Ի խնդրոյ ածասէր. եւ երկիւղած. եւ հաւատարիմ. սպահանին, եւ իւր կողակցին. գուլին եւ ծնաւ ղաց իմոց. աթայրակին եւ նազիկին. եւ եղբարցն իմ, մարգարին. ջանփաշին. զաքարին. գալուստին. նաւասարդին: շնհաւորին: Ով սբ լուսերամակ. դասք քահան-ից աղաչեմ զձզ. ով ոք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով միով ած ողորմիւ արժան առնէք եւ ած զձեզ յիշէ իւր արքութե ամէն. անմեղադիր լերուք խոշորութե սուրա զի կարմեր այս է: Ես սպահանս գրել ետոյ զսբ աւետարանս. յիշատակի հոգ- իմ-. եւ կողակցին իմ- գուլին. եւ հոգեւոր որդ- իմ-. ովանէսին. ոչ ում դաւի չկ- ոչ իմ ազգիս. ոչ աւտարաց. անիրաւքն պատժին. ած ողորմի տէտա խաթունին. որ շատ կերակրեց զմեզ:

## 26.

## ԱՂԲԻՒՐ ԲԱՑԵԱԼ

1838:

*ԹՈՒՂԹՔ 98. Նշանակուած են էջ 1-185: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×16×2 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ. սկզբնատողեր եւն վարդագոյն. տող 28: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ լաւ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 11 երես: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ եւ զարդագրեր չկան: – ԳՐԻՉ Թովմաս սարկաւագ. տեղ Կ.Պոլիս. թուական 1838:*

Գրքին ճակատն է. «Գիրք որ կոչի Այբէ-բ բ-ցէ-ն։ Որ է համառօտ բանիւք եւ ընդարձակ իմաստիւք մեկնութիւն սրբոյ աւետարանի Ղուկայ։ Ի մեծագոյն օգուտ, եւ 'ի պէտս քարոզչաց բանին ճշմարտութեան։ Արարեալ 'ի մեծիմաստ անձնէ. եւ 'ի քաջահմուտ քարոզչէ. ի Տր Պետրոս Ածիմաստ Արքեպսէ՝ ողամալեան նախիջեւանցւոյ 'ի վերթում կոչեցելոյ։ 'Ի Միաբանութէ սրբ Էջմիածնի։ Ըստ խնդրոյ Սրբ Էջմիածնի գրագիր օշականցի Տր Երեմիայի. ըստ իւրում յիշելոյ ի վերջ յառաջաբանութեանն։ Իսկ այժմ գաղափարեալ յընտիր օրինակէ 'ի Թովմաս չնչին սրկւգէ կոստանդնուպօլսեցւոյ ձեռնասուն աշակերտէ Տն եւ Տն Յօհաննու Սրբազան պտրիրգի պօլսեցւոյ Ամենահրաշ ցանկալի Սբ Ածածին Մայր Եկղցւ։ Յամի Տն 1838 «յուլիսի քսան եւ հինգ 'ի թաղն լանկայու 'ի Քգքին կոստանդնուպօլսոյ։»

Ուրիշ ոչ մէկ յիշատակութիւն։

## 27.

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԺԲ. ԱՌԱՔԵԼՈՑ

1835։

*ԹՈՒՂԹ.Ք 86: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 21×16×1 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: — ԳԻՐ՝ նօտր. տող՝ 27. թանաք՝ սեւ: — ՆԻՒԹ՝ հասարակ թուղթ: — ԿԱԶՄ՝ պարզ խաւաքարտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ նոր: — ԳԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 23 երես: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, կարմրատառեր եւն բնաւ չկան: Գրիչ եւն անծանօթ: Թուական 1835 կամ յետոյ:*

Գրքին խորագիրն է. «Պատմութիւն երկոտասան Առաքելոց. եւ Սբյն Պօղոսի երեքտասաներորդ Առաքելոյն Եւ եօթանասուն երկու Աշակերտացն Քսի։ Հաւաքեալ 'ի հին ճառընտրաց եւ 'ի ճշմարիտ պատմութեանց. եւ շարագրեալ աշխարհիկ լեզու։ Աշխատասիրութեամբ. պ. Աւետիս գիտնական եւ քաջարան վրժպտի։ Խնդրանօք աշակերտացն իւր։ 1835։»

Գրքին վերջը՝ էջ 77ա. «Աւարտեցաւ երկոտասան Սբցն Առքելոց. եւ եօթանասուներկու ընտրեալ աշակերտացն Քսի ընտիր եւ ճշմրիտ պատմութիւնքն. հաւաքեալ 'ի մեծէ ճառընտրէն դորոթէոսի եւ հեգիսիպպոսի մատենագրաց. Աշխատասիրութեամբ պր. Աւետիս յոգնահանճար վրժպտի Պերպերեան։ Յամի Տն 1836։»

Գրքին մարմնէն դուրս՝ էջ 83բ, կարմիր մանր տառերով գրուած է հետեւեալ հետաքրքիր տեղեկութիւնը. «յիշատակարան Մատենիս զոր արարեալ է սրբյ Հօրն Վարդանայ Հայոց վարդապետի. Մատեանս այս գտեալ է ի մէջ աւերակացն տիգրանակերտի ի ժամանակս յորում ալփասլան արքայն պարսից էառ փլատակ գքաղաքն։ Յամի փրկչին (չէք թիւ) եւ մէք խոնարհ ծոյ ստն յայս գիրս առաք ի գարեգին վարդապետէ եւ օրինակեցաք ի վերայ մագաղաթիս ի վանս հոգւոց եւ նուիրեցաք 'ի թանգարանն յորմէ խնդրեմք զի յիշեսցեն մեզ յաղօթս իւրեանց ընթերցողքս եւ ած վարձահատուցէ նոցա զերանութիւնն երկնից։ Յամին փրկչին (չկայ թիւ) Գրիգոր վրդպ. անձեւացի։

Յիշատակարան մատենիս. գրեալ է ի Վարդանայ Հայոց Վարդապետէ. բազում անգամ աշխատ ընկալաք զի գտանիցեմք զգիրս սրբոյն մեծրոպայ Հայոց վարդապետի զմեկնութիւն ծննդոց. բայց ոչինչ եղեւ աշխատութիւն ապա բազում թախանձանօք մեծին (անունը չկայ) իշխանի տանն Սեւորդեաց, սկիզբն արարեալ գրեցաք զմեկնութիւն ծննդոց, ելից Ղեւտական, թուոց եւ երկրորդ օրինաց, եւ աղաչելով զընթերցողսն զի ներումն կալցին սխալանաց մերոց. հետս ընկրկելով գրոցն սբց հարց վարդապետաց. գրեցաք յամի թուին փրկչին մերոյ (տող մը բաց) Այս է նոր արեւ հաւրեալ նորահրաշ։»

Մեզ կ'երեւայ թէ յիշեալ պատմութիւնը կեղծիք մըն է. որովհետեւ նոյն իսկ Վարդանի կարծեցեալ յիշատակարանը՝ որ արտագրուած պիտի ըլլար, պարզապէս նոր շարադրուած է, ինչպէս կը ցուցընեն քանի մը բառերու գրած, ջնջած եւ սրբագրուած ձեւերը։

## 28.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՌՃԼԶ = 1687։

*ԹՈՒՂԹ.Ք 247 (Նշանակուած է 239, բայց մոռցուած են սկիզբէն երկու թերթ. կրկին են 2, 6, 68, 206, 208 եւ 211): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 18×16×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13×4.5 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. վերնագիր, սկզբնատառեր եւ սկզբնատողեր կարմիր-վարդագոյն. տող 23: — ՆԻՒԹ՝ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ ոչ լաւ. կազմը*

*բըքրուած, փայտերը կոտրտած, թղթերը դեղնած, ծայրերը խոնաւութենէն բորբոսնած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ սկիզբէն 5 թերթ եւ էջ 71ա-բ, 119ա-բ, 187ա-188բ եւ 236բ-239բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐՆ ու խորանները միջակ. մեծադիր պատկերներուն տեղը դատարկ թողուած է: — ԳՐԻՉ՝ Յովհաննէս. ստացող՝ Դաւիթ. թուական ՌՃԼԶ =1687:*

Մատեանս է Աւետարան. չկան Եւսեբիոսի կանոնները. նախադրութիւն եւ ցանկ ունի միայն Մարկոսը. Ղուկասը միայն նախադր. իսկ Մատթէոս եւ Յովհաննէս զուրկ են երկուքէն ալ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 2ա Թվ. ռՃՀա ին յուլիսն իե Թարվիզ մահտեսի սարգիս սիմոն ահակ մէլքոմ Թաթոս Եւ տէր Եշայտակ ուժումբարու Եկեղեցուն օվ աք որ կարդայ ասի ած օղորմի յիշայտակ տվօղաց հօքու աւվետարանես:

Էջ 69ա. Հ ոք ընթերցող յորժամ 'ի ոք յաբուլթեն քն այն մերոյ ընթերցիս զայս փոխս: եւ զմեղօք զառածեալ զանարժան յովաննէս (այս անունը քերուած, բայց ընթեռնլի) գրիչս յիշեա' վն սիրոյն քն: զի դու յիշեալ լիցիս ի միւս անգամ գալստեան Նորին Ամէն: Թվին. ռՃլե:

Էջ 238բ. Ես տր սիմայոնս գերեցի ով որ կարդա, մի բերան ողորմի ասի ած իւրան ահեղ ատենին ողորմի եւ որ էի երեւանոնցի որ ձեռամս հուռ (հիւր) եկայ ըապայսր այն ժամանակ էր որ մելիք յուսէփ հայրարայպէտ (= հայրապետ) աղան էյ տն Ներսէսի եւ առաջորդութիւն տն պետրոսի. թվ ռճզ էր յուլիսի ա էր ես անարժան մեղաւոր երեւանցի սիմայոն յաբեղէս գերեցի:

Գլխաւոր յիշատակարան. Էջ 235ա—236ա. Շնորհիւ. տն սկսաւ. եւ ողորմութբ Նորին կատարեցաւ: ածաբուղխ ոք աւետարանս: ի փառս ոք երրորդութեն հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ: այժմ եւ միշտ եւ յւտես յւտց Ամէն: Յամենայն զգալեաց, որք միանգամ ի գերագոյն, սկզբնապետագոյն ճառէն բաղկացան. հիա. ւքանչ եւ զարմանալի արարչակերտութբ: Միայն բարգաւաճեալ ճոխութբ պանծալի երեւեցաւ երկնային սեռ. չքեղացեալ բանական շնորհիւ. եւ պատկերաւ զարդարեալ սկզբնատպին: Եւ արդ քանզի վրիպեցաւ սա, պատուիրանազանցութբն 'ի փառաց պատւոյն: զոր ընկալաւ իւր զբանն: եւ ոչ ուստեք գտեալ օգնականութի, մինչեւ գալ փրկչին. եւ զմերս զգենլով զամ բացի մեղաց: եւ չարչարանօք խաչին. գարձոյց վերստին յառաջին պատիւն. եւ ի փառսն: Եւ աւետոնական ընդելութբն. արար զճանապարհ մերոյն փրկութե: ասելով. թէ ես եմ ճանապարհն եւ ճշմարտութի եւ կեանք: եւ թէ ոչ ոք գայ առ հայր. եթէ ոչ ինեւ: Եւ սա է ճշմարիտ բան այս. եւ աւետաւոր անվաղճան կենացն. եւ դուռն մտից եւ ելից արքայութե երկնից. եւ ճարակ իւր: Արդ՝ ականջալուր եղեալ աւետարական հրամանիս որ ասէ: գանձեցէք ձեզ գանձս յերկինս. ոչ գող մերձենա եւ ոչ ցեց ապականէ: Առ որ մեծաւ փափագմամբ ցանկացողեալ այսմ ածաշունչ կտակի եւ աւետարանի տն մերոյ յի քի: Յուսալով ի բանս մարգարէին որ ասէ երանի որ ունի զաւակ ի սիոն եւ ընդանեակ ի վերինն յեմ. ըստ այսմ խորհրդի. ածասէր եւ երկիւղած եւ բարեպաշտ առնն: Եաւրին եւ կողակցին խան Նանին. եւ ծնողացն հօրն ղազարին եւ մօրն հիւրիխանին: եւ դստերն շահումին: եւ որդոյն փարին: Որ ետուն ի հալալ արդեանց իւրոց եւ առին զսբ աւետարանս Յիշատակ հոգւոյն. շահումին եւ փարին: Դարձեալ յիշեցէք զորդիք եաւրին ետկարն. եւ կողակցին հոռումին. եւ դստերցն զանին եւ եղիսաբեթին. եւ որդւոյն սարգսին: այլ եւ երկրորդին Ղազարին: եւ կողակիցն խաթուն եւ մարեանին եւ դստերք. մահին եւ եղբօրն Թահիրին: Այլ եւ երրորդ որդի եաւրին. Ներսէսն եւ կողակցին Նազլու խանն եւ որդոյն պօղին, եւ դստերն խանփարին: Այլ եւ յիշատակ է վերոյգրեալ եաւրին եւ քվերցն դաւլաթին թամամին: այլ եւ յիշեցէք, իմ եղբայր հախնազարն եւ որդին սարգիսն եւ հարսն իմ մարգարիտն: Այլ եւ յիշեցէք իմ պապ միրզէն. եւ ամ արեան մերձաւորքն, յիշեցէք եւ ած ողորմի ասացէք. եաւրի հին եւ Նոր Ննջեցելոցն եւ որք յիշէք ասացէք յի սրտիւ ած ողորմի ասացելոց ի քն յոյսն ամենեցուն: Գրեցաւ ի թվին. ռ. ճ. եւ լ. գ. ամին ի մարտի. իգ. (յաջորդ սիւնակը խոշոր բոլորգրով) Այլ եւ յիշեցէք զվերոյգրեալ եաւրին եւ կողակիցն իւր եւ խաննանէն. եւ դստերքն իւր, սիրամարգն. հոռումն. եւ հանգուցեալ շահումն. եւ զայրն իւր եղիայն որ ըստացան զսբ ածաշունչ աւտրնս յիշատակ հոգոց իւրոց ած լւոց արքայութի տացէ. եւ մնացելոցն կենք եւ առողջութի: Ամէն:

## 29.

### ՔԱՐՈԶԳԻՐՔ

ՌՄԽ = 1791:

*ԹՈՒՂԹ.Ք 59. էջերը սխալ նշանակուած: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×17×1.2 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ միասիւն: — ԳԻՐ նոտր. թանաք՝ միայն սեւ. տող 28-30: — ՆԻՒԹ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշի առանց խաւաքարտի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գործածութենէ աղտոտած, բայց նոր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, զարդեր կամ կարմրատառեր բնաւ չկան: — ԳՐԻՉ՝ Խաչատուր վրդ. տեղ Ս. Բարդուղիմէոսի վանք. թուական ՌՄԽ = 1791:*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Կողերը լցուած են զանազան գրչափորձերով, որոնց մէջ կան եւ հետեւեալ յիշատակութիւնները. 1. Թվին ռմծեին ես ամ Թշվառ գրիգոր յաբեղայս հանդիպայ ի գուղն որ կոչի մալհամչի. կարի յոյժ կայի տրտմութբ. 2. Թվին ռմծէ հկտբրի ժղ մոաք ի քղքն որ կոչի պաղղատ ես Նուաստ գրիգոր վրդպտս եւ իմ ընկերքս տիրացու մովսէս եւ

միւ-ս մանաաէր միշտ ցընդում եւ ուրախ կաւաք ռվ. 3. տուն մը հայատառ վրացերէն երգ. 4. Ես գրիգոր մեղապարտ վրդպտ հանդիպեցայ ի գ-ուղն որ կոչի զէվաճուկ այս գիրս գրեցի։

Էջ 1 բ. (պատմական տեղեկութիւն). մինչ սկսայ տետրակս զայս գրել, էր Ղուկաս կթկսն հյրպտն հայոց մինչ բանադրանօք եած զմեզ յաթոռն բայց ոչ յն կեանս երկարս տացէ նմ. եւ ոչ ընաւ խստագոյնս խօսեցաւ՝ ընդ մեզ. այլ հայրաբար խրատս ետ եւ արձակեաց գալ ծառայութին առնուլ սրբազան Աքլոյն, լաւ օրհնանիչ խիլայիւ՝ արձակեաց. էր թիւն ռմխ ամին. ի թուին (նոյն հայրպտին) ռմխդ ամին կրկին խնդրեաց զմեզ երանելին վն գործոյ սրբազան Աքլոյն բրդղմսի. եւ առաքեցն առ պէկն պայման առնուլ ապա թէ տալ մեզ. առաջնորդութին. մինչ խղղութին լինի գնալոյ եմք առ սրբազան. տեսէք յայսմ թուոջս եկեալ է մահմատ շահն ի վր ամուր դղեակին շուշայի. այժմ պշրեալ նստեալ է. եւ եղբայրն իւր ալխզուլխանն. եւ ընդ ճափար ղուլի խանի հետն ի վր Երեւանու նստեալ են, տեսցուք վերջն զինչ լինելոց է, որ Աթոռն էջմիածին ինքն ազատեսցէ զազգն հայոց։ բայց մինչ դ ամիս նստան 'ի վր Երեւանու եւ սրբազանն նստաւ առ սարտարն մինչ գրաւս ետ մահմատ խան Երեւանու. այսինքն կինն որդին եւ եղբայրն. որ ելեալ զօրքն գնացին կանճայ. մինչ սրբազանն եռ թուման փող ետ սարտարին. եւ խռնեալ բանակն շահին հետ եղբօրն եղեն անթիւ անհամար. գնացեալ ի վր Թիֆլիսու, առին զքաղաքն, վատուն հազար հոգի. կին տղայ գերեցին. եւ քըքն այրեցին. քհնյսն կոտրեցին յեկեղեցիսն կողոպտեցին, անթիւս կոտորեցին մեծ մարդկանց, կսկծալի աղէտ որ չէ յիշելի։

Էջ 56բ. Կրտպաթ Ճկոբի տղայ. սառուն։ զ առու այգուց տվեց վանքին։ Անցկնի կինն զ առու եւս յայրին եւս։

Վերջին կողին վրայ "ի թվին ռմծէին փետրէվր ԺԲ ես Գրիգոր յաղեղայս ընդ խաւտուր եպսի հանդիպեցաք ի գ-ուղն մալհամ 'ի աւուրն մեծի պահոց առաջին աւուրն„։ "Թվին ռմծե փետրվի ժբ յաղեղայս զայս գիրքս ընթերցայ յոյժ զ-արմացայ„։

Գ-լխաւոր յիշատակարան. Էջ 18բ. Արդ ես խշտր Վրդպտս եղկելիս եւ ծառայս յամ վրդպտց, ժողովեցի զայս ծաղկաքաղ տետրակս քըզից, յաջ սրբազան Աքլոյն Բրդղմսի 'ի յատինացոց գրեանցն թարգմանեալ, երկրորդ Աքբել Վրդպտէ. երրորդն Սիմէօն կթկսէ Աստցեալ։ չրրդն. յկէ պորֆէ. որք հաւաքեալ գրեցի ի վայելս ընթերցասէր եղբարցս զի 'ի պատահելն սորայ կամ ընթեռնուլն, միով Հայրմերիւ զմեզ յիշեսցեն, եւ նոքայ յիշեալ լիցին առաջի աչեղ ատենին քնի այն մերոյ ամէն. գրեցաւ ի ռմխ թուին 'ի դուռն Սբ Աքլոյն բրդղմսի։

## 30.

## ԱՒԵՏԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ 293: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 19×13×5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր եւ պարզ, երկսիւն, իւրաքանչիւրը 14×4 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր, տող 23. Թանաք՝ սեւ. սիզբնատողերը եւ սկզբնատառերը ոսկեգոյն, կարմիր եւ լեղակագոյն: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ թէեւ ձեռագիրը նոր է, բայց կրակն իյնալով տակէն բաւական տեղ այրած եւ եզերքները սեւցած է: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա, 2ա–բ, 3ա, 4ա, 5բ, 6բ, 7բ, 8ա–9ա, 10բ, 11ա, 12բ, 13ա, 94բ–96ա, 146ա–148ա, 230–231բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ շատ կան. սկիզբը 9 երես խորաններ՝ կանոններուն համար. աւետարաններուն սկիզբը երկու մեծադիր պատկերներ եւ չորս խորաններ. ասկէ զատ ամբողջ աւետարանին մէջ 162 զանազան պատկերներ. բաց ի պատկերներէն՝ որ նուազ յաջող են, միւսները շատ յաջող եւ զարդարուն: Դժբախտաբար կազմողին անզգուշութեամբ լուսանցքներուն կէսը կտրուելով՝ պատկերներն ու զարդերն ալ կիսուած են:*

Ձեռագրին սկիզբը կան խորաններ. բայց նախադրութիւններ եւ ցանկեր չկան. չկան նոյնպէս յիշատակարաններ, որոնց տեղը բաց է թողուած իւրաքանչիւր աւետարանէ վերջ։ Յիշատակարաններու այս բացարձակ պակասութեան պատճառաւ գրիչ, թիւ եւն բոլորովին անծանօթ են։

## 31.

## ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ

(1534-էն առաջ)։

*ԹՈՒՂԹՔ 315: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×14×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 14×4.5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. տող՝ 29—30. Թանաք՝ սեւ. գլուխներն ու սկզբնատառերը կարմիր, անզարդ: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գործածութեամբ քիչ մը հինցած եւ ծայրերը աղտոտած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, խորան, զարդագրեր բնաւ գոյութիւն չունին: – ԳՐԻՉ եւն ան-*

*ծանօթ. բայց թուի թէ գրիչն է Խաչատուր վարդապետ, ստացողը Յովհաննէս Վարդապետ: – Թուական ՋՁԳ = 1534-էն առաջ:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Մեկնութիւն Արարածոց, էջ 2ա – 160ա (Վարդանի յառաջաբանով միասին). 2. Դարձուածոց Ելից (այն է Ելից գրոց մեկնութիւնը), էջ 160ա—233բ. 3. Ղեւտական դարձուածոց, էջ 233բ—252բ. 4. Մեկնութիւն Թուոց (անվերնագիր), էջ 253ա—269բ. 5. Մեկնութիւն Երկրորդ Օրինաց (անվերնագիր), էջ 270ա—310բ: Սկիզբն մէկ եւ վերջէն հինգ թերթ կը պարունակեն զանազան ծննդաբանական եւն տախտակներ: Ձեռագրիս մէջ շատ տեղեր կան լուսանցագրութիւններ եւ ծանօթութիւններ բուն գրքին վերաբերեալ. մինչեւ իսկ երկու տեղ (էջ 232բ եւ 241ա) այս ծանօթութեանց համար նոր թերթիկներ են ներմուծուած: Արտագրելու ժամանակ առաջին գրիչը փոխեր է 3 օրինակ, զորոնք իրենց տեղին կը յիշէ. այսպէս՝ 133բ. այս աւրինակս նո՛ր եկաւ որ գրեցի յայս տեղս՛ս. էջ 229բ՝ այլ օրինակ փոխեցաւ աստ: Իսկ էջ 194ա փոխանակ նախկին երկսին գրութեան միասին գրելով՝ ծանօթութիւն կու տայ թէ "կամաւ հայնց գրեցի զայս երեսս":

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 1ա՝ ծննդաբանական տախտակին բոլորակներէն մէկուն մէջ կարմրատառ. "զստացաւղ սորայ զՅոհս վ՟րդպ յե"

Էջ 2ա, նոտրագիր. "Սբ գի՟րքս յշտկ է աստպտցի նուկենց Պետրոս վրդպտին: որ եա 'ի դուռն Սբ Ստփնսի մեծի վանքին: Ի Վ․յլ․մ Սբ եղբարց մի՟ոնին: աղչեմ ասել ող՟ր ուձծեին. յաւել յշծք զհգ՟ւր ծնօղն իմ. զխչտւր բաբունին: նաեւ զմ՟նան եւ զգուլնաբաթն. ընդ եղբարցն իմ. նոյն տեղը կայ նաեւ կնիք մը "Քի ծա. Պետրոս Վարդապետ ԲՃԾԵ" մակագրութեամբ եւ շատ խառն փակագրով:

Էջ 233բ. Նոյն կնիքը (նաեւ էջ 314բ):

Էջ 252բ Ղեւտական գրքին վերջը այսպէս կը վերջանայ Վարդանի յիշատակարանը. "եւ ակնկալու՟ նորա եւ իւրոցն վարդանայ վ՟րդին եւ խաչկայ վ՟րդի ողորմութ՟ի ի նմանէ". Թուի թէ սոյն Խաչիկն ըլլայ առաջին գրիչը:

Էջ 269բ. Թուոց վերջը՝ կարմրատառ նոտրագիր. Գ՟րցւ ուձկին: Սբ Գիրքս յշտկ է. աստպտցի նուկենց Պտ՟րս Վրդպտին. եւ ծնդ՟ցն յօվաննէսին եւ գիւլնաբաթին. արդ ով՝ք ընթեռնուք անցք զա՟ծ ողրմին: Մնւնդ հոգ՟ւր հօրն իմոյ խչտ՟ւր բաբուն՞պ՞տին. եւ եղբօրս հրզտի 'ի տ՟ր. յօհաննէս վրդպտին:

Գրչութեան յիշատակարան. Էջ 310բ. Փառք եւ գոհութ՟ի ամենայն երրորդութ՟են հաւր եւ որդւոյ. եւ հո՟գւոյն. այժմ եւ միշտ. եւ յաւիտեանս յաւիտենից ամէն: Որ արժանի արար զիս, եւ զաւրացոյց զտկարութ՟իս իմ հասանել 'ի կէտ եւ ի զրոյ գծիս: (Շարունակութիւնը ընդհատուելով՝ նոր գրիչ մը աւելցուցեր է) Իս Թաթէոս վրդպս: Կ՟ղնցի. ի Թվ. ՋՃԳ գնացի յեմ եւ ի հալապ գնեցի զաղ՟ծց գիրքս յիշատ ինձ եւ իմոցն: յիշողացն՟:

Ամենէն վերջը էջ 304բ կայ պարսկերէն հայատառ ոտանաւոր մը. "աղ քօհի սրնդիլ. բար ամադադամ. դար զահրաի ու նաղշ ու նուիշտ աստ մ՟իմ յիսա ռօհի փաք աստ խուդա մէխօնիմ":

## 32.

## ԱՒԵՏԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ 261 եւ սկիզբէն մէկ թերթ դատարկ պահպանակ: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 19×14×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ մաքուր եւ կանոնաւոր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 14×4 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. տող 23. Թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, ոսկեզօծ, լեղակագոյն, թուխ-կանաչ եւ բալի գոյն: – ՆԻՒԹ՝ նուրբ եւ յղկուած մագաղաթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր եւ նոր. միայն վերջի կողէն կրակ առնելով կազմի տախտակին կէսը եւ զրքէն 4-5 թերթ կիսովին այրած են: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 2ա, 4բ, 5ա, 6բ, 7ա, 8բ, 9ա, 13ա-14բ, 84ա-բ, 130ա-բ եւ 200բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ յաջող են. բայց սքանչելի են աւետարաններու սկիզբը դրուած խորանները, թէ գծագրութեան նրբութեամբ եւ թէ գոյներու յաջող դասաւորութեամբ ու փայլով: – ԳՐԻՉ՝ Թորոս քահանայ. ստացող՝ Վարդան ծերունի քահանայ. Թուական եւ տեղ անծանօթ, յիշատակարանին առաջին թերթն ինկած ըլլալուն համար:*

Մատեանս կը պարունակէ. էջ 2բ – 10ա Եւսեբիոս Կարպիանոս եւ կանոններ. 10բ 12բ Նախագրութիւնն եւ գլուխք Մատթէի, Համաձայնութիւն աւետարանչաց. էջ 15ա—82բ Մատթէոս. 82բ – 83բ նախագրութիւն եւ գլուխք Մարկոսի. 85ա—127բ Մարկոս. 128ա—129բ նախագր. եւ գլուխք Ղուկասու. 131ա—199ա Ղուկաս. 199բ—200ա նախագր. եւ գլուխք Յովհաննու. 201ա—252բ Յովհաննէս. 252բ – 256բ Էր ընդ եղբարս, որուն վերջէն թուղթ է ինկած. էջ 257ա—258ա յիշատակարաններ. 258բ –261բ Յառաջաբան Պաւղոսի առաքելոյ, Ընդ ուսումնասէր եւ ընդ փոյթ ..., որուն վերջէն թուղթ ինկած է:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 1ա. Փառք յամենասուրբ յերրորդութ՟են հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ: Այժմ եւ անզրաւ յաւիտենիւ ամէն: Արդ՝ ես

մեղապարտ եւ սեւերես յամենայն տեսակաց մակարդեալ եւ պսակեալ յազգից մեղաց Յովհաննէս Վրդպետս՝ Որ եմ յերկրաւ յերջակցի. նաեւ ի հայրենի գեղջէն Նորաշինկեցի: դարձեալ ստացայ ի հալալ ընչից իմոց Զյաւետարանս այս որ է տաղաւար եւ բնակութիւն մարմնացեալ բանին այ եւ տեառն մեր. Յսի կենարարի: դարձեալ ետու յիշատակ եւ ի վայելումն Շատիկու ՍԲ յանապատին. Որ մակ Անուամբ վերակոչի ՍԲ սիոն. եւս յեռակի եւ քառակի սիրով եւ տենչմամբ աղաչեմ Զձեզ՝ հարք եւ յեղբարք եւ մանաւանդ Պաշտօնեայք յեկեղեցւոյ՝ յիշեցէք առ Քս ի մաքրափայլ յաղօթս ձեր՝ Զյոքնամեղ եւ ամենաթշուառ՝ նաեւ ստակաձայն տրուպ յովհաննէս վրդպս՝ նաեւ ի ծնօղքն Զմարգ''րէն. եւ զխաթունն, եւ հանգուցեալ առ Քս Զյեղբարքն իմ Փիլիպպոսն, գրիգորն. յովհանն, Պետրոսն. Պօղօսն. եւս կենդանի յեղբարքն իմ ետկարն. Սեւումն. նաեւ ծնօղագութ քոյրն իմ եղիսէն. դրձել եւ դուք յիշօղքդ՝ յիշեալ լիջիք՝ անմահ գառին այ գրոց ի թուագործութեան մեր. աճխզ երորդին. դրձլ. ով ոք ՍԲ աւետարանիս ննդութբ անկարկէ Զմասն յուդայի, Պիղատոսի, եւ Կայենի ճաշակեսցէ, այլ խնամով պահօղն աՀնեալ եղիցի ի յայ:

Էջ 3ա (առաջին գրչէն). Զմեղապարտ գրչիկս թորոս, եւ զծնաւղսն իմ աղաչեմ յիշել ի այ: (երկրորդ գրչէ) յիշատակ է ՍԲ աւետրանս յովհաննէս վրդպին. ի յիշատակ եւ ի վայելումն շատիկու ՍԲ յնպտին:

Գլխաւոր յիշատակարան. (Էջ 257ա – 258ա, սկիզբէն պակաս).... ողորմութիւն եւ հանապազ գթացին յիս զուարթամիտ առատութեամբ, ամն որում անուն կոչիւր Թուատաւրէ որ եղեւ առ իս բարեմիտ վասն ածսիրութն իւրոյ եւ վասն յիշատակի հանգուցելոյ զուգակցի իւրոյ եւ բարեպաշտ աներոյ իւրոյ առաքելի. գործակցութբ եւ յաւժարամտութբ զոքընչի իւրոյ թեմանայ, եւ այլ ամն, անուն ճուան. որ եւ նա բարեմտաբար հանապազ գլթացեալ է յիս՝ որոց արդեամբք ստացայ զայս փափաքելի կենսունակ ՍԲ կտակս. որոյ ես միայն միջնորդ եմ ստացուածոյս եւ ոչ թէ յիմ արդեանց ստացայ. այլ ի վերոյ գրեալ աՀաշտոյցն արանց. եւ ես միայն զայս արարի զպելով զիս 'ի յաւելորդացն միայն հարկաւորաւն բաւականացայ, եւ ետու գրել եւ աւարտել ք''հի որումն վանականի որոյ անուն թորոս. 'ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ. զոր յոյժ բաղձանաւք եւ յոքնատօչոր տենչանաւք մեծաւ աշխատութբ ստացայ զսա 'ի լուսաւորութն մանկանց եկեղեցւոյ եւ յիշատակ ինձ եւ ծընօղաց իմոց հաւրն թորոսի եւ մաւրն իմոյ շարի. եւ եղբաւրն իմոյ անդրէասայ քա՛հի. եւ այլ եղբարցն իմոց. յովանիսի եւ աւետեաց. եւ քեռւոյն իմոյ տր վարդանայ եւ այլ ամենայն զարմից իմոց. կենդանեաց եւ ննջեցելոց. վասն որոյ աղաչեմ զՍԲ հարս եւ զեղբարս րդդասս քա՛հից, որք վայելէք 'ի քաղցրաճաշակ եդեմատունկ վըտակացս՝ քառ-առաջեայ հոսանաց կենդանական աՀախաւս աւետարանական բանիցս՝ մանաւանդ յորժամ բառնայք 'ի ժամ սոսկալի պատարագին յորժամ խաղան 'ի վերուստ յողջոյն ձեր իջանելով զաւրք հրեշտակաց. եւ սքօղեալ աՀիւ խառնին ընդ ձեզ. յայնժամ նովին ՍԲ աւետարանաւդ եւ միջնորդական կե-նարար հրաշիւք ՍԲ պատարագին յիշեսջիք զստացաւղն զվերոյ գրեալն զվարդան ծերունի քահայ. եւ զայլ երախտաւորսն եւ զարդիւն-արարսն. զյակոբ մուղտսի եւ զկին ամն պարկեշտուհի եւ զզաւակ որոյ անուն տալիթա որ եւ նա արար արդիւնք 'ի ՍԲ կըտակս. եւ զաշխատաւղս 'ի սմա վասն ուղղութեան զմեղաւոր հոգս ստեփանոս գոյներ երիցանց՝ եւ երկրահուպ դիմաւք հայցեմ 'ի հանդիպողացդ ողորմութիւն խնդրել 'ի Քէ յահեղ աւուրն հատուցման ընդ ամենայն ՍԲս իւր որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն: Եւ զկարա՛ւտս ողորմութեն այ զթորոս սուտ անուն քհ յերես անկեալ աղաչեմ զՍԲ հանդիպաւղսդ զհա՛րս եւ զեղբարս զի առնէք արժանի յիշման առաջի զենման անմահ գառինն Քի զիս զմեղուցեալ գրիչս եւ զծնաւղսն իմ եւ զամենայն ազգատոհմն. եւ որ առատն է 'ի տուրս բարեաց Քս աՀծ յիշողացդ եւ յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի. եւ նմա փառք յաւիտեանս ամէն:

(Ասկէ վերջ նոյն երեսին վրայ նոտրագիր՝ երկրորդ գրչէ մը). Զվերջին ստացօղ ՍԲ աւետարանիս յովհաննէս բազմամեղ վրդպտս որ եմ գեղեաւ Նորաշինկեցի. դրձլ՝ ետու յիշատակ եւ 'ի վայելումն շատիկու ՍԲ յանապտին. դրձլ՝ աղաչեմ զձեզ սիրով հոգւոյն այ. հարք եւ յեղբարք՝ յիշեցէք առ Քս. զմեղաւոր եւ անարժան սեւերես ծառայս ձեր զյովաննէս սպասաւորս՝ որ մականուամբ եմ վրդպետ՝ այլ գործով թափուր եւ դատարկ յամ բարեձեւութեց, նա եւ ծնօղքն իմ զմարգրէն. եւ զխաթոնն. եւ դուք յիշեալ լիջիք առաջի այ. ամէն:

## 33.

## ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 173: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 18×12×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13×3,5 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող՝ 18–21. Թանաք՝ սեւ. գլուխները եւ սկզբնատառերը կարմիր կամ կանաչ: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սեւցած, փտած ու բորբոսնած. շատ տեղ անգործածելի: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 173բ: – Լուսանցազարդեր՝ միայն 1–2 հատ, շատ անճաշակ. զարդագրեր չկան: – ԳՐԻՉ եւ ստացող Ղազար. տեղ եւ թուական անծանօթ:*

*Ձեռագիրս էջ 37—45 կը պարունակէ Մինդ ի յէէն եւ Ովլ քաշանայք եւ վարդապետք ողբերը։*

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆ** *կայ միայն էջ 157ա, առաջին գրչէն․ "Կարդացողի․ եւ լսողի․ եւ աստուցողի․ սորա․ եւ գծողիս բազմամեղ, ղազարիս, եւ զծնօղն իմ առնել յիշման արժանի գալստեանն քո եւ նմա փառք յաւտեա Ամէն։„*

# 34.

## ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ

(1358-*էն քիչ յետոյ*։)

*Թուղթք՝ արդի վիճակին մէջ 140։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22×14×3,5 սմ․։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին։ – ԳԻՐ՝ անցման բոլորգիր, որ է բոլորգրի եւ նոտրի միջին տեղը․ տող՝ 29․ Թանաք՝ սեւ, գլուխներն ու սկզբնատողերը կարմիր, անզարդ։ – ՆԻՒԹ՝ շատ հաստ եւ անողորկ բամբակեայ թուղթ։ – ԿԱԶՄ՝ չունի։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկզբէն եւ վերջէն թղթերը պակաս․ մնացեալը ղեղնած, բայց անվնաս։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն չկան։ – ԳՐԻՉ՝ Յակոբ սարկաւագ․ ստացող՝ Մինաս կրօնաւոր․ Թուական՝ 1358-էն քիչ յետոյ, որովհետեւ այս թուին է վախճաներ գրող սարկաւագին քեռին։*

*Ձեռագիրս կը պարունակէ․* 1․ *Կիւրղի Երուսաղիմացւոյ Կոչումն ընծայութեան ճառերը, էջ* 1—129բ, *սկսելով Գ․ ճառին կէսէն․ "սատեալք ընդրութիւնք․ զի ամուսնութիւնք աշխարհ … ուխտք եւ դաշինք„ եւ հասնելով մինչեւ Ը ճառին վերջը։* 2․ *Թուղթ Կիւրղի Երուսաղեմացւոյ եպիսկոպոսի․ Առ կոստանդիանոս թագաւորն վասն երեւելոյն նշանի սուրբ խաչին յերկնից․ էջ* 129բ—131բ․ 3․ *Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ յաղագս երգերգոցին․ Գահաւորակ արար իւր արքայ … էջ* 131բ—140բ *(կիսատ, մինչեւ "յաղագս որոյ գեղեցկապէս եւ ընդաներար յողջախոհութեան ուղղութիւնս տեսութեանն։*

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ․** *Եթէ գլխաւոր յիշատակարանը կորսուած թուղթերուն մէջն է, գոնէ ասոր պակասը կը լրացնեն այն 17 յիշատակութիւնները, զոր առաջին գրիչը կ'ընէ ամէն ճառէ վերջ, այսպէս էջ 5բ, 15ա, 19բ, 23ա, 31ա, 35ա, 37ա, 42ա, 48բ, 54բ, 64բ, 77ա, 87ա, 97բ, 107ա, 118ա եւ 129բ։ Այս յիշատակութեանց մէջ գրիչը կը յիշէ իր բոլոր ազգատոհմը մաս առ մաս, այնպէս որ անոնք թէեւ միմեանց կրկնութիւն, բայց գրեթէ միշտ նորութիւն մը կը պարունակեն։ Զանց ընելով յիշատակունեց մէջ միայն կրկնուած մասերը, մնացեալը բոլոր կ'արտագրեմ այստեղ։*

**Էջ 5բ․** *Զկարաւտս ողորմութե եւ զմեղաւոր գրիչս յակոբ սարկաւագ եւ զծնաւղսն իմ եւ զամ ազգայինսն իմ յիշեսջիք առաջի քո այդ մերոյ։ ընդ նմին եւ զքեռիքն իմ․ զյովանէսն․ եւ զյակոբն․ եւ զյոհանն իւրեանց զաւակաւքն յիշեսջիք ի տր։ եւ զստացաւղ նր մատենիս զմինաս կրաւնաւորն յիշեսջիք ի քն յս ի տր մեր։*

**Էջ 15ա․** *Զմեղաւք խաւարեալ ոգիս եւ զբազմասղալ գրիչս յակոբ սարկաւագ … ընդ նմին եւ զեղբայրն իմ զխաչերեսն․ եւ զքոյրն իմ զփաշայ խաթունն․ եւ զփեսան իմ զաբրահամն …։*

**Էջ 19բ․** *… ընդ նմին եւ զամուսինն իմ զթարքանն որ տղայ հասակաւ փոխեցաւ առ քն յոյսն մեր եւ մեզ խիստ եւ անբաւ մաղձանք հասուց․ յիշեսջիք առաջի քո այդ մերոյ։ եւ զստացաւղ նր մատենիս զմինաս կուսակրաւն կրաւնաւորն …։*

**Էջ 31ա․** *… ընդ նմին եւ զհաւրաքոյրն իմ զմարթայ խաթունն իւրեանց զարմաւքն …։*

**Էջ 35ա․** *… ընդ նմին եւ զմաւրքուրն իմ զասլիմելիքն եւ զիւր տանուտէրն զխութլուպէկն իւրենց զարմեւաւքն եւ զմիւս մաւրքոյրն իմ զխասմելիքն իւր զարմաւքն …։*

**Էջ 37ա․** *… ընդ նմին եւ զհամեստ հարսներն իմ որ են ինձ քեռեկինք․ զխութլումելիքն եւ զսուլումելիքն իւրեանց զարմաւքն …։*

**Էջ 42ա․** *… ընդ նմին եւ զհանգուցեալ պապն իմ զտր յակոբ եւ զմամն իմ զտավլաթխաթունն․ եւ զհաւրքուրն իմ զմամուշ որ կուսութբ գնաց առ քն …։*

**Էջ 54բ․** *… ընդ նմին եւ զհանգուցեալն առ քն զպապն իմ զավրամն․ եւ զմամն իմ զսարայխաթունն․ եւ զիւր եղբարքն զաքարէ աղան եւ զալէքսանոսն․ եւ զիւր քորն մամայխաթուն եւ զխիաթխաթուն …։*

**Էջ 64բ․** *… ընդ նմին եւ զհանգուցեալքն առ քն․ զքեռիքն իմ զառիւծն, եւ զամիրն, եւ զֆարմաշան եւ զխասպէկն յիշեսջիք առաջի քո այդ մերոյ։ թվ։ պէ․ ի ապրիլ ամսոյ փոխեցաւ ի քն ֆարմաշան …։*

**Էջ 87ա․** *… ընդ նմին յիշեսջիք ի քն զհանգուցեալ կնքահայրն իմ զյակոբ ոսկերիչն որ էր ինձ աւազանին հայր․ եւ զկնքամայրն իմ զխէրխաթունն իւրեանց զարմաւքն …։*

**Էջ 97բ․** *… ընդ նմին յիշեսջիք ի տր զամուսինն իմ զթարքան որ տղայ հասակաւ փոխեցաւ առ քն յոյսն մեր եւ ինձ անմխիթար սուգ եթող․ ո՜հ ո՜հ վշտոյս որոյ փրկիչն յողորմութե շնորհեսցէ իւր միւսանգամ գալստեանն եւ նմա փառք …։*

**Էջ 107ա․** *… եւ զհայրն իմ զսիմէոն եւ զմայրն իմ զնազմելիք …։*

Էջ 129բ. ...կատարեցաւ գիրքս ընծայնութ՟ն որ ի սրբոյն կիւրղոյ է ասացեալ ի փառս ք՟ի ա՟յ ան մերոյ որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն։

Ասոնցմէ զատ էջ 59բ կայ հետեւեալ նօտրագիր լուսանցագրութիւնը՝ օտար գրչէ. ես տ՟ր աւետիք գոլով աբեղայ յաւգուլայ բէկ որ եկաւ ի վ՟ր գ՟ նեղացոց ըզմեզ որ ես անկայ ի պարըսպէն վայր ոհ ոհ ու ոհ։ Ես տիրացու՝ ես գէորգ որ զայս գիրս գրեցի Ամէն Թվ՟ ռմխդ։

## 35.

## ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 197։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ 17×11.5×5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւն, իւրաքանչիւրը 12.5×3,5 սմ.։ – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ. վերնագրերը կարմիր, իսկ սկզբնատառերը բաց մանիշակագոյն. տող 19։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը քրքրուած, թղթերը թափած, պատռտած, փտած ու բորբոսնած, տեղտեղ պակաս. ձեռագիրս արդէն անգործածելի է։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 3ա–4բ։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ միայն քանի մը հատ եւ շատ անարուեստ։ – Յիշատակարան ընաւ չլինելով ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ։*

Մաշտոցիս սկիզբը էջ 1բ–2բ երկրորդական գրիչ մը գրած է. "Խրատ հոգեշահ զոր ասացեալ է սրբոց այ։ Արար ած զմարդն...„ Մեռելի ողբեր չկան, որով կարելի ըլլար գոնէ մերձաւորապէս որոշել թուականը։

## 36.

## ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 179։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14,5×11×5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, ոչ կանոնաւոր։ – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը պարզ, կարմիր։ Տող՝ 17—19։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ փտտած, մնակեր, հին եւ անգործածելի. սկիզբէն եւ վերջէն թերթեր կը պակսին։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագրեր չկան, եղանները կտրուած են կազմի ժամանակ։ – ԳՐԻՉ եւ ստացող՝ Ստեփանոս քհ. տեղ եւ թուական անյայտ։*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 14բ. Զհողացեալ գրիչս զստեփանոս զստացող սորա.

Էջ 53ա. (օտար գրչէ) Տ՟ր ա՟ծ ողորմեսցի? ըռխս պաղտին եւ իւր ծնօղաց Ամէն պօղոսին եւ իւր կողակցոյն ամէ։

Էջ 88ա. ք՟ն ա՟ծ քո ն՟ք խաչիւդ լուսաւորեա եւ պայծառացո՛ զհոգի ստացողի սորա։

Էջ 102ա. ք՟ն ա՟ծ քո ն՟ք մկրտութ՟բդ. եւ յովաննու կարապետին բարեխաւսութ՟բ ողորմեա գրչի սորա եւ ծնողացն, եւ ա՟մ ազգայնոցն։ եւ կարդացողաց. եւ լսաւղաց ամէն։

Էջ 143ա. ք՟ն ա՟ծ ողորմի գրողի մաշթոցիս մ՟ղ ստեփանոսի եւ մասնատուողաց ա՟մ։

Էջ 168ա. ք՟ն ա՟ծ ողորմի ստացողի ն՟ք մաշթոցիս, եւ մասնատուաց եւ աշխատողաց. եւ մեղապարտ ստեփանոս գրչի, եւ իմ ծնօղացն. եւ ա՟մի առհասարակ ա՟մ։

Էջ 178ա. Եւս առաւել եւ ինձ ողորմեսցի ք՟ն ա՟ծ մեղաւոր եւ բազմեղ փծուն գրչի ստեփանոս սուտանուն քհի, որ զանունս ունիմ եւ զգործս ոչ։ եւ ծնողացն իմոց գրիգոր քհի եւ խութլու մելքի առ ա՟ծ փոխելոցն, եւ կողակցին իմ, մինայի, եւ եղբարցն յոհանէս քհի. եւ առաքելի՛ որ փոխեցաւ առ ա՟ծ որդոցն թումայ քհիւ եւ կարդացողաց. եւ լսողաց ամէն։

## 37.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՌՁ = 1631։

*ԹՈՒՂԹՔ 196։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10,5×3,5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն։ – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր, տող՝ 17–18։ – ՆԻՒԹ՝ հաստ, ողորկ եւ սպիտակ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ բարակ տախտակէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 73ա, 93բ, 94ա, 147աբ, 159բ եւ 160ա. միւսները յետոյ լեցուած են յիշատակարաններով։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագիր չկայ։ – ԳՐԻՉՔ՝ մեծ մասը Մխիթար, յետոյ Դանիէլ եպս. եւ այլք։ Թուական՝ Մխիթար ՌՁԴ = 1635 թուին, իսկ Դանիէլ եպս. ՌՁ = 1631 թուին։*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Գ իրք է որ զմարդն ի չարէ ի զատ պահէ. էջ 1: 2. Ցաղագս վասն է բաժին աշխարհիս... Ցառաջին բաժին աշխարհիս բնակեալ են մարդիկք գիշատեսիլ. էջ 1բ—4բ: 3. Զինչ է որ ասէ տր մեր յս քս թէ ահոսիկ չորք ամիսք են. էջ 4բ—5ա: 4. Բանք ժողովածու արարեալ է իմաստնոց վասն աւգտութեան. Առաջին արարչութեան եղեն գործք... էջ 5ա—բ: 5. Նշանացոյց դարուցն. էջ 5բ—6ա: 6. Վասն հաշւի տարւ ամսւ շրջոց աւուրց ժամուց. էջ 6ա—բ: 7. Անանէ շիրակացւոյն ասացեալ է հայոց վարդապետին. յաղագս բարձրութեան երկրի (իմա երկնի). էջ 6բ-7բ: 8. Թարգմանութիւն քաղաքաց զոր ոմն իմաստուն ք"հանա" ժողովեալ էր ի բազում գրոց եւ եդեալ ի մի տուփ. Աւետեաց երկիրն յէմ է... էջ 7բ—10ա: 9. Յաղագս ամարական արեգակն ց"ւց"նէ եւ վասն ինչ պատճառի գրեցան եւ թէ յորում ժամանակի. ա"ւսւ"ք. Ցորժամ ծագեաց լոյս... էջ 10ա—12ա: 10. Առակ Բանախաւսաց. Ասեն թէ ի ստմ"պօլ քարէ պ"տկ"րք էր... էջ 12ա-բ: 11. Յաղագս աշխարհագրութե. 13ա—43ա. (Խորենացւոյ անուամբ հասած աշխարհագրութիւնն է): 12. Արիստոտելի ժ ստորո—թիւնն այս են. Գոյացութիւնն. Որակ... էջ 43ա-46ա: 13. Ամանակք են խօսից. գ. զի երեք ժամանակք ընտրին. էջ 46բ: 14. Վասն ինն դասուց եկ"ղց. 47—48ա: 15. Սակս աւերման իլիոնի եւ շինելոյն հռոմ. էջ 48բ—50բ: 16. Այլուստ. իլիոնական պատերազմն եժն ամ գումարեցաւ. էջ 50բ—51ա: 17. Ի քաշունէն քաղածու. ի ժամանակս մահմետի հասեալ առ մեզ այր... էջ 51ա—66ա: 18. Քաղաքք եւ շինուղքն. Ամասիա թգւրն զմիս շինեաց... էջ 66ա—68ա: 19. Վասն չորս գետոցն որ ելանեն դրախտէն. էջ 68ա—69ա: 20. Այլ եւ խ եւ բ (42) գետք եւ գնացք նոցին. էջ 69ա—72բ: 21. Ակներու անուններր, Անունք բժն մ"գրէից, Որդեկք յակոբայ ազատք. էջ 72բ: 22. Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին, եւ երկրորդ լուսաւորչին վարդանա՛ վրդ.պ"տի պարզ եւ համառաւտ տեսութեամբ. էջ 73բ—104ա: 23. Պատմութիւն սբ Գեղարդեանն եւ այլ տնաւրինականացն քի. էջ 104ա—108ա: 24. Աշխարհացոյց՝ համառաւտ է ազնիւ (ոտանաւոր աշխարհագրութիւն). էջ 108ա—115բ: 25. Քանի մը հին աշխարհագրական անուններու նոր բացատրութիւններր. ինչ. Եբերիա հալապ է... էջ 116ա—117բ: 26. Ցադամայ մինչ– ի ծնունդն քի (ժամանակագրութիւն). էջ 117բ—118ա: 27. Նշանացոյց դարուցն այս են. էջ 118ա: 28. Բացայայտումն եւ անուանակոչութիւն սբ առաքելոց եւ իւղաբեր կանանցն. էջ 118բ—120բ: 29. ...կրնակի պարգեւեսցէ զշնորհս (Նախերգանք քարոզից, կիսատ). էջ 121ա—124բ: 30. Շմաւոն եւ ղեւի եղբայրք կատարեցին զանաւրէնութիւն... էջ 124բ եւ յետոյ 127ա (կէսէն): 31. Արդ այսքանեացս անբաւից հրաշից (Աղօթք նարեկէն). էջ 125ա—127բ: 32. Գովեստ եւ ասաց-ածք վղա՛պտ"ց զոր ասացեալ է, եռամեծին եւ տիեզերալոյս վարդապետին գր"գրի տաթեւացոյն, զոր ես նուաստ բանսիրաց հաւաքեցի փոքր ի շատէ համառօտ բանիւք. էջ 127բ—132բ: 33. Թուաբանական տեղեկութիւն՝ օտար գրչէ. էջ 133ա—բ: 34. Տօմարագիտութիւն. էջ 134ա—146բ: 35. Իբր գրչափորձ օտար գրչէ. էջ 148ա—բ: 36. Տաղ. Ահեալ փառաւ(որ)եալ սքանչելի զարման. էջ 149ա—150ա: 37. Տաղ. Արեգակնափայլ գեղով լի լուսին. էջ 150բ—151բ. 38. Տաղ. Երկինք յերկնից իմաց արարէք. էջ 151բ—153բ: 39. Տաղ. Ամեան վեցերորդի կարապետին. էջ 153բ—154բ: 40. Տաղ. Ամենահեալ սրբուհի դուստր Դաւթի. էջ 155ա—158ա: 41. Տաղ. Ածածին Մարիամ երկնից դշխոյ պանծալի. էջ 158բ—159ա: 42. Պատմութիւն Յովսափու ոտանաւոր՝ կիսատ. էջ 161ա—163ա: 43. Տօմարագիտութիւն. էջ 163բ—176բ: 44. Այժմ ժամանեալ մեր աւարտ եւ ի կատարումն թարգմանութեան (գովեստ Երրորդութեան վրայ). էջ 177ա—178բ: 45. Օրհնութեան ձեւեր. էջ 178բ—179բ: 46. Այլեւայլք. ժամանակագրութիւն, Անուանք դատաւորաց, խրատք, Անուանք հողմոց (մեծ մասը օտար գրչէ). էջ 180ա—184բ: 47. Նախերգանք քարոզից. էջ 185ա—196բ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 34բ. կնիք մը անընթեռնլի փակագրով:

Էջ 66ա. Ով պատուական ընթերցողք յորժամ ընթեռնուք զպատմութիս սուտ մարգարէին մահմետի զնա անիծէք եւ զած մեծաձայն փառաւորեցէք: Եւ զանպիտան գրիչս վմխիթար յիշման արժանի առնէք եւ զծնաւղսն իմ. եւ յիշողք յիշեալ լիջիք յաւուրն աներեկի. ամ:

Էջ 146բ. Ես դանիէլ եպս. բստանպօլսի զայս տումարտէտր գրեցի: թվկն. ռ. ձ. ամիս. մայիս ամսոյ. ձեռամբ իմով գրեցի... աբեղային կարդհանա... անարժան եւ էշէ ողորմին ասէ եւ ողորմի ած իւրեան. միւս անգամ գալստեան. եւ ով ոք հանդիպի կամ աւրինակելով կամ կարդալով ողմի: եւ հայր մեղա ասէ ած ողորմի ասողին հոգոյն. փառք յաւիտենս ամէն: (Գրուածքը յետոյ դիտմամբ ջնջուած, որով տեղ տեղ անընթեռնլի):

Էջ 158ա. Ես անարժան բանի սպասաւոր մեղաւոր... ամիս գրեցի: թ"ւն. հյ"ց. ռձդ: (Նոյնպէս մելանով ջնջուած եւ անընթեռնլի. միայն թուականն է անաղարտ):

Էջ 160ա. կնիք մը “Քի. ծռ. Յ*վանէս„:

Էջ 163ա. ապրիլ ամսւ ժը օր բշի: Ով սրտէ սիրեցեալ եղբայրք անմեղադիր լերուք սղալանաց մերոց աւրինակն այս էր թուխթ էր անկեր: միահամուռ գծիդ. բծիդ: որ ես գրեցի:

# 38.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՊԿԵ = 1416։**

*ԹՈՒՂԹՔ 297: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14×9×6,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 9×3 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, գլուխներն ու սկզբնատառերը կարմիր. տող 21: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը կտրտուած եւ քանդուած, Թղթերուն ծայրերը սեւցած, բայց անվնաս: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1 ա–2 բ, 73 ա–բ. 216 ա–բ եւ 297 բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ շատ անարուեստ: — ԳՐԻՉ՝ Սարգիս եպիսկոպոս. Թուական, ՊԿԵ = 1416. տէր եւ տեղ՝ անծանօԹ:*

Ձեռագիրս կը պարունակէ. Աւետարան ըստ Մատթէոսի. էջ 3ա – 72բ. Մարկոս. էջ 74ա—124ա. Ղուկաս՝ էջ 125ա—215բ. Յովհաննէս 217ա — 275բ. Իր ընդ եղբարս՝ էջ 276ա – 281ա. Այբն առաջին բղխեց տրղա. էջ 281բ—284ա. Այբ անըսկիզբն սաէ զԱստուած. էջ 284ա—287ա. Այբն Աստուծոյ գքեզ մերձակա. էջ 287ա – 292բ. Հաւատով խոստովանիմ. էջ 292բ – 296ա։ Կանոն, ցանկ եւ նախադրուԹիւն չունին աւետարանները։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 3ա. Զսարգիս աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ (Մատթէոսի խորանին մէջ)։

72բ. Զտառապեալ եւ զմեղուցեալ) հոգով անձն ն̃զիս կոչեցեալ եպ̃ս եւ գործովք Թափուր ի յա̃մ մասանց բարեաց աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ ամէն։ ը օրն գրեցաւ գլուխս։

74ա. Զն̃զիս յիշեաց (Մարկոսի խորանին մէջ)։

101բ—102ա. Վայ որ ձեռս կու դողայ ու աչքի աչքի կիրս կու աւերեմ ինչ առնեմ որ ծեր եմ ու աչքս վատատես է խ. տարի է որ գիր կու գրեմ Թողութի̃ արէք։

124 ա. զն̃զս աղ̃չմ յիշել ի տր̃։

124բ. Արդ նորոգեցաւ ս̃բ աւետարանս ձեռամբ սուտանուն երեմիայիս անուամբ քհայս գործով Թափուր յա̃մ քահանայագործութենէ եւ սեւերես դիմաւք կամ ի պատրանք աշխարհի անդարձ մեղաւորս հանդերձ ծնաւղաւք եւ ազգականաւք? աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ։ (Բոլորովին քերուած. օտար միջոցներով միայն կրցայ կարդալ)։

185բ—186 ա. վայ որ զձեռս ի դողման է ու աչքս վատայտես եւ ես ծերացեալ կամ. խ. տարի է որ կու գրեմ։

215բ. Զտառապեալս եւ զմեղսամերկս անձն եւ հոգով մեռեալս, եւ մարմնով մոլորեալս ն̃զս գրիչ անուամբ ե̃պս եւ գործով Թափուր ի յա̃մ քա̃հագործութենէ. եւ սեւերես դիմաւք կամ ի պատրանք աշխարհիս անդարձ մեղաւորս հանդերձ ծնողաւք եւ ազգականաւք աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ ի տր̃ ա̃ծ ամէն։

Անդ. ԶԹադէոս քհ̃ եւ զն̃զիս քհ̃ք. աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ։

267բ—268ա. Վա̃յ որ ձեռս կու դողայ ինչ առնեմ ուժել չեմ կարել որ չգրեմ Թողութի̃ արարէք վն̃ ա̃յ։

275բ. Զմեղսամերկ եւ զսեւացեալ հոգով. չարագործ մարմնով աչօք կուրացածս ն̃զս աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ ամ. Թվ. պկ̃ե. աշկի. ժղն աւարտեցաւ։

281ա. Քն̃ ա̃ծ յն̃ տր̃ ընկալ զհոգի մեռուցեալ ծառայիս ա̃յ սղ̃նի վա̃ ինձ կանամբոյ հոգոյ իմոյ բազմամեղի աղ̃չմ. Ով պատուական ս̃բ հանդիպողք պաղատելով աղաչեմք զձեզ։ Որ եւ զքաջ հովապետքն մեր, զտր̃ ստեփաննոս, զտր̃ զաքարայն, զտր̃ Թադէոսն, զտր̃ ստեփաննոսն. զտր̃ գրիգորն. զտր̃ ալէքսիանոսն. զտր̃ վանականն, զտր̃ մարկոսն. զտր̃ անտոնն. տր̃ յովանէսն եւ զտր̃ սղ̃ն աղաչեմ յիշել ի տր̃ եւ ա̃ծ զձեզ յիշէ ի յիւր միւսանգամ գալուստն ամէն. եւ զիս զմեղապարտ գրչաւս ամէն։

296ա. եւ ինձ բազմամեղ սարգսիս եւ յիշողացն որ զմեզ յիշատակէ ամէն։ ընդ նմին զհոգեւոր եղբայրն մեր զմատԹէոս քա̃հյն եւ զյովանէս քա̃հյն հանդերձ ծնողաւք եւ ազգականօք աղաչեմք յիշել ի տր̃ եւ զիս զանարժանս ամէն։

296բ—297ա. Արդ կազմեցաւ ս̃բ աւետարանս ձեռամբ անարժան երեմիայ անուամբ քհ̃յ եւ գործովք ունայն ի վայելումն գիւղաչքաղաք չամալաւու ի դուռըն ս̃բոյն սարգիսի զաւրավարին եւ ի ս̃բ նշանին ի ձեռն արժանաւոր քհ̃նային։ Ով յանդգնէ զսա ի չամալաւու. Հեռացուցանէ կամ ընդ ինքն պահէ եւ ասէ Թէ զորայ տ̃րն ես իմ եւ կամ ծախէ եւ կամ գրաւէ Թէ մերոց Թէ աւտարաց լինի նայ զանէծքն Կայենի առնէ զպատիժն յուդայի առնէ առնեցելոցն պատուհասն խաչահանուաց առցէ. եւ ի քն̃է անմասն ելցէ ամէն. Թվ. ռղ̃ե։ Դր̃ձեալ ա̃ծ ողորմի ասացէք ամէն։ եւ աւրհնաւղն իմ կիրակոս վարդապետն. ռղ.

Անդ. Նաւ զաներն եւ զմէհրանն, եւ զդքանչն իմ զխոյանդն. եւ զդուստրն իւր խաԹունն ամէն. Թվ. Ձխա̃։

297բ. տր̃ ըստեփանոսն մեռաւ Թիւն ռ. ճ. է։

# 39.

## ՇԱՐԱԿԱՆ

**ՌՁԷ = 1638։**

*ԹՈՒՂԹՔ 360։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ 11×8×6,5 սմ. – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն։ — ԳԻՐ՝ մանր բոլորգիր, թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերը եւ սկզբնատառերը ոսկեզօծ, կարմիր եւ կապոյտ։ Տող՝ 23։ – ՆԻՒԹ՝ կոկած մագաղաթ. – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը նոր. բայց թերթերէն մեծ մասը կտրտուած, պատկերները ջնջոտուած, կամ կտրուած հանուած, գրութիւնը շատ տեղ մագաղաթին մաշուելովը եղծուած։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–2բ եւ 360բ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ շատ կան եւ բաւական յաջող. բայց շատերը կտրուած կամ եղծուած են։ – ԳՐԻՉ Միքայէլ. տեղ՝ Կ. Պօլիս. թուական ՌՁԷ = 1638։*

**ՅԻՇԱՏԱԳՐՈՒԹԻՒՆՔ.** Էջ 287բ. **Ով պատուական հայրք եւ եղբայրք՝ յիշեցէք ի տէր աղաւթս ձեր ըզխաչատուր երէցն, որ ի վե՞ր սորա ճգմ աշխատանք ունի. եւ ած զձեզ յիշէ։**

Էջ 360. **Ես մեղաւորս. դժիր մխիթարս գրեցի թվ. ուճ։**

**Գլխաւոր յիշատակարան** Էջ 359ա. **փառք ամենանբ երրորդութեանն հաւր եւ որդւոյն եւ հոգւոյն սըրբոյ յաւիտեանս ամէն։ Գրեցաւ յամին ուձէ ի մայրաքաղաքն կոստանդինուպաւլիս ձեռամբ թոխաթցի միքայէլի. Արդ աղաչեմ զամենեսեանդ որք հանդիպիք սմա. կարդալով կամ յաւրինակելով միով ողորմեաիւ յիշեցէք զմիքաէլ գըրիչս. եւ զծնաւղսն իմ. եւ զայլ ամ ննջեցեալսն իմ. եւ ած զյիշողդ յիշէ իւր միւսանգամ գալստեանն ամէն. հայր մեր որ յերկինս։**

# 40.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**?**

*ԹՈՒՂԹՔ 294։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×7×5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 7×2 սմ. – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերը, սկզբնատառերը, վերնագրերը, զարդագրերը եւ լուսանցազարդերը միայն կարմիր. տող 20։ – ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ։ — ԿԱԶՄ՝ նախկին կաշեպատ տախտակէն կը մնայ միայն առաջին կողին տախտակը։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ ամբողջը շատ մաքուր. միայն վերջին կողը պոկուելով՝ թափած եւ կորսուած են քանի մը թերթեր։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ ընդ ամէնը 14 երես։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ շատ փոքրիկ եւ աննշան. տասը էջ կամարները, 4 խորաններն ու 4 աւետարանչաց պատկերները հասարակ արուեստով։ — ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ, որովհետեւ տող մ'անգամ յիշատակութիւն չկայ. գլխաւոր յիշատակարանը թերեւս կորսուած թերթերուն մէջ ըլլայ։*

**Ձեռագիրս չունի ո՛չ ցանկ եւ ոչ նախադրութիւն. կանոններու խորաններ ալ թէեւ նկարուած, բայց կանոնները չեն գրուած։**

# 41.

## ԽԱԶՏԵՏՐ

**ՁԽԹ = 1200։**

*ԹՈՒՂԹՔ՝ 209։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 11×8×4 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն։ – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, աղիւսագոյն, բաց բալագոյն, նարընջագոյն, կանաչ եւ դեղին։ Տող՝ 15։ — ՆԻՒԹ՝ մագաղաթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ բարակ տախտակէ։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր. բայց 202–209 թերթերը բուն գրքէն դուրս թղթեայ յաւելուած մը լինելով՝ քիչ մը հինցած են եւ վերջէն պակաս։ Այսպէս է նաեւ առաջին թերթը եւ սկզբէն պակաս։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, խորաններ եւ զարդագրեր քիչ կան եւ բոլորն ալ միայն բաց-բալագոյն։ – ԳՐԻՉ՝ Մաթէոս քահանայ. տեղ՝ Եկեղեաց գաւառի Սուրբ Գէորգ գիւղը. ստացող անանուն քահանայ մը. թուական ՁԽԹ = 1200։*

**Ձեռագիրս կը պարունակէ կանոնագլուխներ, թագաւորք ապաշխարութեան, Մարտիրոսաց, Ալէլուք գիշերութեան, Առաւաւտերգեր, փառեր ապաշխարութեան եւ կիրամուի, ժամամուեր, Մեսեդիք, Սաղմոսիք, ճաշոյ ալէլուք, խոնարհեցուք, Ուղէցիք** (88 **եղանակով) եւ կցուրդներ՝ բոլորը ձայնագրեալ։**

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ.** Էջ 149բ–150ա. **ի** 1877 **փետրվար** 2 **օմի մարիամ հանգուցուեալ ողջանվեցաւ, բաքեց մէկ շաբաթ անց էր կեցէ երեք շաբաթի ողջանվեցաւ մարիամ։**

Էջ 179բ. **Ջմեղուցեալ գրիչս զմխիթ։ յիշեա՛։ —**

Էջ 200բ. Փառք համապատիւ նր երրորդութեանն յաւիտեանս յաւիտից ամէն: Աստանաւր եղեւ կատարումն տետրակիս ի գաւառիս եկեղեց ի գեղս որ կոչի նր գէորգ ընդ հովանեաւ նր ածածնիս ձեռամբ մեղապարտ քահնի մաթէոսի: ի խնդրոյ պատուական քահանայի (անունը քերուած): Արդ գրեցաւ սա ի թագաւորութն հեթմոյ զոր միակից կոչեն ի հայրապետութիւն: տն գրիգորի ի թվիս չխթ: զոր յամ ամի եղեւ սով սաստիկ ընդ ամ աշխարհս եւ առաւ դամասկոս ի խազան խանաւն: Արդ աղաչեմ զընթերցողդ չլինել մեղադիր խոշորութե եւ սղալանաց գրոյս: այլ յիշել զմեղուցեալ գծողս յաղաւթս ձեր. եւ որ զմեզ յիշէ բարւոյ բանիւ եւ ինք յիշեսցի յողորմած բարերար փրկչէն ամէն: (Գլխաւոր յիշատակարանն է այս, որմէ յետոյ եղածները օտար գրչէ են):

Էջ 201ա. Զվերջին ստացող քաղցրաձայն եւ հոգեւոր երգարանիս Զխօջա պ-ղոսն՝ եւ զհայրն իւր մանսուրն. եւ զմայրն աննային՝ եւ զեղբայրն զգ̃գր քհնյն. ալեքսեան եւ աւետիքն՝ եւ իւր աղջիկն զշահզատէն. յիշելով ամէն:

Էջ 201բ. Ես արդ եւ խօջ(ա)պ-ղոս թավաքալեցի մանսուրի տղ. գնեցի զայս տետրս իմ եղբայր գ̃գր քհնյին համար ի թվկնութես հայոց Ռ. Ձ. Ա. 'ի հայրապետութի նր էջմիածն. տն տր մովսէս կթղիկոսին. եւ թգրութի պարսկաց. շահ ապասին թոռան շահ սէֆուն. եւ է յաթոռ շահ սէֆուն քաղահան որ կոչի շօշ. եւ անդ կան քրիստոնեայք բզմ. եւ ունին վանք եւ անապատք մրդկց եւ կուսանաց. եւ եկեղեցիք հայոցս. ժե. եւ փռանկաց. ե: եւ որք երգէք կամ օրինակէք զվերջին ստացողիս լի բերանով ողորմի ասէք եւ ած ձեզ ողորմեսցի ամէն: հայր:

# 42.

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

ՉՀ = 1321:

*ԹՈՒՂԹՔ 311 (չհաշուելով առաջին պահպանակը): — ՄԵԾՈՒԹԻՒՆ ։9×21×10 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, իւրաքանչիւրը 22×7 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող՝ 22. թանաք՝ սեւ. վերնագրերը՝ սկզբնատառերն ու սկզբնատողերը վարդագոյն եւ կարմիր: — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ հաստ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ պահպանակը եւ 311բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր քիչ եւ անարժէք. միայն առաջին երեսը կայ հասարակ ճակատ մը՝ ուր նկարուած են երկու վագր: — ԳՐԻՉ՝ Մատթէոս քահանայ. տեղ Տաթեւ. ստացող Տաթեւի միաբանութիւնը: Թուական ՉՀ = 1321:*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. (պահպանակին վրայ). Ով էս պահարան թուխտս կորի Սատանայ Ես կայեն ենի (երկիցս) (Նոյն երեսը կայ եւ ուրիշ մէկ երկու տող գրութիւն, բայց ջնջուած:)

Էջ 69ա. Ով երկրպագո-ղք քո եւ հաւատացեալ ժողովուրդք՝ յերեսս անկեալ աղերսեմ մաղթանաւք տառապեալ եւ ամենաթշ-առ եղկելի ծրիչս: զի՛ 'ի լի՛ սրտէ ասել ած թող զգծողի սորայ զյանցանս 'ի ձեռն քո նր նշանիս՝ եւ ձերն մի՛ եւս յիշեսցի: ամէն:

Էջ 72ա. Զմեղուցեալս յիշեա՛: աղաչեմ:

Էջ 79ա. Ո՛վ նր ընթերցաւղ. բարեխաւս քեզ տանդ այդ մեծ: մեղապարտ ծրողիս զթողութի հայցեայ ի մեղսաքաւիչ տէն:

Էջ 85բ եւ 86ա (լուսանցքի վրայ օտար գրչէ) մարկոս կ-նաւոր:

Էջ 96ա. Զմեղապարտ մատթէ յիշեսջիք:

Էջ 114բ. Զամենամեղ եւ զթշ-առ ծրիչս զմատթէ յիշել ած ողորմոյիւ: աղաչեմ վս տն, զի եւ դուք լիջիք յիշեալ:

Էջ 126բ. Աստանաւր պարտիք յիշել զամենամեղ ծրիչս զմաթէ:

Էջ 131բ. Զմեղսամակարդ եւ զտառապեալ գծող սորին զմատթէ յիշման արժանի վարկջիք ով քհ նոր ժողովուրդք: զի եւ դուք լիջիք յիշեալ:

Էջ 135ա (օտար գրչէ) Ես մանուկ ծառայ այ:

Էջ 159ա (օտար գրչէ) ծառայս նր թումայի մելի քահանայք եւ տնուտերք առաջելին:

Էջ 173ա. Զեղկելիս զմատթէ գրիչ յիշեսջիք՝ Ո՛վ ածարեալ հարք եւ եղբարք: զի եւ ինձ հասցէ մասն յայդմ հրապարակալոր թողութեցդ. ձերով խնդր-ածովք: զի եւ ձեզ հասցէ մասն սրբոցն աղաւթիւք: ամէն: թվ: չհ:

Էջ 179ա. Զմեղապարտս յիշել հայցեմ վս տն:

Էջ 190ա (լուսանցքի վրայ օտար գրչէ). Զմեղաւոր ...եթ Յշ եւ ած:

Էջ 248բ. Ով ածարեալ հարք եւ եղբարք եւ համաւրէն ժողովուրդք այ. զտառապեալ եւ զամենաթշ-առս մատթէ յայսմ տեղւոջ յիշեսջիք եւ թողութի մեղաց հայցեսջիք ի քէ. եւ ած յիշողացդ ողորմեսցի: ամէն:

Էջ 310բ. Փառք եռանձնեայ եզաբուն տէութե եւ միոյ ածութեն. որ զիմ աղկաղկ եւ զտկար բնութիս արժանացոյց տեսանել զվերջի գիծ մատենիս այսորիկ: ամէն եւ եղիցի եղիցի:

Էջ 310բ (օտար գրչէ) յանուն այ: ես չողիկ միաշայորդ? (քերուած եւ հազիւ ընթեռնլի) գնեցի զընամաշտոցս իմ հալալ արդեամբ. ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց. հօրն իմոյ միրաշին եւ մօրն իմոյ խիրիկին եւ ամ արեան մերձաւորաց իմոց եւ... թե տվի... (մնացեալը քերուած):

Գլխաւոր յիշատակարան (բուն գրչէն, էջ 293—300). Յիշատակարան գրոցս Զոր ի կարգի այսմ ի սոյն ժամու աւուրս պարտին անվէհեր ընթեռնուլ անխափան: Սկիզբն ամենայնի եւ պատճառ ած ճանաչի հաւ-

առով եւ իմաստուն տեսողաց: անեղ եւ անսկիզբն. անմահ եւ անվախճան. անուր եւ աներբ. ո՛չ սկսեալ եւ ո՛չ դադարեալ: որ ամենեցուն զլինելն ետ եւ զամենեսեան յիւրաքանչիւր տեսակս որոշեա՛լ զարդարեաց: 'ի հոգի. 'ի շունչ. յիմաստս. 'ի գեղս. 'ի գոյնս. եւ 'ի զաւրութի՛ս. զիմանալիսն եւ զզգալիսս: եւ զի սոքայ երկեակ գոլով, անհաղո՛րդք միմեանց. բաժանեալք եւ որոշեա՛լք. իւրաքանչիւր սահմանի 'ի ներքս կալով. ինքնակամք եւ անձնիշխանք. ունելով իմաստս եւ զաւրութի՛ս. իմանա՛լ զարարիչն, եւ զպատճա՛ռն ամենայնի եւ առնե՛լ զհաճոյս նորայ: Որ եւ յայսմանէ վրիպեալ գտա՛կն չարեաց. եւ մայրն անհնազանդութե. մուրհա՛կն կորըստեան եւ խանգարիչն ամենայն՝ էացելոց: շեղեա՛լ 'ի պատճառէն որ բարեա՛ցն էր առիթ: եւ ինքնակործան կամաւք. կամեցաւ ա՛ծ լինել ընդ ա՛յ. եւ ունել զի ներքո՛յսն ընդ ձեռամբ: եւ փոխանակ ա՛յնր կամացն կատարման. անկեա՛լ 'ի պատւոյն զոր ունէր: եւ տարամերժեալ 'ի բարձրութենէն՝ խոնարհեցաւ եւ ափշեցաւ: իսկ ապա իմաստուն ճարտարապետն եւ ամենահնարն: խորհըրդեամբ՝ առնէ կենդանի մի յերկոցունց, տեսակ խոնարհութե՛ եւ բարձրութե, ա՛յսինքն յիմանալւոյն առեմ եւ յզգալ-ոյս: շաղկապ երկուց զատուցեալ ատարացե՛ղ բնութեցն: զի միացուցանելով զերկոսեան. եւ ընդ ինքեամբ նուաճելո՛վ զամենայն խափանեսցէ զչարին զի ներքս ճանապարհն. եւ զի յառաջատես խորհրդեա՛մբ էր գործն եւ իմաստութե. ոչ վաղվաղեաց անկատար հասկաւ՝ հանե՛լ 'ի բարձրագոյնն փառս: եւ 'ի կատարեալն տեղի՝ ուր հանդերձեա՛լն էր հանել: այլ եդ զնա 'ի տեղւոջ ինքնանման. որ է միջասահման. ա՛յս ինքն զդրախտ առեմ յեդեմ ընդ արեւելս: եւ ետ պատուիրան. պահե՛լ զնա եւ առնել: Որ եւ ա՛յսմ ա՛ծային խորհրդոյ եւ կամացն հանդերձեալ՝ հետամո՛ւտ եղեալ չարին. ո՛չ տանելով մեծի տուժին եւ տուգանացն. ինքեա՛ն զրկանաց: եւ ոչ զհիւթաւոր հողեղէնն յիւրում տեղւոջ գերագունի եւ աննիւթականի տեսանել: Քանզի այս էր կամք արարչին՝ եւ կատարումն հանդերձեալ խորհրդոյն. տա՛լ նմայ զտեղի անկելոյն: Ապա. այսու նախանձու, աման գտեալ իւրոյ չարութեն զհնարաւոր եւ զչարիմաստ գազանն՝ զաւձն անիծեալ. եւ նովաւ պատրեա՛լ զկինն անմեղ՝ եւ անկիրթ, որ ո՛չ էր տեղեակ չարին խորհըրդոյ՝ եւ ո՛չ նախա-գաղափար զոք ունելով ինքեան խաբէութեն: վա որ- հաւանեա՛լ չարին խրատու, եւ մոռացեալ զպատուէ՛րս ա՛ծային. եկե՛ր զմահարարն պտուղ եւ ետ ա՛ռն իւրում ընդ իւր եւ կերա՛ւ. եւ յա՛յնմանէ՝ զմա՛հ ժառանգեալ՝ եւ զմերկութի 'լուսեղէ՛ն փառացն: եւ զրկեա՛լ ո՛չ միայն 'ի բարեվայելուչ դրախտէն եւ ի փառացն, այլ եւ որ հանդերձեա՛լն էր ելանել: եւ փոխանակ ա՛յնր անհա՛ս եւ անպատում ճոխութեանն. անկեա՛լ 'ի յաղքատս, թաւալէր. ի մե՛ղս եւ յանաւրէնութի՛ս. հաւասարեալ անասնո՛ց անբանից. եւ ճըճեա՛ց զեռնոց՝ եւ բազմոտանեաց: որ եւ ոչ ի սոյն մնալ շատացեալ. այլ՝ եւս վատթարագունի հասեալ վիճակի: ըստ ա՛յնմ թէ ցանկայր եղջերացն որ խոզիցն էր կերակուր եւ ո՛չ ոք տա՛յր: զի որ փոխեա՛ց զփառս անեղծին ա՛յ՝ 'ի նմանութի պատկերաց

եղծականի. մարդ- եւ անասնո՛յ՝ չորքոտանեա՛ց եւ թռչնո՛ց. այլ եւ ա՛նշնչից քարա՛նց եւ փայտից. եւ նիւթի՛ց պատւականա՛ց եւ անարգաց: զի՞նչ ապա՛յ պարտ է առել զանընդհատ կորուստն անզտանելի: իսկ ապա անսահմա՛ն բարին. եւ ամենայն բարեաց պատճա՛ռն: ոչ կարացեալ տանել զկորուստ իւրաստեղծ պատկերին: այլ ամենահնար իմաստիւքն իւրովք որով հաղո՛րդս արար ինքեան. եւ զա՛յն եւս հնարաւորեաց նոցին իմաստ՝ զի ինքեամբ զինքեանս կանգնեսցեն ի գլորմանէն: Նախ՝ պատարագա՛ւն հաբելի, եւ յուսադրութե՛ն ենովսայ. ապաշխարութե՛ն ենովքա. տապանարարութե՛ն նոյի, հաւատալո՛վն աբրահամու. պատարագելո՛վն 'իսահակայ. ա՛ծատեսութե՛ն յակովբայ. ողջախոհութե՛ն յովսեփու. եւ ա՛յլ սոյնպիսեաւք: զոր նախատըպեա՛ց զիւրոյն գալստեան եւ զմե՛րն փրկութե խորհուրդ. ընդ աղաւտ եւ խրթնատեսա՛կ կերպիւ: զոր յետոյ մարգարէիւքն բացափայլեաց 'ի զանազան տեսակս եւ ի ձեւս: մինչեւ ինքն իսկ գլխովին եկեալ կատարեա՛ց զամենայն կամս արարչական սիրոյն առ ի՛ւր արարածն: զթշնամին կապեա՛ց եւ զկորուսեալքս գտա՛ւ. զերկիրս երկի՛ն արարեալ եւ զմարդիկ ընդ հրեշտակս խառնեալ. եւ զամենայն արարածս շաղկապաւն յինքն մածեա՛լ միացոյց. աւրինա՛կ իմն իբրեւ սաղմն ի յարգանդի. զամենայն գոյութի մարմնոյ՝ զնեարդս, զջիլս եւ զոսկերս՝ յի՛նքն շարայարեալ: հոգւո՛վն իմանալեաւ՝ բովանդակեալ կրէ զամենայն: Նոյնպէս եւ ըստ ա՛յսմ աւրինակի. տ՛րն մեր հնարաւորեալ զգլուխ մեր՝ եւ զընդինքեա՛ն միութի՛ն: զոր զարդարեա՛ց մարգարէիւք. պարսպեա՛ց առաքելաւք. պսակազգեա՛ց արար մարտիրոսաւք: ուսոյ եւ զառ յապա եղելոցս՝ հնարաւորելո՛վ զկեալն. 'ի ձեռն զանազան կարգա՛ց եւ կրաւնից եկեղեցոյ աւանդեա՛լ հաստատեաց՝ 'ի ձեռն ա՛ծատեա՛ս եւ քա՛զգեա՛ց տեարց: զոր 'ի մի հաւաքեալ ո՛ք հայրն մեր եւ արդիւնական վարդապե՛տն մաշդոց. եթո՛ղ մեզ գանձ անկողոպտելի եւ առձեռնպատրաստ ճանապարհ եւ մո՛ւտ կենացն յաւիտենից. եւ ընդ ա՛ծ միութի: Քանզի սա՛յ զանշունչ եւ զանկենդան նիւթս ի քարա՛նց եւ ի փայտից տա՛ւն եւ տեղի ա՛յ հրաշագործէ. ա՛ծային շնորհա՛ւքն ներանձնաւորեալ. դրա՛խտ իմանալի եւ զգալի: Սա՛յ եւ զծա՛ռն կենաց 'ի սմայ՝ պտղաբերելո՛վ մեզ զքն. ի նո՛յն նիւթի՛ց անզգայից՝ վերընծիւղէ: Սա՛յ զտարամերժեա՛լսն յուխտէ՝ աւետեացն վերստին ծնանի՛ յորդիս ա՛յ՝ եւ ժառանգորդ կենա՛ցն յաւիտենից: Սա՛ զընութի՛ս ջուրց շնորհընկա՛լս գործէ՝ առ ի յաւգո՛ւտ ամենայնի Սա՛ զամենայն նիւթս անարգս՝ պատուականագործէ: Սա՛ ի քարանց անզգաից. որդա՛նդ ա՛ք. եւ սեղա՛ն նո-իրաց եւ պատարագա՛ց ա՛յ. յաւրինէ: Սա՛ զաւրհնութի՛ նախաստեղծիցն 'ի զուգաւորութի կուսից ար-ա՛ց եւ իգա՛ց վերըստի՛ն ընձեռէ գրաւակա՛ն տալով զպսակն նիւթաւոր. աննիւթի՛ն եւ յաւիտենականին: Սա՛ յերկաթո՛. 'ի պղնձո՛յ եւ ի չերտից փայտից. զերանաւէտ ձայնին տա՛ մեզ ունչանակ. զարթուցանելով յերկե՛զն ա՛յ եւ 'ի սէր: Սա՛ զպտուղս արմտեաց զկալո՛ եւ զհնձանի արդիւնաւորէ, կենա՛ց մարդկան ի կցորդութի եւ ի նշէրս ա՛յ արժանաւո՛ր յընդունելութի: Սա՛ ի հաւուց անբանից ողջակէզ տն

մատուցանէ: եւ զհանգիստ փոխեցելոցն յիշատակաւ. այսու փառաւորէ: Սա զա՛ղն հիւթական. անհիւթ էութեն այ պատուագործէ: Սա զթշ-առացեալսն ի մեղս յապաշխարութիւն ածեալ սրբէ եւ մաքրէ. Սայ դարձեալ ազատութի՛ տալով արձակէ եւ ժառանգորդ յաւիտենից կենա՛ցն կացուցանէ: Սա զմարդկան ա՛զգ հողեղինաց. գերապատիւ քան զհրեշտակս երեւեցուցանէ. ի զանազան կա՛րգս եւ յաստիճանս. կէս սարկաւագաց սարկաւագաց. քահանայից եւ սարկաւագուհեաց: Սա զհոգւո՛ն ածական զօր վերստին փչմամբ ետ առաքելոցն. նիւթական ի-գօքն ընձեռէ ամենայն հաւատացելոց: Սա զամենեսեան առ հասարակ զայրս եւ զկանայս եւ զմանկտիս, ի մասնակցութի մարմնոյ եւ արեա՛նն տն հրաւիրէ: Սա զհրաժարեալսն ի կենցաղոյս, ի մեծա՛ց մինչեւ ցփոքունս՝ յիւրաքա՛նչիւր կարգս՝ եւ յաստիճանս՝ բարեհամբաւեալ, եւ ի ձեռն հրեշտակի բարւոյ առաջնորդութե առ ք՛ն ուղեւորէ: Սա զեղեալսն ի գիրս հանգստին իւրեանց պահելով անշարժ եւ անխարդա՛խ. անմատչելի ի դիւական բաղադմանց, ամրափա՛կ կնքով իւրում տնն մատուցանէ: Սա եւ զնշխարս սրբոց՝ եւ ամենայն մարտիրոսաց ի տեղւջէ ի տեղիս փոխարկելոցն աղերսարկութե՛ն մանաւորի: Սա զերաշտութի ... ցասմամբ տն. ի հաշտարար կամս փոխարկէ. Սա զերդմնահա՛րսն յանդգնութբ, եւ զպղծեալսն կերակրաւք. դարձեալ սրտիւ զղջականաւ թողութե՛ եւ մաքրութե արժանացուցանէ: Սայ եւ յամենա՛յն տեղիս ուր չիցէ արժան. տուն եւ տեղի՛ աղաւթից կազմեալ մաքրազարդէ՛ եւ պայծառացուցանէ: Սա եւ զնո՛յն ինքն զածաւանդ աւրէնսդրութի՛ն. զոր յայսմ աւուր ետ իւրոց. սրբոց առաքելոցն. այժմ մեաւք 'ի գլուխ հանեալ կատարեաց եւ կատարէ՛ մինչեւ ի վախճան: — Արդ որ այսպիսեաց եւ այսքանեացս է առիթ եւ պատճառ: Որոց եւ ամենա՛յն որք վկայէ՝ զի ո՛չ պաճուճեալ սեթեւեթանաւք են ասացեալքս, այլ ճշմարտութբ էութե՛ն յայտարարութի: Վ՞ն որ- ո՛չ ամաչեմ բոլորովին ածագործութի՛ զսա՛ անւանել. եւ կամ նոյն ինքն շունչ եւ հոգի ածական: զի զնախահա՛րցն սրբոց. եւ զմարգարէիցն, եւ զառաքելոցն եւ զածազգեաց հայրապետա՛ցն եւ վարդապետա՛ցն հոյլսն՝ ո՛չ մասնաւորաբար այլ բովանդակ բոլորովին՝ ի սոյն հաւաքեալ տեսանեմ, միութբ 'ի գլուխն մեր ք՞ն միացեալ: Վ՞ն որոյ զսյս ամենայն նկատելով. Ես աստուածեալս 'ի կենաց. եւ գրաւեալս մահու: զտա՛կս չարեաց եւ տարամերժեալս ի բարոյն. ուխտադրուժս ածակա՛ն ուխտից. եւ ամենեւին զրկեալս ի մասնակցութենէ բարոյն. զոր ես ինձէն գիտեմ եւ ի գիրս հաստատեալ վկաւէմ ճշմարտապէս խոստովանելով. զանհնարին եւ զանբաւ չարեացն իմոց զամբարս որք են անքննելի եւ անթւելի: ո՛չ ինչ ունելով մասն գործոց բարեաց. բայց յոյս միայն՝ առ ած, եւ հաւատ հաստատուն եւ անխարդախ. զոր թաքուցանել կամ ուրանալ ո՛չ է պարտ: որ միայն ինքեա՛ն է տեսանելի՝ եւ հաւատալի: Որ եւ ես յա՛յս յոյս վստահացեալ եւ 'ի սոյն հաւատ ապաւինեալ.. 'ի ծերացեալս ժամու ձեռնամուխ եղէ ի գիծս սյսմ ածունակ տառի. տկար մարմնով եւ անզաւր անձամբ. կացեալ 'ի լուսոյ աչաց՝ եւ դողդղեալ ձեռամբ, եւ խելագարեալ մտաւք. որ եւ նոյն ինքն գիծդ վկայ են ասացելոցս: արդ զայս ամենայն 'ի բա՛ց դնելով պատճառ հաւատալով սուղին եթէ յոյս ո՛չ երբէք ամաչեցուցանէ: զի որ ամենահնարն է եւ զամենեցուն զկեա՛լն կամի: եւ զի՛մն վստնեալ շնորհ: կարող է 'ի ձեռն շնորհատրութեցն որ յայսմ տաւէ վերընծայի արժանաւորաց. վերստին եւ զիս մանաւորել եւ զկորուսեալն դարձեալ պարգեւել: եւ այս ձերո՛վ ՛նք աղաւթիւք. ո՛վ ածարեալ հարք իմ եւ եղբարք՝ եւ ՛նք տառիցս ընթերցողք եւ լսողք: Վ՞ն որոյ յերեսս անկեալ առ ոտս ձեր աղերսական բանիւ եւ մեծաւ թախանձանաւք՝ խնդրեմ զի զպարգեւեալն ձեզ շնորհ՝ յառատաձիրն պարգեւողէ. ո՛չ յաչաղմամբ, եւ կամ նախանձու՝ եւ ո՛չ կամելով՝ թագուցանէք. այլ զի ձրի առէք. ձրի տուք. զեւթանասնեկի եւթն թողուլն ի միում նազի. եւ ես հաւատամ սուղին եթէ զոր կապէք կապեալ լիցի. եւ զոր արձակէք՝ արձակեալ. եւ երանի ողորմածաց՝ զի եւ ինքեա՛նք հանդիպեսցին: Արդ եթէ դուք թողո՛յք մեզ եւ արձակէք. եւ ած լսէ եւ արդարացուցանէ, կամելովն: Իսկ արդ ո՞վ է որ դատապարտէ. եւ այս աղերսանք տառապելոյս անձին այսքան:

Բայց եղեւ գիծս այս ի թվականութես հայոց. չ եւ հ: յաշխարհակալութե. բուսաիդին եւ ի զաւրապետութե չոպանին. եւ յիշխանութես մեր: ածասէր եւ բարեպաշտ մեծի եւ քնազաւր իշխանին պարոն բուրթելին եւ ի կաթուղիկոսութե տն կոստանդեայ. ի ՛նք ուխտս եւ յաթոռս հոյակապ եւ ի մեծ մայրաքաղաքս տաթեւ. ընդ հովանեաւ ՛նք առաքելոցս եւ ածակիր նշանացս: հրամանաւ եւ աւժանդակութբ ածապատիւ եւ առաքելաշնորհ ա՛րհեպիսկոպոսի մեր- տբ յովհաննիսի. հեզի եւ մարդասիրի: որ եւ զիմ տարտամութիս վստահացոյց ի փոյուն գիծս ձեռնարկել. իբր անարգամեծար զոլով զաւրացոյց զիս եւ զնիւթ քարտենիս շնորհեաց: Եւ ես եղկելիս եւ ամենաթշ-առս մատթէ. ըստ յարալեզին եւ եղջեր-աքաղին. ունելով միայն զանուն եւ զձեւ՝ եւ ո՛չ զէութի քահանայութե եւ վարժապետութեան: ի մարդասէր կամս տն իմոյ վստահացեալ եւ ի թախանձական խնդիր համբան եղբայրութես. ձեռն ի գո՛րծ արկեալ ըստ կարի կատարեցի՝ ուղիղ եւ փցո՛ւն գրով որպէս տեսանէք. վ՞ն որոյ կրկին աղաչա՛նք է մեր, զի անմեղադիր լինիք: զի թեպէտ եւ յո՛յսն մեր վառեաց 'ի սոյն. այլ առաւել՝ հա՛րկ տիրական հրամանին, եւ կա՛մք հարազատ միեղէնութես: Վ՞ն որոյ մոխրամա՛ծ երեսաւք եւ սրտահառա՛չ պաղատանաւք՝ հայցեմ յամենեցունց՝ զի աղաւթիւք ձեր՝ տացէ տր՝ զտի՞ս մեր եկեղեցոյ իւրում ընդ երկայն աւուրս. եւ յետ ատեացս անարատութբ՛ եւ համարձակափա՛յլ երեսով կալ ի մեծի ատենին առաջի իւր՝ ամենայն հնազանդեցելովքն. մա՛նաւանդ մանկա՛մբք ՛նք առաքելոցս, ասելով. ահա ես եւ մանկունք իմ զորս ետուր ինձ ընդ իս: եւ արժանաւորեսցի լսել եթէ եկայք աւրհնեալք հաւր իմոյ ժառանգեցէք զանպատում զկեանսս: ամէն: Դարձեալ խնդրեմ մեծաւ յուսով զի զայժմու եղբարքս իմ եւ զհարս եւ զանընդակից ընկերքս իմ եւ զորդիս. զմաւտեւորս եւ զհեռաւորս եւ զա-

*բեամբ մերձաւորս: մանաւանդ առաջնորդ եւ փակակալ տանս. այլ եւ որք ձեռնտու եղեն մեզ եւ աւգնական ի նիւթս կոկելով, զի զամենեւեան առհասարակ աղաւթիւք մասնաւորեսջիք՝ եւ ամենեցուն մեղաց եւ յանցանաց ներումն եւ թողութի հայցեսջիք 'ի քնէ այ մերմէ՝ որ է աւրհնեալ յաւիտեանս: ամէն: — Եւ արդ առ քեզ պաղատիմ, մայրդ լուսոյ եւ տաճար անծակիր: խորան փառաց տն յի. եւ հայրն պանծալի անմահ փեսային քի: դուստր վերինն հմի եւ մայր հանուրց ազանց, քաղաք այ կենդանւոյ, եւ դրախտ իմանալի: հրճուարան զգաստից եւ քաւարան մեղուցելոյ: Ընկալ զսակաւ երկս զայս՝ 'ի ձեռաց պատժապարտիս. իբր փեսայն քո՝ զաւծումնն 'ի պռնկէն: Մի յանարժանս համարեսցես. այլ բարեհաճութբ իբրեւ զխերեւեշս այրւոյն ընկալցես եւ հաճեսցիս: եւ 'ի ծոցս քո ծրարեալ պահեսցես զսա՝ մինչեւ յաւիտեան: Եւ բարեխաւս ընդ քեզ ունելով զանարատ եւ զանապական կոյսն մարիամ. ամենայն համագումար դասուք ընտրելովքն: առ հայրն ողորմած եւ առ որդին մարդասէր եւ առ շնորհաբաշխ հոգին նր: զի զամենայն շնորհաբաշխութի սորայ անյապաղ կատարեսցէ: աւրհնեալքն սովաւ՝ յիւրաքանչիւր խորհուրդս աւրհնեալ եղիցին: եւ նուիրեալ ընծայքն ամենայն՝ այ հաճոյասցին: Եթէ ի նիւթից է կամ 'ի պտղոց. եւ եթե ի կենդանեաց՝ անբանից եւ բանականաց. Իսկ յուղարկեալքն առ քն եւ պահպանեալքն սովաւ. մի ամաչեսցեն առաջի ծնի ատենին յորժամ գայ վերստին նորոգել եւ կեցուցանել զամենայն արարածս: այլ նորոգեալ եւ փառաց 'ի փառս բարձրացեալ յարայզւարճ խնդութբ եւ բերկրական ուրախութբ ընդ հրեշտակս՝ գոհաբանողք եւ աւրհնաբանիչք վերակարգեսցին ամենաբերորդութեն. յաւիտեանս յաւիտենից ամէն: Պարտին՝ սա զերանի ում թողութի եղեւ սաղմոսն. եւ զոր ած փրկութե մերոյ աղաւթքն, կատարել անխափան. որքան ե՛մ ի մարմնի. եւ յետ փոխելոյն իմ. նոյն սաղմոս եւ քն որդի այ: Կատարի՛չք խնդրոյս մերոյ աւրհնեալ եղիցին ի մահ եւ ի կեանս: —*

Էջ 311 ա (*օտար գրչէ*). *փառք ամենածբ երրորդութե հաւր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ. Ով դասք նր լուսերամից եւ մանկունք նր եկեղոյ յորժամ որ ընթեռնուլնք զածաշունչ նր մատեանս. յիշեցէք ի նր եւ ի մաքրափայլ աղաւթս ձեր. նր եւ երջանիկ պատուական. եւ ընտրեալն ի հայրապետաց եւ գովեալն ի մէջ եպկաց. պատուելի եւ փառաւոր հայրապետն մեր զտր աւետիս արհեպկոսն. որ ետ վերստին նորոգել. զնր մատեանս. յիշատակ իւրն եւ իւր ծնաւղաց իւրոց ամէն: եւ այլ միաբանիցն զտր ստատուրն. զտր պաւղոսն զտր հերայպետն. զտր երեմիայն. եւ այլ միաբանիցն. որ աստ կան հաւաքեալ ամէն: Ով մանկունք նր եկեղեցւոյ. ով ոք հանդիպիք ի սմա կարդալով կամ աւրինակելով մէկ բերան ողորմի ասացէք եւ ած զձեզ ողորմեսցէ եւ իւր միւսանգամ գալստեանն ամէն: Ընդ նմին եւ ինձ անարժան մեղաւոր գծոյլ եւ զցետինս ի կոչաւորաց պօղոս եպկոս. կաղմող սորայ յիշեցէք ի քն. զհայրն իմ եւ զմայրն իմ եւ զերէխտաւոր վարպետն իմ դաւիթ եպկոսն յիշեցէք ի քն: յիշող յիշեալ լիջիք առաջի անմահ գառին այ: Կազմեցաւ ի թվականիս հայոց: ռկ: եւ քի փառք յաւիտեանս ամէն:*

# 43.

## ԳԱՆՁԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ 425: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 27×19×11 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 22×6 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող՝ 27. Թանաք՝ սեւ. գլուխները ու սկզբնատառերը կարմիր, նարնջագոյն, ծիրանագոյն, աղիւսագոյն եւ դեղին: — ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբէն եւ վերջէն 1–2 թերթ պակաս, բայց մնացեալը գոհացուցիչ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 244 ա–բ, 251 ա–բ, 421 ա–423 ա եւ 425 ա–426 բ, որոնք բոլոր նոր կարկատողի մը կողմէն դրուած են: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՆ հասարակ արուեստով. նոյնպէս զարդագրերը: – ԳՐԻՉ՝ Մկրտիչ. ստացող՝ Յակոբ եպիսկոպոս Մեծոբեցի, տեղ՝ Ներքեւս Մեծոբայ վանքը. թուական անյայտ:*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ. *կան առաջին գրչէն թուով մէկ-երկու տասնեակ, բոլորն ալ հիւսուած գանձերուն վերջի տողերուն մէջ, իբրեւ բուն երգի մասը. յիշենք միայն ասոնցմէ՝*

Էջ 28 բ. *...այլ եւ երգողի բանիս աղքատի անմիտ գրիգորի: Նայ եւ ստացողի գանձիս եւ տաղի. յակոբ եպիսկոպոսի: ուղիղ փոխողի. այսոց 'ի բանի եւ սրբագրողի: սիրով հայցողի գանձիս ւասողի. եւ լաւ պահողի. ող":*

Էջ 116 բ. *շնորհօքն յնի. երգոյս երգողի. եւ ըստացողի. մաքրումն եղիցի: տր յակոբն արի նր մեծոբեցի. եպիսկոպոսի. ողո":*

Էջ 369 բ. *Եղանակողք գանձիս եւ տաղի. ժըրաջան կանգնողացդ յատենի. միաբան դուք ասէք ողորմի. մըկրտիչ անարժան գրծողի:*

Էջ 378 ա. *եւ անիմաստ գանձիս ասողի յակոբ անուն եպսի: եւ ստացողի այս գանձարանի. յակոբ անուն եպսի... այլ առաւել սորին գրչողի. սուտանարժան անուն մըկըրչի. ողորմ.*

*Մնացեալները շատ աւելի համառօտ են եւ ոչ մէկ նորութիւն կը պարունակեն:*

*Ուրիշ յիշատակութիւններ. էջ* 201 ա. *Մի մեղադրէք զի օրինակն խամ էր տաղս:*

Էջ 245 ա, 259 ա, 260 բ, 261 ա (*լուսանցքի վրայ օտար գրչէ*) *գանձս մեծոբայ վանացն է:*

Էջ 257 ա (*նոյնպէս*) *Այս տետրակս" մեծոբյ վանաց է:* [*պանս սաել:*

Էջ 380 բ (*ուրիշ գրչէ*) *թէ իմանաս փու էս էս*

*Գըլխաւոր յիշատակարանը կորսուած մասերուն մէջն էր անշուշտ:*

## 44.

### ԱՒԵՏԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 199: ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 31×24×8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 23×9 սմ.: – ԳԻՐ՝ գլխագիր երկաթագիր. թանաք՝ դեղնաւուն սեւ. ուրիշ գոյն չէ գործածուած. տող՝ 19: – ՆԻՒԹ՝ մագաղաթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ գէշ. կազմը բոլորովին պատռտած, սկիզբէն, մէջերէն եւ վերջէն թերթեր ինկած, գրերը շատ տեղեր ջնջուած, տեղ տեղ թերթերը փտած, բորբոսնած, սեւցած: – Դատարկ թուղթ, լուսանցազարդ, զարդագիր կամ կարմրատողեր չկան բնաւ: – Գրիչ եւ անծանօթ, յիշատակութեանց բացակայութեան պատճառաւ: – ԹՈՒԱԿԱՆ չունի, բայց շատ հին ձեռագիր կ'երեւայ:*

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ** էջ 46բ. Աւետարան բստ մաթէոսի. ընթերցաւղք որ գլերնագիրս է արարեալ մի նզովէք զգրաւղն ձեր կամք է որ զբուն է գրեալ:

Էջ 157բ. Աւետարան բստ Ղուկա. (առկէ ետք նոտր գրով). Ըիշտկ է որ աւետարս լուսաւորղի. զաւրպանի որդի. ուսդայ. ներսէսին. որ իւր արդար վաստակոցն. էառ եւ եդ. թա.վէզու Սուրբ ածածնայ եկեղեցուն. ով որ կարդայ ած ողորմի սաէ. իւրն. եւ ծնողացն եւ եղբօրն. պ"տալին եւ կողակցուն. շուշանին եւ ամ արեան մերձաւոր"ց. եւ ի թվին փրկչին. ռընե.ին եւ հայոց թվին ռմծդին եւ ի ժամանակ ապ"պ"խան շահին. յորժամ գնաց ուռուսին յետ. կոխվ արաւ. յետ դարձաւ. եկն թաւրէզ քանի մի օր. նստաւ գնաց թէհրան. ձեռ"մբ. նու"ստ. կրպտ. քահանայիս:

## 45.

### ԺԱՄԱԳԻՐՔ, ՍԱՂՄՈՍ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

(1641-էն առաջ):

*ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 231: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25×20×7 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 19×6 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. գլուխները, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ մութ կանաչ, տող 22: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ չունի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ բոլորովին փտած ու բորբոսնած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ եւ անարուեստ: — ԳՐԻՉ եւ անծանօթ. թուական՝ ՌՂ = 1641 թուականէն առաջ:*

**Ձեռագիրս կը պարունակէ.** էջ 1—3 **Մեղայ ամենասուրբ.** էջ 4—115 **Ժամագիրք.** էջ 116—251 **Ատենի Սաղմոս.** էջ 252—285 **Տօնացոյց.** 286 – 291 **Աւետարանք հիւանդաց:**

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ.** էջ 113բ. Ես Ղարայ խանս առայ ատենի սաղմոսարանս: Յիշատակ հոգոյ իմոյ եւ կողակցին իմոյ նանասին եւ որդոյ իմոյ տէր խաչատուրին Ամէն:

Էջ 175բ. տէր ծատուրի որդի ղուկաս:

Էջ 285բ. Ես ղարայ խանս առի այս ատենի սաղմոսարանս ի հալալ ընչից իմոց յիշատակ ինձ եւ իմ ծնաւղացն հաւր եւ մաւր իմոյ. եւ եղբարց իմոց. եւ կողակցին իմոյ եւ որդոց եւ դստերաց իմոց. եւ ամ արեան մերձաւորաց իմոց. կենդանեաց եւ մեռելոց որք կարդան եւ աւգտին ի սմանէ աւրինակելով: լի բերանով եւ սրտիւ ողորմի սաէ զվերոյ ասացելոցս եւ ած իւրն ողորմի աստ եւ ի հանդերձեալն ամէն ամէն եղիցի եղիցի: (այլ գրով) ե. ռ. գիան տվի: թվականս հայոց ռ: ղ տարի ով որ կարդայ ողմ:

Վերջին երկու թերթերուն վրայ ալ կան օտար գրչէ յիշատակութիւններ, բայց անընթեռնլի են թէ գրերուն անպիտանութեան եւ թէ թերթերուն հնութեան պատճառաւ:

## 46.

### ՃԱՇՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 441: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 31×22×10 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ գեղեցիկ եւ մաքուր. երկսիւն՝ իւրաքանչիւրը 24×6 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. տող՝ 34. թանաք՝ սեւ. սկզբնատողեր եւ կարմիր եւ թուխ-կարմիր: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմը քայքայուած, թղթերը թափթփած, սկիզբէն, վերջէն եւ մէջերէն պակասաւոր. վերջերը նաեւ պատառատուն, բայց մեծագոյն մասամբ գրութիւնն անաղարտ է. այնպէս որ նոր կազմով մը կրնայ գիրքը կանոնաւորուիլ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 116բ*

*եւ 182բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ քաւական յաջող են, մանաւանդ լաւ են էջ 183 եւ 269 դրուած մեծ խորանները: — ԳՐԻՉ՝ Սիմէօն. ստացող՝ Մարտիրոս երէց. տեղ եւ թուական անյայտ:*

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. էջ 3բ. Ով քահնք ես խիստ մեղօոր եմ վնն մեղաց իմոց. աղաչեցէք ի քն որ ողորմած է:

25բ. Զստացաւղ հոգիարուղխ ածաշունչ նր տառխս, զմարտիրոս երէցն, եւ զիւր զաւակն զոր սամուէլն: եւ զամենայն արեան մերձաւորս, եւ զփոխեցեալսն ի քն յիշեսջիք ի քն: եւ ած զձեզ յիշէ յիւր առատ ողորմութին. եւ նմայ փառք յաւիտեանս յաւիտենից ամէն:

92ա. Տր ած ողորմեա ստացողի գրոցս. մարտիրոս երիցուն. եւ դեռաբոյս զաւակին իւրոյ տր սամուէլին, եւ աշխատողի նր:

268բ. Հոգի նր ած ճշմարիտ որ կարողութն հա՛ւր աջողութն որդւոյ զաւրութն նր հոգւոյդ: ժամանեցի մինչեւ ցայսվայր: Եւ յայսմհետէ տուր զաւրութին անկարիս. եւ իմաստնացո զանհանճարս. եւ ձեռնտու լեր տկարիս. զի կարողութն քո կարացից հասանել յաւարտ ածաշունչ տառխս եւ քեզ փառք այժմ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

Անդ (նոր ձեռագրով). յիշատակ է բարւոն հանգուցոլ պապաջանի որդի յարթունի ամէն:

277բ. Քաղցր եւ բարերար ած հոգի նր ած ճշմարիտ ողորմեա կարդացողաց եւ լսողաց. եւ ողորմի ստացողաց: Ինձ մեղապարտ սիմէոնի. անարհեստաւախմար փցուն գրչի. եւ ծնաւղաց իմ ի մարմնի. մինաս քհի եւ հռիփսիմի. եւ կենակցի իմ ղայաթի. կամաւ զթուխթս կոկողի. զի ասասցեն տր ողորմի ստս եւ յաւուրն ապագոյի:

360ա. Քն ած քո նր ծնաւղին բարեխաւսութն. ողորմեա ստացողի նր գրոցս. եւ անարհեստ սիմէոնի եւ ծնաւղաց եւ ամ արեան մերձաւորաց իմոց եւ այնոցիկ որ զողորմին ասեն ուղիղ սրտիւ:

370ա. Ով ընթերցող նր եւ բարի. յիշեա եւ զգրչեակս զեղկելի միթէ տրն ողորմեսցի:

378ա. Սբ՛ եւ հրաշափառ խաչին Տաւնեա՛ եւ զմեղապարտ անարհեստ գրչակս յիշեա՛. զի եւ դու յիշեսցիս առաջի քի ծյն մերո:

Վերջին երկուքին նման՝ տուներու խորաններուն հետ հիւսուած, բայց դեռ աւելի համառօտ յիշատակութիւններ կան քանի չափ. ինչպէս՝ էջ 7ա. "Է. տաւաւատուն կարդա. եւ զեղկելիս յիշո զգրիչս„. էջ 44բ—45ա. "...Եւ զանպիտանս յիշեա... Վայ մեզ որ այս ամ կատարեցաւ ի յետին ժամանակս„. էջ 137ա "եւ զծրողս յիշէ„ եւ այլ նմաններ:

Վերջապէս էջ 384ա գրուած աղօթքին մէջ գրիչը վերջին բառերուն հետ հիւսած է "զերգաբանիս եւ զգծագողի եւ ստացողի եւ զկարդացողի եւ զլսողաց. եւ պատառեա զկտակ մեղաց...„:

Գլխաւոր յիշատակարանը կորուած թուղթերուն մէջն էր թերեւս. նոյնպէս էջ 116ա եւ 182ա կրնային ունենալ աւելի ընդարձակ յիշատակարաններ, բայց այս թղթերուն երեք քառորդը կտրուած հանուած է:

## 47.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

(1418-էն յետոյ):

*ԹՈՒՂԹՔ՝ 605: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 39×25×13 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ կանոնաւոր. երկսիւն՝ իւրաքանչիւրը 28×8 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. տող՝ 35-37. թանաք՝ սեւ. սկզբնատողերը, գլուխներն ու սկզբնատառերը կարմիր, երբեմն մանուշակագոյն: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ նախկին կաշեպատ փայտէն կը մնայ միայն առաջին կողքին տախտակին կէսը: – ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմը քայքայուելուն պատճառաւ սկիզբէն եւ վերջէն թերթեր ինկած եւ պատառատուն. մէջերը խոնաւութենէ քիչ մը բորբոսնած, բայց առհասարակ լաւ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 49ա. որովհետեւ ձեռագրիս թերթերը կազմուած են երկու իրարու կպցուած թուղթերէ, շատերը բացուելով՝ ձեւացուցած են դատարկ էջեր. զորոնք չենք հաշուեր: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ չկան եւ ոչ ալ խորաններ. զարդագրերը հասարակ արուեստով են: – ԳՐԻՉ՝ Յովաննէս, բայց մեծ մասը Ներսէս: – Ստացող՝ Սարգիս քահանայ: Թուական եւ տեղ անծանօթ՝ գլխաւոր յիշատակարանին կորսուելուն պատճառաւ:*

Ձեռագիրս ամենայն մասամբ նոյն կ'երթայ Վիեննայի Մխիթարեան Ձեռագրատան թիւ 10 Յայսմաւուրքին հետ, որմէ հազիւ 30 տեղ կը տարբերի նոր սրբերով կամ պականերով: Նոր վկաներէն ունի միայն Ցիմար վանեցի, Աւագ սալմաստեցի, Սահակ պարսիկ գաւրիժեցի, Յովսէփ գունեցի, Թէոդորոս Սեբաստացի, Ստեփաննոս ուքբեպս. Սեբաստիոյ, Զաքարիա կաթ. Աղթամարցի, Խոսրով գանձակեցի եւ Գոհարինէ Սեբաստացի, որոնց նորագոյնն է Ցիմար վանեցի († 1418):

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. խիստ բազմաթիւ են. գրիչն ամէն վկայաբանութենէ վերջ իբրեւ ստացող կը յիշէ Սարգիս քահանան կամ քանի մը տեղ ալ անոր որդին Յովաննէսը՝ իրենց պարագաներով, եւ մէկ անգամ այս, ուրիշ անգամ մը այն ազգականներով: Զանց առնելով յիշել այս բոլորը, մէջ կը բերենք երկու լիակատարները միայն:

Էջ 486բ. Որ ողորմի ստացողի գրոցս սարգիս քհյին եւ կենակցին հռիփսիմին (կամ հուռումսիմին, կամ ուռումին). եւ ծնօղացն մարտիրոսին եւ փաթմին

(մէկ անգամ Փաթմին) եւ որդոցն յակոբին. յոհաննիսին. կոստանդին. ղազարին. եւ դստերացն մարեանին. հանգուցելոցն սառիկին (այլուր սառային). խաթունին. Նազլուխանին (այլուր Նազլուին կամ Նազումին). եւ հարսներոյն մուլքին. խաթունին. հուռումին. կարդացողաց եւ լսողաց. եւ քի փառք յաւիտեանս:

Էջ 579ա. Որոյ աղօթիւքն ողորմի քս ած նստողի գրոցս սարգիս քհյին եւ կողակցին. եւ ծնողացն եւ որդոցն յկբին եւ կողակցին մուլքին. եւ միւս որդոյն յոհաննիսին եւ կղկցին խաթունին. եւ միւս որդոյն կոստանդին եւ կղկցին հուռումին. եւ միւս որդոյն ղազարին եւ ինձ՝ հեքն գրչի եւ իմ ծնողացն ըռըստակէս քհյին կրդ''ց:

Միւս բազմաթիւ յիշատակութեանց մէջ տեղ տեղ կ՚աւելնան՝ հարսերուն մէջ սոլթան եւ մայրան. որդիներուն մէջ անգամ մը կը յիշուի սական (երեւի վաղամեռիկ. թոռները կը յիշատակուին՝ փարիխան, եթար, գրիգոր, մարտիրոս, ղուկաս, կիրակոս, որոնցմէ գրիգորը մուլքին որդին է եւ մարտիրոսը խաթունին:

Էջ 277բ. Որոյ աղօթիւքն ողորմի քս յոհաննիսին եւ քուերն շաքարին. եւ ամ. (ասկէ ալ կ՚երեւայ որ Սարգիս քահանան ունեցեր է նաեւ Շաքար անուն աղջիկ մը):

Էջ 297բ. Սբ մարկոսս բարեխօսեա առ քս վս Նազլուխանին՝ որ այսօր մերի եբեր՝ մեզ կերանք ած զիւր հոգին անմահական պտղէն կերակրէ Ամէն:

Էջ 359բ. Վա՜յ ինձ. վա՜յ ինձ. վա՜յ ինձ. ա. բեռն:

Էջ 379բ—380ա. Ած արքայութի տա մր միխթարին. եւ իւր ծնողացն՝ որ զմեզ այսօր մրթաւք շատացոյց. ած իւր հոգին անմահական պտղոյն կերակրէ ամէն:

Էջ 587բ. Ով նր ընթերցողք անմեղադիր լերուք քանզի տրտում էի. վս այն այսպէս եղեւ. զի մնացեալ էի, քանզի յոյժ տրտմեալ էի. աղաչեմ զձեզ անմեղադիր լերուք:

Թէեւ ստացողին յիշատակութիւնը բազմաթիւ, բայց գրիչը խիստ քիչ անգամ կը յիշուի. եւ այն՝ մեծ մասը առանց անուան. առաջին մասերուն մէջ՝ էջ 84բ. կը յիշուի "այլ եւ տրուպ գրչի պիտակ յովանիսի„. իսկ այնուհետեւ երեւան կու գայ Ներսէս, որ կը յիշուի 3 անգամ. էջ 297բ "եւ Ներսէս գրչիս„, էջ 452ա "Ներսէս հեքն գրչի„, եւ 545բ "եւ Ներսէս մեղապարտ գրչիս եւ իմ ծնողացն„:

Ձեռագիրս յետոյ անցեր է Սաղիանցի տէր Սարգիսի ձեռքը, որ եւ լուսանցքներու վրայ նօտր գրով կ՚ընէ իր յիշատակութիւնը, այսպէս էջ 2ա, 3բ, 4բ, 5բ, 7ա, 8բ, 185բ, 309բ, 324ա, 445ա եւ 573բ. ասոնցմէ յիշենք 324ա "եւ միւս ստցղի գրոցս սաղիանցի տր սարգիս քհյին եւ կողակցն իւր մահպուբին եւ որդիքն իւրու (միշտ այսպէս) գաբրիէլին միքայէլին աւետիքին դանիէլին սամուէլին (այլուր կ՚աւելնան՝ դստերացն մամքանին կովհարին եւ մայրանին) կար(դ)ացօղաց եւ լսօղաց որք զօղօրմի ասէք ամէն". էջ 185բ եւ 309բ "եւ վերջին ըստացող կրո—ս սաղիանցի տր սարգիսին եւ կողակիցն իւր մահպուբին եւ որդուն իւրոյ սամուէլին„:

Երրորդ ստացող մը կը թուի. էջ 121բ եւ 288ա "եւըս առաւե ըստաող նր գրոյս սանատուրին եւ ծնողացն խաչիկին յուրիխանին„:

# 48.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

### ՊՁԷ = 1438:

*ԹՈՒՂԹՔ 767 (նշանակուած 765. բայց 366 փախցուած, 489, 502 եւ 506 կրկին): – ՄԵԾՈՒԹԻՒՆ 34×25×11 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 27×9 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող 37. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ վարդագոյն, բայց կէսէն յետոյ նաեւ դեղին, բաց ծիթագոյն եւ կանաչ: – ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ ամուր կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ թղթերը դեղնած, բայց նոր. ձեռագիրս քանի մը անգամ նորոգուած է եւ արդի վիճակին մէջ սկիզբէն 1-9 թերթերը եւ վերջէն ալ քանի մը թերթ նոր են արտագրուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 758ա-761բ, 764բ եւ 765բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ, գլխազարդերն ու զարդագրերը շատ քիչ են եւ շատ պարզ, միայն ուրուագծով. առաջին երեսի պատկերը նորոգողէն դրուած է: – ԳՐԻՉ՝ Ազարիա, բայց վերջի մասերը գրած է Մարգարայ, ինչպէս կը յիշատակուի յայտնապէս սկսեալ 691բ երեսէն: – ՏԵՂ՝ Նախավկայի վանք: – ՏԷՐ՝ Յովհաննէս արքեպիսկոպոս, առաջնորդ Նախավկայի վանուց: – Թուական ՊՁԷ = 1438:*

Ձեռագիրս կը պարունակէ՝ էջ 1—603 Յայսմաւուրք, որուն մէջ նոր վկաներէն կան Աւագ Սալմաստցի, Յիմար վանեցի, Թամար, Եղիսաբեթ Խառաբաստայ, Յովսէփ Գունեցի, Թէոդորոս Սեբաստացի, Մելքիսեթ եւ Կարապետ Վանեցի եւ Գոհարինէ Սեբաստացի: Էջ 603բ—757բ Ճառընտիր՝ վերջը ընդհատուած. մնացեալը ցանկ եւ յիշատակարան:

Ճառընտիրը կը պարունակէ. 1. Առաջաւորի պահոց Բշ. օրն. ասացեալ Յովհ. Ոսկ. Երեւելի եւ փայլուն է տաւնս. էջ 603բ - 607բ. 2. Երանելոյն Յովհ. Ոսկ. ասացեալ Առաջաւորի պահոց Գշ. օրն. վասն շարժման եւ ապաշխարութեան. Տեսէք զայ զզուարութիւն. էջ 608ա—611ա: 3. Երանելոյն Եփրեմի ասացեալ վասն զղջման եւ ապաշխարութե. Բարիոք էր պահել զաւանդն. էջ 611ա—614ա: 4. Առաջաւորի պահոց Եշ. օրն. խրատ հոգեւոր ասացեալ ար վարդապետաց. Վասն այնորիկ սաէ պահք առաջաւորաց. էջ 614ա—

617 ա։ 5. Երանելոյն Եփրեմի խորին ասորւոյ ասացեալ ի Նինուէացիսն. Ահա հրաման հասեալ առ մարգարէն. էջ 617 ա—623 ա։ 6. Վկայաբանութիւն սրբոյն Սարգսի զաւրավարին ... ի ժամանակս թագաւորութեանն հռոմայեցւոց. (թրգմ. Ն. Շնորհալւոյ՝ Միխայէլ ասորիէն). էջ 623 ա—630 ա։ 7. Երանելոյն Եպիփանու Կոստանդեա Կիպրացւոյ ասացեալ յաւր մեծի յարութեան մերոյ յսի քսի. եւ առ Յովսէփ արեմաթացին. Զինչ է այս. այսաւր լռութի բազում. էջ 630 ա—636 ա։ 8. Պատմութի Սրբոց վարդանանցն. Մեծ է սէրն այ. էջ 636 ա—641 բ։ 9. Պատմութի Նախարարացն հայոց որ յետ մեծ պատերազմին կորցան. եւ վասն վասակայ թէ զինչ եղեւ. Դարձեալ յորժամ դէրդեաց զմուշկանն... էջ 641 բ 646 ա (երկուքն ալ Եղիշէէն)։ 10. Բուն բարեկենդանի կիրակէին. Եփրեմի... յաղագս պահոց քառասնորդաց. ի շաւիղս փառաց քոց տր. էջ 646 ա—651 ա։ 11. Առաջին շաբաթ աւրն. Յիշատակ սբ վկային Թէոդորոսի... ի Մովսեսի պատմութենէն ծննդեանն եւ վարուցն. Ի ժամանակին յորում մակեդոնացւոյն աղէքսանդրոս փիլիպեան. էջ 651 ա—653 բ։ 12. Շբ. աւր. ճաշոյն. վասն անքուն որդանցն... վարդան վրդպի ասացեալ. Եւ արդ եկայք այսաւր ժողովուրդք. էջ 653 բ—656 ա։ 13. Յովհ. Ոսկէբերանի ասացեալ ի Ղուկասու աւետարանի մեկնութէն. Յայնժամ վարդապետն բարեփառ. էջ 656 ա—657 ա։ 14. Ա. կիրակէին. Ս. Սեւերիանոսի ասացեալ յաւետարանի մեկնութենէն. Այր մի իջանէր յերուղմայ. էջ 657 ա—660 բ։ 15. Կիրակի ճաշու պատարագին. Սբ վարդապետաց ասացեալ վս պահոց պնդութե. Վասն այնորիկ ասէ պահք ածային գիրն. էջ 660 բ—663 բ։ 16. Մանդակունեցւոյ ասացեալ վասն պահոց. Աւգոյ եւ աւգտակար եւ կարեւոր են. էջ 664 ա—667 բ։ 17. Յոհաննու մանդակունեցւոյ ասացեալ վասն սակաւ գոլութեան. Յանկարծ գողանայ եւ աներեւոյթ յափշտակէ. էջ 667 բ—669 ա։ 18. Պատմութի անքուն որդանցն եւ վս խստութե նց թէ ուստի են. (նոյն ընդ 12). էջ 669 ա—671 բ։ 19. Վս նեռինն ի բանն յայտնի մարդն... Տրն մեր ասէ յաւետարանին. էջ 671 բ 674 ա։ 20. նոյն ընդ 5. էջ 674 ա—678 բ։ 21. Վս միայնակեցաց որ ոչ թողու զհայր կամ զմայր... Որպէս ասէ սբն Գրիռնեսխոս. էջ 678 բ—680 բ։ 22. Վս մեղաց ի բանն յոհաննու. Են մեղ որ մեղք են եւ են որ մահու չափ են եւայլն. Բնական ընտրողութք ամ ոք... էջ 680 բ—684 ա։ 23. Վս մեղաց. Ասէ մրգրէն Մովսէս. եթէ առնէ զողորմութին ած ի հազար ազգս... Առնել զողորմութին ի ռ ազգս կրկին իմացումն ունի. էջ 684 ա—685 ա։ 24. Վս մեղաց ի բանն. Ցանկութի յղացեալ զմեղս ծնանի... Աւձն որ խօսեցաւ ընդ եւայի. էջ 685 ա—686 ա։ 25. Վս խորհրդոց մեղացն. ի բանն առակին. խորհրդոց ամբարշտաց հարց եւ փորձ եղեցի. Երեք են տեսակ մեղաց. էջ 686 ա—688 ա. 26. Վս լեզուի ի բանն առակի. մահ եւ կեանք ի ձեռն լեզուի են. Տրն մեր եւ Ած յս քս հրամայէ. էջ 688 բ—691 բ։ 27. Վս լեզուի եւ բարկութե. ի բանն լեզու հուր զարդ անիրաւութե. Յակոբոս ասէ ի կաթողիկէքն. Ած զմարդն ոպ քաղաք է ստեղծեալ. էջ 691 բ—694 բ։ 28. Վս. համբերութե ի բան առակին. մի ասեր թէ առից վրէժ ի թշնամեաց... Վրէժ խնդրելն չարեաց փոխարէն է. էջ 694 բ—695 բ։ 29. Վս ամբարտաւանութե եւ խոնարհութե. ի բանն առակին. Տր ամբարտաւանից հակառակ կայ. Սկզբնաչարն ոձոյ եւ արուսեակն անկեալ. էջ 695 բ—698 ա։ 30. Վս քնոյ ի բանն Ղուկասու. Զի՞ ննջէք, արիք կացէք յաղաւթս... Զորս ազդ է քունն. էջ 698 ա—700 ա։ 31. Վս զրկանաց ի բանն ժողովողին. Տեսի զրպարտութի ի ներքոյ արեգական... Ի բզմ եւ զանազան մեղաց զոր գործէ մարդ. էջ 700 ա—701 բ։ 32. Վս քհնյից. ի բան մրգրէին. շրթունք քհնյին զգուշասցին... Նախ եւ առաջին այսպէս պարտ է իմանալ զբանս. էջ 701 բ—703 բ։ 33. Վս սիրոյ ի բանն. Այս է պատուէր իմ զի սիրեսջիք զմիմեանս... Ասեն իմաստունք թէ թշնամուին. էջ 703 բ—708 բ։ 34. Վս որկորամոլութե ի բանն Որոց ած որովայն իւրեանց... Վրդպք ասեն թէ որովայնամոլութին է. էջ 708 բ—714 ա։ 35. Վս փորձանաց ի բանն յոբայ. փորձութիք են կեանք մարդկան... Ասէ իմաստունն ոսկի փորձի ի բովս. էջ 714 ա—717 բ։ 36. Վս Նախանձու ի բանն մարգարէին Դաւթի. Մի նախանձիր ընդ չարս... Որպէս դայեակ որ վարժէ. էջ 717 ա—720 բ։ 37. Սկիզբն աւագ տօներուն. Նախ Դաւթի եւ Յակոբայ եւայլն. Ամենայն տօնք եւ հանդէս սրբոց. էջ 720 բ—722 բ։ 38. Վս արդարութեան ի բանն Ովսէի որ ասէ. Սերմանեցէք զարդարութիւն... Արարչագործն ած կազմեաց. էջ 722 բ—727 ա։ 39. Վս պահոց. պահեաց զխ տիւ եւ զխ գիշեր եւ ապա քաղցեաւ. վարդապետք ասեն ամ մեղք դ տառիճան. էջ 727 ա—729 բ։ 40. Վս պահոց. եւ պահեաց գ.քառասուն տիւ եւ գ.քառասուն գիշեր եւ ապա քաղցեաւ. Ասէ յոբ թէ կեանքն մարդոյ. էջ 729 բ—733 ա։ 41. Վս պահոց եւ փորձանաց ոձոյն ի բանն. յայնժամ վարեցաւ յս ի հոգոյն փորձել ի սատանայէ. վարդպք ասեն թէ հաւատացեալք. էջ 733 բ—736 բ։ 42. Նորին քրզ Դաւթի եւ յակոբայ ի բանն. Երդուաւ տր Դաւթի ճշմարտութե... Ցողորմութի եւ յիրաւունս հաստատեալ է աթոռ քո. էջ 736 բ—740 բ (սխալմամբ մաս մը կրկնուած)։ 43. Սրբոյն Ստեփաննոսի ի բանն. Ահա տեսանեմ զերկին բացեալ... Անդրանիկն մարտիրոսաց կոչեաց զմեզ. էջ 740 բ—744 բ։ 44. Սրբոց առաքելոցն պետրոսի եւ պօղոսի ի բանն. իբրեւ ճաշեցին ասէ Յս. Սիմոն Յովհաննու, սիրե՞ս զիս... Յս լոյս շնորհաց եւ ճառագայթ. էջ 744 բ—747 բ։ 45. Յոհաննու եւ Յակոբայ. Դարձաւ պետրոս եւ տեսանէր զաշակերտն զոր սիրէր Յս... Պայծառ է մեզ օր տօնախմբութեան. էջ 747 բ—751 ա։ 46. Վս մահու ի բանն Սիրաքայ. Ո՜վ մահ

բարի է դատաստան քո. վարդպք ասեն թէ Ած զնախախնամութի իւր... էջ 751ա—752բ: 47. Այլ քարոզ ի բանն Սիրաքայ. ի յամ գործս քո ի միտ ած զվախճան քո... Եւ ով ասեն վդպք ոչ ին. է որ այսպէս որ... էջ 752բ—754ա: 48. Վս աւետեաց որ կուսին մարիամու... Նախ տեսցուք զվեցերորդ ամիսն թէ... էջ 754ա—756ա: 49. Վս ծննդեան քի այ մերոյ. ի բանն. Առաքեաց զբան իւր եւ բժշկեաց զնոսա. Մեծ են գործք ածայինք. էջ 756ա—757բ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ շատ բազմաթիւ են եւ կան Յայսմաւուրքին ամէն վկայաբանութենէն եւ ճառընտիրին ամէն մէկ ճառէն յետոյ. այս յիշատակութեանց մէջ ամէնէն ընդարձակն է.

Էջ 641բ. Բարեխաւսութբ սոցա, ողորմեա ամ հաւատացելոց քրիստոնէից: Ե՛ւս առաւել ստացողի սբ գրոցս. երջանիկ արհեպին. տէր յովանիսի. եւ ծնողաց նորին: Ներսէս հեղահոգի քահանային. եւ խաբիպ խաթունին. եւ հաւրեղբարցն: կարապետ մզդաւի կրաւնաւորին. եւ մաղթումին. եւ գրիգորին. եւ քըւերցն. սանդուխտին. եւ զըմրութին: Եւ մովսէս վարդապետին. եւ նորին ծնողացն. յիսուլն. եւ փաշին. եւ եղբարցն մըզդաւի մուրադին. եւ մալիքին: եւ միզապարտ գծողիս ազարիայի. եւ իմ ծնողացն. եւ ձեզ կարդացողիդ եւ լսողացդ. ողորմեսցի ամէն:

Միւս յիշատակութեանց մէջ կան միայն հետեւեալ նոր տեղեկութիւնները. էջ 130ա պարզ կը յիշուի թէ Մովսէս բաբունին Յովհաննէս արքեպսի հօրեղբայրն է, որ Մուրադի եւ Մալիքի հետ գուցէ երկրորդ ամուսնութեան ծնունդ է. էջ 298ա հօրեղբարց մէջ կը յիշուի նաեւ Աւետիս, էջ 333ա ըսէս մաղթում, իսկ 130ա եւ այլուր Նուրադին. էջ 103ա "եւ մեծ պապուն մանգլաւին", էջ 19բ խարխալ անունը կը գրուի հաբիբ. էջ 182բ (նաեւ 228բ, 287ա) կը յիշուի "եւ բարեմիտ եւ հեզահոգի կրօնաւորին փակակալի սբ տաճարիս. մըգրին. որ աշխատեցաւ ի կոկել թղթիս" (նոյն անունը էջ 287ա "եւ Մարգարայ կրաւնաւորին"): Յովհաննէս արքեպս.ին կը տրուին մեծ մեծ գովեստներ. այսպէս՝ էջ 147բ. աթոռակալին սբ առաքելոյն բարդուղիմէոսի. էջ 70բ՝ հեզահոգի եւ բարեմիտ հՅրպին. 440բ՝ Զքհյպետն այ զտէր յովանէս. 417բ. Զարբաղան եպսն զտէր յովանէս. զողորմածն. եւ զաղքատասէր. եւ զառատաձեռն. նմանեալ սբ հայրպին գրգրի. 582բ՝ նմանեալ սբ հայրապետաց մերոց. 527բ գլխոյն եկեղեցւոյ. 252ա՝ զքաջ հովուապետն. եւ զարհիական գլուխն. զտէր Յհնս արհեպսն. սբ ուխտիս բարդողիմէոսի առաքլյն. 333ա՝ պանծալի եւ փառաւոր արհեպսին:

Սկսեալ էջ 691բ գրիչը կը փոխուի. ահա իր յիշատակութիւնը "յորոց փրկեսցէ քս ած զգրչիս եպսն եւ զծնողսն իւր զներսէս քհյն եւ զխաբիպն. զկարդացողն եւ զլսողսն եւ զմեղուցեալ մգրյ գրիչս ամէն". գրեթէ նոյն ձեւով եւ միշտ "մգրյ" գրութեամբ նաեւ էջ 717բ, 727ա, 736բ, 744բ:

Երկրորդ եւ երրորդ ստացիչ եւ նորոգող են Մահտեսի Անանիա եւ Եազլեան. առաջինը ամբողջ նորէն գրել տուած է էջ 1—11, հինգ տեղ յիշելով զինքը, որոնցմէ ամէնէն ընդարձակն է՝ էջ 5ա. "Ողորմեա ստացողի գրոյս մհի անանիային. եւ ծնողացն աւետիք աղին հոռոմին. եւ կըկց ոսկիին. եւ որդւոցն աւետիքին մարութին եւ թադէոսին. եւ ամ հին եւ նոր ննջեցելոցն ասեն ած ողորմի ամէն". էջ 2բ ալ կ՚ըսուի "որ ողորմի վերստին նորոգել տուողի գրքոյս մհի անանին...": Այս անձը ուրիշ տեղ յիշատակուած չէ:

Իսկ Եազլեան շատ էջերու ստորին լուսանցքին վրայ կ՚ըսէ իր յիշատակութիւնը, որ աւելորդ է մէջ բերել, որովհետեւ կայ իր մեծ յիշատակարանը (տես վարը):

Էջ 151բ եւ մէկ-երկու ուրիշ տեղ ալ տգեղ գրերով կը գրուի հետեւեալ յիշատակութիւնը, իբր շարունակութիւն Յովհաննէս եպս.ի յիշատակութեանց. "խուջայջանին: կ––ղ–յկից: գիրհարին: հար: նուրիջանին: մար: թրաղնին:"

Էջ 760բ արդի ձեռագրով. Այս սբ գիրքն պատկանի Ալէքսան Սարգիս Մովսէս Ա Եազուբեանց. ի 1880 ամի. սեպտեմբերի 20 գրուեցաւ այս նաւասարդի շաբաթում հինգշաբթի օրն. այս է ԱՅ շունչը գրեց Ալէքսան Սարգիս Մովսեսեան (տակը երգեր եւն):

Գլխաւոր յիշատակարան. էջ 762ա—բ (երկրորդ ստացողէն). Սուղ ինչ յիշատակարան պայծառ ընթերցողաց. Փառք ամենազօրին այ եւ պարգեւատուին բոլոր բարեաց. Հօրն ամենակալի. Եւ գոհութիւն Որդւոյն միածնի էիցս հաստչի: Բարեբանութի հոգւոյն փառակցի զարարածս ամ զարդարողի: Եւ փառաբանութիւն երկրպագութբ եռանձեայ երրորդութեանն այժմ եւ միշտ. յաւիտեանս յաւիտենից Ամէն: Եւ արդ ցանկացող եղեւ յայսմ հոգենորոգ մատենիս. եւ ծաղկափթիթ բուրաստանիս զբարեմիտ եւ հեզահոգի աղախինն այ. եազըլխանն. որ է 'ի գեղջէն քանաքեռու. 'ի հալալ եւ արդար վաստակոց իւրոց. եւ ետ 'ի դրան սբ Գէորգայ. որ այժմ ասի. Աւխնու սբ գեւորք: Վն յիշատակի հոգւոյ իւրոյ. եւ հոգւոյ ծնողացն. հօրն իւրոյ տէր գասպարին. եւ մօրն իւրոյ սեւարխանինէն. եւ այլ ամ մերձաւորացն յիշեցէք եւ ած ողորմի ասացէք:

Դարձեալ յիշեցէք եւ ած ողորմի ասացէք զստացօղի սբ գրոցս զբարեմիտ աղախին այ զեազուլխանն. եւ զծնօղսն իւր զտէր գասպարն. եւ զսեւարխանն. յիշեցէք եւ ած ողորմի ասացէք:

Դարձեալ յիշեցէք ի տր մեր. զստացօղ սբ գրոյս զբարեմիտ եւ բարեսէր աղախինն այ եազըլխանն եւ զկողակիցն իւր զիմանին. որ ձեռնտու եղեն հետ իրերաց. եւ 'ի միասին գնեցէ զծաղկափթիթ յայսմաւուրք զայս. վն յիշատակի հոգւոյ իւրեանց եւ հոգւոյ ծնօղաց եւ ամ արեան մերձաւորացն կենդանեացն եւ ննջեցելոցն. յիշեցէք եւ ած ողորմի ասացէք Ամէն: Դարձեալ յիշեցէք 'ի տր ած ամի զիմանին եւ զկողակիցն իւր զեազըլխանն. եւ զծնօղսն իւր հայրն միրզախանն. եւ մայրն իւր պյրուսին. եւ զամ ազգայինսն իւր եւ զամ արեան մերձաւորսն յիշեցէք եւ ած ողորմի ասացէք:

Դարձեալ յիշեցէք 'ի տր մեր զեազլխանն. եւ զկողակիցն իւր զիմանին. եւ զծնողսն իւր զտէր գաս-

պարն. եւ զսեւարխանն. եւ ըղնախնիսն իւր. զպապն. բարաջանն եւ զհանիկն իւր պհուրխանն։ Եւ հօրաքրյրն իւր զմարիամն։ Եւ զհօրեղբարքն իւր զմելքոնն. զբաղտասարն։ Եւ իւր եղբայր մարգարէն. եւ զամ արեան մերձաւորսն. զկենդանիսն եւ զննջեցեալսն. եւ զամ աշխատաւորք որ յիշեցէք եւ ած ողորմի ասացէք եազըլխանին. եւ կողակցին իւրոյ իմանուն. եւ իւր ծնօղացն տէր գասպարին. եւ սեւարին։ Եւ դուք յիշողքդ եւ յիշեցեալքդ յիշեալ լիջիք առաջի անմահ գառինն ամ։ Յորժամ գայցէ եւ հատուցանէ իւրաքանչիւր զգործս իւր. եւ ընկալջիք զպսակն կենաց եւ անմահութեան ընդ նոսա ամ Ամէն։

Արդ՝ գնեալ եղեւ զայսմաւուրքս զայս. ռ. ճ. հգ. թուին հայոց. 'ի դառն եւ 'ի դժուար ժամանակի Յորժամ առին զօսմանցին զերկիրն շահաստան. եւ զերեւան. եւ զամենայն գիւղ եւ քաղաքս ընդ նմա 'ի ժամանակս ռաճապ փաշային երեւանայ։ Եւ 'ի հայրապետութե նր էջմիածնի. տեառն Կարապետի ամ հայոց կթղկսի։ Նա եւս աղաչեմ զհանդիպողդ. եւ զընթերցողդ զի խնամօք պահէք 'ի ջրէ. 'ի կրակէ. 'ի մոմէ. 'ի ձիթէ. զի 'ի միջի շնորհացն արժանի լինիջիք. եւ թէ ոք անխնամ պահեսցէ. եւ զաղաչանս մեր անտես առնիցէ. 'ի միջի շնորհացեն զրկեալ լինիցի սա եւ 'ի հանդերձեալն։ Եւ եւս աղաչեմ մի ոք իշխեսցէ հանել զսա 'ի դրանէ նր ուխտին Ախնու նր գէորգին. մերոց կամ օտարաց. կամ ծախել. կամ գրաւել կամ գողանալ. եւ ով ոք անդգնի. գ. ճ. ժ. հայրապետաց նզովից ներքոյ լինի. մասն ընդ յուդայի առցէ. եւ բաժինն ընդ խաչահանացն կրեսցէ Ամէն եղիցի եղիցի։ Հայր մեր որ յերկինսդ ես նր է։

Էջ 762բ (փոխանակ առաջին գրչի յիշատակարանին, որ կորսուած է) Արդ՝ 'ի ծաղկալից գրքոյս թուականն յոյժ հնացեալ էր եւ հազիւ թէ միայն նշմարանքն երեւէր եւ մեք տեսեալ զնա աստէն եդաք թուական գրքոյս որ էր պ ձէ ումն. այրելի է ումն աւետեաց տօնին աւարտ եղեալ էր։ գրեցաւ ձեռամբն յովհաննէս վրդպին 'ի կեսարիայ որ է ղայսարի քաղաքին 'ի հրաշալի նր աթոռն սբյն յովհաննու կրպին. վն այն գրեցաք. զի զաշխատանս նորին տեսանելով մէկ բերան տացեն զողորմին. եւ յիշողացն տր ողորմեսցի իւր միւսանգամ գալստեանն եւ յաւուրն ահեղին ամէն։

Էջ 764ա ցանկին վերջը գրուած է, նոտր գրով. Յառաջ ցանկ չէ գրեալ զի մեք հարեւանցի ցանկ ծաղկաքաղ առնելով գրեցաք մնացյց ուր տեղ որ կայ կամենաք գրէք զի տեղ շատ կայ եւ զիս նուաստ նոտար կարապետս յիշեցէք 'ի նորոգման բաղում նեղութի կրեցի. Այլ եւ յիշեցէք զնորոգել տուօղ մհի անանէն եւ զծնօղսն պրն աւետիքն կղկց ոսկին. եւ զորդիսն աւետիքն մարութէն եւ թադէոսն. եւ այլ համայն ննջեցելսն. յիշօղք յիշեալ լիցին առաջի անմահ գառին ամ ամէն։

Էջ 765ա. կայ ճառընտրի ցանկը, որուն վերջը "օվ որ այս գիրքս կ–դայ ա բերան տր ո–մ–յ տայ„։

## 49.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

(1418—1678)։

*ԹՈՒՂԹՔ 555 (նշանակուած 554, բայց 248 փախցուած, 112 եւ 227 կրկին): – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 39×28×18 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 29×9 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ, գլուխները, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ բալագոյն. տող՝ 37: – ՆԻՒԹ՝ հաստ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ. վերջէն մէկ-երկու թերթ պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ 1ա-2ա, 5բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ, ճակատ. սուրբերու պատկերներ՝ բոլորն ալ միջակ արուեստով: – ԳՐԻՉ՝ Աւագ, բայց փոքր մաս մ'ալ Գրիգոր (յատկապէս յիշուած էջ 76-107): – ՍՏԱՑՈՂ՝ Թումայ քահանայ եւ եղբարքն Խաչատուր եւ Յակոբ աբեղայք: Երկրորդ ստացող է Մէլիքշա, որ իր Խօջամ կամ Խանում անուն կնոջ հետ նորոգեր է ձեռագիրը, բոլորովին նոր արտագրել տալով էջ 273-275: – ԹՈՒԱԿԱՆ՝ անյայտ, բայց 1418 եւ 1678 թուականներուն մէջտեղ, որովհետեւ ունի Ցիմար վանեցւոյն վկայաբանութիւնը եւ էջ 153բ յիշուած է վերջին թուականը:*

**Ձեռագիրս է Յայսմաւուրք, մեծաւ մասամբ համաձայն նախորդ երկուքին. սկիզբը էջ 2բ—5ա Ցանկ նոր վկաները նոյն ընդ թիւ 48, կը պակսի միայն Եղիսաբեթ, աւելի են Սահակ պարսիկ եւ Խորով Գանձակեցի։**

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. շատ բազմաթիւ են. առաջին գրիչը ամէն վկայաբանութենէ վերջ կը յիշէ քիչ անգամ Թումայ քահանան, բայց շատ անգամ Խաչատուր եւ Յակոբ աբեղաները, այս ու այն ազգականներուն հետ. ասոնց տակ կամ ստորին լուսանցքին մէջ աւելցուած է երկրորդ ստացողի յիշատակութիւնը՝ իր արենակիցներով։ Ամենէն ընդարձակ յիշատակութիւններն են՝

Էջ 14բ. Որ ողորմի ստացողի գրոցս խաչատուր աբեղային եւ յակոբ աբեղաին. եւ ծնաւղաց նորին մուրատշին եւ հաւմախմին. խաչիկին զատամշին. եւ եղբարցն ղատիշային մելիքշին եւ աւագ գծողի։

Էջ 27ա. Տր յն ողորմեա ստացողի գրոցս. թումայ քհին. եւ եղբարցն տիրացուին խաչատուր կրաւնաւորին եւ յակոբ կրաւնաւորին եւ ծնաւղաց նոցին. եւ աւագ գծողի։

Էջ 29ա. Որ ողորմի ստացողի գրոցս. թումայ քհին. եւ քուերն. խորտիկնին։

Էջ 76բ. Մանաւանդ զստացող գրոցս. զխաչատուր կրաւնաւորի. եւ յակոբի եւ ծնաւղաց նրին. եւ ինձ սակաւ ծրող մեղապարտ գրիգորի ամէն:

Էջ 87ա. (կ'աւելցնէ) Եւ գրիգոր մեղաւոր գրչի եւ մանրիշակին ամէն:

Էջ 91բ. (կ'աւելցնէ) Եւ ամենամեղ գրչի գրիգորի եւ մաւրն իմոյ մէհրիշատի. եւ ամ̃ երախտաւորաց ամէն:

Էջ 107բ. կը յիշուի աւա՜ գրիչը, որ կը մնայ մինչեւ վերջ:

Էջ 131ա. Ողորմի ք̃ս ստացողի գրոցս որբաւէր կրաւնաւորացս խաչատուրի եւ յակոբի եւ եղբարցն. մէլիքշին. եւ ղարիպշին եւ աղտիշին:

Էջ 233բ. (կ'աւելցուի)... եւ զեղբայրսն մելքիշէն եւ աղտիշէն՝ տիրացուն:

Երկրորդ ստացողին կողմէն աւելցուած են.

Էջ 96ա. եւ երկրորդ Նորոգօղի հանգուցեալք մէլիքշին որդոյն ղաքարին եղբօրն մուրատշին. եւ ամ̃ արե:

Էջ 317բ. Մէլիքշին խօջին եւ որդոցն ոհակին ովանիսին եւ ոհանիսին ամէն:

Էջ 341բ. եւ զվերջին Նորոգաւղ գրոցս մէլիքշին մուրատշին եւ որդոյն ոհակին ղաքարին ամէն:

Էջ 314ա. Որ ողորմի զվերջին Նորոգողի գրոցս մէլիքշին եւ ծնողաց նորին մուրատին եւ ուլուխաթունին եւ որդոցն սահակին եւ խաչիկին եւ ամ̃ յարեան մերձաւորացն ամէն: (էջ 304բ կ'աւելցնէ “եւ յոհան կաղմողին„, իսկ մէլիքշին անունը կը գրէ “մէլքշէն„):

Էջ 353ա. (Խաչատուրի եւ Յակոբի յիշատակութեան վրայ կ'աւելցուի) եւ եղբարցն մէլիքշին եւ խօջին եւ որդոցն ոհակին եւ Թարխանին ամէն (էջ 378ա որդոցը վրայ կ'աւելնայ Նաեւ Խոջէն):

Էջ 311բ. Որ ողորմի Նորոգաւղի գրոցս խօջին եւ ծնօղացն Թարխանին եւ մաւրն ղութլուին եւ որդոյն Թարխանին ամէն:

Էջ 219ա. Որ ողորմի ք̃ս ած̃ զնորոգօղ գրոցս մէլիքշին կողակցին խանումին եւ որդոյն ղաքարին եւ կողակցին եւ ամ̃ արեան մե:

Ուրիշ յիշատակութիւններ.

Էջ 153բ (լուսանցքի վրայ նօտրագիր) Ցի̃ քի̃ ծառա (բառ մը բաց թողուած) թվ. ռ. ճ. ի̃. է̃ գրեցաւ:

Էջ 356բ—357ա. Ով խոհեմ կառավար ժամատեղաց: Զղաղարոս սկըսիր. եւ զվեց աւրե արարչութե̃ն ա̃յ. յիւրաքանչիւր աւուրս կարդայ. եւ զեղկելիս յիշեա̃:

Էջ 325—329 ստորին լուսանցքներուն վրայ կան մի քանի հանելուկներ Աբրահամի, Իսահակի, Յակոբի եւ Յովսէփի վրայ:

Էջ 324բ. Հիւրասէր ծեր Նազելի. զնոյր խաւսուն զառն ի սեռի. ունէր ամուլ կին մի բարի. էր ծիծաղկոտ 'ւառաքինի:

Էջ 325ա. Ոպն զգաւն էր անմեղուկ. կայր սպաննողին աւջեւ հեզուկ. որդիս ունէր ի̃բ մանուկ. մինն էր յիմար. մեւսն խաբուկ:

Էջ 326ա. կարդա եւ գիտ զառաքինին. որ կին էառ զիւր քեռորդին. գաւտէմարտեաւ ընդ միշտ էին. բայց կարճեցաւ ջիլն ի տեղին:

Էջ 327ա. Գուտէմարտն ճակատուն. յաղթահարեալ եղեւ նկուն. ելեալ երթայր կաղ կաղ ի տուն. արջառ ու ոչխարս իւր խայտապտուն:

Էջ 329բ. Արեգական նման իշխան. եղբայրս ունէր իւր մետասան. թէպէտ եկաց շատ ի զընտան. շատոց ի սով եած սեղան:

## 50.

## ՀԱՏԱԿՈՏՈՐՔ ԱՒԵՏԱՐԱՆԻ

?

*Աւետարանի սոյն մնացորդը՝ որ վերջին ցուցակագրող մը դրեր էր ուրիշ աւետարանի մը վերջը եւ ըստ այնմ նշանակեր էր էջերը, հանելով այդ ձեռագրէն՝ դրի առանձին թուի տակ: Յիշեալ մնացորդը կը պարունակէ այժմ 51 թերթ = 102 էջ, որոնք անընդհատ շարունակութիւն չեն, այլ զանազան մասեր Մարկոսէն, Ղուկասէն եւ Յովհաննէսէն. մեծութիւնն է 19×15 սմ. գրութիւնը շատ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 14×4 սմ.: Գրութիւնը գեղեցիկ եւ ընտիր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերը եւ սկզբնատառերը կարմիր. տող 21: Նիւթ՝ թուղթ. հանգամանք մեծ մասը շատ մաքուր. լուսանցազարդերը մաքուր եւ գեղեցիկ. գրիչ, թուական եւն անծանօթ, որովհետեւ տող մ'անգամ յիշատակութիւն չկայ:*

## 51.

## ՀԱՏԱԿՈՏՈՐՔ ՄԱՇՏՈՑԻ

?

*Մաշտոցի յիշեալ հատակոտորը կը պարունակէ թուղթ 10 = էջ 20. մեծութիւն 21×15,5 սմ. գրութիւն երկսիւն, իւրաքանչիւրը 15×4 սմ. գիր՝ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 21. Նիւթ՝ թուղթ. հանգամանք՝ գոհացուցիչ. լուսանցազարդեր չկան. գրիչ եւն անծանօթ, որովհետեւ յիշատակութիւն չկայ:*

## Բ.

# ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԱՐԱՋՆՈՐԴԱՐԱՆԻՆ ԹԱՒՐԻԶԻ

---

## 1.

### ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

**ՌՃԲ** = 1653։

*ԹՈՒՂԹՔ 489։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 24×19×8 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ զանազան տեսակ, երկսիւն՝ իւրաքանչիւրը 17, 18, 19×6 սմ.։ – ԳԻՐ՝ զանազան մեծութեամբ բոլորգիր. թանաք՝ սեւ, սկզբնատողերը, սկզբնատառերն ու գլուխները կարմիր, վարդագոյն, կանաչ եւ մանուշակագոյն. տող 27–35։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 7ա—բ եւ 30բ. միւսները յետոյ գրուած։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն չկայ. բայց ասոնց տեղը բաց թողուած է յետոյ նկարելու համար. այսպէսով շատ տեղեր սկզբնատառերը կը պակսին։ – ԳՐԻՉ՝ անունը չէ յիշուած. տեղ Երնջակ գաւառի Շոռոթ գիւղը. ստացող Վարդան քահանայ կամ աբեղայ. թուական 1653։*

**Ձեռագիրս կը պարունակէ. 1. Մեկնութիւն տէրունական աղօթիցն զոր աղօթեն ժողովուրդքն. էջ 1ա—բ։ 2. Երեք, եպիսկոպոս անուանց, քահանայական զգեստներու վրայ եւն, ի Լամբրոնացւոյ. սկիզբը եւ վերջը կիսատ. էջ 2ա — 4ա. 3. Բնախօսութիւն քննութեան յաղագս զօրութեան աղօթից. Արարիչն ած. զեղական արարածոց. էջ 4ա — 5ա (կիսատ). 4. Վարք հարանց. սկիզբը ցանկ. էջ 8ա — 461բ. 5. Գլխաւոր յիշատակարան, էջ 462ա. 6. Աշխարհացոյց կարգաւ. նախ քան զամ. ննդրեսցուք եղեալ.քս. էջ 462բ — 471ա. 7. Հարցումն Արձանայ եւ պատասխանի Եզնակ Վարդապետի (օտար գրչէ). էջ 471բ — 475ա. 8. Խրատ ժամակարգութեան աղաւթից. էջ 475ա — 488ա (օտար գրչէ եւ կիսատ). 9. Ջինչ նշնկէ իգական անուամբ զեկեղեցիս կոչել (նօտրագիր). էջ 488բ — 489բ։**

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ.** էջ 4ա (օտար գրչէ). գրեցաւ ... ամենամեղ ... աբեղ—ի (երկու բառ քերուած)։

Էջ 5բ. «Իսկ ի թուին հայոց. ռ. ճ. լե. ապրէ ամսոյ. ժա ին։ Ի նոր կիրակին ի դուռն սուբ կարապետին. օրհնվեցի։ Դրձլ աւուրն իմ. ծնընդեան. թվն. ռ. ճ. եւ ժբ»։ 2. «Ես ըստեփանոս նվաստ հոկի։ ձնուեաց թափուս ամնի»․ 3. «Ես շուռութցի մուրատէնց տէր ոհանես գրեցի թվն ռճհ... լե լ օրն որ (պատռած եւ քերած)»։

Էջ 6ա. թվն ռճձը ին ես նախչեւանցի յակոբճանի որդի յարութիւնըս գրեցի որ այսմ ամիս եկի նբ ուխտս. մայիսի ամսուն գ օրն որ մեր վալի նամատն գղէս նախչուայք էր քցած այս չափըս բավ է իմացողաց. թվին 1188ին։

Էջ 6բ. Ես նախչուանցի աղամալը որդի աղէքսանդրս գրեցի որ յասմն ամիս եկինք նբ ուխտս օր ծնընդեան քրիստոսի թվն ռճձէ դէ+տէնբերի իե ումն տօն էր ըստեփանոսի նախավկային։

Էջ 6բ. Նաւ ես ագուլեաց նբ թօմայի առաքելոյն նորին առաջնորդ թովմաս ածայինամ վրդպի չաթիր բուսղամս գրեցի ումբ թվոջս մախսուս խանին օրդու արու փախչին խոյ այս է»։

Այս բոլորը օտար գրչէ։

Էջ 8ա. Աւգնեա հգիդ նբ ած ճշտ ամէն զգծս ձեռաց մրոց ուղիղ արա։

Էջ 55բ. Քն ած ողորմեա ստացողի նբ հարանց վարուցըս վարդան քահանային. եւ ծընօղացն. եւ ամ յարեան մերձաւորն. եւ մահապարտ մեղօք տատանեալ անարուեստ փըծուն գծողիս կարդացողացն եւ լսողացս. եւ որք զամէնն ասեն առ հանրկ Ամէն։

Էջ 85ա. Որոյ աղօթիւք նբ երջանիկ ընտրեալ հարանց քն ած մեր ողորմեա ստացողի նբ հարանց վարուցս. տր վարդան աբեղային եւ ամ յարեան մերձաւորացն այլոցն ամենեցուն։ Ամէն։

Էջ 162ա. (օտար գրչէ՝ նօտրագիր) ած քաւեա զիս մեղաւորս ի մեղաց։

Էջ 244բ. Ստացող հարանց վարքիս զսրբակրօն աբեղայն, եւ զծնօղսն իւր մուրատն, նուրումին. եղբարցն մանուկին. իւր որդոցն առաքելին հայկազին. դստերցն մարթին. մարգարտին. կողակից մարինոսին. հանգուցեալ եղբօրն առաքելին. քեռցն իմոյ մարթին

Թիրուանդին. ո՜վ դասք քհց եւ երամք ո՞րկւգց. յիշեաջեք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտ՛ր վարդանն հանդերձ ծնօղօքն իւրովք եւ ազգատոհմիւքն. յիշեցէք ի քս՛:

Էջ 425բ. ...գթայ տ՛ր մեղօք զառածեալ հոգիս ի մաքրափայլ յաղօթս ձեր. յիշել աղաչեմ եւ զծնօղսն իմ:

Էջ 440բ. (Նոր գրչով) այս Թիվին ամիգ եկաւ ալէման սարդարն Նախիջեւան եւ տ՛ր մկրտիչս գրեցի:

Գլխաւոր յիշատակարան. էջ 462ա. Փառք ամենանք երրորդութե՛ն երեք անձնեա տ՛րութե՛ն հօր եւ որդոյ եւ հոգոյն ս՛բյ Ամէն: Որ եւ կարօղութ՛ի նմանուն վերջացեալ անարհեստ փըծուն գըրչիս. յաւարտ եղեւ յայսմ ամի ի հայկազոն հայոց սեռի թվաբերութե՛ս ռ. ճ. եւ բ. ամի. գրեցաւ ծաղկաւէտ զանազան առաքինութ՛ք զարդարեալ որ կոչի հարանց վարք: Արդ փափագօղ եղեւ ոգեշահ անգին մարգարտիս. զՍ՛ծասէր աբեղայն զտ՛ր վարդանն ի հալալ ընչից իւրոց. յիշատակ իւրն եւ ծնօղացն հօրն մուրատին. մօրն նուրումին. եղբօրն մանուկին. եւ որդոցն առաքելին հայկազին. դըստերացն մարթին մարգարտին. կողակից մարինոսին. քերցն մարթին. Թիրուանդին. հանգուցեալ եղբօրն առաքելին. կողակից նիգարին. հօրեղբայր եղիին. շահիկին. եւ իւ՛ր դստերացն. եւ որդոցն. զարամանին. գրիգորին. աւաքին. Ս՛ծատուրին. մկրտչին. հերումին. բարսեղին. միւս զարամանին. Ս՛ծատուրին. դստերցն. խաթունին. Թամամին. սօլթանին. որդոցն. հպ՛ին. խաչատուրին. յովանիսին. Նաւասարդին. ծամերին չինարին. ապաշխարօղ խանուն. խանլիլարին. մայրենի ընտանեացս. պապ սարգսին. հանիկ խաթուն փաշին. մօրեղբարցն. յովսէփին. մ՛էլիքին. մօրքուր. խաթունին մանուշակին. որդոցն մըարին. յի՛ղին. փեսայ մարգարին. որդի արզանուն. փեսայ սարգսին. որդոցն մարտիրոսին. Նազարին. դստերցն զիլփուն. եղիսաբեթին. շահումին. եւ Ս՛մ արեան մերձաւորացն: Աղաչեմ զձեզ ով եղբարք յորժամ ընթեռնուք կամ օրինակէք լի բերանով Ս՛ծ ողորմի ասացէք տ՛ր վարդանին եւ իւր ծնօղացն: Արդ ես եղկելի նորաշինկեցի եռեւանագործ եւ զաղրալի. ձեռամբ իմով մեղսամածի. առաջնորդութ՛ք ն՛ք հոգւոյն յաւարտ հասի յայսմ տառի. ի երկիրն երընջակ ասի. ի գեօղն անուանեալ շօռօթ կոչի. ի հպութե տն փիլիպոսի. ի վիճակն ն՛ք կրպի. եւ մերոյս առաջնորդութ՛ե քաջ եւ արի հպի տն յեսայի վրդպի. ի դուռն ն՛ք Ս՛ծածնին ընդ հովանեաւ ն՛ք լուսաւորչին. գրեցաւ ն՛ք հարանց վարքս ի լաւ եւ յընտիր օրինակէ եւ ես անպիտանս տեսի զփափագօղ յայս գրոյս. առեալ սկսայ. թ. տետրէն ի վեր. մինչեւ. ի՛ եւ բ՛. եւ զմիջոցն թ տետրն մինչեւ ցվերջն. անմեղադիր լերուք խոշորութե գրոյս զի կար այս էր:

## 2.

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 318: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 24×19,5×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 16,5×5,3 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր, Թանաք՝ սեւ, սկզբնատառեր եւն կարմիր, երբեմն վարդագոյն. տող 22: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր. վերջէն յիշատակարանի մէկ թերթը պակաս է: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 108բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՆ ու զարդագրերը խիստ քիչ են. էջ 3ա մէկ ճակատ՝ կանաչ ու դեղին գոյներով: – ԳՐԻՉ՝ Միխիթար. Թուական եւն անծանօթ՝ կիսատ յիշատակարանի պատճառով:*

**Ձեռագիրս է Մայր Մաշտոց. կը պարունակէ էջ 1ա–բ Ցանկ. էջ 2ա Յովհաննու Մանդակունեցւոյ Ասացեալ ժողովեալ ածայնոյ քահանայապետին. էջ 3ա կը դրուի Հիմնարկէք եկեղեցւոյ, որմէ յետոյ կու գան միւս կանոնները:**

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 2ա. Զանարժան Միխիթար գրիչս հանդերձ ծնօղօք եւ հարազատօք յիշել ի տ՛ր աղչմ:

Էջ 2բ. Եւ առաքեաց սողոմոն առ քիրամ (երեք տող, երեք անգամ, իբր գրչափորձ):

Էջ 16ա. Զմեղաւոր ծրողս յիշեա ով փառաւորեալ հրպ.:

Էջ 17ա. Յիշեա զմեղուր ծրօղս ով սուրբ հրաշազարդե՛լ հայրպ.:

Էջ 18ա. Յիշեա զրգմամեղ գրիչ ով սուրբ փառահեղ հայրպ.:

Էջ 19ա. Յիշեա զմեղսասէր գրիչս ով շքեղազարդ հայրապ.:

Էջ 20ա. Յիշեա զնեխեալ գրիչս ով պանծալի հայրապետ:

Էջ 21ա. Յիշեա զմեղօք լի գ՛րչ ով պանծալի եւ փառաւորե՛լ հրպ.:

Էջ 22ա. Յիշեա զբազմամեղ գր" ով սուրբ եւ նազելի հայրապ.:

Էջ 73բ. (լուսանցքի վրայ օտար գրչէ) Ես տրցուերանիս զայս գիրս գրեցի թվին հազար բ" ճ' խ" ըբ" ին (= ՌՄԽԲ = 1793) հոկտեմբերի ٢٢ ին եղեւ ս"բ աթոռն ըստեփանոս նախավկային Ամէն:

Էջ 91ա. Յիշեա զմեղաւոր գծօղս ով պատուական հրպ. (Նման "յիշեա„ներ կան նաեւ վերի ոճով էջ 92ա, 93ա, 94ա, 94բ—95ա, 96ա, 99ա եւ 100ա):

Էջ 171բ (օտար գրչէ լուսանցքի վրայ) (թ)վին ռբճխէ:

Գլխաւոր յիշատակարան. Էջ 318բ. Փա՜ռք անբաժանելի եւ միասնական ն՛ք երրորդութե՛ն յա՛մ ո՛րբոց՝ եւ յա՛մ արարածոց. յիմանալեա՛ց եւ 'ի ոգալեա՛ց. 'ի հրեշտակա՛ց եւ 'ի մարդկանէ. այժմ եւ անզըրաւ յաւիտեանս յւտից ամէն: Որ ե՛ւ կարօղութ՛ի

*մեղապարտ մխիթար գրչիս հասանել 'ի յաւարտ սորին. քանզի որք մեծութե ընչից բղխանան. ոչ ինչ աշխատութի զմտաւ ածեն. յայլմէ յայլ անցանել գաւառս. հեռագնաց ուղղաւորութե. ոպ զի զշահն աճեցուցանել մարթասցին: Նա՛ եւ ընդ համատարած ծովուն ծփանաց նաւարկեալք՝ որք բարկացայմթ ալեօքն լեռնացեալ կոհակաձեւ դաշտանան. անդընդապտոյտ խորոցն բքացեալ կուտիցն մեռ առ մեռ ալեացն. ահ պակուցող տեսողացն արկանելով: Իսկ արիացեալքն ստորիջիցն 'ի խիխս խառոջիցն. 'ի խորս խաւարային ձորոցն համարձակին. 'ի քառաժեռս դժուարամուտ տեղեացն. 'ի խնդիր ականցն զանազանելոցն. լաւ համարելով զմահ անձանց. քան ունայն ձեռօք զվաստացն ժառանգել զանուն: Եւ այլք ըստ քերական արուեստին հալոցօք հնոցաց զոսկոյն գիւտ արուեստաւորելով զանօթն պատուական: Ըստ նմին օրինակի. հոգիահրա՛շ՝ վարդափթիթ անուշահոտ բուրաստանիս (Մնացեալը կտրուած հանուած է. սոյն յիշատակարանը Աղաթանգեղոսի յառաջաբանէն խմբագրուած է):*

## 3.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

?

*ԹՈՒՂԹՔ 215, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն մէջ մէկ թերթ մագաղաթ՝ հին երկաթագիր աւետարանի մասցորդ: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×14,5×4,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 17×5 սմ.: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ. վերնագրերը կարմիր առանց զարդի. տող՝ 28-32: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ տեղ տեղ թերթ է ինկած, գրութիւնը քիչ խառնակ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, լուսանցազարդ եւ զարդագիր չկան: — ԳՐԻՉ եւն անծանօթ. Թուական ՊԽ = 1391 թուէն յետոյ եւ 1703էն առաջ:*

**Ձեռագիրս կը պարունակէ.** 1. *Աւետեաց վրայ Անկանոն գրուածք մը՝ օտար գրչէ, որուն վերջի յիշատակարանը տես տակը. էջ* 1*ա*—*բ* (*կիսովին պատռած*). 2. *Մեկնութիւն Աւետարանի. հաւաքեալ ձեռամբ Մխիթար քահանայի. առաջին երեսը կտրուած հանուած է. էջ* 2*ա*—68*բ*: 3. *Հաւաքումն մեկնութեան Սաղմոսաց. էջ* 69*ա*—119*ա* (*առաջին թերթը պատռած*): 4. *Ծաղկաքաղ մեկնութիւն ի լուսաւոր բանից եւ արդիւնական վդպ"տի. Յոհաննու որոտնեցոյ հաւաքեալ աշխատասիրութեամբ Գրիգորի աշակերտի նորին շնորհալից վդպ"տի. (Եսայի մարգարէի մեկնութիւնն է, վերջը կիսատ թողուած). էջ* 119*բ*—160*ա*: 5. *Աստուածայծին մայր քսի իմ յոյժ դուն ասուր մեծի* (*Տաղ ի Յովհաննիսէ*). *էջ* 160*ա*: 6. *Ես պաղատիմ առ քեզ հայր* (*Տաղ ի Գրիգորէ*). *էջ* 160*բ* (5 *եւ* 6 *օտար գրչէ*): 7. *Յարարածոյն բան համառօտ* (*համառօտ մեկն. ծննդոց*) *էջ* 161*ա*—174*ա* (*կիսատ*): 8. *Նմ. Որպէս օրէն է հրոյ մշտաշարժ գոլով ջերմութեամբ. էջ* 174*ա*—*բ*: 9. *Նմ. Դողումն եւ սարսափումն ըմբռնէ զիս հարկաւորապ. զխորդ ճառեսցուք. էջ* 174*բ*—175*ա*: 10. *Նմ. Որք միշտ բաղձանս ունին առունակութինս բանի. էջ* 175*ա*—*բ*: 11. *Վա էր կոչի նոր կիրակի եւ կրկնոյ զատիկ. էջ* 175*բ*—178*բ*: 12. *Վարդան վրդպտի արարեալ վս մահուան քհից. ի բանն որ ասէ աւուրք իմ որպէս հովանի անցին... էջ* 179*ա*—180*բ* (*կիսատ*): 13. *Տեսիլ սրբոյն յոհանու աւետարանչին աստուածայբանի ողադս գալըստեան... էջ* 181*ա*—183*բ* (*այլ գրչէ*): 14. *Ժողովումն մեկնութեան սրբոյ աւետարանին որ ըստ Մաթէոսի... Ներսիսի հայոց կաթուղիկոսի ի խնդրոյ նորին եղբաւր Գրիգորիսի վերադիտողի հայոց. էջ* 184*ա*—213*բ* (*կիսատ*). 15. *...ի հաւրէ Նր. որպէս գիրք ամբաստանեն. տր. զսեղան քո կործանեցին* (*իբր պահպանակ գրուած քարոզ մը, բոլորգիր, Բ. սիւնակին կէսէն կտրուած*). *էջ* 214*ա*—215*բ*:

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ.** Էջ 1*բ*. *ով որ Փրկս յիշէ նայ ձեռամբ յոհանէս մեղայպարտի որդի աթայպէլի ով որ զողորմին պարգեւէ նայ հազարապատիկն առնու ի քնէ եւ նմայ փառք յաւիտեան ղաւիտենից ամէն:*

Էջ 68*բ* (*Յիշատակարան հեղինակի մեկնութեան Աւետարանին*). (*Ա*)*րդ ես վերջին ապաօորաց բանին. եւ տրուպս բանասիրաց մխ" քհյ որ միայն անուամբ եւ ոչ արդեամբ տխեղծ մտօք եւ տարտամ լեզուաւ ձեռնարկեցի յայս գծ տեսուե. ոչ աւելի հոգացեալ, այլ ճշտուեն հետեւեալ. Արդ է պիտանացուի. նր ի քաբոզս բանի. եւ ի կգ զրուցաց եւ ի բեմ-ասցուխս: Ոչ գիտնոց վն այլ վն մանկանց իմոյս խնրդակցացն. Եւ արդ թէպէտ իմաստնոց յայտնի է այս ա բայց յինէն տաժանելի կրիւք Յռջ եկն. վնյ աղաչեմ զթերին լնուլ եւ զաւելորդն կշռել. եւ սխալանացն ներել. մանաւանդ ուղիղ մտօք ընթեռնուլ ընդ որ եւ հայցեմ. որք պատահիք. մաղթել առ մրգասէրն ած. թերեւս իջցէ մասն ինչ ի սրբանուէր աղօթից ձերոց. ի շաբաւալի հոգիս եւ սրբեսցէ զաղտ հնուե մեղօք մեռելոյս. եւ ազատեսցէ ի կուտակեալ պեացս եւ արժանացուսցէ յետին մշակացն: Արդ եղեւ զրաւ համառօտ բանիցս քարոզուե ի թուին հայոց. պխ. առ ոտս արդիւնաբան հռետորին գրիգորի մծ. յերկիրս երզնջակոյ. ի վանքս ապրակունեաց: Որ եւ այս ի նորին նշուլից շնորհացն առեալ գծագրեցի. առ ի յիշատակ առ յապայ եղելոց մանկանց եկեղեցեացդ հայստ"ց. Այլ որք գաղափարէք գրեաջիք զաակաւ յիշատակիկս մեր ի վջք*

գրոյս. զի եւ դուք յիշեալ լիջիք ի տէ. որ եւ դձլ աղաչեմ. ոչ ջնջել զսակաւ յիշատակս մեր թէպէտ չեմք արժանի զօր եւ մեզ ընդ ձեզ լիցի հասանել մասին սրբոցն ի քն յն ի տն մեր որ է ծնհլ յաւիտեանս Ամէն:

Էջ 80ա (օտար գրչէ). ած ողորմի տն սիմէօնին հոգոյն որ շնորհեց զայս գիրքս. եւ մէկ աղէկ գիրք մի ալ ինձ անարժան ստեփանոս վարդապետիս. ած լուսաւորէ զիւր հոգին եւ զիւր ծնաւղացն. հոգին. եւ թողու զիւրեանց մեղքն ամէն հայր.

Էջ 118բ (Յիշատակարան Մեկնութեան Սաղմոսաց). Ուստի եւ այս տուչուի մեկնուի սաղմոսի. ընդ նախատեսուի մրգրէին յեսայեայ դիցի. եթէ գկրկին լումայս աղքատի. ի գանձարան ճոխուեց մանգանց վերնոյն սիոնի. արկցի. իսկ թէ գտաւ ի սմա ինչ արժանի. տն շնորհ մատուցի. եւ պակասն մերոյս փոքր. նգալ անօթոյ ներեսցի. որ եւ եղբայրական սիրովդ թերին լցցի. եւ աւելին կշռեսցի. եւ ուղղեալք հնրկուէ աղաչեմ նչխար ձերոյդ մաղթանաց ողորմուի մեզ պարգեւեսցի. թերեւս բուժեսցի. չարաւ. նեխեալ. եւ փտեալ վիրաւոր մարմնոյս. եւ սրբեսցի խիղճ վտանգաւոր հոգոյս. ընդ որս եւ երիցս երջանիկ վարժապետին իմոյ. Յոհաննու որոտնեցոյ յիշատակն ածհնուէ եղիցի. որ նախ երից ամաց փոխց"ւ առ ցանկալին իւր քն. եւ զմեզ որբ թողեալ. կամք տարափուսեալ ի մէջ յոգնաթիւ չարաց. բազմապատոյտ ալեաց. ստոխ կոհակաց. անփորձելի. եւ անհմուտ նաւաստի. որ եւ ոչ սակաւ մխիթարուի վարկաց. զհաւաքումն նր որոյ չափ եւ տրտմեցայ որ ք եւ յետոյ զարթեայ. եւ այժմ պտճռ է մերս պղերգուեց. կմ ծոյլ աշակերտաց. կմ ժմկիս գառնուեց յորում տապատակեալ հենք զօրաց կրկին խորագմ անուանեալ ազանց. կործանեցին զերկիրս հայաստն"ց. զվրաց. զպարսից. եւ զայլ'ս բազմաց: Զոմանս ի սուր արկին եւ ի հուր. զկէսքն գերի վարեցին. եւ մնացեալքն ի սովոյ ջնջեցան՛. եւ բզմ չէնք աւերեցան. յորում ամի էր թիւն հայոյ: պլղ. եւ մեք ղազապուրծ գոլով. սա'տ. ան'դ. եւ շրջէաք ի վր երկրի. ի նուազել բարուեց եւ խաղաղուեց. եւ դդ"րեալ սուղ ինչ աւուրք՝ յապահովացաք ի վանս հրեշտակաբնակ առաքելական աթոռոյս եւստաթէ. ուր եւ աւարտեալ գրեցաք ի նմ ձեռամբ մթէ"ս գրչի եւ աշակերտի: Այլ եւ աղաչեմ զամծաւէր պատահօղս. որ ընդօրինակէք ի սմանէ գրեսջիք եւ զսակաւ յիշատակս զայս. զի եւ դուք գրեալ լիջիք ի դպրուի կենաց ամէն: [Ո՛վ նր հայրք եւ եղբայրք եւ սիրողք բանին ճշմաէ. թէ արժանի համարիք մի ծուլանայք աղաչեմ զձեզ. թէպէտ ոչ եմ արժանի յիշելոյ. յիշեցէք զնուաստ կրօնաւորս որ տրուպ եմ ա կրօնւ"ր.ց: զս"ի. ընդինեւ եւ ընդ ամէ յիշեցէք եւ զերջանիկ եղբայրն իմ զվանէս կրօնաւորն եւ նր են շնորհք եւ ա բարուիք որ եղեւ ինձ նայ եւ զմիւս եղբայրն իմ զսարգիս եւ զծնօղսն մեր յիշեցէք կրկին աղաչեմ. եւ ած զձեզ յիշէ. եւ թէ զղօղորմիսն սակաւ տայք նա սակաւ առնուք. որով չափով չափէք չ"փ (կիսատ):]

Էջ 174ա (Նոր գրչէ). Ջվերջին նորոգաւղ նր տառիս զմեղաւք զառածեալ անարժան սուտանուն սարգիս դպիրս եւ զծնաւղքս իմ եւ զամ յարեան մերձաւորքս իմ յաղաչեմ ով ընթերցաւղ նր վարդապետք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր եւ ած զձեզ յիշէ ի յիւր միւսանգամ գալուստն. ամէն հայր:

Էջ 183բ (յիշատակարան տեսլեան Յովհաննու). ձեռամբ մեղապարտ յոհանիսի որդի աթայպէկի ով որ զողորմիսըն պարգեւէ նայ ի քնէ ըզհազարապատիկն առնուցու եւ քի փառք յաւիտեան յաւիտենից ամէն:

Էջ 183բ (այլ գրչէ). Ջվերջին ստացող նր գըրքիս. առաքել վարդապետ յիշատակ ինձ, եւ ծնօղքն իմ զտէր գրիգորն. եւ մէլիք խաթունն, եւ եղբայրքն իմ. զտէր գրիգորն: զանտոնն. զյոհանն: զպետրոսն: զաթանասն: զդաւիթն: եւ զտէր մանուէլն: եւ զտիրացու յակոբն: եւ եղբօր որդի. պողոսն: անդրէասն: եւ զղազարն: իմ սիրելի եւ իմ հոգի սրտիս կսկիծ հանգուցեալ տիրացու զխաչատուրն որ փոխեցաւ առ քն երկիրն հօռմանց. 'ի ընիկ տեղն ստրամիտ: ած իւր հոգին լուսաւորէ ամէն: քսանամեայ փոխեցաւ առ քն: թվ ռճծբ: աթանեսի որդիքն. արզումբէկն: եւ զկարապետն:

Էջ 2(?)6ա (լուսանցքի վրայ). մի մեղադրեր կապուղիս զի օրինակ չի+ար որ զայս. ա. տէրեւ պակասն գրէի:

Նանցմէ էջ 68 եւ 118 գրուածները նոյն գրքերուն հեղինակէն են. վերջիններս երկրորդ մասին մէջ կը յիշէ գրիչն իր անունը, բայց դժուարիմաց համառօտագրութեամբ. այնպէս որ գրչին անունը թուականին հետ առ այժմ անծանօթ է մեզ: Յիշատակարաններս այս մասը գրած ենք անկիւնաւոր փակագծի մէջ:

# 4.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵԶԵԿԻԷԼ ՄԱՐԳԱՐԷԻ

?

*ԹՈՒՂԹՔ 199. էջ նշանակուած է 1–374: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×15.5×2,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ կանոնաւոր, միասիւն: – ԳԻՐ՝ մաքուր նօտր. թանաք սեւ. սկզբնատառերը եւ առաջին գլխի սկզբնատողերը կարմիր. միւս սկզբնատողերը սեւ, բոլորգիր: Տող՝ 29: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ ամուր խաւաքարտեայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա - 2բ, 191ա - 199բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐ չկան. միայն ճակատը էջ 6բ փոքր խորան մը եւ մէկ թռչնագիր: – ԳՐԻՉ Յովհաննէս, մնացեալն անծանօթ:*

**Մատեանս է "ի խնդրոյ տն Ստեփաննոսի սիւնեաց նահանգին վերադիտողի, արըլ հւքումն մեկնու-**

թեան ածաբան մրգրէին Եզկլի երջանիկ վրդպին յեսայեայ Հայկազեան տոհմի„։ էջ 3ա—բ Նախերգանք. էջ 4ա—6ա յառաջաբան վերլուծութեան մարգարէութեան Եզեկիէլի. էջ 6բ—188բ բուն գիրքը. էջ 189ա—190բ Սուղ ինչ բան յեզեկիէլէ Վարդանայ. Եզեկիէլի տեսիլն որ տեսանէր յաշխարհին...։

ՑԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆ միայն էջ 190բ. “Զախտարծօք լցեալս ոգի զՅՀննէս պիտակ այս ինչ յիշել ի ձեր յաղօթս աղաչեմ„։

## 5.

## ԲԺՇԿԱՐԱՆ

?

ԹՈՒՂԹՔ 58: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×15×1 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ անվարժ եւ խառնակ. միասիւն: – ԳԻՐ՝ անցման բոլորգիր. Թանաք՝ սեւ. հատուածներու սկիզբը դեղին, կարմիր, աղիւսագոյն կամ նարնջագոյն. տող 17–18: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ հասարակ թղթակազմ, առաջին կողը հանուած: – ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւական աղտոտ. սկիզբէն եւ վերջէն թուղթ պակաս, բայց այժմ լաւ կարուած է: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 23բ եւ 28բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն բնաւ գոյութիւն չունին: — ԳՐԻՉ եւն անծանօթ:

ՑԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. չկան։

Մատեանս է բժշկարան, ուր անկարգ կերպով առանց կանոնաւոր գլխակարգութեան գրուած են զանազան դեղեր այլեւայլ հիւանդութեանց մասին. էջ 43բ օտար գրչէ աւելցուած է վրացերէն լեզուով, բայց հայատառ դեղի բացատրութիւն մը։

## 6.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՌԿԳ = 1614։

ԹՈՒՂԹՔ 180, էջք 360: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×15×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ բաւական կանոնաւոր, առհասարակ միասիւն, իսկ էջ 315–333 երկսիւն, իւրաքանչիւրը 13,5×4 սմ.: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 24: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. կազմի վրայ շատ նուրբ տպուած են բազմաթիւ սրբերու, պապերու եւ թագաւորներու պատկերներ. ոմանց տակը լատիներէն արձանագրութեամբ. առաջին կողին պատկերները մաշած են, բայց ետեւի կողին վրայ դեռ բաւական մաքուր են 30 դիմանկարներ, որոնց տակ կը կարդացուին IOANNESI, MARIA, SALVATOR եւն: – ՀԱՆԳԱՄԱՆՔ գրուած մասերը խոնաւութենէ սեւցած, բայց դեռ անվնաս. մնացեալը մաքուր է: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկան. զարդագրեր 1-2 հատ. մէկ փոքրիկ գլխազարդ մը: — ԳՐԻՉ՝ Գրիգոր Տոմաժիրսքի. տէր Յովհաննէս քահանայ. տեղ Իլվով. թուական ՌԿԳ = 1614, բայց արտագրուած ՊԽ = 1391 թուին գրուած օրինակէ մը:

Ձեռագիրս կը պարունակէ 1. Ի Ղւկ (= Ղուկասու) գլխոյ հաւաքումն բանից. եւ քարոզք յոլով ի մի մեկ. (= ի Մատթէոսի մեկնութենէն). աշակերտի Մեծի գրիգորի։ Աւրհնեալ էնն ամ. էից։ Ամենայն ոք որ ծոյլ է յածային ուսումն... էջ 1—151։ Գրուածքիս հեղինակն է Գրիգորի աշակերտ Մատթէոս, պխ = 1391 թուէն։ 2. Թուղթ ստեփաննոսի սիւնեաց եպիսկոպոսի եւ իմաստասիրի պատասխանի թղթոյն Գերմանոսի պատրիարքի Կոստանդինուպօլսի. էջ 155—183։ 3. Պատասխանիք թղթոյն տրապիզոնի կամ էջ 184—5 գրուած ընդարձակ խորագրով՝ Մովսէս վարդապետի Եզնկացոյ գրեալ պատասխանի ի տրապիզոն առ հատուածեալ էրէցն Գրիգոր. էջ 183—227։ 4. Ասոր իբր յաւելուած “վկայութիւնք վասն ծննդեանն քի եւ մկրտութեան„ եւ ուրիշ զանազան վիճելի խնդիրներու վրայ. էջ 227—267։ 5. Խրատ առ ուղղափառ հաւատացեալ հայոց Առ արիացեալքն չարեօք եւ ամբարիշտն կամօք. որում խելագարեալ յանդըգնին, եւ պէսպէս եւ ազգի ազգի իրս քարոզեն ի սբ խորհուրդ մկրտութեան... եօթը խնդիրներու վրայ վիճաբանութիւն կաթոլիկներու դէմ. էջ 268—302։ 6. Վանական վարդապետի ասացեալ բան հաւատալի. Կենսաբուխ սբ աւետարանն գլթագէտս զմեր առաքեալն. էջ 302—307։ 7. Այլ բան վանականին վարդանայ գրեալ. Զինչ է ճրագալուցին լուծանելն. էջ 308։ 8. Քրիստոս զեկեղեցական աստիճանս ո՞րպէս եցոյց եւ յորում տեղւոջ. էջ 308–310։ 9. Միշտ կամիմ գիտակ գոլ զձեզ նոր իրաց եղելոց. էջ 310—312։ 10. Եւ զայս ես գիտեմ ի մեր ժամանակս (նոր գրչէ յաւելուած). էջ 312—314։ 11. Լուծմունք դժուարիմաց բանիցն սբ աւտրնին. էջ 315—333։ 12. Գրիգորի պապուն հռոմայ ասացեալ. աւգնեա ած. Ցես որ ի դրախտին ուրախութեանն մեղօք... էջ 334—345 (նոր ձեռքէ)։ 13. Արդ յաղագս յելանելոյն ի դրախտէն (ժամանակագրութիւն ուրիշ ձեռքէ մը). էջ 345—6։ 14. Պատմութիւն մարիամու մագդղե-

նացւոյն. Սբ աղախինն քի մարիամ էր ի սաՀմանացն. էջ 347—356։ 15. Պատմութիւն վան արդր դատաստին այ. Ցաշխարէն խապանիոյ այր մի ոմն աղքիՙդ... էջ 356—359։ 16. Պատմութիւն վան ողորմածութեանն Ա. Ցաշխարհն Հայոց մեծե՛ց այր ոմն աղքատ... էջ 359—360 (վերջը կիսատ)։ 17. (կողքի վրայ) Օրհնեմք զորդին շնորհիւ Հոգւոյդ (տաղ)։ Վերջին 14—16 նոր ձեռքէ մը, իսկ 17 բոլորովին նոր գրչէ։

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. էջ 151. Արդ ես վերջինս սպասաւորաց... (Աւետարանի Մեկնութեան յիշատակարանն է՛ Հեղինակին կողմէն գրուած եւ նոյն է բոլորովին, Ձեռ. 3, էջ 68բ գրուած յիշատակարանին Հետ, ուստի աւելորդ է երկրորդ անգամ մէջ բերել)։

Էջ 152 (աւոր տակ նոր արտագրողէն աւելցուած). Փառք ամենանը երրորդութե Հօր եւ որդոյ եւ Հոգոյն սրբոյ յաւիտեանս ամէն։ Արդ գրեցաւ սբ գիրքս այս։ որ կոչի քարոզգիրք։ 'Ի Թվին Հայոց. ռկգ. եւ փետրվարի Է. որն երկուշաբթի. աւարտեցաւ։ ի մայրաքաղաքն Իլով ընդ Հովանեաւ սբ ածածնին Հայկազանց եկեղեցւոյ ի Թագաւորութե։ Երրորդ Զիկմունտին ի վայելումն։ Տր օվանէս սրբազան քաՀանային. որդոյ Պր բան մուրատին։ Արդ անկեալ աղաչեմ զամենեսեանդ որ Հանդիպիք սմա կարդալով կամ յօրինակելով. մի մոռանայք յիշել մէկ Հայր մերիւ զանպիտան զգրիչս. զգիգոր տոմաժիրաքին եւ զծնողս իմ եւ զայլ ամ արեան մերձաւորսն. եւ ած զյիշողդ յիշէ իւր միւսանգամ գալստեանն ամէն։ Հայր մեր։ α. (այսպէս նշանագիր մը[1]) 1614. գ. եռ. ժժ. գ. յյ. եռ. (վերջինս ծածկագիր է եւ կը կարդացուի Գրիգոր իբր գ. եռ = 5000 = ր, ժժ = 20 = ի, գ, յյ = 600 = ո, եռ = 5000 = ր)։

Նոյն էջ. — Թւին ռճի. յուլիս ամսոյ Ե ծնաւ գրիգորն։ Թւին ռճրբ. նոյեմբեր ամսոյ. Է օրն ուրբաթ ծնաւ դանիէլ տըղայն. Թւին ռճիե յունվարի ամսոյ իդ օրն ծնաւ եղեկիայն։ փառք քնի ո բերան որ կարող է ի քարանցն որդիս աբրաՀամու յարուցանել, ծառա եմ ըստեղծօղին։

Էջ 153 (այլ գրչէ) Գոհութի եւ պատիւ եւ փառք էութե ինքնագոյի տէութե յարակայի երրորդականի անձնաւորութե եւ միականի ածութե Հօր եւ որդոյ եւ Հոգոյն սրբոյ ծնօղի եւ ծնեցելոյ եւ բղխօղի ի նոցունց էութէ Համապետ՛ց եւ Համագոյից եւ Համագօրաց ի Հանուրց արարածոց եւ բնաւից ստեղծուածոց իմանՙլեաց եւ զգալեաց նիւթականաց տարրեղինաց եւ Հան նիւթից Հրաշինից սեռից անցելով ամանակաւ եւ միանալով բանին այ ընդ մարդկային բնութիս Հուր ածային ի ձեռն էակցին իւրոյ եւ ի Հոգւոյն սբ. Եհեղ բորբոքմամբ ճառագայթապէս ի սիրտս իմ Հաւատացելոց զնոյն սիրոյն վառեալ։ Ես ամենից նուաստ գալուստ վարդապետն բորբոքեցայ ի սէր ածային մատենիս այս վարդափթիթ. եւ չաՀաւէտ առիթ արտասուաց եւ պատճառ արքայութե ստացայ այս քարոզգիրքս Հալալ արդեանց իմոց որքան կենդանի եմ վայելեմ եւ յետ իմոց ելանելոյ յաշխարՀէս յիշատակ սրբոյ նախավկային այլ ոչ ումեք յիշաղայ չունի ոչ եղբարց եւ ոչ ազգ ընտանեաց ով ոք Հանէ զսա ի դրանէ սրբոյ նախավկային պատիժն ընդ յուդայի առցէ եւ երեք ճժը Հայրապետաց նզովից ներքոյ լինի եւ դատաստան առ ինձ սեւ երես գան կարդացողքն եւ վայելողքն եւ խնամով պաՀօղն աՀեալ լինին յայ եւ իմ սբց. Ներ բայց ժամամբ Հայցեմ զի ո՞րք վայելէք ածախօս գիրքս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր միով Հայր մեղայիւ եւ դուք յիշեալ լինիք աՀեղ ատենին քի։ Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր ամենամեղ անարժան գալուստ որ միայն անուամբ կոչիմ վարդապետ բայց արդեամբք մեկուսի Հեռացեալ ըստ մարգարէին. եւ զՀաւն իմ զՀանգուցեալ միքայէլ քաՀ Հաւտորն աՀլի որ էր աթոռակալ սբոյ էջմիածնայ. եւ մինչ Հզր ծնօղքն իմ զյուՀան. եւ զպետրոս աՀլի եպիսկոպոսքն որ էին առաջնորդք սբ ուխտիս նախավկային. եւ Համշիրակ մեծարգոյ եղբայրն իմ զմաղաքիա վարդապետն որ է տեղեաւ չամբեցի։ Դարձեալ յիշեցէք զմարմնաւոր ծնօղքն իմ. զՀանգուցեալ ներսէսն. եւ զմայրն իմ սառէն եւ Հօր եղբայրն Հանգուցեալ զտէր մարգարէն եւ մարմնաւոր եղբայրքն անանիէն եւ Հանգուցեալքն զզալարն եւ զղուկասն եւ անանիայի որդիքն զտէր մարգարէն եւ զաւետիսն եւ քորքն իմ Հանգուցեալ շուշանն եւ եփրոսինէն. եւ զՀոգեւոր ծնօղն իմ ջուղայեցի մինասի դուստրն նանաջանն որ պատճառ եղեւ. եւ իւր Հալալ արդեամբքն. յայսմ ամի ընդ իւր առեալ տարեաւ ի սբ յեմ Համբուրելով ի լուսաբուխ սբ գերեզմանն. ած իւրեան վարձն Հատուցանէ Արդ աղաչեմ աղաչեմ ով Հայրք եւ եղբայրք իմ երեսս, անկեալ. որ միով Հայր մեղայիւ յիշէք զխս. Թվն ռճիզ. Ամէն Հայր մեր որ։

Էջ 346 (օտար գրչէ). Ես սիմէոն վարդապետս ըստացա զգիրքս ի Հալալ վաստակոց իմո ի Թվինս Հայոց ռճէ բաւ է։

[1] Նշանագիրս է գուցէ a = իբր anno բառին Համառօտութիւնը։

## 7.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

### ՌՃԺԶ = 1667.

ԹՈՒՂԹՔ 535: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 19×12×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մինչեւ 432ը միասիւն, այնուհետեւ երկսիւն, իւրաքանչիւրը 12×3.5 սմ.: – ԳԻՐ՝ նոտր. թանաք սեւ. վերնագրերը կարմիր, սկզբնատառերը եւ սկզբնատողերը կարմիր, վարդագոյն եւ կապոյտ: Տող 24-27, իւրաքանչիւր գրքի մէջ Հաստատ թիւ մը: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԴԱՄԱՆՔ՝ մաքուր. դժբախտաբար մէջերը (մա-

*նաւանդ էջ 200-ի կողմերը) խոնաւութենէ վնասուած. տեղ տեղ սեւցած ու փտելով թափած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա–2բ, 4բ, 151բ, 365ա–367բ, 426բ, 431ա–432բ, 481բ, 495ա–բ, 496բ, 503ա, 513բ–514ա, 526բ–527բ եւ 533ա–535բ. ասոնցմէ ոմանք իբր պահպանակ են, միւսները յետոյ գրուելու համար թողուած: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւս չկան: Սկզբնատառերը պարզ երկաթագիր: — ԳՐԻՉ՝ Պետրոս վարդապետ. տէր գրիչը. տեղ Նախավկայի վանքը. թուական ՌՃԺԶ = 1667, ՌՃԻԱ = 1672:*

**Ձեռագիրս կը պարունակէ. 1. Ցանկ Հայելւոյ վարուց. էջ 3ա—4ա: 2. Հայելի վարուց (առանց վերնագրի) էջ 5ա – 150ա, բոլորը 71 գլուխ: 3. Առակ մը. Երթայր լծավարն ի վաստակս իւր եւ օձ մի սառեալ էր... էջ 150բ – 151ա: 4. Վարք հարանց. սկսած է սա վերնագրով "Խրատք գեղեցկայարմարք որ եւ երանելի հարցն մերոց...,, էջ 152ա – 342բ, ընդ ամէնը 21 գլուխ: 5. Նախերգանք քարոզից. էջ 343ա—364բ: 6. Խրատք ռռակաւոր բանիւ արարեալ վարդապետաց եկեղեցւոյ՝ վասն զանազան գործոց հոգեշահ եւ պիտանիք ամենայն հաւատացելոց. (Առակագիրք. թուով 132 առակներ). էջ 368ա—426ա: — 7. Այբուբենական ցանկ առակաց. էջ 427ա – 429բ: 8. Յիշատակարանք, էջ 430ա—բ եւ 431բ: 9. Բանք իմաստասիրականք եւ ածաբանականք համառօտաբար իբր սահմանօրէն արտադրեալք եւ հաւաքեալք աշխատասիրութեամբ լեհացի Ստեփաննոսի բանասիրի. էջ 433ա —526ա: 10. Ամենայն պատճառէ նախկին յաւէտ ահեղ յիւր պատճառելին... էջ 528ա – 532բ (վերջը կիսատ):**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. էջ 180ա. Զպետրոս մեղօք զառածեալս ժանմ յիշել յաղօթս:**

**Էջ 198ա. Նոյն առաւել Զպետրոս անուամբ եւեթ բանի սպասաւորս:**

**Էջ 210ա. Նաեւ իմում անձին ամենամեղ պետրոս ապիկար բանի սպասաւորի: որ ոչ եմ արժան յայսմ կարգի. այլ յուսամ ամօղն բարեաց ամի. որ բարեգութ տր անուանի:**

**Էջ 364բ. է այս պատճառ իբրու նեցուկ վարդապետի. բան յառաջոյ վերջադասիւ ի հանդիսի. ուստի սատար բստ վայելման է պետրոսի. գոլ բստ անուան եւեթ անհոյծ բանասիրի. գրեցաւ ռճժզ թվին:**

**Էջ 431բ (Նոր գրչէ). յոհաննէս վարդապետս շամբեցի աւետեան. վանահայր ն̃ր ուխտիս Նախավկայի. սոյն թարգիս ստացայ վարդապետական խաչ պարանոցի ի տէր Ներսէս ս̃ր̃ղն կաթղիկոսէն. 1848. ամի ոն օգոսի 23ին. միաբանք ս̃ր̃յ ուխտիս դանիէլ. գաբրիէլ եւ մկրտիչ վարդապետք:**

**Գլխաւոր յիշատակարան (էջ 430ա—430բ). Շնորհիւ եւ ողորմութեամբ տն մերոյ յի̃ քի̃. սկիզբն արարաք գրոյս հարանց վարուցս. եւ աւարտումն արարաք զայս գիրքս ես պետրոս վարդապետս զոր ձեռամբ իմով գրեցի եւ զորս գրել տուի այլոց. ի թվին հայոց ռ.ճ.իա. ի ն̃ր ուխտս Նախավկայիս. առաջնորդութբ տն միքայելի ամծաբան վարդապետի: Ի հայրապետութի ն̃ր էջմիածնու յակոբայ սրբազան կաթուղիկոսի: Ի թագաւորութէ ազգին պարսից որ անուանի շահ սուլէման վերաձայնի: Արդ՝ ես պետրոս եւեթ վարդապետս աղաչեմ զձեզ հարք իմ եւ եղբայրք, որք հանդիպիք ի սմա կարդալով կամ օրինակելով յիշեսջիք աղօթս ձեր զհոգեւոր հայրն իմ զմիքայէլ վարդապետն զի եւ դուք յիշեալ լիջիք ի քէ ա̃յ մերոյ որ է օրհնեալ: արդ՝ յիշեցէք միաբանք ն̃ր ուխտիս. զյոհան եւ զմարտիրոս վարդապետքն. Նա. եւ զորբաանեալ քահանայքն տր թորոսն, եւ զտր միքայէլն. եւ զտր գրիգորն. տր մովսէսն, տր մարտիրոսն. եւ զտր աւետիսն. տր ղազարն. համաշունչ եղբարքս իմ. մեզ յիշելոցս. եւ ձեզ յիշողացդ. առհասարակ ողորմեսցի քս ամն մեր: Ա.Ա. եւ զմարմնաւոր ծնօղսն իմ զպաղտասարն. եւ զմարձանն. Նայ. եւ զեղբայրքն իմ ածատուրն եւ քամալն. եւ ամ արեան մերձաւորսն իմ աղաչեմ զձեզ յիշել միով տր ողորմեայիւ. զի եւ դուք յիշեալ լիջիք ի քնէ ա̃յ: Որքան կենդանի եմ ի վր երկրի. վայելումն իմ է. երբ որ մեռանիմ յիշատակ Նախավկային է ուր եւ իցէ սայ մի ոք յիշխեսցէ զսայ իւրն պահել այլ տարեալ դիցէ ի վանքն Նախավկային:**

**Սոյն յիշատակարանէն կ'երեւի որ Վարք հարանց, Նախերգանք եւ խրատք Պետրոսի գրչէն են. Հայելի վարուց թէեւ նոյն գրչէն կը թուի, բայց գուցէ վարք հարանցի մաս կարծուելով՝ յիշատակել աւելորդ համարուած ըլլայ. իսկ լեհացին կարելի է վերջէն աւելցուած է:**

## Տ.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

(1658-էն առաջ:)

*ԹՈՒՂԹՔ 190, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ'երկու թերթ մագաղաթեայ պահպանակները՝ մնացորդ երկաթագիր աւետարանի մը: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 18×13.5×4.8 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն եւ բաւական կանոնաւոր. տառասխալներ ըստ բաւականին. ինչ. գոյժ փև. գուբ էջ 76բ. աղաջեաց էջ 81բ. օտիցն = ոտիցն էջ 81բ. արքայութեան էջ 55բ. զահանայական էջ 82բ: — ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերը կարմիր, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, կապոյտ կամ աղիւսագոյն: Տող 19. — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ. — ԿԱԶՄ՝ կաշեպատ հաստատախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ լաւ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ*

*չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱՋԱՐԴ, խորան եւ զարդագիր խիստ քիչ եւ միջակ գործ: — ԳՐԻՉ՝ Յովհաննէս քահանայ, տեղ անծանօթ. թուական ՌՃԷ = 1658 թուէն քաւական առաջ:*

**Ժողովածուիս** բովանդակութիւնն է. 1. Յաղագս մինչեւ ի ջրհեղեղն ամք ամսթ. (ժամանակագրական տեղեկութիւններ). էջ 1ա: 2. Արդ զառանելոց ժամանակաց եւ զեղելութիւն իրացն որ ի նոսա. ի հրաբուն մատեանս գտանելով... (Գուշակութիւն Հայոց, Քրիստոնէից, Այլազգեաց եւ նեռին ապագայ դարերու մէջ). էջ 2ա—16բ: 3. Մեկնութիւն տէրունական աղօթիցն... Հայր մեր որ յերկինս ես... էջ 16բ—31բ: 4. Սարգսի վարդապետի ասացեալ յորդ. Մեծ են հաւատք, եղբարք, մեծ եւ աճաւոր. էջ 31բ—38ա: 5. Նորին Սարգսի վարդապետի ասացեալ. Իսկ զլեզու մարդոյ ոչ ոք կարէ հնազան(դ)ել. էջ 38բ—42ա: 6. Նորին Սարգսի վարդապետի ասացեալ. Բարկացօղն ոչ ճանաչէ զած. էջ 42բ—44բ: 7. Նորին Սարգիս վարդապետի ասացեալ յորդոր. Լուրն մին այ զինչ ասէր առ մեղուցեալ. էջ 44բ—47բ: 8. Սբ հօրն ներսէսի յաղագս ը. խորհրդոց. առաջինս վս որովայնոլութեան. որ մայր է ամ մեղաց. Սկիզբն պտղայբերութեան ծաղիկ է. էջ 47բ—50ա: 9. Վասն պոռընկութեան Սբ հօրն ներսէսի. Զգաստո–թիւն ծնանի զժուժկալութիւն. էջ 5 ա—53ա: 10. Նորին սբ հօ(ր)ն ներսէսի վասն արծաթսիրութեան. Արծաթսիրութիւն է արմատ ամ չարեաց. էջ 53բ—55ա: 11. Խրատք հոգեշահք վասն զղջման արտասուաց ասացեալ անանիայի սբ եւ ընտրեալ վրդպտի... Ով ածասէր սիրելի եղբայր. էջ 55ա—70բ: 12. Գրիգորի եռամեծի քաջ հռետո–որի աշափերտ յոհաննու քարոզ վս սրբոյն գրիգորի լուսաւորչին... Առաքեալն հեթանոսաց եւ քարոզն աշխարհի. էջ 70բ—85ա: 13. Նորին բդ. գրիգորի. քրզ. դձլ. հարցանելի է թէ վասն էր կոչի լուսաւորիչ. Եւ գիտ(ելի է թէ լ)ուսաւորիչ կոչի գրիգորիոս վս բազում պատճառի. էջ 85բ—94ա: 14. Նորին գրիգորի եռամեծի եւ քաջ հռետորի... Քարոզ վս աղօթից ի բանն Ղուկասու. յամ ժամ պարտ է յաղօթս կալ. էջ 94բ—105ա: 15. Գեւորգայ բան ի սիրող ի քարոզ. ի բանն որ ասէ աւետարանն. Արթուն կացէք եւ յամ ժամ... էջ 105բ—114ա: 16. Վս սիրո պատուիրանացն այ. Լուարուք զբանն կենաց. էջ 114բ—117ա: 17. Փառք այ ծածկեն զբանս, փառք թագաւորին պատ–են զհրամանս (վս առակի Սողոմոնի). էջ 117ա—120ա: 18. Վասն աղօթից որ առնեն. Յամենայն ժամ աւրհնել զած եւ յաղօթս յիշել արժան է. էջ 120ա—124բ: 19. Վասն մկրտութեան քրիստոնէից խրատք. Վասնորոյ պարտ է մեզ համեմատել աւրինակաւ. էջ 125ա—127բ: 20. Խրատք վասն ապաշխարութեան. Եւ արդ եկայք ամ հաւատացեալք այ եւ բարձրաձայն... էջ 127բ—130բ: 21. Պատմութիւն Յովասափու թագաւորին եւ բարլաամու ճգնաւորին (համառօտ խմբագր.) էջ 131ա—176բ: 22. Աղաւթք սբ վրդտին բենիկ ասացեալ վս զղջման արտասո–աց. Եւ արդ տր իմ Յս Քս. էջ 176բ—181ա: 23. Նորին սբ վրդտի ասացեալ ողբք. Տր ած իմ յս քս. եւ այժմ ամօթալի եմ. էջ 181ա—184ա: 24. Յոհանու քահանայի ասացեալ ողբ. Անձն իմ տառապեալ եւ գերեալ ի սատանայէ. էջ 184ա—188ա: 25. Անստուեր լոյս եւ գոյացուցիչ բնութեան լուսոյ. միածին որդի այ յս քս հօր քում արարչակցի. էջ 188ա—190ա: 26. Տրն մեր յս քս յայնժամ գայ ի գալիլեա առ յովաննէս ի մկրտել (գլխացաւի եւն կախարդական գիր). էջ 190ա-բ:

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ.** Էջ 1բ (օտար գրչէ). Ես տաչապե(ա)լս եւ թարմատար. նուաստ գրիչ մինաս այբար. զձեզ աղաչեմ աղերսաբար. եւ պաղատիմ ուժարաբար. յիշել աղաւթ զմեզ ի տէ. առ տր ղարիցն խնամօղ հայր. զձերն ընկալցի նա հաշտայբար. եւ մեզ գթայ անխռովաբար. ի ձեզ եւ մեզ տէ հաւասար. քնի փառք որ զայս մեզ արար. թէ զմեղքս ապշէ լինի քեզ (ճար):

Անդ (օտար գրչէ). 1865. Ես զիս զվանահայրս նր նախավկայի վանից շա Յբայ զմեսրովբ վրդպտս ամբատեանց յիշել աղաչեմ:

Էջ 31ա-բ (բուն գրչէն). Ուսոյ եւ ինձ քն թողուլ իմոց պարտապանաց. եւ թող ինձ զպարտս իմ զայժ անթիւս եւ ողորմեայ բազմավտանգ ոգւոյս ովանէս մեղաւոր գրչի եւ կարդացողացդ եւ լսողաց սորայ ամէն. եւ կարդացողացդ եւ լսողացդ հազար ամէն: Ընդ նմին յիշեսջիք զթումայ քհայս եւ զծնողքս մեր ի թողութի մեղաց եւ յիշողացդ եւ յիշելոցս ողորմի քն ած մեր ամէն:

Էջ 37բ—38ա. զմեղաւոր զանարժան գրիչս զովանէս անուամբ միայն քհայս ի նը յաղօթս ձեր. միով տր ողորմ–իւ: յիշման արժանի արէք:

Էջ 42ա. Յիշեա զմեղաւոր գծողս միով տր ողորմ–յիւ եւ յիշողացդ եւ յիշեցելոցս ողորմի քն որդին այ յաւուրն ահեղ ատենի ամէն:

Էջ 63բ-65ա (օտար գրչէ, նոտրագիր, ստորին լուսանցքները) Յիշեցէք ի քն եւ ած ողորմի ասացէք. ստացօղի գրքիս. բարեպաշտօն տանուտէր մկրտչին, եւ ծնողացն ածատուրին, եւ կուլումին եւ սառային, եւ եղբարցն կիրակոսին, ղազարին սուքիասին, մարտիրոսին, յունանին աւետին: եւ կողակցացն մարգրտին: կօզալին. հօռոմին, սալամին, եւ ալմաստին, եւ յեւային... եւ որդւոցն նցին նազարին, սիմէոնին, աւետին, ածատուրին գրիգորին, խաչատուրին, աբրահամին, սահակին յովսեփին յարութենին խըլղաթին: եւ դստերաց նցին վարդխաթունին, խանազին, անանին, եղիսին, զիյմաթին, թուրվանդին նուպարին տիլպարին շուշանին եւ զմրութին եւ սառային եւ գայիանին, եւ ամ ազգականաց նոցին ամէն. այլ եւ իգնատիոսիս յիշատակարանի գրօղիս, եւ ծնողաց իմոց, ոյք յիշէք յիշեալ լիջիք յարքայութեն այ, ամէն: Հայր մեր որ: գրեցաւ ի թվին ռճե. ի յիպրահմեկ:

Էջ 70բ. Ով մեծասէր աղօթողք ընկալարուք զսակաւ աշխատութիւն իմ եւ յիշման արժանի արէք զիս անարժանս եւ զծնողս իմ եւ զամ ազգեան մերձաւոր մեր եւ որ տուօղն է առատ ողորմութե սացէ ձեզ եւ մեզ հաւասար զիւր երկնից զարքայութիւն եւ նք տեսողն առնէ արժանի ամէն։

Էջ 81ա. եւ գծողիս մեղաց թողութի հայցեցէք։

Էջ 85ա. Ով մեծասէր ընթերցողք. մեղաց թողութի խնդրեցէք անարուեստ գրչիս անուամբ միայն քհիս։

Էջ 105ա. քն մծ կատարէ զխնդրուածս զօրինակիս բաշխողին. եւ զանարժան գծողիս անուամ միայն քհիս յովանէսի որ այժմ տիվանա ասի։ եւ հայրագատ եղբօր իմոյ թուլայ քհի. եւ ծնողաց մերոց. ողորմի քն մծ։ որք հանիպիք այսմ գեղեցիկ ակն երգոցս որ պայծառացուցանէ զկարդացողս եւ զլսողսն։ Յորժամ ընթեռնույք յիշման արժանի առնէք եւ ողալանացս թողութի խնդրեցէք միով ոչ ողորմեայիւ։ եւ ձեզ եւ մեզ ողորմի քն եւ տեսողն իւր արժանի առնէ. ամէն ա ամէն։

## 9.

## ՀԱՒԱՔԱԾՈՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԳՐՈՑ

### ԺԵ—ԺԶ դար։

*ԹՈՒՂԹՔ 409, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ՛երկու թերթ մագաղաթ՝ երկաթագիր ատատարանի մնացորդ։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ 16×12,5×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, կանոնաւոր, միասիւն: — ԳԻՐ՝ բոլորգիր, համառօտագրութիւնք բազմաթիւ. թանաք սեւ. վերնագրեր, սկզբնատողեր եւն կարմիր. Տող 23—25: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-3ա, 240բ, 247բ, 266ա-269բ, 272բ, 402բ-409բ: — ԽՈՐԱՆՔ, լուսանցազարդք սակաւաթիւ, բայց շատ նուրբ եւ գեղեցիկ: — ԳՐԻՉ՝ Մանուէլ. տեղ եւ տէր անծանօթ. թուական ԺԵ-ԺԶ դար:*

Ձեռագիրս կը պարունակէ բազմաթիւ իմաստասիրական գրութիւններ, որոնք են. 1. Ցանկ. Այս ինչ է ի բանս Պորփիւրի. էջ 3բ - 7ա։ 2. Նորին Գրիգորի աշակերտի համառաւտ տեսութիւն ի գիրս Պորփիւրի. էջ 7ա — 20բ։ 3. Նորին Գրիգորի լուծումն համառօտ ի տեսութիւնն Դաւթի. էջ 20բ—63ա։ 4. Դաւթի փիլիսոփայի Առածք Ե. էջ 63ա — 66ա։ 5. Նորին վասն բաժանման. էջ 66ա — 67ա։ 6. Այս ինչ է ի գիրս ստորոգութեանցն (Արիստոտէլի Ստորոգութեանց գլուխներու ցանկն ու ամփոփումն է). էջ 67ա—69ա։ 7. Եռամեծին Յովհաննու Հայոց փիլիսոփայի եւ վարդապետի հաւաքումն համառաւտ վերլուծութեան Ստորոգութեանց Արիստոտելի, աշխատասիրեալ ի Գրիգորէ աշակերտէ. էջ 69բ — 145ա։ 8. Այս ինչ է ի լուծմունս Պերիարմենիաս գրոցն (ցանկ եւ ամփոփում). էջ 145ա—146բ։ 9. Նորին Յովհաննու Որոտնեցոյ համառաւտ լուծմունք Պերիարմենիաս գրոցն հաւաքեալ ի Գրիգորէ աշակերտէ. էջ 147ա —228ա։ 10. Այս ինչ է ի լուծմունս առաքինութեանց (ցանկ). էջ 228ա — բ։ 11. Նորին Գրիգորի աշակերտի Յովհաննու մեծի համառաւտ լուծումն Առաքինութեանցն Արիստոտելի. էջ 228բ – 236բ։ 12. Յաշխարհացն լուծմունք. էջ 236բ – 240ա։ 13. Արիստոտելի իմաստութեան ծառը. էջ 241ա —247ա։ 14. Անուամբ այ. Գիրք ի վերայ բնութեան հանրական եւ մասնական. քահանայի ումն աշխատեալ ի շաւխան. էջ 248ա—258բ։ 15. Նիւթ եւ նշան շարապի որ աւգտէ լերդի. էջ 258բ – 259ա։ 16. Բուսայիդայ իմաստնոյ քաղուածոյ յաղագս կազմութեան մարդոյ. էջ 259ա—260ա։ 17. Գալիանոսի. արար ած զգլուխն... վասն աչաց, ականջից, քթին եւն. էջ 260ա—265ա։ 18. Պատճառ գրոցն Սահմանաց. էջ 270ա—բ։ 19. Վանական վրդպի հրց. Դաւիթ ի յաթէնս ո՞ւր հոգաւ. էջ 270բ—271բ։ 20. Այլ պատճառ Սահմանաց գրոց. Մեծն Դաւիթ եւ եզնակ կողբացի հոգան. էջ 271բ—272ա։ 21. Պատճառ Սահմանաց գրոց. Ած անպատում եւ անպարագրելի գոլով. էջ 273ա — 277բ։ 22. Լուծմունք սահմանաց գրոց. էջ 277բ – 296ա։ 23. Մեկնութիւն բանից Դաւթի փիլիսոփայի որ ի կատարումն Նորին առաւ որ վասն Սահմանաց իմաստութեան, ասացեալ տն Ներսէսի կաթուղիկոսի Հայոց, ի խնդրոյ ումեմն աշխափանոսի անուն սիրողի իմաստութեան. յայլ օրինակէ գրեցաւ. Տեառն Ներսէսի կլայեցւոյ մեկնութիւն արարեալ Ամենայն չար տանջելոյն. Զխնդիր հոգեւորական... էջ 296ա – 304ա։ 24. Ի վահրամա վարդապետէ լուծումն Պորփիւրի. էջ 304ա —317ա։ 25. Լուծմունք Պորփիւրի մեկնչին. էջ 317ա—341բ։ 26. Պատճառ ստորոգու. եւ Ստորոգութեանցն Արիստոտէլի լուծմունք. էջ 341բ —370ա։ 27. Լուծմունք պերիարմենիասին. էջ 370բ—385ա։ 28. Լուծմունք Արիստոտէլի վասն աշխարհաց գրոց. էջ 385բ—397ա։ 29. Համառօտ վերլուծութիւն պորփիւրի դժուարալուծիցն ի յերկասիրութեան Մեծ հռետորին հայոց Յովհաննու որոտնեցւոյ. էջ 397բ—401բ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 2ա. Ես անարժանս որ սկայ. իմ ոչ ած դու կատարեա եւ զգործս ձեռաց մերոց աջողեա եւ լեր աւգնական տկարիս։

(Էջ 227բ – 228ա, կայ Գրիգորի յիշատակարանը պլբ = 1383 թուէն, զոր հեղինակը խնդրեր է արտագրել. բայց արտագրիչը դժբախտաբար բան մ'աւելցուցած չէ իր կողմէ։)

Էջ 265ա․ Զտատանեալս ի ծփանս աշխարհածուփ ալեացս զմանուել փծուն գրչակս աղաչեմ յիշել ի տր․ զի թերեւս վրիպեալ եղէց յայսմ անբաւութեանց խորոցս ի խաղաղ նաւահանգիստն․ ի քն յն ի տր մեր որ է ան յաւիտեանս ամէն։

Էջ 265բ (այլ գրչէ)․ Փառք պատիւ համագոյ եւ միանական անձնաւորութեն հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ․ այժմ եւ առ յապայն եւ անզրաւ միշտ յաւիտեան․ ամէն։ Արդ ես տրուպս անի Ղազար վրդպս Թարվիզեցի եղն քաղաքին բաբիլոնի պարսից երկրին, եւ սագաստանեաց նահանգին, սոսցայ զգիրքս, խնդրէք ընչիւք եւ գոյիւք առ ի բոսանս անձին իմոյ, ցորքան եմ ի մարմնի։

Գլխաւոր յիշատակարան (ժպիրհ ձեռք մը կտրած հանած է սոյն պատուական ձեռագրիս գլխաւոր յիշատակարանը, որմէ կը մնան միայն հետեւեալ տողերը՝ էջ 402ա) ․․․ղիս սատակ թուղթ․ եթէ կամիցիք անդ գրեսջիք զձերն․ եւ զմերն թողջիք զի աստ կացցէ գրեալ․ եւ ի պատահողացդ յիշեցեալ լիցուք ի քն․ եւ ձերդ յիշատակ գրեսցի ի դպրութին կենաց․ եւ յիշեալ լիջիք յողորմութին քի այ մերոյ անհելոյն յաւիտեանս Ամէն․ հայր։

# 10.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

(1616 = 1751։)

*ԹՈՒՂԹՔ 221։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ 14,5×10,5×3 սմ. բայց հնալէս ձեռագրիս հաստութիւնը պիտի լինէր 6 սմ. այնքան թերթեր հանուած են, որ հիմա նախորդին կէսն է միայն մնացեր։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն։ – ԳԻՐ նոտր. միայն էջ 177–182 բոլորգրով. թանաք սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող 20. 22, 25։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ սկիզբները բաւական լաւ, մէջերէն գրեթէ կէսը հանուած, վերջերը բաւական աղտոտ։ ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ սկիզբէն երկու թերթ եւ էջ 186ա, 190բ։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն գրեթէ չկան։ – ԳՐԻՉ՝ զանազան անձեր, բայց մեծ մասին Գաբրիէլ։ – Թուական անծանօթ. բայց էջ 1ա յիշուած ՌՄ, էջ 176բ յիշուած ՌՄԾԳ թուականներէն կրնանք հետեւցնել թէ ձեռագիրս աւելի հին է քան 1751 թիւը. նաեւ էջ 146բ բնագրին մէջ կը պատմուի թէ Հայոց ՌԿԵ թուին դրուեցաւ Ազարիայի թուականը. ուստի եւ 1616 թուէն ալ յետոյ գրուած պիտի ըլլայ։ — Տեղ եւ տէր անծանօթ։*

Ձեռագիրս՝ որ քանի մը ձեռքերու արդիւնքն է, կը պարունակէ․ 1․ Նորին քարոզ ի բանն որ ասէ․ կտակ յետ մահու հաստատուն է․ Սովորութիւն է մարդկան յորժամ մեռանիցի յայլ տեղիս․․․ էջ 3ա—10բ (Քրիստոսի չարչարանաց կտակն է)։ 2․ Քարոզ ի Բանն սողոմնի որ ասէ թէ որ ողորմի աղքատին փոխ տայ այ․ Զողորմութիւն աղքատին փոխ այ անուանէ․․․ էջ 10բ—14բ։ 3․ Տն Ներսէսի Հայոց կթղկսի ասացեալ դհանեալուկս ի սբ գրոցս (ընդ ամէնը 166 հանելուկ)․ էջ 15ա – 25ա։ 4․ Համառաւտ գումարումն եւ լուծումն բառից յածաշունչ գրոց ումեմնէ յեմիայ (= յերեմիայ) մեղրեցւոյ (Ս․ Գրքի բոլոր գրքերէն հանուած բառեր՝ գլուխներու համեմատ շարուած) էջ 25բ – 138ա։ 5․ Իբր շարունակութիւն նախորդին՝ Մեկնութիւն անուանց յեբր-եցոց լեզուէ ի հայ բար-բառ․ էջ 138ա – 144բ։ 6․ Թէ շատ կափայ չափեա․ էջ 144բ․ (ասկէ յետոյ բազմաթիւ թերթեր կտրուած հանուած են․ հաշուով կտրուած են 37 թուղթ, որովհետեւ կը մնան երեք զոյգ կողմի թել եւ իւրաքանչիւր թերթ բաղկացած է 12 թղթէ․ վերջին թերթին 12րդ թուղթն ալ միասին կտրուած է)։ 7․ Տոմարագիտութիւն․ էջ 145ա — 148բ։ 8․ Մարդակազմութիւն․ Ասաց գալիանոսն եւ արիստոտէլ․․․ էջ 148բ—162բ (ասկէ յետոյ հանուած են առաջինէն շատ թերթեր, որոնց թողած պարապութիւնը 1,5 սմ․ է)։ 9․ Այս կտրուած մասէն մնացած է թերթ մը միայն՝ որ թուի նամակի օրինակ․ էջ 163ա—բ։ — 10․ Տոմարական աղիւսակներ՝ որոնց մէջ կը ցուցուի թէ "մէկ մասն քանի՞ ակ-նթարթ է, մէկ մաս արեգակն քանի ճռ կանգուն ընթանայ„ եւն․ էջ 164ա—176բ։ 11․ Տոմարագիտութիւն․ էջ 177ա—187բ։ 12․ Հարցմունք բարսղի եւ պատասխանիք Գրիգորի (սկիզբէն երկու թուղթ կտրուած)․ էջ 188ա—189բ։ 13․ Աղեղնաւորն ունի զ սրանքն․ էջ 190ա (դարձեալ կտրուած թերթեր՝ 1 սմ․ հաստութեամբ)։ 14․ Կիսատ գրուածք մը, որուն սկիզբն է․ "․․․զի ե եւ է մէկ ի միս կարօտին զկցիլն յիրեարս․ զի ժ տարորոշին քանակ է եւ ոչ ինչ ունելով ընդ մէջ, որով կարող գոյ շարամերձիլ․․․„ կը խօսի երաժշտութեան, երկրաչափութեան, կրկնակի, զատկի, թուի եւ թուականի վրայ եւն․ թուի Ցաղագս Տարեմտէն մաս մը․ էջ 191ա—212բ։ 15․ Սկիզբէն պատռած հատուած մը, ուր կը ցուցուի թէ Դաւիթ ո՛ր ժամանակ ո՛ր սաղմոսն երգեց․ "ի ժամանակին որում փախուցեալ էր դ․օիթ աբիսողոմայ որդոյ իւրոյ․․․„․ էջ 213ա—221բ։

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ։ Էջ 1ա․ Թվին ռմ․․․ տանուտէրն առուծն է․ Է երեակն գ․ գիր․․․ վ․ վեբադիրն լ․ դեկտեմբեր լ․ ծնունդ լուսնի ճշթի․ գժ լուսին։

Էջ 1ա․ Ես եմ որպէս ծառայ ջան աբբէ-ալ եմ մեզք զան․․․

Էջ 1բ․ վերայդիր լ․ գիր տարոյ վ․ է երեակ գ․ (երկիցս)։

Էջ 1բ. Ես սարգիս վարդապետ.

Էջ 145բ. եւ զգծողս զԳաբրիէլն յիշեայ ի տր միով Հայր մեղայիւ: եւ դուք յիշեալ լինիք ի քէ ա:

Էջ 176բ. ի թվին ռմծգին կրեցաւ այս կիրս թըթի ժամանակն էր:

Աստոց մէջ առաջին գրչէն է միայն էջ 145բ գրուածը:

# 11.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

### ՌՀԹ = 1630:

*ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 236, բայց սկիզբէն կտրուած են խումբ մը թերթեր, որոնցմէ 21-ին ծայրերը դեռ կը մնան: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14×9,5×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր: Տող 17: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ. կը մնայ միայն վերջի կողը՝ որուն վրայ նկարուած է գառն Աստուծոյ, շուրջը այս արձանագրութեամբ.* AGNVS. INNOCENS. PATRI. IMMOLARI. VOLVISTI. *թղթերուն եզերքը ներկուած է կարմիր: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մնացեալը լաւ եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ բիչ եւ միջակ արուեստով: — ԳՐԻՉ՝ անծանօթ. Թուական ՌՀԹ = 1630. տէր Ջուղայեցի Պօղոս. տեղ թերեւս Նոր-Ջուղայ:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Պատմութիւն հացունեաց խաչին. Եւ եղեւ յետ թագաւորելոյն մօրկա... էջ 1ա - 40բ: 2. Վասն գեւին. Պատմեաց մեզ մեծ վարդապետն յովսէփ որ շինեաց զվանսըն... եւ մեր ոչ տեսեալ զնա ելեալ գնացաք. էջ 40բ—42ա: 3. Անվերնագիր. Յայնժամ լայր որդի առ հայր իւր... յղարկեալ զիշխանն հայոց խաղաղութեամբ եւ գնացին յաշխարհն իւրեանց (Յովհաննու կողեան մեկնութիւն խաւարման արեգական). էջ 42ա—53բ: 4. Վասն գնալոյն ի ստամպօլ գագիկ թագաւորին. Այսպէս խաւսեցաւ արքայն հայոց գագիկ... եւ եղեւ ի թագաւորելն Նր ո. խղ. Թուական Հայոց (կը պատմէ Գագիկի երթն ի Պօլիս, Մարկոս մետրապօլիտի սատակումը, Գագիկի մահը, Ռուբինեանք եւ Լեւոն Բ). էջ 53բ—74բ: 5. Մաթէոս վարդապետի զանազան պատասխանիք արարեալ ընդդէմ տաճկաց անօրինացն. Ածային գիրսն գրեալ է թէ... էջ 74բ—90ա: 6. Վասն խաչափայտին թէ ուստի էր. Յորժամ ստեղծեաց Ած զԱդամ... էջ 90ա—92ա: 7. Պատմութիւն մօգուց թագաւորացն եւ վս այլին. Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել հրաման յօգոստոս կայսերէ... էջ 93ա—103բ: 8. Վասն մկրտութեան տղային. Կարմիր ծովն օրինակ էր աւազանին... էջ 103բ—105բ: 9. Խրատ վասն ատելութեան է. Գրեմք վս ատելութեան. արդ ոչ է պարտ քրիստոնէից ատել... էջ 106ա—110ա: 10. Վասն խոստովանութեան. Գրեմք վս խոստովանութեան որ այ մեզ մեծ բարի պարգեւեալ է... էջ 110բ—115բ: 11. Վասն ողորմութեան. Ողորմութիւն արարէք աղքատաց եւ կարօտելոց. էջ 115բ—121ա: 12. Նորին քարոզ վասն ողորմութեան ի բանն եղերուք գթածք որպէս եւ հայրն ձեր երկն. Զի արարիչն յարարածոց Ած նախախնամող... էջ 121բ—131ա: 13. Վասն գժոխոց եւ հատուցման արդարոց եւ մեղաւորաց. Եւ արդ յետ այսր անբաւ քաղցր կոչմանս այ... էջ 131ա—142ա: 14. Վասն արքայութեան եւ անճառ հանգստեան, որ կա պատրաստեալ արդարոց. Ով քհայք քի ընտրեալք... էջ 142ա—151ա: 15. Վասն արտասուաց. Արտասուքն որ վս մեղաց լինի, բազում օգտութիւն ունի... էջ 151ա—152ա: 16. Խրատ քահանայից. Ով քհայք ի պատուիրանս այ կացէք... էջ 152ա—159ա: 17. Վասն անօրէն յիշոնցնատուաց. Ով եղբարք իմ սիրելիք եւ քաւսէր ժողովուրդք... էջ 159ա—170բ: 18. Յաղագս հանդերձին քսի. Օգոստոս կայսրն հրամայեաց... էջ 170բ—178ա: 19. Հարցումն հրէի միոյ եւ պատասխանի Յոհաննու դամասկացոյն: Ջածայինս ամ յած վստահանալ պարտ է. էջ 178բ—218բ: 20. Հարցմունք բարսեղի կեսարացոյն ընդ սրբոյն Գրիգորի Նիւսացոյ եղբօրն իւրում. էջ 219ա—236ա:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. (Էջ 42ա, ստորին լուսանցքը, այլ գրչէ). Թվն. ռճձզ:

Էջ 50բ (նոյնպէս). Յն որդի յաստ-ծոյ. ողորմեայ յակոբին:

Էջ 74ա (լուսանցքի վրայ. այլ գրչէ. Թւվըն ռճձա:

Էջ 92ա (բուն գրչէն). Քն ած քո նր խաչիւն տուր զօրութի, եւ յաջողումն ստացողի գրոցս ջուղեցի Պօղոսին. եւ փրկեա զնա երեւելի եւ աներեւոյթ թշնամոյն. եւ իւր ծնողացն եւ ամ յարեան մերձաւորացն. Որ մեծաւ փափագանօք ետ գրել զայս սակաւ բանքս ի վայելումն անձին իւրոյ. եւ յիշատակ հոգոյն. Թվ. ռհթ. մայիսի ժ. օր. Եշթի.

Էջ 92բ (այլ գրչէ). Եւ յիշեցէք զանուն նրուն մարիանեայ. Քն ած բարեխաւսութբ նր խաչիս ողորմեայ գրիգորիս եւ մանաւանդ իմ ծնողացն ամէն:

Էջ 130բ (բուն գրչէն). Աղաչեսցուք յամենողորմ եւ մարդասէր անէ. զի ողորմուե եւ անճառ խընդուե արժանի արասցէ քն ած զամ հետեւելս. մանաւանդ զստացող գրոցս:

Էջ 236ա (լուսանցքի մէջ այլ գրչէ). Ճռծէ. (իմա ռճծէ):

Էջ 236բ (գրչափորձեր). Ես յակոբս գրեցի էս գիրքն բաղրամ արա... խութլի եւն:

## 12.

## ԳՐՈՒԹԻՒՆՔ Ն. ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

ՊԱ = 1352:

*ԹՈՒՂԹՔ 239, հաշուելով եւ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ մագաղաթ, անցման շատ մանր երկաթագրով, մնացորդ շատ հին շարականի մը (թուի ժը դարէն առաջ). թէեւ նշանակուած է թերթ 235, բայց 54, 92, 141 եւ 171 կրկին անգամ կու գան: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12,5×9×5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ մեծ մասամբ բոլորգիր. սկսեալ 174բ նօտր. թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր կամ վարդագոյն. տող 13—20: – ՆԻՒԹ՝ սկիզբը բամբակեայ թուղթ, մէջերը քանի մը թերթ մագաղաթ, սկսեալ էջ 142 հաստաբակ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ, լուսանցքները կարմիր ներկուած: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մեծ մասամբ հնութենէ դեղնած, բայց գոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 138ա-բ, 162բ, 170բ-174ա, 197բ-198ա, 217բ, 223բ-224ա, 230բ-233բ: – ԽՈՐԱՆՆԵՐ, լուսանցազարդք եւն խիստ քիչ եւ անարուեստ: – Ձեռագիրս տարբեր գրուածներու հաւաքում մ'է, որոնք յետոյ միասին կազմուած են. առաջին մասն է էջ 3-141, գրուած Կիրակոս քահանայի ձեռքով, 1352 թուին, ստացող Կարապետ քահանայի համար, Աղբակ գաւառի Խաշնոց գիւղը: Երկրորդ մասն է էջ 142-162 կամ թերեւս նաեւ 163-173, որուն գրիչը եւն անծանօթ է: Երրորդ մասն է էջ 174-204, որուն գրիչն է Ազարիա աբեղայ, ստացող Եղիշէ քահանայ, թուական ՌԿԷ = 1618: Նոյնը կը շարունակէ չորրորդ ձեռք մը Յակոբ երէց, էջ 204-217. այլանդակ գրութեամբ: Հինգերորդ մասն է էջ 218-223 մաքուր բոլորգիր գրութեամբ, բայց գրիչ եւն անծանօթ: Վեցերորդ եւ վերջին մասն է էջ 224-232 բաւական խառնակ նօտր գրով:*

**Ձեռագիրս կը պարունակէ.**

**Ա. Մաս.** — 1. **Տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի ասացեալ դաւանումն ի սբ երրորդութիւն եւ դաւանումն հաւատոյ. ոտանաւոր. խոստովանիմ ած զհայր.** էջ 3ա սկսած, բայց թողած եւ յետոյ դարձեալ սկսած էջ 4ա—44ա: 2. **Յորդի.** էջ 44բ—141ա: 3. **Գլխաւոր յիշատակարան.** էջ 141ա—141 bis բ:

**Բ. Մաս.** — 4. **Խրատ տղայոց զոր ասացեալ է տն Ներսեսի. Այբն առաջին զքեզ տղայ.** էջ 142ա—147ա: 5. **Այբն անսկիզբն ասէ ած.** էջ 147ա—153ա: 6. **Ա. այ զքեզ մերձակայ խրատէ լինել թէ հաւատայ.** էջ 153ա—162ա: 7. **Այբն այ է աւրինակ. ուսուցանէ զքեզ համարձակ... որուն վերջն է՝ եւ ասասցես տր ողորմի ինձ առաքել վարդապետի.** էջ 163ա—167բ: 8. **Երգ պաշտաման գիշերոյ. Հայր անսկիզբն եւ գթածական.** էջ 167բ—170ա:

**Գ. Մաս.** — 9. **Եւագրեա միայնակեցի աղերս առ հրեշտակս եւ հրեշտակապետս. Անկանիմ առաջի ամ զաստուածութեանց.** էջ 174բ—175բ: 10. **Աղաւթք աղաչանաց յամենայն կոյս ածածինն. Մեսրովպայ վարդապետէ ասացեալ. Ամենայսր կոյս մարիամ ածածին.** էջ 175բ—176բ: 11. **Աղօթք յորժամ յորդայթ անկանի ոք. ասացեալ է սրբոյն Գրիգորի հայոց ոբ լուսաւորչին. Աճնեալ է անբաւ մարդասիրութիւնդ քո տր իմ.** էջ 176բ—177բ: 12. **Աղաւթք մովսէսի քերթողի. Աղաչեմ զքեզ տր թող ինձ զմեղս իմ.** էջ 177բ—179ա: 13. **Սրբոյն Գրիգորի նարեկացոյ... Ած ողորմած բազմագութ հզօր ահաւոր.** էջ 179ա—181ա: 14. **Աղաւթք եփրեմի մաղթանք ընդ այ. Ած գթութեամբ քո աղաչեմ զքեզ.** էջ 181ա—184ա: 15. **Աղաւթք սրկէ վարդապետ. ասացեալ ի դէմս մանկանց. Առաւօտ յամ տուրս բարեաց.** էջ 184ա—185բ: 16. **Աղօթք նորին յորդի. Ի լուսոյ ճշմարտէ համագոյակ լոյս...** էջ 185բ—187ա: 17. **Աղաւթք մեսրովբայ վրդապետի... Հոգի որ այ հոգի քի տն մերոյ.** էջ 187ա—188ա: 18. **Նորին ասացեալ աղօթք զ ժամ. Թագաւոր հզաւր ապաւէն.** էջ 188ա—189բ: 19. **Նորին ասացեալ թ ժամ. Ած բարերար եւ բազմագութ.** էջ 189բ—192ա: 20. **Սարկաւ. վրդ. ասացեալ բանք մաղթանաց առ սբ կոյսն մարիամ. Ծնունդ երկրածին եւ ծնաւղ զամ ծնաւղի.** էջ 192բ—199ա: 21. **Նորին ասացեալ առ հայր. Հայր տն մերոյ յի քի որ զամ գոյացուցեր.** էջ 199ա—202ա: 22. **Նորին յորդի. Որդի եւ բան հաւր ած ճշմարիտ.** էջ 202ա—204բ:

**Դ. Մաս.** — 23. **Տր մի սրտմտութեամբ քով անդիմաներ զիս եւ մի բարկ...** էջ 204բ—211բ: 24. **Ամենայկալ ամենայինամ ած ամահլ. որ յամենեցուն անհաս եւ բովանդակեալ.** էջ 211բ—214ա: 25. **Երեքանձեայ տրութիւն միով բնութեամբ եւ էութեամբ անքնին.** էջ 214ա—215ա: 26. **Ընկալ քաղցրութեամբ տր ած հզաւր.** էջ 215ա—217ա:

**Ե. Մաս.** — 27. **Ամենակալ ամենախնամ ած յամի ահեալ որ յամի ես եւ ամենեցուն անհաս.** էջ 218ա—221բ (նոյն ընդ թիւ 24): 28. **Երեքանձնեա տրութիւն** (նոյն ընդ թիւ 25). էջ 221բ—223ա:

**Զ. Մաս.** — 29. **Հաւատով խոստովանիմ. սկիզբը գրուած Ներսէս Շնորհալւոյ խրատը.** էջ 224բ—230ա:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 44ա.

**Ըզկիրակոս գրող սորայ.**
**զի ես գրեցի զերգս որ ի սմայ.**
**Անուամբ կոչիմ սուտ քահանայ:**
**Եւ եմ գործովքս սատանայ:**
**Աւրինազանց եմ զեդ զեւայ.**
**ւարծաթասէր եմ զեդ զուդայ:**
**Զպատ-իրանս յոյժ մոռացայ.**

եւ ի բարեացն իմ զրկեցայ:
Զձեզ աղաչեմ ով որ կարդայ.
զանձն արժանս յիշէ ի սմայ:

Էջ 117բ. Ով եղբայր ի յայսմ էջս. ե. թուղթ թողի. վն այն զի արարչական շարականն էր յամէն շարակնոց կայ եւ թուղթըս սակաւ էր: եւ ահ ու փախս ի հետ որ յամէն պահ մեռանէաք. դու մի մեղադրեր թէ պակաս է. լուր ջանք դիր որ զայս կարդաս եւ լուսաւորիս:

Էջ 141ա. յիշատակարան մեղապարտ գրողի:
Կենդանատու տր մըծ,
ստեղծող բոլոր արարածոց:
Ի քէն հայցեմ արտասուելով,
եւ պաղատիմ զայս ասելով:
Բամեալքս ի քէն նորոգելով.
աղերս հայցեմ պագատելով:
Աղաչեմք ըզքեզ լալով:
Նայեաց եւ յիս տր իմ գթով:
Կեցոյ զմեռեալս մեղօք հոգով:
եւ նորոգեա բանիւ լուսով:
Ոչ եմ մաքուր եւ նր գործով:
այլ եմ լցեալ պէղծ խորհրդով:
Սրբեաց զիս տր քոյ նր հոգովդ.
մաքրեաց զխաւար մեղացս լուսով:
Ինձ դժողոց դուռն է բացեալ:
ողորմութն դուռն ինձ փակեալ:
Ես եմ բազում չարիւք լցեալ:
ողորմութն յոյսն է հատեալ:
Երեց անուն եմ յիս առեալ:
եւ ի գործոցս ունայնացեալ:
Բարունոյդ եմ նմանեալ:
եւ բանսարկուին եմ հետեւեալ:
Գոչեմ լալով տր իմ ընդալ:
ըզպագատանս յանձնէ թաղծեալ:
Ոք կուսին յերես անցեալ:
ըզտիրամայրն յաղերս ածեալ:
Աղաչանօք առաքելոց:
եւ ամ մաքուր հոգոցն:
Ցիս նայեաց հայր արդարոց:
ջնջեաց ըզգիրն իմ չար գործոց:
Սարսափեցաւ ոսկերքս յոստոց:
բացաւ ինձ դուռըն դժոխոց:
Փառք անեղին արարածոց:
տայ ինձ հանգիստ ընդ յարդարոցն:
Զձեզ աղաչեմ որդիք մարդկան:
սիրող բանիս տրունական:
Յորժամ կարդայք զբանս ողբական:
նր ներսէսի գրաւորական:
Յիշէք ըզսէրն աըքայութն:
սիրտ ձեր ողբայ ւաչերդ լան:
Զկարապետ նր քահանայն
Յիշէք յաղաւթս ձեր արժան:
ստացաւ ըզսայ մեծ փափաքման:
անձինն իւրոյ վայելչական:
Եւ յիշատակ իւրոյ անուանն
Զծնօղ սորայ զնր քահանայն
թումայ անուն զմայրն աննման:
Առնէք զսոսայ յիշման արժան
ի յաղօթելըն ձեր արժան:
Եւ զկիրակոս անձն անարժան
որ զբանս գրեցի աղօթական
Առնել զմեզ յիշման արժան
յաղօթելոյն ժամուն զգջման:
Ով մեզ առնէ յիշման արժան:
իւր շատ յանցանքըն թեթեւցանեան
ի միւս անգամ նր գալըստեանն
բազմի յերկնից արքայութն:
երգել ըզփառս միշտ յաւիտեան.
գրեցաւ սայ ի յաղքակոյ գաւառիս
ի գեւղ անուն յայս խաչնոցիս
ընդ հովանեաւ նր մարիանիս:
ի յութ հարիւր եւ մի թվականիս
ի դառն եւ չար ժամանակիս:
ի զօրանալ այլազգեաց ազգիս:
ի փախըստեան ժամանակիս
գրեցաւ ձեռամբ մեղապարտիս.
եւ ի ձմեռան ժամանակիս:
մի մեղադրէք ինձ գրողիս:
վնըն խոշոր եւ սխալ գրիս:
զի դողութ աւն ի սրտիս:
գրեցի անժո-ժ զբան ներսէսիս:
զի ահն եւ դողըն պատէր զիս:
ձեռըս դողայր ի վեր թղթիս:

Էջ 204բ. Ընարժան. ազարիայ աբեղէս գրեցի աղաւթքս. յեղիշա քհնյին համար թողուի արէք սխալանացս եւ խոշոր գրոյս. -Ն. ա. կ. է. էր.

Էջ 205բ. ես անարժան ակոբ Երեցս գրեցի:

Ցիշենք վերջապէս թէ ձեռագրիս առաջին մասին մէջ գրուած մագաղաթեայ թերթերը (Թղ. 129—133, 136, 137, 139—141 bis) կրկնագիր են. տակի գրութիւնն է շատ մանր անցման երկաթագիր՝ պահպանակներուն նման գրութեամբ. ամէնէն աւելի յայտնի կերեւայ էջ 133բ ստորին լուսանցքին վրայ, բայց անկարելի եղաւ ինձ կարդալ:

## 13.

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ՎԿԱՅՈՒԹԵԱՆՑ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 167: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12×9×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մանր, միասիւն: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 13: — ՆԻՒԹ՝ ընտիր եւ ողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–4բ, 165ա–167բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ նոյն չկայ, բացի էջ 5ա դրուած ուրուագծէն: — ԳՐԻՉ եւն անծանօթ:*

Ձեռագիրս կը պարունակէ զանազան գրքերէ եւ զանազան հեղինակներէ կոչումներ, առանց կանոնաւոր դասաւորութեան խառն կերպով շարուած իրարու ետեւէ. ընդարձակ խորագիրն է "Յառաջաբանութիւն եւ հաւաքումն սրբոց առաքինութեանց, որ է քաղուած սահմանեալ սրբոց հայրապետաց, ի հին եւ ի նոր կտակարանաց, վասն շահի եւ օգտութեան հաւատացելոց ի քս„ (էջ 5ա)։ Այնուհետեւ կու գան հատուածները այսպիսի սկզբնաւորութեամբ. "Բեռնարտոս ասէ... Գրիգոր ասէ„ եւն, էջ 5ա—88ա։ 2. Վասն սուրբ խորհրդոյն (նոյն ոճով). էջ 88ա—91ա։ 3. Վասն խաղաղոյն. էջ 91բ—93ա։ 4. Վասն երկրամոլութեան. էջ 93ա—102ա։ 5. Վասն պահոց պնդութեան. էջ 102ա—118ա։ 6. Վասն հաղորդութեան. էջ 118ա—138բ։ 7. Առանց վերնագրի սկսած է Ղուրանի համառօտութիւնը, ամփոփելով գրեթէ իւրաքանչիւր գլխու պարունակութիւնը. այսպէս "Ղուրանի առաջին սուրէն կու ասէ թէ դրախտ...„. էջ 139ա—164բ։

Յիշատակութիւն եւն չկան բնաւ։

## 14.

## ԲԱՌԱՐԱՆ

### ՌՃԻԷ = 1678։

*ԹՈՒՂԹՔ 376: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×7×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր, երբեմն լեղակագոյն: Տող 13: — ՆԻՒԹ՝ Թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ զոհացուցիչ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-2բ, 349ա-350ա, 375ա-376բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկան: — ԳՐԻՉ՝ Յովհաննէս աբեղայ շամբեցի. տէր՝ գրիչը. տեղ՝ Շատիկ անապատ եւ Աստապատու Ս. Ստեփաննոսի վանքը. Թուական ՌՃԻԷ = 1678: Ձեռագրիս հետ միասին կազմուած է ուրիշ փոքրիկ ձեռագիր բառարան մը, որ կը բռնէ էջ 351-374, եւ որուն գրիչն է Մովսէս աբեղայ, Թուական ՌՃԻԴ = 1675. ուրեմն երեք տարի աւելի հին քան նախորդը:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Հանդէս բառատեղծաց. փաղանուանաբար (հոմանիշներու բառացուցակ. էջ 3ա – 25բ։ 2. Թարգմանութիւն պարսից բառից ի վարդան գրոց. էջ 26ա – 27բ։ 3. Արդ Թուեն եբրայեցիքն զգիրս այսպէս. (Ս. Գրքի մասերուն եբրայական անունները). էջ 27բ—30բ։ 4. Այս բառք յեռահիւսական բաղաձայն հոմանուանց բակձայնեալք (եբրայական գրերու անուններն ու մեկնութիւնը). էջ 30բ – 31բ։ 5. Անուանք իգ մարգարէիցն. էջ 31բ—32ա։ 6. Յատուկ բժ մարգարէիցն. էջ 32ա։ 7. Բառարան. էջ 32ա—348բ։ 8. Այլ բառք գալիանոսի բժշկին. էջ 351ա—364բ։ 9. Թարգմանութիւն գեղոց զոր ընտրեալ են իմաստունքն. եւ կարգեալ ի այլ լեզուաց ի մեր. էջ 364բ—371բ։ 10. Այս է անուն ձայնէրի. Շեշտ, պարոյկ... էջ 371բ։ 11. Այս են լեզուք հը ազգաց. էջ 372ա – 374ա։ 12. Պատիւք գրոց թէ ով են կարգեալ (քանի մը նշանագրերու բացատրութիւնը). էջ 374ա—բ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 2ա (այլ գրչէ). ...ով ծառայ եղակեալ շատ բարով բարի հասցէ իմ աչաց.

Էջ 32բ. Աւգնեա հոգի ռբ. եւ հասոյ զսկսեալս աւարտ։

Էջ 33ա. Յիշատակ է բառագիրքս շաբեցի տիրացու օվանէսին լուսայոգի մարգարա վարդապետին առեցի. օվ ընթերցող երեսս անկեալ աղաչեմ լիակատար բերանով ողորմի ասէք մարգարա վարդապետի յոգուն ա՛ն իրան մեղացն ազատէ։

Էջ 307ա. ո՞հ զի ոստեաւ յինէն կաթ մի քըրտանց. վա այն. Ե. չարն կրկին ծրեցի միեւս կողմն։

Էջ 350բ. Յիշատակ է բառագիրքս շամբեցի յովաննէս աբեղային. 'ի վայելումն անձին իւրոյ. սա սկսեալ եղեւ ի յանապատն. շատիկ. աւարտ եղեւ 'ի վանքն աստապատու ընդ հովանեաւ Ռբյն ստեփաննոսի թվին ռ. ճ. ի. եւ է. աւարտ եղեւ ես ձեռամբ իմով գրեցի. բայց քանի մի տետրիցն, որ այլ ռք ծրեաց. ի հայրպետութե. հանուրց Տեառն յակոբ. կաթողիկոսի։ (Թուի նոյն բանը էջ 349բ, որ յետոյ. ջնջուած է)։

Էջ 373ա. Մեղաւոր Մովսէս յաբեղայս գրեցի. թվ. ռճիդ։

## 15.

## ՄԱՇՏՈՑ

### ?

*ԹՈՒՂԹՔ 266: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12×8×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող 15: — ՆԻՒԹ՝ Թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը կտրուած, Թերթերը հին եւ աղտոտ, վերջերը նաեւ մասամբ սեւցած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ չկայ. խորան երկու հատ, շատ անարուեստ: — ԳՐԻՉ եւն անծանօթ: — Ձեռա-*

*գիրը Մաշտոց վրդ. Փափազեան Նորեռս բերաւ Սալմաստի Սաւրա գիւղէն, ուր սեպհականութիւնն էր գիւղի աւագ քահանայ Տէր Յովհաննէս Տէր Յակոբեանի. այսպէս նաեւ յաջորդ 16, 17, 18 եւ 19 թիւ ձեռագրերը*

Ձեռագիրս է փոքր Մաշտոց, որ տեղ տեղ նորոգուած ու նորէն գրուած է. սկիզբէն Հրաժարիմք, Մեղայ Ամենասուրբ, վերջէն Խղճաբերից եւ բժշկութեան աւետարաններ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Երբեմն լուսանցքներու վրայ գրուած են պաշտամանց գրքերէ խօսքեր, շատ տգեղ գրութեամբ, իբր գրչափորձ: Միւս յիշատակութիւններն են՝ միայն

Էջ 81բ. Ո՜վ եղբայր թէ կամիս նայ զանձ աւսայ եւ զեղկելիս յիշեա:

Էջ 178ա. Եւ զգր—ծքն կրդայ եւ զանպիտան գծողս յիշեա եւ ած ողորմի ասացողին եւ գրողին ասայ:

## 16.

## ԺԱՄԱԳԻՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 175: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12×9×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին: – ԳԻՐ՝ բոլորգիր թանաք սեւ. սկզբնատողերն, սկզբնատառերն ու վերնագրերը կարմիր, տող՝ 14: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ, սկիզբը դրուած է թերթ մը դատարկ մագաղաթ՝ իբր պահպանակ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գրուածքը մաքուր պահուած, բայց գիրքը կազմահան եղած, սկիզբէն եւ մէջէրէն թերթեր ինկած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 33բ. 60բ. 162ա–163ա եւ 175բ. վերջինիս վրայ նախապէս եղեր է յիշատակարան, զոր ջրով սրբելով, ամբողջ երեսը սեւցուցած են: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ, գլխազարդք եւ մի քանի ամբողջ պատկերներ բաւական նուրբ եւ գեղեցիկ են: – ԳՐԻՉ եւն անծանօթ, որովհետեւ կայ միայն յետին յիշատակարան մը ՌՄԻԳ = 1774 թուէն: — Ձեռագիրս եկած է Սաւրա գիւղէն (տես վերը. Թիւ 15):*

Ձեռագիրս է Ժամագիրք. բայց էջ 32բ – 93բ գրիչը ներմուծեր է ամբողջ պատարագամատոյցը, որմէ յետոյ կը շարունակէ. 1. Այլ աղօթք որ ասի նախ քան զճաշակել խորհրդոյն... Մարմին քո անապական. էջ 94ա –95ա. 2. Տեառն Ներսիսի Լամբրոնացւոյ խրատք եւ սահման վերոյգրեալ գործոյս. Քանզի բազում ինչ եցոյց... էջ 95բ—100ա: 3. Եռամեծի եւ քաջ վկայի Մխիթարայ գօշի խրատկրօն ճգնաւորի եւ բան է բուն հեռեւորի ասացեալ զաղօթս ի ժամ սբ պատարագին. Տր ած իմ յս քս բան հաւր. էջ 100բ – 102բ: 4. Կարգաւորութիւն հասարակաց Աղօթից երեկոյի ժամուն. էջ 112բ – 127ա. 5. Խաղաղական ժամուն. էջ 127ա —135ա: 6. Հանգստեան ժամուն. էջ 135ա—142բ: 7. Հաւատով խոստովանիմ, հանդերձ նախադրութեամբ. էջ 142բ —155ա: 8. Ամենակալ ամենախնամ ած յամի աշլ. որ յամի եւ. էջ 155ա—159բ: 9. Երեքանձնեա գրութիւն միով բնութեամբ եւ էութեամբ. էջ 159բ—161բ: 10. Մեղայ ամենասբ. էջ 163բ—167բ: 11. (կիսատ) Սուրբ ած եւն. էջ 168ա – 169բ: 12. Աշխարհ ամենայն. էջ 170ա—172բ: 13. Առաւօտ լուսոյ. էջ 172բ—175ա:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ չկան. միակ լուսանցագրութիւնն է՝ ամենէն վերջ եւ օտար գրչէ՝

Էջ 175ա. հօրելեան Թ—ին իգ իգ ընդ նմին որ լինի ռմիգ Թւին (= 1774):

## 17.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

ՊՂ = 1441:

*ԹՈՒՂԹՔ 317, առանց հաշուելու սկիզբէն երկու եւ վերջէն մէկ թերթ՝ հին մագաղաթեայ աւետարանի մնացորդ՝ մինչեւ — մեսրոպեան երկաթագրով: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13×9×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ անցման մանր բոլորգիր, իսկ էջ 296ա - 301բ զուտ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, տող 25: – ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գործածութեամբ բաւական հինցած, բայց գրութիւնը անվնաս է: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 317բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ մի քանի հատ միայն եւ մէկ խորան աննշան արուեստով. կան շատ հասարակ զարդագրեր: – ԳՐԻՉ՝ Դաւիթ. կազմող՝ Եղիա աբեղայ, ստացող գրիչը. թուական ՊՂ = 1441. տեղ անծանօթ: – Ձեռագիրս բերուած է Սաւրայէն (տես վերը թիւ 15):*

Կը պարունակէ. 1. Նաղաշի տաղէն մաս մը. էր դատիս երբ յետոյ փոշիման եւ լայ դու լինիս էջ 1ա: 2. Տօմարական գրութիւն մը եւ գիր փորացուի (այլ գրչէ) էջ 2ա: 3. Ցանկ. էջ 3ա—4բ: 4. Գրիգորի եռամեծի քարոզ ի բանն տէրունական որ ասէ: Ցաղաւթս կայցես. էջ 5ա – 6ա: 5. Սոցանէ մեծութիւն եւ փառք աշխարհիս... (որուն կէսը գրուած է էջ 1ա. յետին եւ տգեղ

ձեռքէ. տաղ Մկրտիչ Նաղաշի). էջ 6բ: 6. Բուն քարոզգիրքը. էջ 7ա—316բ:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 1բ. Գիրքս Կիրակոս վարդապետին է գրեցաւ ի ձեռն յայլ յազգաց. ես ուրախս գնեցի գիրքս եւ յետու ի ձեռս վրդպին յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց հաւրն իմոյ միրաքին. եւ մաւրն իմ. շարբաթին. որք աւտքին ի սմանէ. յիշեցէք զմեզ եւ ած ողորմի ասէք. յիշողացդ եւ մեզ ողորմեսցի քն ածն մեր. եւ տացէ երկնից արքայութին ամէն:

Էջ 1բ. ած ողորմի էսուր գրողին հոգուն որ էս գիրս գրել այ բարի խիստ պատվով եայ:

Էջ 2բ. յիշատակ է քարոզգիրքս ալահվէրտու որդու տէր ակոբին իւր որդի գէորգին ով որ ջարճայ թող մէկ բերան ողորմի տայ ամէն:

Էջ 2բ. ի վայելումն տէր յակոբի որդի մհտի գէորգին երթալն երէմ (Երուսաղէմ) քաղաքն ռմկե ին:

Էջ 4բ. Քարոզգիրքս պատկանի Յովհաննէս Աւագ քհյ. տէր Յակոբեանցիս. ի 1886 թիւ:

Էջ 317բ. յիշատակ է այս քարոզգիրքս գէորգին:

Այս բոլորը առանձին առանձին ձեռքերէ են:

Գլխաւոր յիշատակարան. Էջ 316բ—317ա. փառք ամենանբ երրդութն հօր եւ որդոյ եւ սբ հգյն. այժմ եւ անզրաւ յաւիտենից ամէն. Գրեցաւ գիրքս այս ձեռամբ բազմամեղ անարհեստ գրչի դաւթի թվ Պզ. ի փառս քի այ մերոյ: Արդ աղաչեմ զհանդ պողոդ յիշել ի բարի մասին զանարժան ծրողս զդաւիթ հանդերձ ծնօղիւք եւ ամ արեան մերձաւորաւք: եւ թողութի մեղաց հայցել ի քէ այ մերոյ. եւ քն որ առատն է ի տուրս բարեաց. մեզ եւ ձեզ առհասարակ ողորմեսցի: ամէն: Զկապող գրոցս զեղիա կուսակրաւն աբեղայս եւ զեղբայրն իմ զղազար սր եւ ընդրեալ քաւորն եւ յիշօղիք զծնաւղս մեր եւ ամ արեան մերձաւորքս եւ որք յիշէն ինքն յիշեալ եցի քէ այ մերոյ որ է աւհլ յաւ ամէն:

## 18.

## ՏԱՂԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹ.Ք 87: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 18,5×14×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն, խազերով: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատառերն ու սկզբնատողերը կարմիր, վարդագոյն եւ լեղակագոյն. տող՝ 24: – ՆԻՒԹ՝ հաստ. բայց ողորկ մագաղաթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր, բայց կազմահան եղած, վերջէն՝ թուի նաեւ սկիզբէն թերթեր պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ են նուրբ եւ մաքուր գծուած, բայց միայն ուրուագծով, առանց ներկի: — ԳՐԻՉ են անծանօթ: – Ձեռագիրս բերուած է Սաւրայէն (տես վերը Թ. 15):*

Ձեռագիրս կը պարունակէ Զարթիք, Ալելուք, Թագաւորք սրբոց մարտիրոսաց եւ այլ երգեր առաւօտեան ժամերգութեան, որմէ յետոյ կարգաւ կու գան ամէն սրբոց տօներու տաղերը:

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 3ա. Ով երգող եղբայր զմեղաւորս այլ յիշեա:

Էջ 6բ (բուն գրչէն). Ով քաղցր երգողք երգոյս. յորժամ երգէք մեծի տօնիս. Զմոլորեալս եւ զննջեցեալսն իմ միով ողորմիւ յիշել աղաչեմ:

Էջ 6բ. (այլ գրչէ). ի գրոց Յովհաննէս Աւագ քահանայի Տէր Յակովբեանց, ի 1885 թիւ 5ն հոգմբի. Սալմաստ գաւառ սավրա գիւղ:

Էջ 8ա. ի վայելումն դանուղ որդի.

Էջ 15բ. տիրացու սահակ:

Էջ 22բ. զտառապեալս յիշեա (այսպիսի կարճ յիշատակութիւններ կան եւ էջ 12ա, 15բ, 21ա, 27ա եւն):

Էջ 28բ. ո՜հ ո՜հ մագաղաթիս անմեղադիր լերուք:

Էջ 38ա. ծերենց գրիգոր. ծերենց վարպետին Ասա թէ ձայն ունիս դու յոճին հանց որ ժողովքըդ հաւանին. ապա թէ հըմուտ չես դու ըռմին, նա մի ձըգտիր անհաս տեղին:

Էջ 45ա (այլ գրչէ). շահպղ մուրատ:

Էջ 54ա (այլ գրչէ). փաշօն գէւորգ աւէտ. մուրատ պատալ շահպազ.

Էջ 57ա (այլ գրչէ). յակոբ դպիրս տէր գէորգեան.

Էջ 59բ. գրծողի սորայ ողորմեայ տր. եւ վարձս բարի պարգեւեա աղաչեմ:

Էջ 63ա (ծածկագրով) Զաքարիա եպիսկոպոս. ռմկգ:

Էջ 66բ. տր յն քն հրաշալի յարութիդ ողորմեա ինձ եւ իմ ծնողացն:

Էջ 80բ (այլ գրչէ). Այս գեղեցիկ չրգրնիս (= երգարանիս) քեզ երանի որ հանդիպիս վարդափըթիթ բուրաստանին յայնժամ յիշեա դու զեղկելիս զխաչատուր յաբեղայիս. եւ դու եւս յիշեալ լինիս յաւուր մեծի որ ակն ունիս. գրեցաւ գիրս զովեստից: ռմլզ ից: 2. (այլ գրչէ) յիշեա եւ զիս զղազարիա գրիչս զնուիրակս սրբոյ գահին էջմիածնի: որ բ անգամ եկի յայս երկիրս. 'ի ռմծզ եւ ի ռմկգ. Ած չէն պահեսցէ զազգս զայս: 3. (այլ գրչէ) Որք հանդիպիք երգարանիս ծաղկափթիթ բուրաստանիս պարտիս եւ դու տալ զողորմիս յաւուր մեծին որ ակն ունիս առաջի տեառն յիշեալ լիցիս անդ յիշեսցես սեւաւորիս մեղապարտ գրիչ պետրոնսիս ռմհ:

Էջ 84ա (բուն գրչէն). Կողկողագին ձայնիւ սաս վա՜յ տուր մեղաւորիս որ չունիմ պատասխանի:

## 19.

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 316. առանց հաշուելու սկիզբէն թերթ մը մագաղաթ, անցման երկաթագրով, որ թուի հին մաշտոցի մը մնացորդ: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 19×12×7 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 14×4 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր, թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը աղիւսագոյն եւ ծիթագոյն: Տող՝ 25: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը կորուսած, թերթերը հինցած, ոմանք թափած, բայց գրութիւնը անաղարտ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 2բ, 306բ, 307ա: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ եւն շատ անարուեստ: — ԳՐԻՉ եւն անծանօթ. բայց ձեռագրիս աղբիւրն է Ստեփաննոս վարդապետի արտագրութիւնը, որու գրած յիշատակարանը (Հայոց յխք թուէն) կայ ձեռագրիս վերջը: — Բերուած է Սալմաստի Սաւրա գիւղէն (տես վերը Թիւ 15):*

**Ձեռագիրս կը պարունակէ**. 1. Ցանկ, էջ 1բ–2ա: 2. Բուն Մաշտոցը (չունի եպիսկոպոսական ձեռնադրութիւն, կաթողիկոսի օծում, միւռոնի օրհնութիւն). էջ 4ա–298բ: 3. Յիշատակարան Ստեփաննոսի եւ վարք սրբոյն Մաշտոցի կաթուղիկոսի. էջ 299ա—302բ (կիսատ եւ թերթ ինկած): 4. Խորհուրդ անճառ ծածկեաց ազգաց եւ յաւիտեաց (շարական յետին շատ անփորձ գրչէ մը). էջ 303ա—305ա: 5. Թաղման աղօթքներ (այլ գրչէ նոտրագիր). էջ 305բ—306ա: 6. Կանոն փրկչական պատկեր օրհնելոյ. էջ 307բ—313բ: 7. Դարձեալ կանոն որ ածածնի պատկեր օրհնելոյ. էջ 313բ—316բ (այս երկու մաքուր նոտր գրով այլ գրչէ):

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ**. Էջ 3ա. Ի նախնի հարցն մերոց մնացեալ էր Մաշտոց գիրքն մեզ յիշատակ ինձ եւ իմ որդւոց նուաստ Յովհաննէս Աւագ քհՅ Տէ Յակովբեանց գրեցի 1884 թուական ի Ս(աւրա) գիւղ:

Էջ 3բ. յշտկ է մաշտոցս տէր մարքարին խասւն ըղքանդարին հօրն ամիրին իմ որդոցն ըղքանդարին ամիրին սաֆարին մինասին իմ օրնել թվ ումդին ոչ յակոբին:

Էջ 19բ. կնիք մը հայերէն դժուարընթեռնլի գրութեամբ:

Էջ 34ա. Աւարտեա եւ զեղկելի գծողս յիշեա, առ շնորհաբաշխ հոգին մաղթէ զի ներեսցէ զմեղս իմ խնդրեա: Եւ քեզ լիցի զամէնն ասա:

Էջ 83բ. Եւ զեղկելի գծողս յիշեա հանդերձ ծնաւղաւք: եւ յիշաւղդ յիշեալ լիցիս՚ի քէ փրկչէն մերմէ:

Էջ 95ա. Կարդա եւ զեղկելի գծողս յիշեա, եւ ի հոգւոյն սրբոյ հայցեա: բազմամեղիս ներել մաղթեա: Եւ թողութն շնորհի ժառեա: Եւ քեզ լիցի, զամէնն ասա:

Էջ 111բ. Ընդ որս. եւ եղկի (= եղկելի) ծրոզիս զաս խնդրեցէք թողութի: եւ ձեզ լիցի ամէն:

Էջ 133բ. Ջանարհեաս գրիչս հանդերձ ծնօղաւք յիշել ՚ի տր աղաչեմ. զի եւ ձեզ լիցի մեղաց թողութի Ամէնն:

Էջ 257բ. Եւ զեղկելոյս լուսայ զհոգի:

Էջ 299ա. Տէր Յովհաննէս աւագ քհնյ. տր Գէորգեան տր Յակովբեան. 1887 թիւ ի Ս(աւրա)գիւղ:

Էջ 306ա. Ով սուրբ ընթերցօղ յիշեա զանարժան արեղս բազդասարս Եւ ծնօղքն իմ յակօբն, եւ հախփախմէն. եւ ամենայն արեանն մերձաւորսն իմ: Եւ դուք յիշեալ լիջիք ՚ի քրիստոսէ ամէն հայր մեր որ յերկինս . . . :

Էջ 306բ. Յիշատակութիւն էր գրքիս ՚ի 1884 թիւ 10ն հոգմր. ի գրոց Յովհաննէս Աւագ քհՅի տէր Գ. տէր Յակովբեանց. ՚ի Ս(աւրա) գիւղ:

Առաջին եւ վերջին երեք յիշատակութիւնները օտար գրիչներէ մնացեալը բուն գրչէն:

## Գ.

# ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ ԼԻԼԱԽԱ ԹԱՂԻ

---

## 1.

### ՀԱՐՑՄՈՒՆՔ ԱԹԱՆԱՍԻ

?

*ԹՈՒՂԹՔ 165: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին: – ԳԻՐ՝ նոտրագիր. թանաք՝ սեւ. մինչեւ էջ 46 գլուխներն ու սկզբնատառերը փոխ առ փոխ կարմիր եւ ծիրանագոյն, այնուհետեւ միայն սեւ, տող 14: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը գէշ եւ քրքրուած, բայց պակաս թուղթ չկայ. ձեռագիրը երկար ժամանակ թաղուած պիտի ըլլայ տիղմի մէջ, այնպէս որ այժմ բոլոր թերթերը հողով պատած են, հողի այս խաւին տակ գրերը աննշմարելի մնալու չափ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա, 5բ–7բ, 81բ եւ 165բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագիր չկայ բնաւ: – ԳՐԻՉ եւն չեն յիշուած. թուական դրուած է "Ռե թվին յօգոստոս ժգ„, որուն ինչ թուական ըլլալը յայտնի չէ. ձեռագիրս նոր է, բայց այնու ամենայնիւ աւելի հին քան 1875, իսկ եթէ "Ռե„ համարինք Ազարիայի թուական, այն ժամանակ ձեռագիրը կ՚ըլլայ 1690 թուէն:*

**Ձեռագիրս կը պարունակէ. 1. Թացութենէն ջնջուած եւ անընթեռնլի գրութիւն մը՝ երկրորդ գրչէ. էջ 1բ—3ա: 2. Էֆիմերտէական գուշակութիւններ աստղերու շարժման վրայ՝ երկրորդ գրչէ, թերեւս նախորդին շարունակութիւնը. էջ 3բ—4բ: 3. Երանելոյն Աթանասի արքեպիսկոպոսի Աղեքսանդրացւոյ Հարցմունք վայելուչք եւ պատասխանիք Կիւրղի Երուսաղեմայ Հայրապետի. համաձայն է Վիեննայի Մխիթարեան հարց թիւ 260 ձեռագրին հետ, բայց կը պարունակէ 138 հարցում էջ 8ա—165ա: Հարցմունքս էջ 47ա ընդհատուելով էջ 47բ—49ա անվերնագիր հատուած մը՝ ցեխէն դժուարընթեռնլի "Հրց. Զինչ է ձեւ, գիծ, մակերեւոյթ եւ մարմին„. էջ 49բ—50բ օրհնէնքներ:**

**ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ. Էջ 1 կողի վրայ. "Նուէր Յակովբ Յովհաննէսեանից 1891 ապրիլ 21 Դավրէժ„. Նոյն տեղը նաեւ նօտրագիր "յիշատակ է գիրքս„ առանց շարունակութեան:**

**Էջ 8բ. Կնիք մը. "Քրի ծա. Աղեքսանդրոր„:**

**Էջ 165ա (առաջին գրչէն իբր գլխաւոր յիշատակարան) "Զմեղօք լի գծօղս յիշեսջիք ի Տէր աղչմ. Գրեցաւ ի հե թվինս յօգ"ս ժգ„:**

## 2.

### ՏԱՂԱՐԱՆ

(ԺԹ. դար:)

*ԹՈՒՂԹՔ՝ 82: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×1,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ նոտր. թանաք՝ սեւ, վերնագրերն ու սկզբնատողերը երբեմն կարմիր. տող՝ 21: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ լաթապատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական աղտոտած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 26բ, 48ա–բ եւ 49բ որոնց վրայ կան անմիտ գրչափորձեր ալ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ կան քանի մը հատ՝ չափազանց անարուեստ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ. թուականը 1830—40 թուերուն ըլլալու է, տես տակը:*

**Ձեռագիրս կը պարունակէ. 1. Վիճակ քաշելու աղիւսակ. էջ 1բ: 2. Տասը ոտանաւորներ վիճակին տասը տառերուն վրայ. էջ 2ա—11բ: 3. Նամակներու օրինակներ, որոնց մէկ-երկուքին մէջ թուական դրուած է ռմհզ յուլիսի իե. էջ 12ա—25ա: 4. Տաղ. Այիբէն մինչեւ ի քէն քս մեղայ քեզ. էջ 25ա–բ: 5. Պայմանագրերու օրինակներ, որոնց թուականներն են ռմձբ եւ նոր գրուածներէն 1841. էջ 26ա—30բ: 6. Տաղ.**

Այիբն աստ առաքեցար հազար բարի էջ 31ա (կիսատ)։ 7. Թագ փառաց մերոց այր ցանկալի (կիսատ տող). էջ 31բ։ 8. Տաղ. բղխեալ աղբիւր յորդորական. էջ 32ա—բ։ 9. Հրեշտակ եւ մարդիկք ահացնծացէք. էջ 33ա – 34բ։ 10. Ով բեթղեհէմ երկիր ցանկալի. էջ 34բ – 35բ։ 11. Ննջեա որդեակ քաղցր եւ անուշ. էջ 35բ—36բ։ 12. Յորժամ առին մահու հրաման մեր կենարարին. էջ 36բ—37բ։ 13. Ի խաչին անարգ բեւեռեալ ծով աչուերոյս, էջ 37բ—38ա։ 14. Տիրամայրն հանդէպ որդւոյն ի խաչին. էջ 38ա։ 15. Գլխոյ պսակ զարմանալի թագ ոսկեհուռ. էջ 38բ—39ա։ 16. Դու ի խաչին այ որդեակ կաս բեւեռեալ. էջ 39ա—բ։ 17. Բաղչի դուռն է բացուեր մէջ քո դարբասին. էջ 40ա։ 18. Ի տիպ ցանկալո-յդ ազնիւ սիրելւոյդ. էջ 40բ—41ա։ 19. Ջիս քո սիրոյն ով նազելի հովերն առնէր կու մաղէր. էջ 41ա—բ։ 20. Այսօր զքեզ տեսայ եւ ուրախացայ. էջ 42ա։ 21. Գիր եմ գրեր հազարով, մէջն լցեր եմ շաքարով. էջ 42բ։ 22. Ի ժամ գարնանային մուտ մարտի ամսուն. էջ 42բ—43բ։ 23. Յորժամ գինոյ փարչն գայ մարդոյ սիրտն ուրախանայ. էջ 43բ—45ա։ 24. Իսկակից հօր ծնունդ աներ ամենազօր. էջ 45ա – բ։ 25. Աղբիւր անմահարար. բանին բնակարան էջ. 45բ—46ա։ 26. Աւաղալի կարդամ մեղայ գոչեմ ես. էջ 46բ—47բ։ 27. Ի ծփանաց մեղաց ծովուս տատանիմ. էջ 47բ։ 28. Գարունն եկեալ անուշ հովերն. էջ 49ա։ 29. Ի հատուցումն իմոց չարեաց զօրս եղկելի. էջ 50ա։ 30. Փութայ առ մեզ նշխուն կաքաւ. էջ 50բ – 51ա։ 31. Ծառ խնկաբեր եդեմաբոյս անթառամ. էջ 51ա – բ։ 32. Ի քէն հայցեմք ով տիրածին. էջ 51բ – 52ա։ 33. Յարմար ձեւով պատուական. էջ 52ա—բ։ 34. Հայոց դարձին վրայ կիսատ ներբողական գրուած մը. եւ զհոսանուտ կազմութիւն բնութեան մրդկն. եւ լուեալ զահագին զահափեն օրհասն մահուն. էջ 53ա—54բ։ 35. Հաւիկ մի պայծառ տեսի աննման. էջ 55ա։ 36. Գառն այ ի սպանդ վարեալ. էջ 55բ—56ա։ 37. Յորժամ յարեաւ փեսայն անմահ. էջ 56ա – 57բ։ 38. Եկեալ Մարիամ մագթաղենացին. էջ 57բ։ 39. Ես ձայն զառիւծոյն ասեմ. էջ 58ա։ 40. Գլխոյ պսակ զարմանալի. Թագ ոսկեհուռ. էջ 58ա—բ։ 41. Ի տարանջատ վայրէս ահա առ ընծայեմ. էջ 59ա – բ։ 42. Ի հարաւ կործան հողմոյն. էջ 59բ - 60բ։ 43. Հողմն մեղաց զիս տատանէ սաստկապէս. էջ 61ա—բ։ 44. Ամենակալ հաստիչ բնութեան. էջ 61բ։ 45. Ղամպարափայլ սրբոյ տօնիս աւետիս. էջ 62ա—63ա։ 46. Արարիչն ած որդին իսկական. էջ 63ա—բ։ 47. Ես եմ կորուսեալ ոչխար. էջ 63բ - 64բ։ 48. Ջառայսեալ մեղօք եղկելի. էջ 64բ - 65ա։ 49. Վիրաւորեցայ մեղօք վարեցայ գերիս. էջ 65ա—բ։ 50. Եկ սիրելի ի պարտէզ քո. էջ 65բ – 66ա։ 51. Ի փառս սբյ երրորդութեան տացցուք միշտ փառս. էջ 66բ—68բ։ 52. Դու ես արեգակ լուսին ի լրման. էջ 69ա — 70բ։ 53. Գիշերս ես ի դուրս ելայ. էջ 70բ – 71ա։ 54. Գրեմ գրեմ ո ով մէջն լցեր եմ շաքարով. էջ 71ա—բ։ 55. Բաղչի դուռն է բացուեր. էջ 71բ—72ա։ 56. Փութա առ մեզ նախշուն կաքաւ. էջ 72ա – բ։ 57. Ծառ խնկաբեր եդեմաբոյս անթառամ. էջ 72բ։ 58. Խարանֆիլ նարգիզ մանուշակ սմպուլ. էջ 73ա - բ։ 59. Պուտունեանըն օթէսի եօք ղարիփլէք (հայ-տճկ.). էջ 73բ—74ա։ 60. Ածածին մայր Մարիամ անապական. էջ 74բ—75ա։ 61. Արփիական եւ գերազանց լոյսոյն բնակարան։ էջ 75ա – 76ա։ 62. Մեր տրն ամէն զօրօքն ի խնդիր եկ ծնողի. էջ 76ա - բ։ 63. Յառաջ որ յաշխարս եկի. էջ 76բ—77բ։ 64. Օրհնեալ փառաւորեալ սքանչելի. էջ 77բ—78բ (հայ. տճկ.)։ 65. Ի տարանջատ վայրէս ահա առընձայեմ. էջ 79ա։ 66. Ի ժամ գարնանային մուտ մարտի ամսուն. էջ 79բ—80ա։ 67. Ի հատուցումն իմոց չարեաց. էջ 80ա—բ։ 68. Արեկ որ մոնումք բաղչէն. էջ 81ա—բ։ 69. ....քաղցրահամ աղբիւր բխեալ յեդեմայ... ծով աչք քանի՞ մ կենաս ի հեռուն. էջ 82ա։ 70. Ահա եկեալ գարուն պլպուլն է նստել. էջ 82ա բ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ չկան բնաւ էջ 1ա. անպէտք գրչափորձերուն մէջ նկատելի միայն "ես հայնէցի ստեփանս„ անունը։

## 3.

## ՏԱՂԱՐԱՆ

(ԺԹ. դար։)

*ԹՈՒՂԹՔ 62: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×10×1,3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր, բայց մեծ մասամբ շղագիր. Թանաք՝ սեւ, առանց կարմրատառերու. տող 16–27: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ լաթապատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 39ա–44ա, 54ա, միւսները յետոյ գրչափորձեր: — ԳԼԽԱԶԱՐԴԵՐ բաւական կան ձեռագրիս մէջ, բոլորն ալ նոր ճաշակով, ջրաներկ, բայց անյաջող: – ԳՐԻՉ եւն անծանօթ. Թուական ԺԹ. դար:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Խնկի ծառին նման ես. էջ 1ա—բ։ 2. Եկեալ Մարիեամ մագդաղինացին. էջ 2ա—բ։ 3. Դարձեալ յայտնի այլանման. էջ 3ա—բ։ 4. Այսօր ցնծայ Երուսաղէմ. էջ 4ա – բ։ 5. Հայրապետաց հանուրց ազգին. էջ 5ա։ 6. Ի գընալ գարնան ես քեզ կարօտ մնացի. էջ 6ա—8ա։ 7. Այսօր տօն է ծնընդեան աւետիս. էջ 8բ—9բ։ 8. Ի յանեղէն լուսոյն

ընտրեալ հարսն յերկրի. էջ 10ա—12բ։ 9. Ի խիթմանէ խղճիս խարեալ խոցոտիմ. էջ 13ա—14բ։ 10. Յորժամ գարուն եղեւ արեւ ծագեցաւ. էջ 15ա—16ա։ 11. Եայլի նոր մանուկ ի սէր քո այրիմ. էջ 16բ—17բ։ 12. Գոչեմ ձայնիւ արտասուական. էջ 18ա—բ։ 13. Գարուն էանց ծաղկունքն ամէն չորացան. էջ 19ա—20ա։ 14. Ի բորբոքիլ անսաստ սիրոյս սխրանաց. էջ 21բ—22ա։ 15. Մաքուր տաճար եւ բնակարան անմահի. էջ 22ա—23ա։ 16. Յետ գնալոյ վարդին եկ պլպուլն այգին. էջ 23բ—24ա։ 17. Ես քո սիրուն չեմ գիմանար իւրէկիմ թութուշուփ եանար. էջ 24բ—25ա։ 18. Հրճուիմք այսօր մեք հոգեպէս. էջ 25բ—26ա։ 19. Քրիստոս փառաց թագաւոր այսօր եկեալ յընծայումն. էջ 26բ—27ա։ 20. Տունկ անմայութեան բողբոջեցար որ կո–ս. էջ 27բ—28ա։ 21. Անեղին տաճար բանին բարեբար. էջ 28բ։ 22. Նոր ծաղիկ պայծառ ցո(լա)ցաւ այսօր ի նոր գերեզմանէն. էջ 29ա—բ։ 23. Գառն այ ի ապանդ վարեալ. էջ 30ա—բ։ 24. Յորես եկաւ մեկ մեկ ուսի վույ վույ. էջ 31ա—բ։ 25. Գարունն է եկել նախշունթեւերով. էջ 32ա—բ։ 26. Արեւ ընկաւ սարի վերէն. խորոտիկ խորոտիկ. էջ 33ա—բ։ 27. Հայոց աղջիկներ ձեր հոգուն մատաղ. էջ 33բ—34ա։ 28. Պուլբուլն է հագեր ի հօտքն կօշիկ. էջ 34բ։ 29. Վարդը բացւել այ ծաղկոցին. էջ 35ա—բ։ 30. Ընթերցուածք Դանիէլի. Յամին ութնուտասներորդի Նաբուգոդոնոսորայ արքայի. էջ 36ա—38բ։ 31. Ընթերցուած ի Ծննդոց. Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ փորձեաց ած զաբրահամ. էջ 44բ։ 32. Ընթերցուած եզեկիէլ. Եւ եղեւ ի վերայ իմ ձեռն տն. էջ 45ա—46բ։ 33. Ընթեր(ց)ուածս յօնանու. Եւ եղեւ բան տն առ յօնան. էջ 47ա—49ա. 34. Մնացեալը բոլորովին նոր բան է, արտագրութիւն ար՛ևմտեան բարբառով թուաբանութեան դասագրքէ մը։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 2բ. վարդի եւ նոճիի պատկերի մը տակ՝ "էս վարդ այ էն էլ սալբի ծառ 1845ին գրվեցաւ"։

Էջ 62բ. "Բատւալմեծա– քոյր իմ եղիսաբեթ տէր օհանեանց"։

Վերջին կողին վրայ Նամակէ մը յետոյ "ի 1853. թվին, որ է ես պաղտասար քրիստոսի ծառայ ի յարտանոէ եկամ լուս յաշխարհ յունվարի չորսին"։



## Դ.

## ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԼԻԼԱՒԱ ԹԱՂԻ

---

### 1.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**ՌՃԺ = 1661:**

*ԹՈՒՂԹՔ 279: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17×12×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 12×3,5 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ վարդագոյն: Տող՝ 19: — ՆԻՒԹ՝ մագաղաթանման թուղթ: — ԿԱԶՄ՝ նոր ոճով, խաւաքարտեայ, վրան պատած մանիշակագոյն* moire. *երկու կողերուն վրայ ալ կան արծաթեայ խաչեր, կարմիր եւ կանաչ քարերով ագուցուած: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա եւ 279ա-բ որ իբր պահպանակ դրուած է: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐԸ, պատկերներն ու զարդագրերը միջակ յաջողութեամբ: — ԳՐԻՉ՝ Յարութիւն դպիր. տեղ՝ Գանձակու Քարթման գիւղը. տէր՝ Հայրապետ. Թուական ՌՃԺ = 1661: — Ձեռագիրս օծուած է եւ իբր սուրբ գիրք կը պահուի աւագ խորանի վրայ Աստուածորդւոյն պատկերին առջեւ:*

**Մատեանս է Աւետարան կը պարունակէ՝ Մատթէոս էջ 3ա — 80ա. Մարկոս՝ էջ 81ա — 130ա. Ղուկաս էջ 131ա—214ա. Յովհաննէս էջ 215ա — 276բ. իբր կնոջն շնացելոյ էջ 276բ — 277ա: Ցանկ եւ նախադրութիւնք չկան:**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1բ—2ա. Յիշատակ է յաւիտենական. եւ զաւակ հոգեւոր գանձ անկողոպտելի, եւ ծառ պտղալի ի տանն այ տնկեալ. Զոր լուեալ զայս բանի գրոց սրբոց. հաւատարիմ. ծառայն այ. Նանայ ղուզին. որ է կին ղօչիկենց մարկոսին. զսա եռափափաք սիրով. եւ ջերմեռանդ հաւատով. ոչ թէ իւրոյ կարողութէն. այլ սրտին բաղձանացն. ի չքաւորութէ զոր ունէր էարկ ըստ երկուս լումայս. Զոր տեսեալ զայս գանձս ածային եւ զոսկեփթիթ բուրաստանս. անմահացուցիչ մանանայս. եւ յորդաբուխ աղբիւրս. Ստացաւ զսա եւ գնեաց ի հալալ ինչից եւ ստացանաց իւրոց յօժարամիտ սրտիւ եւ բղձմամբ հոգով եւ ետ ի դուռն սբ ստեփաննոս վանիցն ի քաղաքն աստապատու. առ ի յիշատակ բարի անջնջելի եւ յաւիտենական միջնորդ եւ բարեխօս առ տր յն. պաշար եւ Թոշակ եւ առաջնորդ երկնաչու եւ երկարաձիգ ճանապարհին որ տանի ի վերին Երուսաղէմ Զայս ի միտ ածեալ եւ իմանալի աչաց տեսուք պայծառապէս. արտափայլեալ եւ փափաքմամբ ածային սիրոյն միշտ խորհէր զերկնայինս. եւ ի յայս կենցաղս ոչ ինչ համարեալ. եւ որ ինչ աշխարհի է. այլ միայն ըստացուածոց կենդանի ստացեալ. եւ զհոգեւոչունչ մատեանս զաւետարանական ածախօս քարոզութիւնս փրկչին մերոյ այ. Որ յայժ փափաքանօք. եւ մեծատենչ ըղձմամբ զայս մատեանս ստացաւ որ յորջորջի աւետաւոր երկնից արքայութեան: Ի Թվականութեան հայոց ռճծե (= 1706) եւ ապրիել ամսոյ ի ին գրեցաւ, առ ի յիշատակ հոգոյ իւրոյ. Նանայղուզուն որ է ղօչիկենց մարկոսին կին եւ ծնողացն հայրապետին. յեսին. եւ այլ ամ արեան մերձաւորացն կենդանեաց եւ ննջեցելոցն Ո՞վ սրբասնեալ դասք քահանայից յորժամ զյիշատակս ընթեռնուք մէկ հա՛յր մեղայ յիշեցէք. մարկոսն եւ զկին նորին Նանայղուզին եւ ած ողորմի ասացէք եւ նր մեղացն թողութիւն խնդրեցէք. եւ տրն քն ձեր մեր մեղացն թողութիւն շնորհեսցէ ամէն. ի յովհաննէս իրեցէ ծրեցեալ:**

**Էջ 80ա. ես ոսկին մայթաթին առամ ի նր աւետ[ար]ան իմ հալալ ինչիս եւ տո[ւամ] սբ սարգիս եկեղեցու յիշատակ ինչ մարդ որ ծախելու լինի (տող մը կազմի ժամանակ կտրուած) եւ իմոյ եղբօր պետրոս մեսրոբեան եւ մերոյ հոգուն յիշատակ 1846 օգս 26 գէրեցաւ:**

**Էջ 80բ. յիշեցէք նանաղուզին եւ ած ողորմի ասացէք որ այս աւետարանս գնեց իւր հոգուն յիշատակ:**

**Էջ 130ա. յիշատակ է աւետարանս նանայղուզուն բերան մի ողորմի ասացէք զոր տր ած ձեզ ողորմեսցի: (Անդ բուն գրչէն) Զյարութիւն գծողս. եւ սակաւ մրողս յիշեցէք առ քս. եւ ած զձեզ յիշէ**

**Էջ 214բ. Ո՞վ դասք քահանայք եւ յորժամ ընթեռնուք սբ աւետարանս յիշեցէք զատացող սորին. նանայ ղուզին եւ ծնող սորին:**

**Գլխաւոր յիշատակարան. Էջ 277բ—278բ. Փառք նաբաժանելի եւ միաանական սբ երրորդութեան. եւ մի**

ծնութեան հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ․ յայժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Արդ գրեցաւ սբ աւետարանս ձեռամբ փցուն եւ անարուեստ գրչի․ սուտ յանուն Խէէբէու յարութիւն դպրի․ զանունս ունիմ զգործս ոչ։ Եւ 'ի հայրապետութեան․ տեառն սրբազան կթկի․ եւ եպիսկուբն դաւթի․ 'ի թվին հայոց․ ա․ ճ․ ժ․ ամին։ գրեցաւ ի յերկիրս գանձայոյ․ 'ի գեղս որ կոչի քարթման ընդ հովանեաւ սբ գրիգորիս եւ սբ սիմաւոնիս․ եւ բազում սրբոցս որ աստ կան հաւաքեալ։ — Արդ աղաչեմ զամենն որք հանդիպէք այսմ ծնաւանդ սբ աւետարանս․ յիշեցէք 'ի մաքրափայլ յաղօթս ձեր․ զբարեպաշտ տէն զհայրապետն․ եւ զկողակիցն իւր Գուլումն․ եւ որդին տր յովաննէսն սրբանուէր եւ նորընծայ․ եւ ամուսինն իւր․ Շահմիրան։ եւ դուստրն․ մարիեանն։ Դրձլ աղաչեմք զձեզ, ով սբ հայրք եւ եղբարք․ յիշեցէք 'ի մաքրափայլ յաղօթս ձեր․ զհայրապետն․ եւ միւս որդիքն վարդանանն․ Պարոնպէկն․ եւ հանգուցեալ որդիքն աղապէկն․ անդրէասն․ ծն իւրեանցն արքայութեն պարգեւէ ամէն։ Դրձլ յիշեցէք զհայրապետն․ զհայրն իւր․ մկրտիչն․ մայրն․ հիւրխանն․ ծն իւրեանց արքայութեն տայ․ եւ եսեւ— մնացն․ կեանք եւ առողջութե։ ամէն․ Հայր մեր։ Դրձլ յիշեցէք զտր յովհաննէսն․ եւ քորք սորին։ Ջայիփխանն․ Հիւրիխանն․ փաշէն․ Աղիզն։ Վառվառն։ Հո—ռո—մսիմէն։ Մարիեանն․ որ առ քս է հանգուցեալ։ — Եւ եւս աղաչեմ զձեզ թողութե արարէք․ զի կար մեր այս է։ Մարինոսն յիշեցէք․ որ բազում․ աղօթիւք․ կերակրէր զիս յանարժան մեղաւոր գրիչս։

## 2.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՊՂԹ = 1450։

*ԹՈՒՂԹՔ 303: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×15×6 սմ. — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր եւ կանոնաւոր. երկսիւն, իւրաքանչիւրը 15×5 սմ.: – ԳԻՐ խոշոր բոլորգիր. թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կանաչ ու բաց կարմիր. տող 21: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ բոլորովին նոր, կիսակաշի, դժբախտաբար տգէտ կազմարարը բոլորովին խանգարեր է թերթերու կարգը, եւ ես այս խանգարուած կարգով ստիպուեցայ թուագրել: – ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ նոր եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–2ա, 3ա, 4բ, 5բ, 6բ–7ա, 8բ–9ա, 10բ–11ա, 12բ–13ա, 14ա, 16բ–17ա, 82ա, 148ա, 232ա, 301ա եւ 303ա–բ: Առաջին եւ վերջին թերթը նոր դրուած իբր պահպանակ. նոյնպէս սկզբի դատարկ էջերէն շատերը կը կրեն մատիտով գրուած շատ յիշատակութիւններ 1890 եւն թուականներէն (միայն անուն. ազգանուն եւ թուական): – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, 18 մեծադիր պատկերներ, խորաններ եւ զարդագրեր՝ միջակ արուեստով: – ԳՐԻՉ՝ Յովհաննէս քահանայ. տէր՝ Վարդան գրակալ. տեղ Արճէշ. թուական ՊՂԹ = 1450. ծաղկողք՝ Մանուէլ եւ Մարտիրոս քահանայք:*

Մատեանս է Աւետարան. կը պարունակէ էջ 1բ—19բ պատկերներ, Եւսեբի Կարպիանոսի ե կանոնք. ասկէ ետք Մատթէոս էջ 20ա—81բ Մարկոս 83ա—147բ. Ղուկաս 149ա—230բ. Գլուխք Յոհաննու աւետարանին էջ 231ա—բ. Յովհաննէս 233ա—296բ. յիշատակարանք է. 297ա – 302բ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1ա (գեղեցիկ նոր գրով). “Սոյն սրբազան մատեանը իւր ծախքով կազմել տուեց Յ. Յ.-եանցը։ Դավրէժ 28 յունիսի 1888թ։ “(կազմել տուող այս անձն է Ուսուցիչ Յարութիւն Յարութիւնեանց, որ կը պատմէ թէ ձեռագիրը նախապէս չափազանց քրքրուած ու թափթփած վիճակի մը մէջ կը գտնուէր)։

Էջ 2բ. զվարդան վարդպետն (այն է վարպետ, ուսթա եւ ոչ վարդապետ) զստացող սբ աւետարանիս. յիշեցէք ի քս ամէն։

Էջ 3բ. Զմարտիրոս սուտանուն քհ 'ի տր յիշեա. Զնկարող սորայ եւ քեզ ծն բարի տա՛

Էջ 14բ. Վարդան վարպն գրակալն տէր սրբոյ աւետարանիս։ Հայրն աւետիսն, մայրն եղիսաբեթ. Տր ծն զիւրեանքն արժանի արասցէ տեսլեան խաչի լուսոյն ամէն եւ զմս հւտյս։

Էջ 20ա. Զմանուէլ քհա. նկարող սբ աւետարանիս. յիշեա յաղաւթս եւ լնղս։

Էջ 82բ. Զմանուէլ նկարող յիշեայ ի տր։

Էջ 148բ. Տր կեցո զմգրն։

Էջ 232բ. Զմանուէլ քհա. նկարող սբ աւետարանիս յիշէ ի տր։

Գլխաւոր յիշատակարան. Էջ 297ա—300բ. Փառք անսկզբան եւ սկիզբն ամենայնի։ Աներին եւ գոյացուցչին բնաւից։ Անվախճան եւ անսահման էացուցչին։ Սահմանիչ եւ կատարումն բոլոր էից։ Երից միակին. եզակի եւ միում ծնութեն։ Որ անշարժ գոլով շարժէ զարարածս 'ի կեանս եւ 'ի փրկութի։ Եւ կրէ զմն բանիւ զաւրութե իւրոյ։ եւ անհաս է յամէ։ Զբոլորից հանգուցք ծնութի եւ փառս հաւր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ՝ այժ"։ Գիրք տրունեան աւետարանի տն մերոյ յի քի։ Աւետարանեալ 'ի չորից աւետարանչացս։ Ըստ պատուոյ քառագծեան անուան։ հայր. որդի եւ հոգի սբ։ Ի քառակերպ նշանեալ յաթոռ. եւ ի քառաթեւ անմարմնոցն գովեալ։ Քառագիր եւ ադամ անուանեալ։ Եւ ադին. եւ եդեմ նոյնպէս քառագիծք։ Յորմէ եւ աղբերն քառակի բաժանեալ վտակաւք։ Եւ զքառակուսական աշխարհս արբուցեալ։ Եւ զգոյացեալս 'ի քառից տարերց։ Ըստ քառակի տարբերութե մերոյ։ եւ Քառահոլով եղանակաւք տարւոյ

շրջագայութեան բոլորեալ։ Քառաթիւ եւ մովսիսեան գիրք եղեալ 'ի տապանակին։ Քանզի երկրորդումն աւրինացն՝ յետ լը. ամի գրեցաւ։ եւ 'ի կողմանէ տապանակին եդաւ. եւ ոչ 'ի տապանակին։ Զմեծի Մարգարէին Եզեկիելի՝ եւ հրաշից տեսաւղին զտեսիլ ասեմ։ Քանզի տեսանէր 'ի հիւսիսոյ քառադէմ կենդանիս. Զուարակ եւ Մարդ. Առեւծ եւ Արծուի։ Ի քառահոլով անիւս քառալծեալ։ Գէր 'ի վերոյ ունելով զահեղ եւ զնր անուննն։ Եւ նշանակէ մարդն զՄատթէոս։ 'ի մարդոյ եւ յորդւոյ մարդոյ սկսեալ. զաւետարանն իւր։ Իսկ մարկոս զառիւծն՝ որ լինել ասէ ընդ գազանս՝ յետ մկրտութեանն։ Իսկ ղուկաս զզուարակն՝ յաղագս զենման պատարագին՝ զուարակին յառակս անառակ որդոյն։ Իսկ յովհաննէս Զարծուին՝ զբարձրաթռուիչ. եւ 'ի բարձանց սլացեալ՝ եւ 'ի վերին խորոցն սկսեալ պատմել զանսկզբանն։ Զանսկիզբն ծնունդ բանին 'ի հաւրէ։ Այլ. որպէս զուգակերպ երեւեցան, աւետարանչացն. ըստ խորհրդոյ քառադէմ կենդանեացն։ Պարտ է եւ զքառակ ի բաժանեալ աղբերն նմանեցուցանել։

Արդ՝ փիսոն։ գեհոն։ տիգրիս։ Եփրատէս։ Եւ նշանակէ փիսոն՝ զՄատթէոս։ յարեւելից յարեւմուտս ընթացեալ ընդ հարաւ։ յերկիր ուր ոսկին է. եւ ոսկի երկրին այնորիկ ազնիւ է։ եւ ակն կայծ՝ եւ զմրուխտն կանաչ։ Զի եւ մատթէոս 'ի վերուստ 'ի խոնարհ զազգաբանութիւն իւր կարգէ՝ Իբրեւ յարեւելից յարեւմուտս։ Որպէս երեւեցաւ արեւելք արեւմտից։ այսինքն. ած մարդկան։ Իսկ Գեհոն զմարկոս. անդէն. եւ անդ յեթովպիա իջեալ եւ յեգիպտոս. Ոչ 'ի յուխից եւ յանձրեւաց գոյացեալ, եւ ծովացեալ։ այլ անդստին յինքենէ յորդեալ՝ եւ ականակիտ յըստակութբ տարածեալ յեգիպտացւոց աշխարհն։ Բազմապտուղ առնէ զանդաստանս մինչեւ կանգնաւ չափել զհասկն։ Այսպէս եւ Մարկոս՝ սկիզբն առնելով աւետարանութեան իւրոյ 'ի մկրտութենէն քի։ Յորմէ ծովացեալ շնորհք հոգւոյն սրբոյ. յանդաստանս հոգւոց։ Ուր անտանուր քարոզեաց բազմապըտուղ արար զնր հասկն. հազարաւորս եւ բիւրաւորս՝ յանապատսն եգիպտացւոց։ Իսկ տիգրիս զՂուկաս՝ ընդ հարաւոյ յարեւելս՝ եւ յանդիման ասորեստանի՝ ուղիղ ընդ արեւելս ձգեալ։ Վասն զի յաւետեացն սկիզբն առնելով՝ աւետարանութեան իւրոյ։ որով շնչեալ յորդութբ հարաւոյն քաղցրութբ։ 'ի մարիամ եւ յեղիսաբէթ։ 'ի զաքարիա եւ 'ի յովաննէս։ 'ի սիմէոն եւ յաննա։ Եւ անդէն արագ արագ անընդմիջաբար. իբրեւ յարեւմտից ներքուստ 'ի վեր՝ ուղիղ կարգելով զազգաբանութիւն մինչեւ յադամ եւ յած։ ի ճշմարիտն արեւելք։ խորհրդական թուով զաւրութի ունողի. եւթանասներորդ եւթներորդն ազգաւ։ Իսկ Եփրատէս թեպէտ եւ 'ի տեղւոջ գիտեմք՝ անտեղի ասի՝ միայն՝ թէ գետն չորրորդ եփրատէս։ Նշանակելով զյոհաննէս։ Զի զանտեղի՝ եւ զանուր՝ եւ զանէրբ. եւ զանսկիզբն ածութենէն՝ սկիզբն արար աւետարանութբ իւրոյ ճառել։ Եւ արագեալ իբրեւ յարեւելից յարեւմուտս։ Ցանսկիզբն ծննդենէն՝ 'ի մարմնական ծնունդ բանին. թէ բանն մարմին եղեւ։ Եւ ապա վերացեալ ընդ արեւելս ըստ գնացից եփրատայ. 'ի մկրտութեն վըկայութի՝ եւ յածաբանութի յարութե բարձրութի։ Զոր տեսեալ եւ իմացեալ զսորա անճառելի աւետիքն. եւ զահագին սքանչելիքն. եւ զամենեցուն զփըրկագործութեն խորհուրդ. Ամէն ածհեալն եւ հոգիացեալն 'ի գործս ամ առաքինութեց վարդան գրակալն եւ ստացաւ զանսահիկ մեծութիս եւ զփարթամ հարստութիս. ի յիշատակութի հոգւոյ իւրոյ եւ բարեպաշտ ծնաւղացն իւրոց՝ հաւրն աւետիսին. եւ մաւրն տալիթին։ Եւ եղբարցն քահանայապետին, յոհաննիսին. զաղարին. եւ տուրութին։ Եւ հաւրեղբօրն հերապետին եւ զաւակաց նորին։ Եւ պապուն իւրոյ ներսէս բարի քահին։ Եւ որդոյն անդրիաս քահին։ Եւ մաւր քըւերցն երանուհոյն եւ խաթունին։ Եւ հօրքըւերն եպրաքսին. եւ գօհար տիկնին։ Եւ այլ ամ արեան մերձաւորաց իւրոց կենդանեաց եւ հանգուցելոց։ Արդ՝ որք վայելէք յամենառատ սեղանոյս՝ լիակատար սրտիւ ած ողորմի ասացէք վարդանին եւ իւրոցն ամի։ Ամէն։

Եւ արդ՝ ես յետինս 'ի կարգաւորաց՝ եւ անպիտան եւ անարժանս 'ի մանկունս եկեղեցւոյ. եւ անիմաստս 'ի գիրս գրչութե յո"վ սուտանուն քա"հ։ Շնորհիւ տն սկըսայ. եւ ողորմութբ նորին կատարեցի զՏր աւետարանս։ 'ի թուականիս հայոց մեծաց. ՊղԹ. ամին։ Յարճէշ քաղաքի։ Ընդ հովանեաւ եւ 'ի դուռն Տր տաճարիս գէորգեայ զաւրավարիս։ Ի հայրապետութե տն Գրիգորի՝ ածադիր կաթուղիկոսի։ մեծ աթոռոյս ածաշէն կաթուղիկէի Տր էջմիածնի վաղարշապատու։ Զոր տր ած հաստատուն եւ անփորձ պահեսցէ զնա յաթոռ իւր՝ 'ի պարծանս եւ 'ի մխիթարութի յետնեալ եւ նուազեալ ազգիս։ Ամէն։ Արդ՝ որք ճաշակէք յածային բուրաստանէս եւ յամենալի սեղանոյս։ լի սրտիւ եւ առատ բերանով ած ողորմի ասացէք վարպետ վարդանին. եւ քւերն իւրոյ քարամ խաթունին Ամէն։ եւ ինձ անարժան գ"չ յո"վ քա"հի եւ երախտաւոր ուսուցչին իմոյ թումա աշխարհալոյս վդպ"տի հետեւողի առ քն. եւ մարմնաւոր ծնաւղաց իմոց. մանկասարին եւ փաշային. գնացելոցն ի քն։ Բայց խոշութե (իմա խոշորութեան) գըրիս անմեղադիր լինել աղաչեմ զի կար մեր այս է։ Եւ զի սիրտս խոցեալ է 'ի սատ՛յէ։ Եւ զի կենդանոյն մեռեալ եմ, եւ աչքս ի բաղում արտասուաց կուրացել է. զի իմ սիրական որդիքն սաՀակն ու մեսրոպն զիս սեւեցին։

Էջ 301բ (այլ գրչէ). Դարձեալ յիշեցէք ի Տր յաղաւթս ձեր. զմարթա խաթունն. եւ զծնաւղսն իւր. զՄելքեսեթն. եւ զյուզիտէն. եւ զեղբայրքն իւր զյովանէսն. եւ ըզ խոջադեղն. եւ ըզ հաւրեղբայրն. զյոհանէս կՏնրն. եւ զմեծ պապն իւր զսարգիսն՝ եւ զնորին կողակիցն, զգուլխաթունն։ եւ զփեսայն իւր. ըզդանէլն. եւ զնորին զաւակսն. զմարտիրոսն. եւ զվարդանն. եւ զայլս արեան մերձաւորքս նոցին զկենդանիք եւ զհանգուցեալսն 'ի քն. եւ լի բերանով եւ ուղիղ սրտիւ. ած ողորմի ասացէք. եւ ած ձեզ ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն ամէն։ դարձեալ յիշեցէք ի Տր յաղաւթս ձեր. զթումէն. եւ զեղբայրն իւր. զկարապետն, եւ զնորին զաւակսն. եւ զմխիթարն եւ զբախշայիշն. եւ ած զձեզ յիշէ։

**Արդ յերես անկեալ աղաչեմ զձեզ ով որ հայրք եւ եղբարք. եւ մանկունք նոր եկեղեցւոյ. որք հանդիպիք սմա. կարդալով. կամ աւրինակելով. յիշեսջիք 'ի Քս եւ ի մաքրափայլ յաղաւթս ձեր. զԸ վերջին ստացող սր աւետարանիս. զՀեղահոգի. եւ զծարեմիա տանուտէրն Թումայ. եւ զկենակիցն իւր զՄարթայ: որ մեծաւ փափաքանաւք. ստացան զսա 'ի հալալ արդեանց իւրեց յիշատակ հոգւոյ իւրեց. եւ ծնաւղաց իւրեց. հաւրն սամ-էլին. եւ մաւրն. շնորհւորին. եւ զաւակաց իւրոց. յովանիսին. մկրտչին. ստեփաննոսին. եւ խոցադեղին: եւ եղբարցն. կարապետին. ստեփանոսին. եւ յովանիսին. եւ դըստերն ազիզ խաթունին. եւ նորին զաւակացն: մարտիրոսին. եւ ասլանին. եւ այլ ամ արեան մերձաւորաց նոցին. կենդանեաց եւ հանգուցելոցն 'ի քն. եւ լի բերանով ած ող[որ]մի ասացէք եւ ած ձեզ ողորմեսցի ամէն:**

**Էջ** 302**բ** (**յաջորդ յիշատակարանիս մէջ բառերուն շեշտերը վանկ առ վանկ նշանակուած են, ուստի թանկագին համարուած մ՚է մեզ համար՝ հայերէն շեշտագրութեան կանոններու ուսումնասիրութեան համար**)**. Դարձեա՛լ յիշե՛ցէք 'ի մաքրափա՛յլ. եւ յերկնագընա՛ց. յա՛ղա՛ւթս ձեր զնու՛կզա՛ր ա՛ղա՛յն ըղ վե՛րջին ը՛ստա՛ցա՛ւղ որ աւե՛տար[ան]իս. որ գնե՛աց զսյս պատո՛ւա՛կա՛ն գա՛նձս. յի՛շա՛տա՛կ բա՛րի՛, հո՛գո՛յ իւ՛րո՛յ. եւ ծընաւղա՛ց իւ՛րո՛ց. եւ ա՛մ ա՛րեա՛ն մե՛րձա՛ւո՛րա՛ցն: հօ՛րն պա՛րսա՛մա՛յ. եւ մօ՛րն սա՛գը՛ամե՛լիքա՛յ. եւ կե՛նա՛կցի՛ն իւ՛րո՛յ ի՛նա՛մ փա՛շա՛յին, եւ ո՛րդո՛ցն պա՛պլի՛ն. եւ նո՛րի՛ն կո՛զա՛կցի՛ն ի՛նա՛մի՛ն. եւ այլ որդոցն մելիքզարայ. եւ զալստանին. մուսէֆրայ. եւ մուսային. այլ եւ դստերըքըն խանդու մուսավար. բէկի այն ի զատ. այլ եւ զեղբայրան իւր ըզգուլումն. զազիայն. եւ զանթազարն. եւ զհօրեղբայրն զաւագն եւ զամ արեան մերձաւորսն եւ ուզիղ սրտիւ եւ բոլորախօս բերանով ած ողորմի ասացէք եւ ած որ առատն է ի տուրս բարեաց սոցայ եւ ձեզ ողորմեսցի ամէն ու հազար ամէն:**

## 3.

## ԱՒԵՏԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ 140: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 23×16×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 18×5 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր, Թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 27–32: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ, հին երկաթագիր աւետարանի մնացորդ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գէշ. կազմը պատռտած, թերթերը հինցած, մաշած, շատը պակաս: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: — Պատկերները ու լուսանցազարդեր չկան. զարդագրերն ու քանի մը փոքր խորաններ անարուեստ: — ԳՐԻՉ Յովհաննէս. Թուական, տէր եւ տեղ անծանօթ:*

**Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ.** 1. **կանոնք, որոնցմէ միայն կը մնայ էջ** 1**ա** — **բ:** 2. **Մատթէոս. սկիզբէն պակաս. էջ** 2**ա** — 42**բ** 3. **Մարկոս. էջ** 43**ա** — 70**բ** (**վերջէն պակաս**) 4. **Ղուկաս, էջ** 71**ա** — 113**բ:** 5. **Յովհաննէս էջ** 114**ա** — 140**բ** (**վերջէն պակաս**).

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ** 2**ա. Զառակն զազուին ցին զուշն տարաւ զգրչակին: (Անդ) խաբարն ղալտեցոյց:**

**Էջ** 74**ա. Տր յն փրկեա զմեզ ի ժամանակի չարեաց ստոր. ո՜հ ո՜հ ո՜հ:**

**Էջ** 91**ա. Տր յն ողորմեայ յոհանիսի անարժանիս:**

**Գլխաւոր յիշատակարանը կորսուած թղթերուն մէջն է:**

## 4.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՌԺԱ** — 1562:

*ԹՈՒՂԹՔ 204: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 26×18×4 սմ. — ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ պարզ, երկսիւն՝ իւրաքանչիւրը 21×6 սմ.: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. Թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր, տող 26: — ՆԻՒԹ՝ մագաղաթի նման ընտիր թուղթ: — ԿԱԶՄ՝ բոլորովին նոր, խաւաքարտէ, վրան պատած մանիշակագոյն ընտիր* moire. — *ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բոլորովին նոր եւ մաքուր: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն մի մի թերթ, երկաթագիր աւետարանի մնացորդ: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–2ա, 55ա, 93ա–բ, 159ա, 203բ–204ա: — ՊԱՑԿԵՐՆԵՐԸ, լուսանցազարդերը եւ զարդագրերը առանց ներկի, լոկ ուրուագծով եւ քաւական անարուեստ: — ԳՐԻՉ Պետրոս աբեղայ. տէր Մանտեսի Ովիէլ. տեղ Հաւատուս կամ Ընկուզակ գիւղ. Թուական ՌԺԱ = 1562:*

**Մատեանս է Աւետարան. կը պարունակէ Մատթէոս՝ էջ** 3**ա** — 54**ա. ցանկ Մարկոսի՝ էջ** 54**ա** — **բ. Մարկոս՝ էջ** 56**ա** — 90**բ. Յարուցեալ յս առաւաւտուն՝ էջ** 90**բ** — 91**ա. ցանկ Ղուկասի՝ էջ** 91**բ** — 92**բ. Ղուկաս՝ էջ** 95**ա** — 158**ա. ցանկ Յովհաննու՝ էջ** 158**բ. Յովհաննէս՝ էջ** 160**ա** — 202**բ:**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1բ եւ 2ա՝ աննշան յիշատակութիւնք 1872 թուէն՝ Երեխայից Ծննդեան:

Էջ 94ա. կամօքն այ եւ առ իս կոչյալ զՆբ աւետարանս ի հալալ ինչից իմոց էշատակ հոգոյ իմոյ տուի ի դուռն շախկախայ ամածին. հայրապետութե տր ակոբին. եւ սպասաւոր եկեղեցւս տր մկրտչի եւ տր բարսեղի. եւ տնտես ուստի անայ. կամ եղբայր կամ եղբայորդի կամ ազգական կամ –նտանի (= ընտանի) ով որ գավի անէ այս եկեղեցոյս (5 տող քերուած):

Էջ 158ա. Զծրաւղ Սբ աւետարանիս զպետրոս աբեղայս յիշել ի տր եւ դուք յիշեալ լիջիք ամէն.

Գլխաւոր յիշատակարան. Էջ 202բ—203ա. Փառք եւ համայգոյ անբաժանելի Սբ երրորդութեն հաւր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս ամէն: Արդ գրեցաւ Սբ աւետարանս ձեռամբ փծուն եւ բազմամեղ գրչիս եւ սուտանուն պետրոսս. աբեղայի. ի խնդրոյ. բարեմիտ եւ հեզահոգի մէղաւսի ովէէլ կոչեցեալ. յանջինջ յիշատակ հոգոյ իւրոյ. եւ ծնողացն. հաւրն աբրէհամ քահանային. եւ մաւրն իւրոյ. ոէվլիկին: եւ եղբարցն. սաղաթիէլ կրաւնաւորին եւ քրոջն սարկաւագին. եւ դանիէլին. եւ մարգարէին. եւ քէերացն. սառիկին. եւ մարիանին. եւ հիւանին. եւ եղբաւր որդոյ. ուանխսին. Եւ ամ յարեան մերձաւորացն. կենդանեաց եւ ննջեցելոցն. ամէն. Արդ գէրեցաւ ի. թվաբերութեն հայոց տումարիս: ածա: ի դառնութե. չաւհ թահմազին. որդոյ խամյէլի. ի դառն եւ ի նեղ ժամանակիս. որ է որդոյ հաւր հակառակի իւրեանց, ի կթղկուե տանս աղուանից գրիգորիսի (վերջին բառը յետոյ ջնջուած, քերուած եւ լուսանցքի վրայ անշնորհք գրերով գրուած "Տր ովանէս). գէրեցաւ Սբ. աւ. ի գեղջս. հաւատուս կոչի. որ է Հինդուզակս Արդ ե անկեալ (= երես անկեալ) աղաչեմք զամենեսեան. կարդալով կամ աւրինակելով յիշեցեյէք զմաքրասիրայլ աղաւթս ձեր. Զհայրապետ աբեղէս ուսուցիչս. եւ նահապետ. քահանայ. եղբայր սորին. եւ հանդերձ. ծնողաւք. եւ հարազատաւք ամէ: Եւ զբազմայմեղ գրչիս. պետրոսի. աբ"ղա". խոշորութե եւ աղալանաց. անմեղադիր լերուք. Զի զկարս այս ունէաք յիշեցէք ի քս. ած. Եւ յիշողացդ. պառգէ (= պարգեւէ) տր ած. զիւր արքայութիւնն ամէն. Յիշեցէք. Զմարիան ապաշխարողն. որ Զմեզ կերակրեաց ամէն. ած զձեզ ահէ:

Էջ 204բ. յիշատակ է Սբ աւետարանս Սանցի որդի գէրիգորին կամ պապային որ անօրէնի ձեռնէ ազատանք (եւ գրչափորձեր, բոլորն ալ նոր գրով):

# 5.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՋԷ = 1458:

*ԹՈՒՂԹՔ 257: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 21×15×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ պարզ եւ մաքուր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 15×5 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը բաց կարմիր, քիչ անգամ կանաչ կամ վարդագոյն. տող՝ 22: – ՆԻՒԹ՝ մագաղաթանման ընտիր թուղթ: — ԿԱԶՄ՝ բոլորովին նոր, խաւաքարտեայ, երեսը անցուցած ընտիր մանիշակագոյն* moire. *– ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բոլորովին նոր ու մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 70ա–71ա, 117բ–118ա, 194բ–196ա եւ 257բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ, խորաններն ու մեծադիր պատկերները բաւական անարուեստ: – ԳՐԻՉ՝ չէ յիշուած. տէր՝ Յովհաննէս աբեղայ. տեղ Աղբակու Ասփսթան գիւղ. թուական ՋԷ = 1458:*

Մատեանս է Աւետարան. կը պարունակէ. Մատթէոս՝ էջ 2ա – 69բ. Մարկոս էջ 72ա — 117ա. Ղուկաս՝ էջ 119ա — 194ա. Յովհաննէս՝ էջ 197ա — 255ա. ցանկ, նախադրութիւնք եւ կանոնք չկան:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ (օտար գրչէ). էջ 257ա. Զվերջին ստ[աց]ող Սբ աւետարանիս ռշտակէս քհյնս որ ստաց ըզսա հալէալ արդեամբ իմոց: յիշատակ հոգոյ իմոյ. եւ ընծանաց իմոց: Դարձեալ յիշեցէք. մհտՍի տր ռշտակէան. եւ զհայրն իմ կռակտար. թասալի. եւ մայրն իմ. նազլումն. ամէն: Դրձլ կրկին յիշեցէք ռշտակէս երէցն. եւ ըզկողակիցն իմ. աշփաշէն. եւ զորդին իմ զտր գրիգորն. եւ զդստերքն իմ: սատրիկն. աւղլանն. ուլումբէն. մարամն. ոգոհին: ամէն: Դարձեալ յիշեցէք տր գրիգորն. եւ զկողակից իւր սալվարն. եւ զորդիքն իւր. վրդանէսն. թասալի. մխիթարն. խաչատուրն. վարդանն. եւ դուստրն իւր. նազլումն: ամէն. Դարձեալ կրկին յիշեցէք զտր ռշտակէան. որ ետուր ընծա ի դուռն. Սբ. յակոբայ մէկ ճաշոց գիրք մէկ աւետարան. ա. սաղմոսարան. ա. ժամագիրք. բ. մաշտոց. անջինջ յիշատակ հոգւ իմոյ ամէն թվին ա. կ. ը. Հայր մեր որ յերկ":

Գլխաւոր յիշատակարան. Էջ 255բ – 256բ. փառք եզակի եռահիւսակ դաւանութեն. ապէնիազին կատարեալ. եւ անսահմանելի այ հօր. այ որդոյ. այ հոգւոյ. յաւիտեանս ամէն: Շնորհիւն այ ամենակալի. եւ նորին աւգնականութե աւարտեցաւ. եռահրաշ. եւ հոգիազարդ աւետարանս զոր է՛ր շաղկապեալ երանեալ աւետարանչացն. ըստ բազմերանգ. գունոց ի մի սստայն անգելով հանճար. զոր արուեստակեալ անուշոցաց ծաղկանց իւղեփեցական կազմութե որ ըստ հոգոյն յատկութե իմանալի զանազան որակութեք. գաղափարելով, ըստ յոքունց արփիացելոցն. դասակցելութենց. առ ի յեկեղեցոյ յարմարումն. յօդիւ խաղաղութե գլխոյն պատշաճեալ զի յայսմանէ կատարելութի. Չորք աւետարանք ի բազում պատճառէ: Չորեքկերպեան կենդանիք: Մարդ: Առիւծ: Յուլ: Արծիւ: Չորք նիւթ աշխարհիս: Հող. Ջուր: Հուր: Աւդ: հակառակք անհաշտելիք եւ սիրելիք անքակտելիք: չորք. չորք. գիր անուան երրորդութեն: հայր. որդի: հոգի: Չորք

գետք բխեալ ի դրախտէն։ Փիսոն։ Գեհոն։ Տիգրիս։ Եփրատէս։ Չորս անգինս. եւ եղջիւրք սեղանոյն։ Չորք դէմք խաչին։ եւ այլ բազում պատճառս. յորս գաղափարի չորեքեան աւետարանիչքս։ Զի Թէպէտ. եւ բազում բանք ի սոսա որ երեւին ներհակք միմեանց. այլ քաջ ճշմարիտք յոյժ միաբանք միմեանց։ Արդ առեալ ազատածինք մանկունք նոր սիոնի. զհրամանս կենարարին մերո Յի՛։ ընթերցջիք միշտ յեկեղեցի՛։ զի ձեզ եւ ինձ ողորմեսցի որ զսակաւ գիրս գրեցի։ Ի Թվին հայոց։ ՋԷ։ Արդ ես յոհաննէս կրոնաւո ստացո։ զսբ աւետարանս։ ի հալալ արդեանց իմոց։ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց. եւ ամ արեան մերձաւորաց իմոց։ Հօրն իմո պարոն Թումային. եւ մօրն իմո բաղդատին. եւ քեռն իմո սուլտանին եւ զաւակացն իւրոց. մեսրոպի. եւ ալամշի եւ գուլխաթունի։ եւ փեսային իմո յակոբշի։ եւ մօր իւրոյ սադաթի։ եւ հօր մօրն իմո գունաշի եւ դստերն իւրո մարթաի։ եւ կենակցին իւրո զանգիշին. եւ մաղթումն որ (երկու տող բաց թողուած) Ցամս ածապատում վերադիտողի աղբակս Նախանգի երկոտասան գաւազանացս աթոռո բարդաւղիմէոսի առաքելոյս տն հայրապետի մ̃րհեպն̃կպի. եւ ստացողի սորա Յհնէս կրօնաւորի. որո յիշատակ սոցա ա̃հուեթե̃ եղիցի։ Ո՛վ դասք լուսերամ-ից յորժամ հանդիպիք սբ աւետարանիս յիշեցէք ի սբ յաղօթս ձեր զվերոգրեալ անուանքս ի սմա. եւ ա̃ծ ողորմի ասացէք բոլորով սրտիւ եւ լի հաւատով. եւ ա̃ծ ձեզ ողորմեսցի ամէն. եւ որ ա̃ծ ողորմի ասէ. Ճ ապատի՛կ առցէ։ յա̃յ։ Ես յոհաննէս աբեղայս ստացո զսբ աւետարանս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց. եւ ետու ի դուռն սբ յարութե̃ն. ի գեաւղն ասփսթան կոչեցեալ մի ոք իշխեսցէ հեռացուցանել. եւ որ խնամ տարցէ ա̃հի յա̃յ ամէն։

## 6.

## ԱՒԵՏԱՐԱՆ

(1683էն առաջ)։

*ԹՈՒՂԹՔ 297։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25×19×7 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ մաքուր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 16,5×6 սմ.։ — ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ կապոյտ. տող՝ 21։ — ՆԻՒԹ՝ թուղթ ընտիր եւ ողորկ. բացի սկիզբի եւ վերջի երկ-երկու թերթերէն՝ որոնք մագաղաթէ են եւ դրուած իբր պահպանակ։ — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. առաջին կողին վրայ ագուցուած են երկու արծաթեայ խաչեր եւ երկու ոսկեայ փոքրիկ խաչելութիւններ. վերջին կողին վրայ դարձեալ արծաթեայ խաչ մը. երեք խաչերն ալ զարդարուած են կարմիր ու կապոյտ ակներով։ — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ են 1, 2, 296 եւ 297 թերթերը, բայց նոր ու առանց որեւէ գրութեան։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բոլորովին մաքուր ու անվնաս։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա–3ա, 4բ–5ա, 6բ–7ա, 8բ–9ա, 10բ–11ա, 12բ–13ա, 153ա, 240ա՛, 291բ–297բ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, խորաններ, փոքրադիր պատկերներ շատ կան, բոլորն ալ նուրբ եւ գեղեցիկ գծագրութեամբ, մանաւանդ շատ արուեստաւորներկուածով. Նուազ յաջող են աւետարանիչներու չորս մեծադիր պատկերները, որոնց գունաւորութիւնը շատ լաւ, բայց համաչափութիւնը քիչ մը պակասաւոր է. — ԳՐԻՉ եւն անծանօթ. թուական 1683էն առաջ։ — Սոյն գեղեցիկ ձեռագիրն իբր սրբութիւն կը պահուի աւանդատան մէջ եւ է ուխտական գիրք. բարեպաշտ մարդիկ ուխտի կու գան անոր՝ յատուկ ընծայաբերութեամբ. կը կոչուի "Ս. Սարգիս աւետարան„, յանուն եկեղեցւոյն։*

**Մատեանս է Աւետարան. կը պարունակէ Եւսեբիոս Կարպիանոս էջ 3բ—4ա, կանոնք՝ էջ 5բ—12ա, Մատթէոս էջ 14ա—95ա, Ցանկ Մարկոսի՝ էջ 95ա—96ա, Մարկոս՝ էջ 97ա—152ա, Ցանկ Ղուկասու՝ էջ 152ա—բ, Ղուկաս՝ էջ 154ա—239ա, Ցանկ Յովհաննու՝ էջ 239բ, Յովհաննէս էջ 241ա—291ա։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ (կազմի վրայ, առաջին արծաթեայ խաչին մէջ փորագրուած) յիշատա՛կ է սբ խաչս Թաթոսին Թաջումին Թվ. ռ ճծգ։

(կազմի վրայ, երկրորդ արծաթեայ խաչին մէջ փորագրուած) Յիշատակ ի տր Սբ Սարգիսի ուստայ վարդան եւ մարճան. Թվ. ռճլբ։

Էջ 239ա (բուն գրչէն). Զմեղօք ղառածեալ եւ զանպիտանս աղաչեմ յիշել ի տր. եւ՞ դուք յիշեալ լիջիք յիւրում գլս"։

Էջ 240ա կայ կնիք մը "Քի ծռ. Ասլան„ մակագրութեամբ։

## Ե.

## ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ՂԱԼԱՑԻ ԿԱՄ ԲԵՐԴԱԹԱՂԻ

---

### 1.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**ՁԿ = 1311։**

*ԹՈՒՂԹՔ 348։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 38×27×11 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 25–28×7,5 սմ.։ Միջին լուսանցք 2 սմ. ստորին լուսանցքները մինչեւ 7 սմ.։ – ԳԻՐ՝ շատ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատողերը, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 18–19։ – ՆԻՒԹ՝ հաստ եւ ընտիր թուղթ. – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. կաշիին վրայ ալ (նոր մնալու համար) անցուած է սեւ լաթէ շապիկ. առաջին երեսը ամբողջ ծածկուած է արծաթեայ տախտակով, որուն վրայ ծաղիկներու եւ այլ զարդերու մէջ նկարուած են խաչելութիւն եւ ուրիշ ինը սուրբ նկարներ. տախտակին շրջապատը փորագրուած է հետեւեալ յիշատակութիւնը. "ՍԲ ԱԾԱԾՆԱ ԵԿԵՂԵՑՈՒՆ ԹԱՐՎԷՋՈՒ ԹՈՒԻՆ ՌՄԽ ՁԵՌԱՄԲ ՏՐ ՄՈՎՍԷՍԻ Ի ՅԻՇԱՏԿԻ ՍԲ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ ԱՐԾԱԹՆ ԹԱՐՎԷՋՑԻ ՍԱՐԳՍԻ ՈՐԴԻ ԹԱԴՈՍԻՆ ԵՒ ԹԱԴԷՈՍԻ ՈՐԴԻ ԵՂԻԱԶԱՐԻՆ ՈՐ ԵՏՈՒՆ ԻՒՐԱՆՑ ԾՆՈՂ„ (մնացեալը, որ 11 սմ. տեղ կը բռնէ, կտրուած ինկած է)։ Տախտակին վերի կողմը ագուցուած է օղակ մը, ուրմէ բարակ շղթաներով կախուած են 10 արծաթեայ խաչեր եւ մէկ մատանի, որոնք ուխտի եկող բարեպաշտ մարդոց նուէրներն են։ – ՄԱԳԱՂԱԹԵԱՑ ՊԱՀՊԱՆԱԿ՝ չկայ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–4բ, 11ա–բ, 21ա–բ, 269ա. միւս պարապ էջերը լցուած են բազմաթիւ յիշատակութիւններով։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ բաւական արուեստաւոր. աւետարանչաց առաջին երեսներու խորանները շատ նուրբ եւ արուեստաւոր. այսպէս են նաեւ նոյն երեսներու զարդագրերը. էջ 5բ–10ա դրուած կամարները եւ էջ 12ա–20բ դրուած 18 մեծադիր տնօրինական պատկերները եւ էջ 22բ, 114բ, 174բ, 269բ դրուած չորս աւետարանչաց պատկերները նուազ յաջող են։ – ԳՐԻՉ՝ Ծեր քահանայ. նկարող Թորոս սարկաւագ, որ իր անունը յաճախ պատկերներու տակ եւ մէկ-երկու տեղ մանրանկարներուն մէջ հիւսելով կը յիշէ. տէր՝ գրիչը Ծեր. տեղ՝ անծանօթ. թուական ՁԿ = 1311։*

**Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ Ամոնի աղեկսանդրացու՝ էջ 5բ—6ա. կանոնք էջ 6բ—10ա. պատկերներ՝ էջ 12ա—20բ. Մատթէոս՝ էջ 23ա—114ա. Մարկոս՝ էջ 115ա—173բ. Ղուկաս՝ էջ 175ա—268բ. Յովհաննէս՝ էջ 270ա—338բ. յիշատակարանք՝ էջ 339ա—348բ. ցանկ եւ նախագրութիւններ չկան։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 5ա. **Ջաւաջին եւ յետին կազմողս նր աւետարանիս սուտանուն յանփի աբեղուիս. կազմեցի նր աւետարանս ի վայելումն խոճա միրաքին իւր հաւրն եւ եղբաւրն եւ իւր կողակցին եւ զաւակացն։ Եւ տր յոհանէսին եւ իւր հոգոյն. Եւ յամ ժողովրդեանս քաղաքիս, խոճենացն եւ խաթունացն, եւ տղոցն մեծի եւ փոքու առ հասարակ ամէն։ Ով դաս քահանայից որք հանդիպիք ի սմա կարդալով կամ աւետակելով յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զժողովուրդն զերեցն զմեղապարտ կազմողս։ Եւ միով բերանով ած ողորմի ասացէք, եւ մեր յիշեցելոցս, եւ ձեր յիշողացդ առհասարակ ողորմեսցի ամէն։ ի թվ. հայոց. ՊՂԷ (= 1448) կազմեցո։**

Էջ 6ա. **Տր յն ողորմեա պարոն գըչի թորոսի ամէն եւ յիշողացդ ամէն։**

Էջ 10ա. **յիշատ. գրեցաւ է ի նր աւետարանս անուն տարաժամ խասակաւ աւուրց շնոխոր ի քն փոխեալ։**

Էջ 10բ. **Ով դաք լուսերամից եւ դասք քահանայից. յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր. եւ հաւատարիմ ժողովուրդք. որ կայք առաջի նր սեղանոյս եւ աւետարանիս. հայցեցէք ի քնէ առողջութիւն եւ մեղաց թողութիւն յիշեցէք զպր զաղբուղէն. եւ զծնաւղս իւր զաքարէն. եւ զմայրն իւր զսորղան վահրամն եւ զանդրանիկ զորդին իւր զմեւղուլթայն յիշողքդ ա̃հնեալ լիջիք ի քնէ, եւ յամէն տաւնի. ա̃. ժամ առնեն պր աղբուղին եւ ինքն քն զձեզ յիշէ յիւր յարքայութիւնն ամէն տր ա̃ծ։**

Էջ 15բ. **Տր յն գթեա ի յիս սրբեա ըզմիտս եւ զ-գայարանս. ես թորոս ծառայ քո եմ տրուպ անպիտանս. Տաճարացս երրորդութեանդ զիս աւթեվանս. երգել զփառս ընդ վերին զաւրս միշտ յաւիտեանս։**

Էջ 22ա. Ով դաք… (թառացի նոյն ընդ էջ 10բ) յիշեցէք զպն փախրայդին եւ զծնողսն իւր եւսաննայ եւ զմարապետ եւ զպարոն խպըրշայն եւ զսաֆարշայն եւ զծնողսն իւր զքահանայն տն մկըրտիչ եւ զմայրն իւր եւ զեղբարքն իւր եւ զիզայդինն. եւ նասրայդին յիշողքդ ահնեալ լիջիք ի քնէ եւ յամէն տարի երեք պատարագ մատուցաննեն եւ ինքն ,ն զձեզ յիշէ յիւր յարքայութին ամէն տն ած։

Անդ. Զթումա եպիսկոպոս վարագեցի յիշեցէք ի քն. եւ ած զձեզ յիշէ։

Էջ 22բ. Զանպիտան թորոս սարկաւագ զնկարող նր պատկերացս աղաչեմ յիշեա ի տր յն քն։

Էջ 114ա. Ցիշեցէք զմամախ(ա)թուն յաղաւթս ձեր։

Էջ 114բ. Զանարժան թորոս արժանացոյ եւ յիշեա ի տր յն եւ թողութիւն յանցանաց հայցեցէք։

Անդ (այլ). տարայժամ վազճանեալ շնոխոր ի քն տարին ժամի (= ժամ մի) մատուցաննեն։

Էջ 173բ (այլ գրիչներէ). 1. Տէր յն ողորմեա մեղապարտ գրչի թորո նրկ. ամէն։ — 2. քն ած յն քո նր աւետարանչացն բարեխաւսութեամբ պահեայ զովանէս նաւքարէ պարոն ուսուֆին, որ խոստացել է տարին մին մամ յուր որ գնայ քի աղաւթքնն հետի լինի յիւր մեղաց թողութիւն առնէ։ — 3. քն ած քոց սրբոց աւետարանչաց բարեխաւսութեամբ ողորմեայ ազատշահին եւ կենակցին իւրոյ գաւհար տիկնայ. եւ եղբաւր նորին սիր ստեփ֊յ. եւ առաքելին. վասն զի բազում խնամք կրեցին ի վերա մեր. խնամակալն ած ազատեսցէ զհոգի սոցա. յամ մեղաց եւ դասեսցէ ընդ հրեշտակս. Ազատողին մերոյ քի ած վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ յաւիտ։

Էջ 174ա (այլ գրիչներէ). 1. քն ած քո նր աւետարանչացն բարեխաւսութեամբ. ողորմեայ հոգեւոր մորս մեր դոլլաթին որ է մարիամ. եւ իւր զաւակին յիւատշին. վասն զի բազում խնամք կրեաց ի վերայ մեր. խնամակալն ած ազատեսցէ զհոգի սոցայ. յամ մեղաց եւ դասեսցէ ընդ հրեշտակս արքայութեան երկնից ամեն։ — 2. Ով մանկունք սիոնի յիշեցէք ի նր յաղաւթս ձեր զմամայ խաթունն եւ զխաչատուրն եւ զթանգտիկինն։ — 3. քն ած քոց սրբոց աւետարանչացն. մաթէոսի. մարկոսի. ղուկասու. յովհաննու. բարեխօսութեամբ ողորմեայ. ստեփաննոս լալուկ վարդապետի ծնողացն հօրն պէհնամշահին. եւ մաւրն յաղիզմէլիքին. եւ եղբ։ — 4. Այս է արձան փրկչին ներկեալ արեամբ կենարա(ր)ին հան(գ)չի հոգին զարիւմէլէքին որ շատ բազում աշխատեցաւ այս նր աւետարանիս ու շատ չարչարանք է կրել։ ած իւր մեղացն թողութիւն առնէ. Իւ ինքն ինքն (երկիցս) քն ած որ փրկիչն է ամենեցուն փրկէ զէրանշէն զիւր կողայկիցն զխոնթ խաթուն. որ շատ ի մատնընչէ չարչարանք են կրել. մաւտ բ:ռ:դկ դիւանի տվել են նր աւետարանս ի գերութենէ են ազատել ած զիւրեան հոգին ի դժոխոցն ազատէ իւր մեղացն թողութիւն առնէ ամէն եւ ած յիշողացդ մեղաց թողութիւն առնէ. էրանշի մաւր անուն արունմէլիք փեսին անուն թագւորշախ դստեր անուն ալլանմէլիք մէկի մամայխաթուն. մէկի ղադ ամշայ որդոյ֊ն անուն մուր(ատ)։ փոքր դստեր անուն շահիդմէլիք։ ած զիւրեանց մեղքն թողու որ շատ լաւս են վառել եւ շատ սպասաւորել եւ ած յիշողացդ ողորմի։

Էջ 174բ. Զտրուպ գրիչ թորոս սարկ. նկարող ծաղկիս աղաչեմ յիշել ի տր յն քն։

Անդ (այլ). շնոխորին յիշատակ ի տարին ժամ մի աւագերէցարաթին։

Էջ 268բ. Տր յն ողորմ֊ մեղապարտ աշխատողի թորոս սարկաւագի ամէն։

Էջ 268բ (բուն գրչէն). Սրբոց աւետարանչացն բարեխաւսութեամբ քն ած ողորմեա ինձ մեղապարտ գծողիս. ծեր քահանայի եւ ծնողաց իմոց եւ ազգականաց. յիշեսջիք զաւակն իմ զմարգարէ եւ զեղբաւր որդին զյակոբ. եւս առաւել զշնոհվոր որ բազում աշխատանք կրեաց ի վերա մեր. ազատեսցէ ի մեղաց եւ ծնողաց եւ ազգականաց թողութիւն շնորհեսց(է) քն ած ամէն։

Էջ 269ա. Տր ած ողորմի մամայխաթունին։

Էջ 269բ. Զանպիտան թորոս նկարող նր պատկերացս յիշեսջիք ի տր յն։

Անդ (այլ). Ով դաք լուսեղէնք յորժամ ընթեռնուք յիշեցէք յաղօթս ձեր զէվանէսն եւ զծնողսն իւր յամենայն ժամ։

Էջ 270ա. բարե։ խաւսութեամբ. նր։ աւետարանչացն։ քն ած ողորմի։ յակոբ։ վդ։ին ամէն։ եւ մերշային ամէն եղիցի եղիցի։

Էջ 339ա—342ա (Գլխաւոր յիշատակարան). Սորին բարեխաւսութեամբ տր յն ողորմեսցի գրողի սորա ծերի քահանո֊ի, եւ ծնողաց իմոց եւ զաւակաց եւ ազգականաց իմոց եւ ուստրաց առհասարակ ամենայն հաւատացելոց ամէն։ Եւս առաւել ողորմեսցի եւ ընդ երկայն աւուրս արասցէ զստեփաննոս եւ զծնողս սորա արքութեանն արժանի արասցէ։ Աստանաւր իրաւ(ա)պէս հատուսցուք փառս ի սկզբան. եւ որ ընդ անըսկզբան. եռակի. եւ եզական եւ եռափափագ փառաւորեալ սրբոյ անզուգական երրորդութեանն. նմա փառք յաւիտեանս ամէն։ այսմ անծայրածաւալ ծովէս բարժանեալ. վըտակք ածո֊ին գետոցն. առ ի յարբուցումն գեղեցկաշէն բուրաստանին։ ոռոգելով զտեղնեալսն փթթինազարդ ծաղկանց։ կենսացուցանել զբերասիրաց անձինս։ Ո՛վ նորագոյն հրաշիցս եւ յաւետաբաղ ձայն֊ցս, քառահոլով ընթերակայքն, բողբոջք արփիազարդ դրախտին. հեմս առեալ կարմրերփեան եւ լուսատեսիլ մարգրտափայլ բեղնաւորեալ ծիրանակիր թագաւորականաւ։ զհոլանս երկնի եւ ծովու բերելով զտիպ. ըստ գարնան֊ին ծաղկաթագ գունատեսիլ. երփն երփն բերելով զհոտ անուշութեան. որպէս վարդն յաւրինակ արեամբ նահատակելոցն. եւ համասպրամն սպիտակազգեստ. զմարգարտի առեալ զնմանութիւն. ի զարդ պայծառութեան կուսանացն։ Զնոյն եւ երկնագունակ ծովանմանն. նարդոս. զազգի ազգի հանդէս նահատակութեան. զառաքինեացն բերելով զկերպ։ յորս ընդ ոլորտս տիեզերաց ցնդեալ զհոտ անուշահոտ յոգիս մտելոցն 'ի հարսանիս երկնաւոր փեսո֊ին։ Այպա եւ զինչ ծիրանակիրն մանուշակ զթագաւորականն զգեցեալ ըզգոյն։ բերեալ զաւրինակ երկնաւորին. մինն

միայն ընտրեալ եւ զատեալ բոլորասեռն բաղձանաւք. ոչ ոք նման նմա: 'ի խաչին կամաւ մատուցեալ զանձն պատարագ կենդանոյն հաւր: եւ գիրկս արկեալ համագումար երկոտասանն առաքելականն գնդի. ընդ չորս բարժանեալ յաղախս քարոզութեան չորս անկիւն աշխարհիս. երիս, երիս քառանկիւնակ զերրորդութիւնն եդեալ պահապան. առաքելովք զնոսա երկուս երկուս. վեցեակ թուով. ընդ վեց դարու կենցաղոյս. առ ի մերժել զորոմն ապականադիր բանսարկուին: Ապա եդեալ դրուակ եւ մատանի. ի վերայ այլոց եւս ութեակ թուոցն. զմաթթէոս, մարկոս. ղուկաս. յովհաննէս. որք քառիւք վտակաւք. աւժընդակեալ հոգւոյն ազդմամբ. հնչեցուցանեն զփողս. ի լսելիս ընթանուր բնաւիս. առաքելական բայիւք: Մատթէոս զմարդեղութեանն ցուցանելով զկերպ: Որպէս վարդն բազմաթերթ. կարմրագունակ անուշահոտ. զմարդկան դժանութիւնս հոլովէ. բերելով 'ի քիմս անուշահոտ. զքծ-ին տընաւրէնութեանն զգիտութիւն: Ապա եւ համապրամն. Մարկոս, թողեալ զներկ-իցս բազմասեռնութիւն առիւծաբար յարձակեալ 'ի վերայ դժրոզին. կորզեալ եհան զմեզ ի մեղսաթաւալ. որջացեալ մեքենայից նորայ. լուսերանգ մարգրտափայլ սպիտակագգեստ աւազանին շնորհաւք. զարդարեալ խառնեաց զմեզ ի յերամս ածազգեստ լուսեղէն հրակերպիցն: Զի՞նչ եւ երկնագունակ ծովանմանն նարդոս. զղուկասու առեալ զկերպ. յաղախս հոտոյն անբաւութեան. որ զնաւորդսն հանդերձ ծով-ին կենդանեաւք առհասարակ միահաղոյն զհոտ իւր ցնդեալ թմբրեցուցանէ զբնաւս առ 'ի լուսաւորել զբոլորս իւր առակախաւս ածո-ին վշտակքն որպէս եզն ամոլաց տռահելով արաւրաւ աւետարանին առ ի խլել զփուշ մեղացն. եւ կակղացուցանել բանիւքն կենաց. առ ի յընդունել զլուծ ապաշխարութեան: Ո՛վ պատուական անուշահոտ փունջ մանուշակի. ծիրանակիր թագաւորութեանդ յովհաննէս. որ զատեալ բարժանեցար 'ի յոքունց ընկերացդ. կրելով 'ի քեզ վթագաւորն երկնաւոր. եւ որպէս արծիւ ոլաթեւ բարձրացեալ ի վերոյ քան զերկինս զծնունդ հայրական առանձնակի ընթադրեալ. հնչեցուցեր 'ի լսելիս համասեռիցս ծա-կելով զվրիպողին դաւանութիւն. յորս եւ դու ճողոպրեցար 'ի սայթաքմանէ գնացից նորա. անաղտ պահելով զկուսութեան առագաստն. հրաւիրեցեր զմեզ լինել քեզ ուղղ-կից. արտ-սեակդ հասանելով լուսաւոր ճանապարհաւ. առաւաւտել քեզ մեաւք հանդերձ առ արեգակն արդարութեան. միածին որդին այ. առ որ անձկացեալ եմք ունելով զքեզ բարեխաւս ծերի գծողի սորա եւ ծնողաց իմոց ամէն: Շնորհիւ այն սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի. գեղեցիկ ածո-ին բուրաստանս. յորում ծառատունկք քառադէմք. բողբոջք սաղարթառեալ ըստ գարնան-ին եղանակացն շարադրութեան. բերելով յինքեանս. զոստն ուղէշարձակ. զտերեւն բոցափայլ. զծաղիկն բիւրազան. զպտուղն քաղցրահամ եւ անուշահոտ. տալով որդւոց մարդկան. 'ի վ-ելումն կենցաղավարութեանս: Յամի, հարիւրից եւթնանց. եւ տասանց վեցից. (տակն ալ գրած “թվ: չկ:„) տարրեբութեանն հայոց տումարիս. ես յոգնամեղ եւ տառապեալ գրիչս ծեր քահան-. յանկ հանեալ աւարտեցի զսա բազում ջանիւ. եւ մեծաւ աշխ-տութեամբ. յամենալաւ եւ ի սաոյգ աւրինակէ. զոր 'ի բազմաց վկ-եալ ստացա զսա գանձ անապական յերկինս. ուր ոչ գող մերձենա. եւ ոչ ցեց ապականէ: Ի վ-ելումն մանկանց եկեղեցոյ նոր սիւնի: Յամս ածպատիւ տն կոստընդի հայոց կաթողիկոսի:

Էջ 342բ (այլ գրիչներէ). 1. Ով դասք քահանայից յորժամ ընթեռնուք զսբ աւետ(ար)անս յիշեցէք ի սբ աղաւթս ձեր զանարժան զսուտանուն եպ ե՜մա զոր աբրահամ մորցին որ հանդիպեցայ ի գավրէդ. ի թուին. հայոց մեծաց Պղգ (= 1444) յաւգոստոս. է գյիշողքս քս յիշէ: — 2. Ով դասք քահանայից յորժամ ընթեռնուք զսբ աւետարանս յիշեցէք. ի սբ աղաւթս ձեր զանարժան. զսուտանուն կպոն, ալընջեցի. զոր ուղ-ղ ապրանկուեցի. որ հանդիպեցայ ի թաւէզ. ի թվ ջծե. ով կարդայ ած ողորմի ասէ մեղի եւ նորա: — 3. Կարողութեամբն ամենակալին այ հաւր անմահի. որդոյ միածնի եւ ազատիչ սբ հոգոյն. եղեւ հրաման յարարչէն ամէնեցուն որ ետ շնորհ դարձման ի յանցաւոր աշխ(արհ)էս. եւ ի մեղաց դարձումն, եւ ճանաչել զճանապարհս արդարութեան խորոմայ որ կոչեցեալն է մամայխաթուն, եւ ի հալալ արդեանց իւրոց. ճ: դկ: ի նուէր սբ կենսաբեր աքանչել(ագ)ործ սբ աւետարանիս որ է սայ բժիշկ հոգոյ եւ քաւիչ մեղուցելոց: Բարեխաւսութեամբ սբ աւետարանիս եւ որբ-հոյ ածածնին թողցէ քս զյանցանս մամայխաթունին ամէն: Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ եւ մեղսաչքաւիչ յաղաւթս ձեր զմամայխաթուն. եւ զծնաւղսն իւր զխաչիկ եւ զթանգտիկինն. զսարգիս: աղբրաց: գրիգորիկն: զյովանէսն. զթորոսն: զմկրտիչն. զհոռոմտիկինն: զավա+ն, զգորգն, զշրուանն: (շարունակութիւնը էջ 343ա) եւ զաւագտիկինն: զշրվանն: եւ զաւագի մայրն. յիշեսջիք ի սբ յաղաւթս (ձ)եր եւ քս զձեզ յիշէ ամէն: Ով մանկունք նոր սիոնի յիշեցէք ի սբ պատարագս ձեր զմամայխաթունն. հաստատ մատուցէք յայտնութեան ճրագալուցին: զհամբարձմանն: եւ զածածնի պատարագն անթերի. եւ այս սբ աւետարանիս ոչ գին եւ ծախ եւ գրա-կան. անպատճառ լինի եւ ով ոք յանդգնի կամ ծախէ. կամ գրաւկանէ կամ բաշխէ, ընդ աւրինաւք դատի ամէն: Եւ յայամ ժամու կարգեաց մամայխաթունն զկոտանդ քահանայ իւրն հոգեւոր պաւակ եւ ետ մամայխաթունն զսբ աւետարանս ի ձեռն կոս(տ)անդ քահանայի. եւ այլ ոչ ում խաւսք եւ դաւէ հետ այս աւետարանիս չկայ ոչ որդոյ եւ ոչ դատեր. բայց կոստանդ քահանայն գիտէ. եւ քի փառք ամէն: — 4. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրայփայլ եւ ի մեղ-քաւիչ յաղաւթս ձեր զլուսեղէնն եւ զկենակիցն իւր զթանգխաթունն. եւ զեւրենց զաւակն զջիհանմէլիքն եւ զգուլըստանն. եւ խնդրեցէք սոցայ մեղացս թողութիւն եւ քս զձեզ յիշէ յիւր -ղութիւնն եւ ձեզ փոխարէն տացէ յիւր յարքայութենէն ամէն քն ած:

Էջ 343ա (այլ գրիչներէ). 1. յիշեցէք զեղխաթուն եւ զգերգի եւ զլուլուն. յիշեցէք զգալին եւ զգրիգորն եւ զմայրն իմ եւ զողլուն ի քս ած ողորմի

ով զուղլուն յիշէ. յիշեցէք ի քս զգուրգանն, եւ տղայ հաստակաւ որ փոխեցաւ ի կս զգուբաթշահն յիշեցէք եւ ած ողորմի ասացէք. ամէն տարի ծ դկ խոստացաւ: — 2. յիշեցէք զկոստանդն զի աւետարանս նմայ է հաստատ: — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաքաւիչ յաղօթս ձեր զպն դօվլաշան եւ զամուսին իւր զիզաթմելիք եւ զածատուր զաւակն իւր ուստւֆշան եւ զհանգուցեալ ծնողս իւր զխօշնամ եւ զգիլշատ խաթ(ուն) եւ իզաթմելիքի ծնողացն մնա՛եցն եւ միրաթ խաթուն ով հաւատացեալ ժողովուրդ ով հանդիպիք իւրենց մեղացն թողութիւն խնդրէք եւ ած զձերն ոչ յիշէ:

Էջ 343բ. 1. Ով դասք լուսերաշից յիշեսջ՛ք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զմանախաթուն եւ զծնաւղսն իւր զվարդ եւ զկանանցու՛կինն զչաւպանն եւ զծնաւղսն իւր եւ դուք յիշեալ լիջ(իք) ի քս, ամէն եւ յիշեսջիք զսիր ստէֆն յաւղաւթս ձեր, եւ զջաւհարտիկինն, եւ զսիրայխաթունն եւ զծնաւղսն իւր ամէն: — 2. Ով դասք լուսերամից յիշեսջիք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զաւատն. եւ զծնաւղսն իւր զխաչիկ քահան եւ զէլէնտիկինն եւ եկն պարոն աւաքն իւր կամաւն եւ եմուտ միաբան նր աւետարանիս եւ ի հալալ արդեանց խոստացաւ ի յամէն տարի: բ: դկ: ձիթագին հասցնեմ կարողութեամբն այ, յիշեսջիք եւ զհօփսիմեայ եւ զծնաւղսն իւր եւ զծաղկազարդ զզաւակն իւր զյովաննէս, բազմեայժամանակեայ: — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրայփայլ աղ. ձեր զայմելիքն եւ զխանմելիքն որ միայբան կոչեցաւ միայբան նր աւետարանիս:

Էջ 344ա. 1. Ես խոճայ շահնազար. հմտեցի. տվի. նր. խաչիկ յաւետա՟րին մէկ տքան. վախմ. ած. իմ. մրատըս տայ: — 2. Ով դասք լուսեղէք երամիցք յիշեցէք փաքափայլ եւ մեղսաքաւիչս յաղաւթս ներ բախադուլս եւ զծնաւղս իւր: եւ յովաննէս եւ միահաթունս. եւ զեղբարն իւր զնաշադինս. եւ զիւր զաւակս շադիլայն. եւ զմուբարաքշախս ծառայս աւետարանին. այ ծառայ սիրած աւետարանիս եւ զմկրտիչս յիշեցէք ի քս: բախադուլս. ամէն տարի: ժ: դկ. տամ: շամշատինս: ծ: դկ ողֆտայ ի նր աւետարան: — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք զյոհաննէսս եւ զկենակցին իւր սուրաթխաթունն եւ զաւակսն իւր զսանվէլն եւ զմանվէլն. եւ զիւր կենակիցն զխերխաթունն. յիշեցէք ի նր աղաւթս ձեր. եւ զշնոֆոր տիկինն այլ յիշեց՛ք: — 4. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաքաւիչ յաղօթս ձեր ստեփան եւ զկենակիցն իւր զղարիպխաթունն եւ զծնողս իւր զխաչիկն եւ զնազմէլիքն: զդանէլն եւ գօհարն. եւ զհարազատ որդիքն իւր: եւ զամիրլուսն. եւ զմէլիքայն եւ քս զձեզ յիշէ: — 5. Ով դասք լուսերամից որ կաք առ ի նր սեղանոյս եւ սո֊բ աւետարանիս յիշեցէք ի մաքրայփայլ աղաւթս ձեր նուրատին եւ զծնողս իւր պարոն թուշերն մամայտիկին, եւ պարոն ածայտուրն եւ աւետվորն ի աղաւթս ձեր յիշողն ո֊հէ զձեզ:

Էջ 344բ. 1. Ով դաս լուսերամից յիշեցէք ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր եւ ի մաքրա.փայլ զիս զանարժան ծառայս այ զխութլուն ու զիւր դեռայբուս նորածին տղայն զամիր սարգիսն եւ զիւր հայրն եւ զմայրն եւ միաբանեցայ նր աւետարանիս որ յամէն տարի անխափան տամ: Ա: լ՟տ: (թուի լիտր) ձէթ յեկեղեցին. ով որ զայս գիրս ջնջէ ինքն ջնջի ի դպրութենէ կենացն: Ես զիս զանպիտան եւ զանարժան ծառայս այ գ՟ր զաքարիէս եւ ած յիշողացդ ողորմեսցի ամէն ամէն: ի թվ. հայոց. չհգ (= 1324): ի համբարձման տաւնիս: — 2. Ով դասք լուսերամից յիշեսջիք ի մաքրափայլ եւ ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զպարոն յակոբն եւ զծնաւղսն իւր զսարգիսն եւ զմամեն, եւ զկենակիցն իւր զմէլիք եւ զծնաւղսն իւր զդաւիթն եւ զկիրախաթունն եւ զծնաւղսն իւր, եւ յամենայն տարի: բ. պատարագ տան մեծ տաւներոյն: ա: յակոբայ եւ: ա: պատարագ մէլէքին եւ քս զձեզ յիշէ: — 3. յակոբն եւ մէլիքխաթուն: բճ. դկ յիշատակ տվին ի յաւետարանս եւ յեկեղեցին որ է ածածին վն նմայ ճանապարհին որ հասաւ ի քս տրն մեր:

Էջ 345ա. Ով դասք քահանայից եւ հաւատարիմ ժողովուրդք որ կացեալ կայք առաջի նր սեղանոյն եւ առաջի նր աւետարանիս աս(ա)ցէք ած ողորմի եւ յիշեցէք յաղաւթս ձեր զհոռոմշահն եւ զկենակիցն իւր զմամայխաթունն. եւ զիւրենց զաւակն զամիրշահն: եւ զմամախաթն մայրն զնազխաթունն որ է գրիգորին եւ գօհարնազին դուստրն եւ քս զձեզ յիշէ յիւր յարքայութն եւ առնէն սոցայ յամէն տարի: դ: ժամ: բ: աւագ: ե՟շ: մամայխաթին եւ ամիրշին: եւ ա: քի յարութեանն: ա: հոռոմշին եւ: ա: նազխաթունին: եւ յուր որ այս աւետարանս լինի անպատճառ յիշէն եւ զ: դ: ժամն առնեն: — 2. Ով դասք քահանայից եւ հաւատարիմ ժողովուրդք որ կացել կայք առաջի նր սեղանուն եւ նր աւետարանիս եւ յիշեցէք զպարոն խարկրծեղն եւ զծնողս իւր զաքարիէն եւ խոբիշէն եւ սարղաթմիշն ի աղաւթս ձեր եւ ած զձեզ յիշէ եւ շամշայխաթուն յիշեցէք աղաւթս ձեր: զշախերն եւ կենայկիցն աղիզն եւ զաւակն իւր զմամայտիկէ եւ զշախն եւ փայխաթունն եւ ած զձեզ յիշէ: — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրայփայլ եւ ի մեղայքաւիչ յաղաւթս ձեր զդամուրն եւ զծնաւղսն իւր զածատուրն եւ զմայրն իւր էմնայխաթուն եւ զեղբայրն իւր թուխթամուրն եւ զվաղճանեալ կողակիցն իւր զթավրէժմէլիքն յիշէլոցդ եւ յիշողացդ ողորմեսցի քս եւ շնորհեսցէ ձեզ ի յիւր յողորմութենէն ամէն:

Էջ 345բ. 1. Ով դասք լուսերանից յիշեցէք ի մաքրայփայ եւ ի մեղսայքաւիչ աղաւթս ձեր զմինոն եւ զիւ(ր) կենայկինցն զմինայն եւ յիշողն աւրհնի այ եւ ի տարին: ա: լիտր ձէթ յիշատակ: — 2. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրայփայլ եւ ի մեղսայքաւիչ աղաւթս ձեր զխանգուցեալ ի քս զշնոխոյն զիմաթն եւ զծնողն իւր զխոռոմշայն եւ զկենակիցն իւր զդօվաթն եւ զեղբարն իւր զտր տրն յիշեցէք ի քս եւ ի տարին աւր մի զաւագ խիչշաբաթին պատարագն մատուցանեն եւ որ քաւանայ (= քահանայ) որ աւետարանիս տէր լինի եւ թախսիր առնէ ի մատուցանելն դատած եւ կապած լինի ի քնէ: — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրայփայլ եւ ի մեղսայքաւիչ յաղաւթս ձեր զըբատամն սառաճն ու զիւր զկենայկիցն զիկտիշ եւ

զլուրեց զծնաւղսն. յամէն տարի։ Ճ։. պատարագ է։. տաւնին ու զատկին. ա. յաւրստամին. ա. ի կտրիչին ած յիշէ զնոցուն։ — 4. յիշեցէք ի քն զմատնւաքն եւ զծնողն իւր զաղխզտիկին ի քն եւ զեղիշուկն եւ զծնողսն իւր զղանել եւ զաղբրացն ի քն եւ յիշողն աւրհնեալ այ։ եւ զազմուրն եւ զծնողսն իւր։ — 5. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զշնորհաւոր տիկինն եւ զծնաւղս իւր ստեփանոսն եւ զմայրն իւր մամայխաթունն ի աղաւթս ձեր։ — 6. Ով դասք լուսերամից յիշէք յաղաւթս ձեր զսիրունն եւ զկողակիցն իւր զհայոցն եւ զաւակն իւր զշնոֆոր տիկինն եւ զգրոցն եւ զգրիգորն եւ ած զձեզ յիշէ։

Էջ 346ա. 1. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զպարոն ըաւնոսն եւ կենակիցն իւր զփոքտիկին եւ զաւակն իւր շնոխֆտիկինն եւ շամխաթունն եւ զպատրն եւ շամշատին եւ պարոն շամխինշեն եւ զիւր կենակիցն աւագխաթունն եւ մուրատշայն եւ խութլու մելքն եւ զծնողսն աւագխաթունին պարոն լուսերն կենակիցն իւր թամթայխաթունն եւս Արայմելիքն եւ արասմելիքն որ կոչեցան միայբան նը աւետարանիս եւ ծերունն եւ սսեյն յիշողն աւրհնի ի նը աւետարանէս։ սիրայխաթունն եւ ֆախրատինն մամայխաթունն։ — 2. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զփահլաւան էվատշայն եւ զծնօղսն իւր զհունարն եւ զաւա։տիկինն եւ զկենակիցն իւր զմարթայխաթունն. եւ զծնօղսն իւր որ միաբանեցան աւետարանիս եւ քս զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, յիշեցէք եւ զմխիթար եւ զծնօղսն իւր ռ դեղն եւ քն զձեզ յիշէ։ — 3. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զպարոն արվանոսն եւ զաւտարտիկինն եւ պարոն սարգիսն որ կոչի ասլան եւ ալի թուրքմանն որ աւետարանիս միայբան մոան ով որ զաւետարանս կարդայ յիշէ ի քն եւ յիշողն աւրհնի այ։ — 4. Ով դասք լուսերամից յիշեցէք ի աղաւթս ձեր արջուկն եւ կենայկիցն իւր փոքրտիկինն եւ զաւակն իւր զխետենն եւ կիրակոսն լուսերն եւ աւտրշայն եւ Նորտիկինն խաչտուրն։ շամշխաթունն եւ շամղայն։ եւ աղբրացն եւ խեքմանն եւ տայուս խաթուն յիշեցէք ի քն։

Էջ 346բ. 1. Ով դասք եւ լուսերամից ի մաքրափայլ յաղաւթս ձեր. եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր։ զտիրայմէրս շնոք եւ զխոյանդս եւ զխոջայ փիր հուսէնն։ քանի որ կենդանի լինիմք աւետարանիս ծառայ լինիմք. Ճ. դկ. դամք լոս եւ ձէթ այգին։ — 2. Խոնարհեցոյ տր զունկն քո հոգիս մեռեալ է տր կեցոյ ի տանճանացն զիս զերծոյ, արքայութեանդ արժանացոյ, զի ես փափաքեմ ձայնի քո թէ եկ որդի ի փառս քո։ տր յս քն քո ոք գալըստեանն բարեխաւսութեամբ ի փոխումն մաւր քո եւ կուսի քաղցրութեամբ հայեաց ի ծառայս քո որ եմ փափաք ածեան ձայնի քո թէ թողեալ լիցին քեզ մեղք քո, որպէս քանանացւոյն, եւ մաքսաւորին, նոյնպէս թողցին յանցանք զարիֆմելիքին, էլխաթին, եւ որդուշային, աղաչանաւքս եւ բարեխաւսութեամբ նը ածածնին։ — 3. Ցիշեա զարարիչն յած տուր հոգոյդ առնել պատարագ, ընդ մութն էր խաբիս զնաս. երբ զհոգիդ ունիս քեզ ճրագ. զմարմինդ քանի սիրես. ու իւրն առնուս դու փափաք զմեղաց աղտն ի բաց ջնջեաս որ կապի պսակ քեզ ու թագ։ Ով պատուելի դասք լուսերամից. յորժամ ընթեռնոյք զնը ածաշունչ աւետարանս. զստեփանոս բանասէրս յաղաւթս յիշեցէք սրտի մտօք. քն զձեզ յիշէ իւր բարին։ — 4. Պխ (= 1391) երկորդին. եկն հարուածք յայժ ահագին։ Որպէս եղեալն երկրորդ դարին. եւ լինելոց յամէս վերջին։ Եհաս հրաման ածային. զոր տրն գրեաց ի նը տաւրն։ վասն աւուրն կատարածին. որ կատարի ուրբաթ աւրին։ Զոր անդ մարդկան գործքըն սպառին. յահեղ ձայնէն թագաւորին։ —

Էջ 347ա. (մեծ մասը քերուած եւ յետոյ) ես խաւճայպակն ազատեցի զփոլադն ի նը խաչիկ աւետարանին վկայութիւմ։

Էջ 347բ. 1. Ով դասք լուսերամից յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զպարոն մկրտիչ եւ զծնողսն իւր զգրիգոր եւ զդալալն եւ զխոսրովն եւ զգաւրգին զտարաժամ տղայ մեռեալսն ի քն եւ յիշողքդ յիշեալ լիջիք ի տր. եւ ով ոք տիրեսցէ նը աւետարանիս այսմիկ հանապազ զհամբարձման զնը պատա(րա)գն մկրտչին տայ անըլըտ եւ անձանձիր, եւ հանապազ յիշեսջիք ի նը յաղաւթս ձեր եւ քն զձեզ յիշէ ի միւսանգամ գալստեանն իւրում ամէն. եւս առաւել յիշեսջիք զախագն եւ զծնողսն իւր ամէն։ — 2. յիշեսջի յաղաւթս ձեր զխութլուբէկն եւ զծնողսն իւր զշնոխվոր. եւ զմինէրն զմարեմ կենակիցն իւր եւ զհայրն իւր զկեր մխայլ եւ զմայրն իւր զկերայն զի ողորմեսցի նոցայ քն. եւ յիշողքդ յիշեալ լիջիք ի տր ամէն։

Էջ 348ա. Ես վանեցի տր ըստեփանոս ժ. ռ. դկ. նը. խաչիկ յաւետարանին։ տվի որ տաճարի տեղն շինէն խարճեն. յիշատակ իմ հաւր մխիթարին իմ մաւր խանազին եղբայր ատոմին ածայտուրին ախիճանին գէրիգորին իմ որդոյ ատոմին ած ընդ երկայն աւուրց անէ ամէն հայր։ Թվկ. ռ. լ. դ. էր փետ-վրի։ ժ։ էն աւրն էր ենչ ամիրխան բերբ եցեցին։

Էջ 348բ. Ցիշեցէք յաղաւթս ձեր զպարոն սարգիս եւ զշնոհվոր տիկին յաղաւթս ձեր զի միաբանեցաք նը աւետարանիս եւ քանի կենդանի լինինք հասուցենք յամէն տարի։ բ։ դկ։ յիշատակ սաստին եւ լուսերուն յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զտարաժամ տղայ մեռեալն ի քն զպաղտասար որդի մխիթարայ եւ քն զձեզ յիշէ ամէն։ եւս առաւել յիշեսջիք զդադիկ եւ զներսէս տարաժամ տղայ մեռեալքն եւ զիս յաւրէնս Յի եւ զփառանց տիկին տիր-հի դուստր եւ թոռն. քոյր եւ մայր քահանայից յիշեցէք ի քն եւս առաւել զդէրեն եւ զկենակիցն իւր եւ զասիլն եւ զախա֊ն յիշեցէք ի քն եւ յիշողքդ յիշեալ լիջիք ի տր։ յիշեցէք ի միաբանութիւն զորդորն զորդի փանոսի եւ զսիրայն ի մաքրափայլ յաղաւթս ձեր եւ զսարգիս Նոր թագաւորն եւ զկենակիցն զոհրայն, ի յամէն տարի։ Ճ։ դկ։ եւ սարգիսն։ Ճ։ դկ։ յիշեցէք ի մաքրափայլ եւ ի մեղաւյքաւիչ յաղաւթս ձեր զքաւչխաթունն եւ զծնողսն իւր զմուբարաքշահն եւ զմարխաթունն եւ քն զձեզ յիշէ։ եւ զմինայտիկինն։ յիշեցէք զմարկոս եւ զելխաթունն։

## 2.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՌԼ = 1581։**

*ԹՈՒՂԹՔ 267: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×16×7 սմ. – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 16×5,5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 21: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. առաջին կողին վրայ զամուած են տակէ տակ երկու պղնձեայ խաչնլութիւններ եւ չորս կողմը 9 հատ կոճակաձեւ պղնձեայ զարդեր: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու Թերթ, անցման երկաթագրով, միացորդ ճառից Յովհաննու Ոսկեբերանի. "Սաղահլի է մահ եւն„: – ՀԱՆԳԱՄԱՆՔ զոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 87ա: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ եւ խորանազարդերը միջակ արուեստով. իսկ էջ 1բ–8բ դրուած 15 տնօրինական մեծադիր պատկերները էջ 9ա–12ա կամարները եւ վերջապէս աւետարաններու սկիզբը դրուած չորս աւետարանչաց մեծադիր պատկերները աւելի անյաջող են: – ԳՐԻՉ՝ Խաչայել երէց. տեղ Որոտեան Ցղուերծ գիւղ. Թուական ՌԼ = 1581. տէր՝ անշուշտ գրիչը:*

**Մ**ատեանս է Աւետարան. կը պարունակէ. տնօրինական պատկերներու շարք մը՝ էջ 1բ—8բ. կանոններ՝ էջ 9ա—12ա (սկիզբէն Թերթ ինկած). Ցանկ եւ Նախադրութիւն Մատթէոսի՝ էջ 12բ—14ա. Մատթէոս՝ էջ 15ա—85բ. Նախադրութիւն եւ ցանկ Մարկոսի՝ էջ 85բ—86ա. Մարկոս՝ էջ 88ա—132ա. Նախադրութիւն Ղուկասու (չէք ցանկ)՝ էջ 132ա. Ղուկաս՝ էջ 134ա—208ա. Ցանկ եւ Նախադրութիւն Յովհաննու՝ էջ 208բ—209ա. Յովհաննէս՝ էջ 210ա—265բ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ· էջ 6բ—7ա (պատկերներուն տակը)· յիշեա ... Զխաչայելս նկարող յիշեաց։

Էջ 86բ· Մեծ պարոն տր ստեփանոսն որ մեռաւ. տարին առիւծն էր. ամիսն հոռի· իե. աւրն. Ե. շաբաթ, նբ յակոբի պասին. Ե. շաբաթ աւրն. փոխեցաւ առ քս։ ազգէն էր փակակալաց. Անմխիթար սուգ մնաց սիւնեաց գաւառին թվ. ռ. իթ. էր։

Էջ 86բ (այլ)· Զմեղօոր անարժան եւ սուտանուն աբրայհամս երէցս յիշեցէք աղաւթս ձեր եւ լի բերանով ուղիղ սրտիւ ած ողորմի ասացէք ած ձեզ ողորմի իւր միւսս գալըստեանն վայ մեղօորիս. ամէն հայր։

Էջ 132բ· Փառք համագոյ եւ անբաժանելի սբ երրորդութե հօր եւ որդւոյ եւ հոգոյն սրբոյ։ այժմ եւ յաւիտեանս ամէն։ Ես ոսկան քահանայ. որդի իմ Թաթէոս քահանէս։ գնեցինք սուրբ աւետարանս՝ ի թվին հայոց։ ռժգ էր։ ի հալալ ընչից իմոց։ ի էշատակ հոգոյ իմոյ եւ անդրանիկ որդիս Թաթէոս քահանէս եւ կողակիցն գուլին։ եւ հարսն իմ լալիփարին։ եւ որդին Նորա ըստեփանոսին. ալէքսասոսին։ մաթէոսին. մարկոսին։ եւ այլ ամենայն անդանոյն էշողացն եւ կարդացողաց որ գնեցի ի հալալ ընչ իմոց։ ե։ ճ։ թանկայ։ զ։ ռ։ դկ. որ գնած է անխաւս եւ անպատճառ։ առաքել։ խաւճէն։ մրաղէն վկ։ կարապետն վկայ. ած վկայ. մելքսեթ քահանայ. ըստեփաննոս քհն։ անանիայի քհ՞յնյ վկայ։ ով որ նղս (= գնա) հանի։ եա եւ առաջ նմեալ (= նզովեալ) եղիցի ըստեփանոս արհեպիսկոպոս, միաբան մանուէլ կրօնաւորն։ Ներսէս կրօնաւորն։ որ առաջեցին եւ գնեցինք անպատճառ։

Էջ 133ա· Ես Թաթոս քահանէս որդի ոսկան քհնի Թոռն Ներսէս քհի [ստացայ կամ գնեցի] նբ աւետարանս էշատակ ինձ [եւ ծնողաց իմոց հաւրն] իմ ոսկան քհ. [մաւրն իմ] գուլ[ին եւ կո]ղակցին [լալ]իփ[աւրին]. (Մնացեալը չորս կամ հինգ տող պատռած է եւ կը մնան միայն տողերու ծայրերէն քանի մը տառ. կը թուի թէ կը յիշէ "եւ որդոցն իմ սահակին, մաթոսին, յովանէսին եւն„։ Ցետին ստացող մը սանց անունը ջնջելու համար սոսինձով իրարու փակցուցած էր էջ 132բ եւ 133ա. որով այս եւ նախորդ յիշատակութիւնները ծածկուած էին. դժուարութեամբ կրցայ քակել փակցուածը, որուն զոհ գացին այն քանի մը պակաս տողերը. իսկ փակագիծներու մէջ դրուածը նախորդ յիշատակութեան զօրութեամբ դրուած է ենթադրաբար)։

Էջ 266ա (Գլխաւոր յիշատակարան)· Փառք անբաժանելի միանական նբ երրորդութեան հաւր եւ որդոյ. Արդ գրեցաւ սուրբ յաւետարանս ի յերկիրս յորոտեան ի գեղջս որ կոչի յղուերծ ընդ հովանեաւ նբ ածածնիս եւ նբ ստեփանոսի նախավկայիս եւ այլ սրբոցս որ աստ կան։ ի յառաջնորդութէ-ն նբ յաթոռոյս ըստաթէի ստեփանոս արքեպիսկոպոսի սիւնեաց ի ժան գաւառի. ի թագաւորութէ-ն խունթայպանդայի ի թվիս հայոց ռլ. ի ժամանակիս որում երեա ած չորս պատուհաս. սովն. սուրն. գերովարութիւնն. մահն. այլ եւ. իա. տարէն. խարաջն անցեալ էր շահ թահմազն. որդին նորայ (բառ մը ջնջուած)· խիստ ուժգնով ցրուեցաւ յաշխարհս ամէն. բազումք կորեան։ վասն ոչ ունելով. ընչեցն։ Գրեցաւ ձեռամբ չխաչայէլ երիցոյ հաւրն իմոյ նաւտարին եւ մաւրն իմ գուլուն եւ եղբայրն տր դաւթին. պաշարաթին. ադամին հարոնին հանգուցեալ եղբաւրն իմ դաւթին կողակցին խոնդաղայն. ով մանկունք նբ եկեղեցոյ յորժամ հանդէ+ եւ ընթեռն+ նբ յաւետարանս ած ողորմի ասէք մի գրելոցս ած ձեզ ողորմի արքային երկնային ամէն։ Ն. լ. վ. տ. բ. ն. զ. ի. ը. ա. ը. ւ. (վերջինս ծածկագիր մ'է, որ եղբայրագրով կը կարդացուի "չխաչայէլ երէց„)։

Էջ 266բ· Արդ եւ ես չխաչայէլ երէցս ստացայ սուրբ աւետարանս ի հալալ ընչից իմոց յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց հաւրն իմ ալթունին եւ մաւրն իմ խոնձայն եւ եղբաւրն իմ. Թոզանին. ախիջանին. աղաջանին. ջանուն պահմանին. պապն նատիրին։ կողակցին. հուրխանի. փուլատին մուրատին. դստերացն իփակին

հարսներին պակխոյն գաւհարի եւ միւսն այլ գաւհարի գուլպակուն դատին. եւ քչերն իմ սանամին սսկուն. հաւրքվերն իմ մարիանին անախա... (բառին կէսը քերուած) Ով մանկունք որ եկեղեցւոյ յորժամ հանդիպիք որ աւետարանիս կարդալով կամ աւրինակելով ած ողորմի ասացէք ստացողիս զԽորայէլ երիցիս եւ ծնողացն իմոց եւ ամ յարեան մերձաւորացն ամէն. ի թվ. ռ. խե. որ առի որ յաւետարանս. ի ժամանակի աթոռակ(ալ)ութե-ն սուրբ ուխտին ըստաթէ յովանէս արքեպիսկոպոսի. ի ազգէն փակակալաց. եղբայրորդի ստեփաննոս եպիսկոպոսի սիւնեաց ի ժան գաւառի. թագաւորութե նետողաց ազգի. սուլտան մահամատի. հոռոմազգի նստեալ ըստանպուլ. ազգին զըլպաշի թագաւորն ապազ փաթշահին. նստեալ ղազվին թախտի: (Այս Խորայէլ երէցը որդի Ալթունի պէտք չէ շփոթել Նախորդ Իսրայէլ երէցին հետ որդի Նատարի):

Էջ 267բ (Նոտր գրով). Փառք ամենայն երեքորդութեան հօր եւ որդոյ եւ հոգոյն որս ։ժմ մինչ յաւիտեանս ամէն: Յիշատակ է սուրբ փրկաչգործ աւետարանս առ յիշտակ հոգոյ իմոյ յիշեցէք զհանգուցեալ խայղուլին կողակից կուլճահանին որդի զաքարային եղբարք վալճանին ադրհամին քասպարին մելքումին մալումին զաքարին կողակից սիմային որդի խախանին հարսն սանամին քոյր շահպէկին ուսդիանային վառուն վալճանին կողակից մարիանին որդի ադամին ղազարին շահնզարին պետրոսին հայրապետին ղուկասին աղ. համի կողակից եղթարին որդի սարքիսին յարութիւնին քասպարին կողակից փարուն որդի օվանէսին ղամպարին մալքային (իմա մելքումին) կողակից մարուն որդի կարապետին ։օհ ։ք ։Ն...։կէր (բառս խաւարած է, ընթերցումը կասկածելի) քահանայք որժամ կարդայք ած ողորմի ասացէք եւ դուք յիշեալ լինիք քնէ այ մերմէ. Հայր (ած ձեզ ?) եւ մեզ յիշեսցէ ամէն:



## Ջ.

# ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԱՍՆԱՒՈՐ ԱՆՁԱՆՑ

---

## 1.

## ՏԱՂԱՐԱՆ

(1801-էն յետոյ։)

*ԹՈՒՂԹՔ՝ արդի վիճակին մէջ 99, բայց Նշանակէս պիտի ունենար 216 երեսէ աւելի, որովհետեւ մինչեւ 203 էջ նշանակուած է գոնէ, որմէ յետոյ կու գան վեց չնշանակուած թղթեր։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×2 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին եւ մաքուր։ — ԳԻՐ՝ նոտր. մօտ արդի ձեռագրին. թանաք սեւ. տող 14։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակեայ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական մաքուր. բայց կազմը քքքուած, պակաս են էջ 1-4, 13-18, 148-9, 154-5, 190-1, 196-9, իսկ 203 էջէն անդին պակաս թերթերու թիւն անյայտ է՝ էջերը չնշանակուելուն պատճառաւ։ – ԴԱՏԱՐԿ էջ 206, 211, 214։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐ՝ չկան. միայն սկզբնատառերը թռչնագիր՝ կարմիր կապոյտ գոյնով։ – ԳՐԻՉ, տէր եւ ժամանակ անծանօթ. թուական չէ նշանակուած, բայց անշուշտ 1801-էն յետոյ որովհետեւ 20րդ երգը Ռուսաց Աղեքսանդր Ա. կայսեր վրայ է։ – Ձեռագիրն այժմ սեպհականութիւն է Ղալայի Հայոց դպրոցի ուսուցիչ պր. Վահան Բժշկեանի։*

**Ահաւասիկ տաղերուն ցանկը՝ հետեւելով անոնց սկիզբը դրուած թուահամարներուն։**

1. (պատռած).
2. (կիսատ) Ոսկի կնդրուկ զմուռ նմա.
3. Հրեշտակք եւ մարդիկք ահա ցնծացէք.
4. Ղամբարափայլ սրբոյ տօնիս, աւետիս.
5–7. (պատռած).
8. Հրճուիմք այսօր մեք հոգեպէս.
9. Ծաղիկ պայծառ ծովային.
10. Բանն Աստուծոյ առաքեցաւ.
11. Ով զարմանալի խորհուրդս.
12. Այսօր ձայնն հայրական.
13. Քեզ փառաց թագաւոր.
14. Իսկականիդ ծննդեան անեղ.
15. Ի հօղային նիւթոյս սկի.
16. Եկ սիրելի ի պարտէզ.
17. Քեզ կոյս անբիծ եւ գերամբիծ.
18. Այ գեղեցիկ աղնիւ թռչուն.
19. Վերառաքեմք առ Ած.
20. Պետութեամբ եւ ինքնակալ (Ռուսաց Աղեքսանդր Ա. կայսեր վրայ երգ).
21. Յորժամ եղեւ գարուն.
22. Ի փշալից ծառոց տուեալ.
23. Սիմէօնի առն Աստուծոյ.
24. Միաշաբաթ օր հանգստեան.
25. Ձիս քո սիրոյն ով Նազելի.
26. Արի սէր իմ արի արի.
27. Վիրաւորեցայ մեղօք վարեցայ.
28. Գարունն է բացվեր վարդն.
29. Եկեալ մարիամ մագդաղենացին.
30. Իժն եղեռնային օձն ժանդական։
31. Փառաց տեղի փափաքելեաց.
32. Բարի եկիր իմ պատուական.
33. Սեաւ եմ գեղեցիկ դուստր Եւայի.
34. Յարմար ձեւով պատուական.
35. Նստիմք ի մէջլիս հարք եւ եղբարք.
36. Իմ սեւացեալ տեսուք սեաւ եմ.
37. Ահա մեք ժողովեալքս.
38. Արէք որ երթամք պիւլպիւլն երամք.
39. Արդ լուսաւորեա, արդ փառաւորեա.
40. Ամ որ սիրեցէ զքեզ.
41. Այսօր ցնծայ լեառն թափօր.
42. Անճառին խորան բանին բնակարան.
43. Արի իմ քաղցրիկ աղաւնի.
44. Ամենից քարոզ ով նը մարտիրոս.
45. Ածածին ամենօրհնեալ գոչեմք.
46. Ով պարտիզապան սաս ուր տարան.
47. Ոչ քեզ նման ամենազօրութ.
48. Որ արարեր զիս ի պատկեր.
49. Յայգոյն միաշաբաթին իւ ղարերքն.
50. Իւղաբերքն գան ի գերեզման.
51. Ի բարձունս երկնից յարեւելս.
52. Ի կենաց նախկին վայելմանց.
53. Ի մեծ տագնապ անձն իմ.
54. Դարձեալ յայտնի այլանման.
55. Մարիամու մագդաղենի ցուցաւ.
56. Գլխոյ պսակ զարմանալի.
57. Սարաափելի բարկութի (Երգ Տփղիսի վրայ).

58. Մոլորեցաւ միտն իմ մեղօք.
59. Սահման անսահման խորոց.
60. Յաւուր միում որ էր մեզ նոր կիւրակէ.
61. Գերեզկելի ողբալի ո՛հ.
62. Սարէկայ ծառո՛յն նշանեցաւ.
63. Մայր ցանկալի չիանալի.
64. Խաչն ի նախնումն երեւեցաւ.
65. Ի խաչին անարգ բեւեռեալ.
66. Փութայ առ մեզ նաւչուն կաքհաւ.
67. ...գուստր իմաստուն մօրն Նշայի (կիսատ).
68. Անեղին տաճար բանին.
69. Գոչէր հրեշտակն առ վիմին.
70. Մարտն կուգայր ծաղկունքներով.
71. Ղարիպին կեանքն է լալի.
72. Յարուցեալ յերրորդ աւուր.
73. Այսօր նոր արեւ հարեալ.
74. Սուրբ մայրդ լուսոյ.
75. Մեծահանդէս է օր տօնի.
76. Պաշտելի տօնելի գահ Ս. Գրիգորի.
77. Կանայք ամ քորք իմ սիրական.
78. Դասքն հրէական էին պահապան.
79. Կանանցն կանխեալ եկին.
80. Արիք ելցուք ի միասին.
81. Էջմիածին կաթուղիկէ նորոյս.
82. Զօրեղ փչումն ուժգին հողմոյ.
83. Երկիրս ամէն կանաչեցաւ.
84. Ի տարանջատ վայրէս.
85. ...էին անդ բազում պահապանք.
86. Մարիամ մագդաղենին փարէր.
87. Այսօր ցնծալի այսօր զուարճալի.
88. ...Նորէն նորոյ եւ համազամ.
89. Թագ փառաց մերոց.
90. Փառք քեզ Քն որ հաստեցեր.

77-էն յետոյ տաղերը թուահամար չունին, ուստի պակասները յայտնի չեն. սկսեալ 88-էն՝ բոլորովին նոր ձեռագրով՝ օտար գրչէ. վերջին երեք թղթերը կը պարունակեն 1870 թուէն նամակ մը, Յովսէփ Գէորգեան ստորագրութեամբ, տաղերու ցանկէն մնացորդ մը. եւ գրչափորձեր, հայերէն, ռուսերէն, վրացերէն, պարսկերէն: Կան եւ վերջին ստացողներու ստորագրութիւնները. “եղբարք նազարեանների գրքերից թաւրիզ 96 սեպտ. 20„, “ի հազար ութ հարիւր յիսուն վեց ամին ապրելի տառ մեկին ի թէհրան„, “ի հազար ութ հարիւր եօթանասուն մէկ ամի սեպտեմբերի 15ին ի քաղքն Դաւրէժ„, ստորագրեալ ռուսերէն Աբրահամ Գէորգեան:

## 2.

## ՏԱՂԱՐԱՆ

(1819-էն յետոյ։)

*ԹՈՒՂԹՔ՝ արդի վիճակին մէջ 78, էջ չէ նշանակուած: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16,5×10,5×1,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ, տող՝ 19-25: – ՆԻՒԹ՝ մաս մը սպիտակ, մաս մըն ալ կապոյտ հաստարակ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ նախապէս թղթակազմ. այժմ քայքայուած, անկազմ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ թափթփած, բաւական կեղտոտ եւ պատառատուն: Սկիզբէն, մէջերէն եւ վերջէն պակասներ կան. նախկին դատարկ էջերը լցուած են գրչափորձերով եւ անմիտ խազմզոցներով, նամակներով եւ հաշիւներով, նոյնպէս եւ առեւտրական ու այլ պայմանագրերու օրինակներով: — ԳՐԻՉ, տեղ եւն անծանօթ: – Ձեռագիրն այժմ սեփականութիւնն է Ղալայի Հայոց վարժարանի ուսուցիչ Պր. Վահան Բժշկեանի:*

Ձեռագրիս բովանդակութիւնն է։

1. Տաղ. ի ծփանաց մեղաց ծովուս։
2. Ի քէն հայցեմ ով տր յն.
3. Կօյտան բիր ջութ նա եէնդի (օտար գրչէ).
4. (կիսատ) տաղ. Գլորելոց կանգնիչ սիւն հաստատուն ես.
5. Ի ծփանաց մեղաց ծովուս. (նոյն ընդ 1).
6. Ի քէն հայցեմ ով տր յն. (նոյն ընդ 2).
7. Աւաղալի ողբս եմուտ ի տունս արամեան.
8. Յորժամ էիր դու եօթնամեայ.
9. Շըհարընտայ չալընըր նէչայ քիլիսալարի.
10. Աղբիւր անապական, բանին բնակարան.
11. Աւաղ կարդամ անձինս մեղայ գոչեմ (նոյն ընդ 4).
12. Ի մէջ անհուն մեղաց կամ ես դեգերեալ.
13. Ի սէր աշխարհիս պատրեցայ միշտ.
14. Ի քէն հայցեմք ո՛վ տիրածին.
15. Մեծամեծ պարգեւաց ես ակն ունէի.
16. Եռանձեայ անեղին շնորհօքն զօրացեալ.
17. Մենամարտ եւ սպառազէն երեւեցար.
18. Մրցանակ ցեղէն կոչեցեալ.
19. Ի ծովածուփ սուտ կենցաղոյս.
20. Ի մուտ մայի միջի գարնան.
21. Ի գալ գարնան ցնծան արարածք.
22. Նամակներու օրինակներ (9 թերթ).
23. (կիսատ) տր յն աղերսեա, միշտ յարաժամ.
24. Ի քէն հայցեմ ով տր յն (նոյն ընդ 2).
Նոյնպէս եւ թիւ 25—33 նոյն ընդ 12—21: պակաս է միայն թիւ 19.
34. Իսկ ի գարնան աւուրքն եղեւ մեզ յայտնի.
35. Ի ազատ ցեղէ շառաւեղեալ տենչալի.
36. Ի հարաւ կործան հողմոյն.
37. Իսկակից հօր ծնունդ անեղ.
38. Հողմըն մեղաց զիս տատանէ սաստկապէս.
39. Ալէքյ թայ րապի ալ ալամի (թրք.)
40. Սիրամարգիդ սիրոյն եղէ սիրահար (կիսատ).
41. Ի հազար երկու հարիւր վաթսուն ութ ամաց[1] եւ

[1] Այս երգին թուականը կը ցուցնէ թէ Տաղարանը գրուած է 1819-էն յետոյ։

42. Զիլխատան միսկի ախըր զամանայ (15 թերթ պատմական տաղ Վանայ արկածներուն վրայ հայերէն եւ թուրքերէն գիմաց գիմաց).
43. Ոտանաւոր Յարութիւն կարնեցի նաղաշակին.
44. Հավալամայ թելի գուռնամ ուչար կւտաշ.
45 54. Թուրքերէն երգեր.
55. Հրեշտակապետու փանքն պէսպէս շնորհիւ.
56. Նիճէ 'Լեօկսէմ նը յարութի.

## 3.

## ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ՀՈԳՒՈՅ ԵՒ ԶՕՐՈՒԹԵԱՆՑ ՆՈՐԻՆ

?

*ԹՈՒՂԹՔ 244 (Նշանակուած 243, բայց փախցուած է 188): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12,5×10×3,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին, մաքուր եւ կանոնաւոր: — ԳԻՐ՝ մանր բոլորգիր. թանաք՝ սեւ. վերնագրեր եւն կարմիր. տող՝ 20: — ՆԻՒԹ՝ թուղթ. սկիզբէն դրուած է երկու թերթ մագաղաթեայ պահպանակ գոթացերէն գրութեամբ, վերջէն նոյնպէս երկու թերթ մագաղաթ՝ միջին-մեսրոպեան գրով աւետարանի մը մնացորդ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ՝ զարդարուն երեսով: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-2բ, 136բ, 241բ-243բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ մէկ-երկու հատ միայն. էջ 3ա, 78ա, 135ա երեք գեղեցիկ նրբանըկար խորաններ: — ԳՐԻՉ՝ Վրդանէս. տեղ եւ թուական անծանօթ: Ձեռագիրն այժմ սեփականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Զոհրաբեանի:*

**Մատեանս կը պարունակէ. էջ 3ա—77բ Համառօտ հաւաքումն հոգւոյ եւ զօրութեանց նորին. Ասէ Արիստոտել ի գիրս հոգեաց թէ հոգին կերպիւ ինչ է...։ էջ 77բ—134բ Յաղագս առաքինութեանց հոգւոյն. Ցետ ասելոյ յէութենէ հոգւոյն եւ ի զօրութեանց նորին...։ էջ 135ա—241ա Համառօտ հաւաքումն յաղագս հրեշտակաց. Ասէ երանելին Դիոնէսիոս...։**

**Ցէշատեղբեան. Էջ 78բ. Փառք քեզ քաղցրիկ ոՒ իմ փառք քեզ։**

**Էջ 79բ. լուսանցքի վրայ կնիք մը՝ տաճկերէն** جامار **մակագրութեամբ։**

**Էջ 134բ. կատարեցաւ գիրքս որ յաղագս հոգւոյ եւ զօրութեանց նորին։**

**Էջ 136ա. Փառք քեզ գթած անոխակալ. հայրախնամ անյիշաչար. (Գ)ոյից ստղ"ծիչ անօղ կատար. բոլոր սեռից համագումար։ (Ք)աղցրիկ փրկիչ իմ բարէր(ար) տեսօղ մոացս իմյ խաւար. (Գ)ըթով սիրոյ քոյ մայրաբար. նպաստ եղեր ծրողիս ախմար։**

**Էջ 210ա. գծրօղս յիշեսջիք։**

**Գլխաւոր յիշատակարան (էջ 241ա). Ցաւարտ հասեալ սոփեստս հոգեաց լատինաբան։ Ի վրդանէս անուամբ յունայն հոգով անարժան. ձեզ աղաչեմ հանդիպող սորա զիս յիշեա եւ ասա ոՒ ողրմ հոգւոյ նը**

**Բոլորն ալ առաջին եւ բուն գրչէն են։**

## 4.

## ԳԻՐՔ ՊԻՏՈՅԻՑ ԵՒ ՅԱՂԱԳՍ ՍՏՈՐՈԳՈՒԹԵԱՆՑ

**(ՌՃԺԷ = 1668.)**

*ԹՈՒՂԹՔ 377. էջ 754: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 19×13×5 սմ.: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ նոր եւ մաքուր: – Մագաղաթեայ պահպանակներ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ՝ երկաթագիր աւետարանի մնացորդ: Դատարկ թուղթ 1, 218 եւ 377: — Ձեռագիրն այժմ սեփականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Զոհրաբեանի:*

**Ձեռագիրը բաղկացած է երեք տարբեր գրքերէ.**

*Ա. ԳԻՐՔ ՊԻՏՈՅԻՑ. – ԹՈՒՂԹՔ 1-218: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին: – ԳԻՐ՝ նոտր. թանաք՝ սեւ. տող՝ 22: – ՆԻՒԹ՝ ողորկ եւ փայլուն բամբակեայ թուղթ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ մի քանի հատ միայն. վերնագրերը կարմիր. էջ 2ա՝ մէկ խորան միջակ արուեստով: – ԳՐԻՉ Սիմէոն քահանայ: – ԹՈՒԱԿԱՆ ՌՃԺԷ = 1668:*

**Մատեանս է Գիրք պիտոյից, բայց խորագրի տեղը բաց է թողուած. ուր յետին գրիչ մը կը դնէ "Գիրք ճարտասանութիւն"։ Յիշատակութիւններ չկան. էջ 217բ՝ գրքին վերջը կայ միայն հետեւեալ յիշատակարանը, "Գծագրեցաւ գիրքս ճարտասանութեան որ է արարեալ մեծի քերթողահօրն. Մովսէսի խորենացւոյ. ձեռամբ անարհեստ եւ խաւարամած ոգւոյ. սիմէոնի լոկ անուամբ եւեթ քհի, ի թուին հայոց ռ. ճ. ժ. եւ է. ամին։ ով ոք հանդիպէք յիշեցէք զիս ի քս։"**

*Բ. ՑԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԲԱՑԱՐՁԱԿ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԵԱՆՑՆ ԱՑՍՈՒՆՔՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՍՏՈՐՈԳԵԼԵԱՑՆ: — ԹՈՒՂԹՔ 219ա-349բ: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին եւ բաւական մաքուր: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ. տող 23: – ՆԻՒԹ՝ աւելի հաստ եւ նուազ ողորկ*

*թուղթ քան նախորդը: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ սակաւաթիւ. վերնագրերը կարմիր. խորան եւ ճակատազարդք չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ:*

**Լուսանցագրութիւն յետին գրչէ՝ միայն էջ 323ա. «անիծեալ լինի ժողովն այն եւ պիղծ մարկիանոս չար թգւորն. որ այնքան սբ. քրիստոնեայք. սրով անցոյց եւ ինքն չրաչր վերջացաւ այժմ պապանձիր այլ մի գրել սուտ. եղկելի թշուառ հոգի. այր հերձուածող եւ ոչ բարի»:**

**Տանրորդ «Յաղագս Հրեշտակաց» վիճաբանութենէն յետոյ՝ էջ 349բ. «բաւէ յաղագս Հրեշտակաց» ըսելով կը փակուի գլուխը. եւ յաջորդ էջով կը սկսի՝ .**

*Գ. ՅԱՂԱԳՍ ԾՐԿՆԱՑԻՆ ՄԱՐՄՆՈՑ (որ է Առողջաբաշխութիւն՝ նոր գիտնական ծանօթութիւններով եւ արաբական թուանշաններով), էջ 350–376բ: — — ԳՐՈՒԹԻՒՆ՝ նման նախորդին: — ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ. տող 25: — ՆԻՒԹ՝ դեռ աւելի հաստ թուղթ քան երկրորդը: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկայ. վերնագրերը սեւ. միայն սկզբնատառերը կարմիր: — ԳՐԻՉ եւն անծանօթ: Յիշատակարան եւն չկայ. միայն գրքի վերջը էջ 376բ «օհլ է տր իմ յս. որ այց արար եղկելոյս»: Խաչիկ վարդապետի Ձեռագրաց Ցուցակին մէջ, էջ 51 կը յիշուի թէ վերջին մասը Ստեփաննոս Լեհացւոյն թարգմանութիւնն է:*

## 5.

## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

### ՌԿԸ = 1619.

*ԹՈՒՂԹՔ 272. էջ 544: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25×20×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ բաւական մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 20×6·5 սմ.: – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. թանաք՝ սեւ. տող՝ 31: – ՆԻՒԹ՝ թուղթ՝ իւրաքանչիւր թերթը իրարու փակցուած 2 թերթերէ կը բաղկանայ. սկիզբէն երկու թերթ մագաղաթեայ պահպանակ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւական լաւ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 1, 2, 271 եւ 272 թերթերը՝ որոնց վրայ յետոյ յիշատակարաններ են գրուած: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ չկայ. վերնագրերը միայն կարմիր. միայն գրքին սկիզբը՝ էջ 3ա՝ միջակ արուեստով խորան մը: – ԳՐԻՉ Ղուկաս քահանայ. ստացող Ղազար քահանայ եւ Սարգիս եպիսկոպոս. տեղ՝ յերկիրն Որոտան, ի գիւղն Գետաթաղ. թիւ ՌԿԸ = 1619: Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Ջօհրաբեանի:*

**Մատեանս կը պարունակէ.**

**Էջ 3ա—25բ. Ս. Ներսէս լամբրոնացւոյն ատենաբանութիւնք.**

**Էջ 25բ—29բ. Գլխագրութիւնք Հռոմոց զորս պահանջեն առ ի մէնջ ի պէտս խաղաղութե, ընդ որս եւ լուծմունք առընթեր եդեալ:**

**Էջ 29բ. Խնդիրք Հայոց ի Հռոմոց.**

**Էջ 29բ. Ներսիսի եպնի կիւլիկեցւոյ տառանի խորհրդածուե. մն ուղղափառ հաւատոյ եկեղեցւոյ. որ ի նր երրորդութի եւ ի մարդեղնութին քի. (Մեկնութիւն պատարագի):**

**Յիշատակարանները բազմաթիւ են. գրեթէ ամէն գլխէ վերջ Սարգիս եպս. կամ Ղազար քահանան կը յիշատակուին. ընդհանուր գումարն է 32. ասոնցմէ կը յիշենք միայն հետեւեալ չորսը, որովհետեւ մնացեալները աւելի համառօտ կրկնութիւններ են միայն.**

**Էջ 25բ. Որ ողորմի ստացողի գրոցս. Սարգիս եպնին եւ այլ միաբան եղբարցն որ հանդարտեալ կան յանապատիս:**

**Էջ 39ա. Զստացող գրոցս բղարգիս եպնն եւ այլ միաբան եղբարսն յիշեցէք յաղաւթս եւ հետ նց մեզ գծողս եւ դուք յիշեալ լիջիք ի քէ ամէն:**

**Էջ 48բ. Զստացող գրոյս զնրգիս հայրն անապատի եւ եղբարքն իւր հաւասար յիշեցէք ի քն աղաչեմ:**

**Էջ 245բ. Քն ած քո նր մարմնոյ եւ արեան բարեխաւսութե ողորմեա ստացողի սորա ղազար քհին եւ ծնողաց նորին հօրն պաշարաթին եւ մօրն ղարագօզին. կնոջն չինոյն. եւ որդոյն եփրեմին. եւ ինձ մղր. ղկն գծողիս եւ իմոցն ամի ամէն: Թվ. ռկը:**

**Գլխաւոր յիշատակարան. փառք ամենայն երրորդութեն եւ միոյ աստուածութեն հօր անծնի անսկզբնականի եւ որդոյ ծնեցելոյ ի հաւրէ նախ քան զժամանակ. եւ հոգւոյն սրբոյ ելողի ի հաւրէ անհատաբար. որ եւ զաւրութի վհատեալ սրտիս. 'ի մեղկացեալ անձինս հասանել յաւարտ գծիս ածախումբ մատենիս. Որք իշխանականին տեսութե պածուինան նկատեն. եւ տենչմամբ սիրոյ իւրք ինչ ըղձան. հոգեւորականին ասեմ եւ մնացականին հայելով յանկայուն եւ 'ի դիւրահոսելի իրս կենցաղոյս. զի կուրացուցիչ է հոգւոց. եւ չամբուշ գործ է մտաց: Նա եւս առաւել տարփմամբ սիրոյ եւ մեծաւ ճեպով փութան հասանել, 'ի սէր մնացական եւ յարատեւեալ գանձուն: Որով թէ մարդ ինչ իցէ զոր հեշտութիւ մարմնոյ արհամարհել. նաեւ զամ կենցաղաւգուտ բար(օր)ութիս, եւ զինչս եւ զստացուածս արեան չփ գոյն եղեալ զի թերեւս կարասցէ հասանել այնմ որում բաղձայլն բստ տն հրամանին. թէ առն բարեմտի փափագելով պատուական մարգարտոյ. եւ գտեալ զմիայն գեղեցիկն զամն արհամարհէ առի զնոյն ստանալ. բստ այսմ գաղափարի եւ պատ-ական քհյս ղազար. ածահաճոյ վարուք կեցեալ բստ հոգեւորականին եւ մարմնականին արգասիւք բարչաւաճեալ: Սա բստ ուղիղ ընտրութե մտաց իւրոց իմացեալ զընդունայնութի կենցաղոյս. եւ լուեալ ի տէ. թէ գանձեցէք ձեզ գանձս յերկինս. եւ թէ ինչք ոչ աւգնեն աւուր բարկութե. եւ դայն եւս թէ երանի**

որ ունիցի զաւակ 'ի սիոն, Խորհուրդ իմն ի մէջ բերեալ տալ գրել զպատմութիւն մարտիրոսաց: Զոր իմացեալ ամէներջանիկ. քաւչապետն եւ մեծ գլուխն արհիական ո՞ր զաքարիա. յաւժարեցոյց զսա ի գրութի բացայայտութե աղօթից նը պատարագին. որ է նշան սիրոյն քի առ մարդիկ տուեալ. միշտ զմիշատակս նորին կո՞չեալ. եւ զհաւատով մերձեցեալսն իւրոց փառացն հաղորդս առնել: Զոր լուսապայծառ մեկնութբ եւ գեղեցկագիր ուրի՞ուածով եւ առատաբան վկայութբ բացայայտեալ է տիեզերալոյս եւ յոքներանեան բազմաշնորհ վգպին եւ արքեպսին տալասնի կիւլիկեցւոց տն ներէսի լամբոնեցոյ ի յորդորումն բարեաց եւ ի հրահանգս կրթութե մանկանց սիոնի. այլ՝ և յուսագրուի վհատեալ անձանց եւ 'ի ցուպ հաստատութե գլորել հոգւոց. որոյ բարձրաբարբառ ձայնէ. զարթուցեալք լրբ ի քնոյ ընթանան 'ի գծ տէրունի պատրաստել զինքեանս մուտ երկնաւոր հարսանեացն: Ես գրել զսա 'ի հալալ ընչից իւրոց ղազար պատուական քհյն, յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնօղաց իւրոց. հաւրն. բաշարաթին եւ մաւրն զարակաւզին կնոջն չինոյն եւ որդոյն եփրեմին. գատերն հեղինեին. եւ իւրոցն ամի ամէն: Դձլ գրեցաւ սա յերկիրն սրոտան ի գեւղս որ կոչ(ի) գետաթաղ. ընդ հովանեաւ ձագյարոյց նը ածածնիս ձեռամ(բ). ղուկաս անպիտան դպրի. որ անուամբ միայն կոչիմ դպիր. բայց գծով ունայն եւ թափուր. ոչ է պարտ դպիր կոչել այլ հետ եւ ամբարտաւան ի բանս. Հեղգ եւ յոյլ (ծոյլ) ի գործս բարիս. աղաչեմ ընթերցողք. մի ողորմիւ պատուել չար գրիչս: Արդ երես անկեալ աղաչեմ զձեզ ով քաղցրանուագ եւ հեզաբարբառ մանկունք նր եկեղեցւոյ. որ սրբեալք ի նըս բնակիք. յորժամ ուգտիք այսմ տառի հրդվ կամ ուրինակելվ. յիշեցէք մաքրափայլ աղաւթիւք ձերովք. զղազարոս պատուական քհյն եւ լուրքն ամ կցորդ նմին: ամէն: Գրեցաւ ակը թվին. եւ քի փառք յաւտես ամէն եւ ա ամէն:

**Օտար ձեռք՝ յետագայում.** Էջ 1ա. անուամբ անեղին այ հօր եւ որդոյ հոգոյ սրբոյն արդ ես ստացող նը գիրքս հալալ ինչից իմոց հիշատակ հոգոյս իմոյ եւ ծնօղաց իմոց հիշատակեայ եղիսաբն թիլին ծատուրնուկան աղիզն էթար հուռումնիմաէն հայր օհանէս ով [illegible] էրր? լողղաց որք ողորմի ասօղաց ամէն հայր մեր [illegible] ար ովանէսին վի ետկարն հուռում խաթուն ակուլն թամամ խանում:

Էջ 2ա. Շնորհօք եւ ողորմութբ ամենազորին. այ ես նուաստ եսայիս որ եմ գուլստանցի որդի հեորքին. վերջին ստացա այս Խորհրդի մեկնիչս աղատելով ի ձեռաց անօրինաց եւ ետոյ վախմ եւ յիշատակ փառաւոր ուխտին նը երից Մանկն"ց վանից. ձեռամբ քեռին իմոյ ներսէս կթղկոսին աղուանից. անջինջ յիշատակ մն իմ հոգոյս եւ ծնողացն իմ գեւորքին եւ մօրն Պաջին, յիշեսցեն ընթերցօղք աստեղ ատենին մեծի խորհրդեան, եւս առաւել ամ զօրացեալ հարազատ եղբայրն իմ աղրահամ ուզպաշին, որ երկար կենօք պահեսցէ քն անփորձ, եւ ոլքս ընթեռնուք յամ ժամ յաղօթս յիշեցէք 'ի քս յոյսն ամէնից, դարձեալ յիշեցէք որդեկն իմ փոքրիկ Ովաննէս անուն որ մանուկ տիօք փոխեցաւ 'ի քն եւ եթող սուգ անմխիթար մնացելոցս, եւ ոլքս յիշէք յիշեալ լիջիք առաջի անմահ գառին այ: 'ի ռճհգ, թուին, մարտի ամսոյ ժ, հոգոցն հանկուցելոց, Հայր մեր որ յերկինս ասացէք մի ձանձրանաք:

Էջ 270բ. Զվերջին բառացող նը գրոյս, զո՞ր դաւիթ պ՞նտրն, զո՞ր խչո՞ն, զո՞ր բրդզն. զո՞ր անտոնն. զո՞ր սո՞գսն: Եւ զո՞րգս բանին աշակերտն: եւ զայլ միրնքն յիշեցէք բարի մտօք առ ած: Եւ ած զձեզ յիշէ ի բարին ամէն: եղիցի. եղ. թիւն. յղ. եր. յորժամ բերաք զսա մեծ անպտէն:

Էջ 270բ. եւ եւս յիշեցէք զգաբրիէլ տառապեալ վ՞րդպտս որ բազում աշխատ եղայ եւ կազմ. գիրայ հոգիս տկար անձնս անարժան ոչ են տեղիք իմաուե (իմաստութեան):

Էջ 271ա. դարձեալ յիշեցէք ի քս ըզնարկիզ տասն եւ զիւր դստերքն: չահպէկին: խանպէկին. եւ զաննամն: եւ զփէսա ղազարն, եւ ամ արեան մերձաւորացն, առողջութի եւ խաղաղութի: եւ ննջեցելոցն ա.քայութի. ամէն Ամէն: թվին ռճիդ ամին:

Էջ 271ա. Դ՞րձլ յիշեցէք ի քս, զղուլին եւ զիւր որդիքն. Մխիթարն: Ալեքսանն: Կարապետն: Ած իւրոյ ողորմութեանն եւ արքայութեանն արժանի արասցէ զվերոյգրեալ.քս ամենայն. ամէն. հայր մեր որ

Էջ 272բ. Ես արուեթիս առայ խորտուրդ պա. տարա+ի մ՞եկնիչ իմ հալալ ենչից իմոց տվի տր ովանէսին ով որ կարդայ զայ յիշէ հայր իմ պապին մայր իմ ..? եղբայր իմ մարտիրոս կիրակոսն ակօբն կողկիցն իմ [illegible]այրխանէն հանկուցէլ որդի օվանէս եւ [illegible]րէր. ով որ կարդայ՝ հիշէ հիշեալ լիցի:

Մագաղաթեայ պահպանակը անցման երկաթագրով է եւ հին ճառընտրի մը մնացորդ, ուր կը պատմուին Թադէոս առաքեալին քարոզութիւնները:

## 6.

## ՇԱՐԱԿԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 220: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 13,5×9,5×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ շատ մաքուր, մանրատառ, խազերով եւ միասին: — ԳԻՐ՝ մանր բոլորգիր. Թանաք՝ սեւ. տող 26: — ՆԻՒԹ՝ հաստ եւ շատ ողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ հին կազմը այժմ հանուած է: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր. միայն կազմը*

հանուելուն պատճառաւ սկիզբէն, վերջէն եւ մէջէն երկու տեղ պակաս են թերթերը: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 87բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐԸ, խորաններն ու սկզբնատառերը միայն կարմիր, բայց շատ նուրբ եւ արուեստաւոր: — Ամբողջ գրուածքին մէջ եւ ոչ մի տող յիշատակութիւն, որով գրիչ, թուական են բոլորովին անծանօթ: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Ալէքսան Բաղդասարեանի:

## 7.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐ. ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

?

*ԹՈՒՂԹՔ՝ արդի վիճակին մէջ 244: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×15×4 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին եւ շատ մաքուր: — ԳԻՐ՝ մանր նօտրգիր. թանաք՝ սեւ, սկզբնատառերն ու վերնագրերը միայն կարմիր՝ անզարդ. տող՝ 29: — ՆԻՒԹ՝ մաքուր, հաստ, շատ ողորկ եւ ընտիր սպիտակ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ, որուն վերջին կողը միայն կը մնայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր. բայց կազմը քրքրուելով սկիզբէն կը պակսի 5 թերթ կամ աւելի: Գիրքը կիսատ է. թէ մէջերէն տեղ տեղ տողեր բաց կը մնան եւ թէ ԿԱ քարոզը ընդհատուած կը մնայ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 243բ, 244բ, իսկ միւսները յետոյ գրուած են: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկան: — ԳՐԻՉ՝ Նսայի քահանայ, ստացող Յովհաննէս եպս. Թուական եւ տեղ անյայտ՝ յիշատակարան չգտնուելուն պատճառաւ: Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Զոհրաբեանի:*

**Մատեանս կը պարունակէ էջ 1—235 Քարոզգիրք Գր. Տաթեւացւոյ. էջ 235բ քանի մը տող աղօթք. էջ 236ա—239ա Քարոզ յաղագս ծննդեան ոն մերոյ յի քի. բանն մարմին եղեւ եւ բնակեցաւ ի մեզ (կիսատ): Էջ 239բ—243ա բառարան (Ա. Բ. Գ տառերը միայն). էջ 244ա աստեղագիտական դիտելիք մը: Բացի քարոզգրքէն մնացեալը օտար գրիչներէ:**

Յիշատակարան. Առաջին գրիչը շատ քարոզներէ վերջ կը յիշէ իր եւ իւրայիններուն անունը. ընդ ամէնը կայ 46 այսպիսի յիշատակութիւն, որոնցմէ ամէնէն աւելի լրիւ են հետեւեալները.

Էջ 43ա. Մանաւանդ գշարագրող բանիցս զԳրիգոր բաբունին եւ զգծագրող եսայի քահանայն. եւ ստացող Յօհաննէս Եպիսկոպոսն, եւ զծնօղսն եւ զամենայն հաւատացեալս անուան իւրում սրբոյ եւ ինքն ձհլ եղիցի ամէն:

Էջ 137բ. Հայր երկնաւոր գթած եւ մարդասէր, Անարժան եւ անառակ ծառայս քո յեսայիս յերես անկեալ աղաչեմ ըզմարդասիրութ[իւ]նդ քո, գթա յիս որպէս յանառակ որդին, վճ զի յաղտեղեալ եմ մեղօք եւ անթիւ սխալանացն իմոց թողութիւն շնորհեա եւ ծնօղացն իմոց զԱբրահամն եւ մայր իմ (էջ 154բ կը նշանակէ մայրը "զհռիփսիմէն եւ զորդիսն իմ խաչիկն") եւ ձմ արեան մերձաւորացն իմոց, եւս Ուսուցիչս իմ զտէր ձծատուրըն կենդանեաց եւ հանգուցելոց, կարգացողաց եւ լսողացն. Ամէն:

Երկրորդական գրչէ կայ միայն էջ 86ա "Այս քարոզ գիրք վանեցի Եղիազար վրդպտին է եւ ես ծառ[այ] նորին Գէրէլ կարդացի. հասս այս տեղ. 1855 ամի մայիսի 12":

## 8.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՊԽԲ = 1393:

*ԹՈՒՂԹՔ՝ 343: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12×9×6 սմ. — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին, բաւական կանոնաւոր: — ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատառերը, վերնագրերն ու սկզբնատողերը կարմիր. տող 19: — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ. սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ զոթացերէն մագաղաթեայ պահպանակ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ. երեսը պատած է արծաթեայ անկիւնազարդերով եւ խաչով, որուն մէջտեղը կը գտնուի կանաչ քար մը: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբի եւ վերջի մասերը գործածութենէ մաշուած: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 95բ, 158բ, 255բ, 340բ եւ 343բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐՆ ու խորանները անարուեստ են: — ԳՐԻՉ՝ Բարսեղ քահանայ. ծաղկող Առաքել քահանայ. Թուական ՊԽԲ = 1393: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Ալէքսան Տէր Օհանեանի:*

**Մատեանս է Աւետարան. կը պարունակէ էջ 1ա—2բ Նախադրութիւն եւ ցանկ Մատթէի. 3ա—92բ Մատթէոս. 93ա—95ա նախադր. եւ ցանկ Մարկոսի. 96ա—155ա Մարկոս. 155բ—158ա նախադր. եւ ցանկ Ղուկասու. 159ա—253ա Ղուկաս. 253բ—255ա Ցանկ եւ նախադր. Յովհաննու. 256ա—338բ Յովհաննէս. 338բ—339բ Իբր կնոջն շնացելոյ. որուն վերջը կայ սա նկատողութիւնը. "Թէ կամիս գրել զաս ի կարգն ...համարքն է, զկնի այնմ բանի թէ քննեա եւ տես զի մգէ 'ի գալիլէէ ոչ յառնէ: պայէասայ ումեմն աշակերտի յովհաննու է գրած, որ յետոյ հերձուած խաւսեցաւ եւ խոտեցաւ: Եւսեբի է յասել զայս. յետոյ են գրեալ":**

Յիշատակարան. 92բ Զաշխատող սորա, եւ զծրողս, զբարսեղ կրաւնաւոր, եւ զծնողսն իմ եւ զեղբարսն, աղաչեմ յիշել առաջի բեմին քո։ եւ ած զձեզ յիշեսցէ ամէն։

93բ (Նոր գրչէ մը) Սռ աւետարնս պատկանի տր Յարութի քահանայ տր Օհաննէն որից տր Յարօթի հօգին առ ած աւանդեց 1893 ամի Նոեմբեր 10ին 13ին Թաղեց լելայ եկեղեցու հայաթ (իմա՛ Թաւրիզու Լիլաւա Թաղի եկեղեցւոյ բակը)։

158ա. Զգրաւղ սբ աւետարանիս զբարսեղ կուսակրաւն քահանայ. յիշեցէք առ ածն յն. եւ ած զձեզ յիշէ ամէն։

255ա. Զաշխատող եւ զգրող սբ աւետարանիս. զբարսեղ կուսակրաւն քահանայ. հանդերձ ծնողովք իւրովք. յիշեցէք ի քս. եւ ած զձեզ յիշէ։

Գլխաւոր յիշատակարան. էջ 341ա—342բ. Փառք եռանձնեա եւ համագոյ սբ երրորդութեն. Հաւր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ. պատճառին էից. եւ փրկողին արարածոց եւ նորոգողին տիեզերաց. փառք հանդերձ գոհաբանութբ. եւ երկրպագութի ծնութբ. եւ պատիւ բարեբանութբ. յանցեալն ներկայս. եւ յանըսպառն յաւիտեանս ամէն որում շնորհաւքն սկսաւ. եւ ողորմութբ նորին կատարեցաւ սբ եւ ածարան աւետարանս այս Նէ զի բազումք ի մարդկանէ առ զանազան իրողութիս ունին. զբաղձումն գիտաւորութեց։ եւ առ խափանելիսն գեղե(րին)[1]. իսկ ընտրեալքն յայ. զած. իր. ան... իս. ոչինչ համարելով միայն... առճառ անապառ ցնծութե... կատարել. եւ նովիմբ միայն զու... Յորոց եւ ծաղկեալս լուսով... մանգութենէ սրբութբ եւ պայծառամիտ մանուկս. ուսումնասէր անձն. եւ պանծացեալ հաւատով. ժրաջան մշակ. սբ եւ կուսակրաւն քահանայս բարսեղ. որ մեծաւ փափագանաւք եւ երանաւետ յուսով. վառեալ յածային սէրն. գրեաց զաւետարանս զայս. բազում աշխատութբ. միայն ինքն պատրաստեալ զամ նիւթ. գրեաց ձեռամբ իւրով. ոչ զոք ունելով աւգնական։ եւ կատարեալ զսբ աւետարանս. ի Թվ. հայոց. պխբ ամին. եւ ընթացեալ ինքն ի ճանապարհ ինչ. առ կաթուղիկոսն. եւ ի ճանապարհին. պատահեալ անաւր(ին)անց սպանեալ նահատակեցին զնա... այլ սրբութե վարուցն ընկալաւ. եւ ...եան հեղմանց պսակն. իսպա... առ որ ցանկացեալն էր։ որում (փառք յաւի)տեանս ամէն Նաեւ ես տր առաք(եալ)...եղբայր նորին բազում դա... փտելով զեղեալսն առ նայ. զեաւթն ամիս շուրջ գալով յերկրէ յերկիր բազում աշխատութբ. խնդրէի զեղբայրն իմ. եւ յետոյ գտեալ յայլոց. ի սարն որ կոչի եղջախոռ. եւ առեալ զնշխարս նորա. եդաք ի տապան ի վանս վաղարշոյ. առ սեմաւք դրանցն սբ կարապետին։ եւ յետոյ նոյն ես տր առաքեալ. ծաղկեցի զսբ աւետարանս եւ զյիշատակարանս գրեցի. եւ կազմեցի ի Թվ. հայոց. պծզ. ամի։ ի յիշատակ նահատակ եղբաւրն իմ բարսեղ քհայի. գրաւղի սբ աւետարանիս։

Արդ՝ աղաչեմ զամենեսին զսրբակրաւն քահանայս... ուխտաւորդ եկ(եղեցւոյ որք հանդ)իպիք սբ աւետարանիս... աւրինակելոյ կամ ժառա(նգելոյ...) յիշեցէք սրտի մտաւք ի (մաքրափայլ աղօթս) ձեր. զաշխատող սբ աւետարանիս զբարսեղ քահանայն. եւ զիմ աղալանաց նորա Թողութի խնդրեցէք ի քէ այ մերոյ. ընդ նմին եւ զդառնացեալս ոգով զտր առաքեալ. եւ զծնաւղսն մեր. զդաւիթ եւ զմէլիք. եւ զամ արեան մերձաւորսն մեր եւ զմեծ րաբունապետն մեր զգրիգոր վարդապետն եւ Թողութի խնդրեցէք յայ զամ աղալանաց մերոց. եւ յիշողացդ զմեզ առաջի այ եւ յիշեցելոցս. առ հասարակ ողորմեսցի քս ած մեր. եւ նմայ փառք յաւիտեանս ամէն։ (Կ)ամաւն ամենակալին այ։

Օտար գրչէ. էջ 343ա. Կամաւն այ ես խաչատուր երեց ստացայ զաւետարանս իմ հալալ ընչիւք ինձ եւ ծնողաց իմոց հաւր իմոյ ջալալին եւ մաւր իմոյ զըմրուտին եւ եղբարց իմոց աւագին ու սարկաւին ու տէնարղին ու ջունտաւագին ու կրսեր իմ եղբաւր իմոյ տիրաւագին յի ու դեռաբոյս մանկան իմոյ նամխաւշին. ու մեր ամենայն արեան մերձաւորացս. յՈրք կարդալով կամ աւրինակելով աւգտիք ի սմանէ Յիշեսջիք առ քս. Նա ած զձեզ յիշէ իւր արքայութե... նորահմաւտ եւ անար(ժան մեղ)աւորիս ողորմեայ քս (ած եւ) Զիս զծրողս յիշեայ ա(մէն)։

[1] Թերթերուն ծայրերը քիչ մը մաշած ըլլալով, տողերը տեղ տեղ կտրուած են։ Այս պակասները կը նշանակենք…։

## 9.

## ՄԵՂԵԴԻՔ

### ՌՃԼԸ = 1689։

*ԹՈՒՂԹՔ՝ 36: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×8×0,7 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, շատ մաքուր: – ԳԻՐ՝ մանր բոլորգիր. տող՝ 15. Թանաք սեւ. սկզբնատողերը կարմիր եւ ոսկեզօծ: – ՆԻՒԹ՝ ողորկ եւ սպիտակ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտ, Թղթապանակի ձեւով, երեսը ոսկեզօծ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-3ա, 36ա-բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ՝ շատ կան. ամէն էջ ունի զարդարուն շրջանակներ. մեծադիր պատկերներ սրբերու՝ էջ 3բ, 14բ, 20բ, 23բ, 33բ: Բոլորն ալ շատ գեղեցիկ ու շատ արուեստաւոր: – ԳՐԻՉ Պետրոս. ստացող՝ Տիրացու Աբրհամ. Թուական ՌՃԼԸ = 1689. տեղ Կ.Պոլիս. ծաղկող՝ Գրիգոր: – Ձեռագիրը այժմ սեփականութիւնն է Մեծ. Խաչիկ աղա Սարաճեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ Տօնական օրերուն երգուած եկեղեցական մեղեդիները՝ խազերով։ Ամէնէն վերջը կայ Տաղ Ս. Կարապետի։

Յիշատակարան. Էջ 3ը կնիք մը՝ սա մակագրութեամբ. «քհ. ծա. պետրոս վզպա.»։

Էջ 33բ. «Զպատկերահան գրիչողըն Յիշեսջիք ի տէր ով հարք եւ եղբայրք։»

Գ[illegible] յիշատակարան. Էջ 35ա. Ձեռամբ սուտանուն։ Իւ մղղեմ պետրոսին որ միայն զանունս ունիմ եւ զգործն ոչ. այլ յօտարացել 'ի նր անուանէ. եւ հեռացեալ եմ ի բարի գործոց Աղաչեմ Աղաչեմ զհանդիպողք այսմ գծիս Միով ամ ողորմիւ յիշել զանարժան գծօղս, եւ դուք յիշեալ լիջիք 'ի տէ մերմէ յնէ քէ։ Ամէն Ամէն Ամէն։ Արդ գծրեցաւ մեղեդիքս Կոստանդինուպաւլիս 'ի դուռն նր սարգիսի ամէն թվին ռձը. բարով վայելեսցէ տիրացու աբրէհամըն։

# 10.

## ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԵԱՆՑ

1826։

*ԹՈՒՂԹՔ 56. գրուած էջ 1-100։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×17×1 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, շատ մաքուր։ — ԳԻՐ՝ նօտր. տող 19-20. Թանաք սեւ, վերնագրերը սեւ կամ վարդագոյն։ — ՆԻՒԹ՝ հաստ թուղթ։ — ԿԱԶՄ՝ նոր կիսակաշի։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 10 էջ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐ չկան. բայց սկզբնատառերը գեղեցիկ թռչնագրեր են. սկիզբը կայ Ս. Մեսրոբի մեծադիր պատկերը։ — ԳՐԻՉ եւ անծանօթ. Թուական 1826? Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Զոհրաբեանցի։*

Մատեանս է «Յաղագս Աստուածային բացարձակ կատարելութեանցն այսինքն Աստուածային ստորոգելեացն». որուն համար գրքին առաջին էջին վրայ կ'ըսուի. «Արդ դուզնաքեայ բանս թարգմանեալ եղեւ 'ի լատինացւոց բարբառէ 'ի Հայոց լեզու 'ի ձեռն ուրումն լէհացի Ստեփննոս Կրօնւորի. ի փառս քի այ յուսոյն մերոյ Ամէն։»

Յիշատակագրութիւնք չկան. միայն էջ 56 կնիք մը սա վերտառութեամբ «ایستفان | Ս.Ն» (այն է Ստեփան). եւ ամէնէն վերջը՝ էջ 100, թուական մը. «յամի տն 1826»։

# 11.

## ԱՂՕԹԱԳԻՐՔ ԵՓՐԵՄ ԽՈՒՐԻՆ ԱՍՈՐՈՅ

?

*ԹՈՒՂԹՔ 68։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×2 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, ոչ կանոնաւոր։ — ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ. սկզբնատառերը երբեմն միայն կարմիր, անզարդ. տող 17-18։ — ՆԻՒԹ՝ թանձր անողորկ թուղթ։ — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ միջակ. սկիզբէն թերթեր ինկած։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 2 էջ. — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկայ բնաւ։ — ԳՐԻՉ եւն անծանօթ։ Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Տիգրան Մելիք-Զոհրաբեանցի։*

Մատեանս կը պարունակէ բաց ի Սրբոյն Եփրեմի աղօթքներէն, որ գրքին մեծագոյն մասը կը բռնեն, այն է էջ 5ա—54ա, նաեւ քանի մը աղօթքներ Ս. Գրիգոր Լուսաւորչի անուամբ, Վարդան Վարդապետի մաղթանք առ Ս. Աստուածածինն (Աստածին ամենօրհնեալ, պպաղատանս մեր ընկալ) եւ ուրիշ քանի մը կիսատ աղօթքներ։

Գիրքը ոչ մի յիշատակութիւն ունի։

# 12.

## ԱՂՕԹԱԳԻՐՔ

ՌՃԺԸ = 1669։

*ԹՈՒՂԹՔ 242, էջ 484։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13×9,5×4 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն։ — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. մէկ-երկու էջ նօտր, յետոյ նորոգուած. Թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատառերն ու սկզբնատողերը աղիւսագոյն եւ կարմիր։ Տող 17։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական գործածուած. սկիզբէն պակաս. թերթերը ղեղնած եւ աղտոտ։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, լուսանցազարդեր, թռչնագրեր եւն չկան։ — ԳՐԻՉ՝ Աւետիս. ստացող Տէր Եղիա աբեղայ. Թուական ՌՃԺԸ = 1669։ — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Աշէքսան Տէր-Օհանեանի։*

Մատեանս կը պարունակէ հետեւեալ աղօթքներն ու ճառերը.

1. Յովհաննէս վարդապետի Տէր ամենակալ Ած հզօր՝ էջ 1—17. 2. Մեղրիկ վարդապետի Ցաղագս աղօթից եւ զղջման մեղաց. Տէր տէր պարգեւօղ ողորմութեան. էջ 17—28. 3. Աղօթք Մեղրկայ. Աւրհնեալ ամենասբ երրորդութիւն. էջ 28—41. 4. Աղօթք Անաստասայ քահանային. Տէր մի սրտմտութեամբ յանդիմաներ. էջ 41—68. 5. Աղօթք մաղթանաց. Տէր նայեաց ի մաղթանս իմ եւ ի պաղատանս. էջ 69-97. 6. Նորին հսկօղի ի նոյն գրոց բանք աղերսանաց առ սբ երրորդութիւնն. Տէր Աճ բարերար անոխակալ. էջ 98—107. 7. Այսր հառաչանաց ողորմեա, ամենեցուն Աճ. Ամենակալ եւ անքննին ածութիւն. էջ 107—109. 8. Մեսրոպայ վրդպի ասացեալ աղօթք երեք ժամուց աւուրն, ընդդէմ դիւաց. Հոգի սբ այ, հոգի քո ան մերոյ. էջ 109—113. 9. Գառնեցւոյն ասացեալ Աղօթք ի հոգին սբ. Հոգի այ ած ճշմարիտ հոգի իմաստութեան. էջ 113—117. 10. Սարկաւագ վրդպին ասացեալ. Աղօթեա առ հոգին սբ. Անստուերլոյս եւ գոյացուցիչ. էջ 117—126. 11. Աղօթք Յոհաննու Հայոց վրդպտի ասացեալ, մականուն Սարկաւագի. Հայր ան մերոյ յի քի որ զամ գոյացուցեր. էջ 126—136. 12. Նորին Սարկաւագ վրդպտի աղօթք առ հայր. Արարիչ իմանալեաց եւ զգալեաց. էջ 136—151. 13. Աղօթք վեցերորդ ժամու աւուրն. Թագաւոր հզօր ապաւէն. էջ 151—155. 14. Գառնեցւոյ՝ Հայր երկնաւոր ած ճշմարիտ հայր հանդերձելոյ. էջ 155—159. 15. Նորին Յովհաննու ասացեալ աղաւթք իններորդ ժամուն առ որդին. Որդի այ ած ճշմարիտ որ վասն փրկութեան. էջ 159—166. 16. Մեսրօպայ վարդապետի Աղօթք իններորդ ժամու. Տէր բարերար եւ բազմագութ. էջ 166—178. 17. Աղօթք երեկոյին ժամուն Մեսրօպայ. Ած անեղ եւ յաւիտենական. էջ 178—183. 18. Յովհաննու Գառնեցւոյ աղօթք վս զղջման ժամուն. Աղաչեմ զքեզ տր. էջ 183—186. 19. Գրիգորի Նարեկացւոյ Աճ յաւիտենական բարերար. էջ 186—189. 20. Բանք աստուածայինք պիտանի ամ կրօնաւորաց, Անանիայի Հայոց վրդպի ասացեալ. Երեւեցո տէր զշնորհս քո. էջ 189—206. 21. Եփրեմի՝ Ո՞ որ անեղդ ես եւ անստեղծ. էջ 206—217. 22. Աղօթք երանելւոյն Մովսիսի Քերթողւոյ ասացեալ. Աղաչեմ զքեզ տէր. էջ 217—222. 23. Սկիզբն խոստովանութեան յայտնութիւն գաղտնեաց եւ պատմութիւն յանցանաց. Գրիգորի անյաղթ դիտնականի եւ հոգէմատեան հռետորի, որ էր բնակեալ յանապատին որ կոչի յեսաւանց. Արի ի խոստովանութիւնն ի գիշերի. էջ 222—237. 24. Մեղրկայ Յիսուս որդի Այ արարիչ եւ տէր. էջ 237—247. 25. Գառնեցւոյ՝ Աստանօր պիտոյ է մեզ ողբ հառաչանաց. էջ 248—258. 26. Տես տէր զտառապանս իմ եւ զցաւս հոգւոյ իմոյ. էջ 258—342. 27. Խրատ միակեցաց. Հայրն Սիւղեանոս նստէր ընդ եղբարս. էջ 343—379. 28. Յովհ. Գառնեցւոյ Յաւիտենից ած եւ արարիչ (աղօթք Կիր. բշ. գշ. դշ. աւուրց) էջ 379—387. 29. Տեսիլ սրբոյն Պօղոսի. Ես Պօղոս ադդմամբ սբ հոգւոյն. էջ 387—427. 30. Նորին հսկօղի աղօթք ի սբ ածածինն. Երկնաւորին դուռն. էջ 427—431. 31. Նորին աղօթք միջնորդութեամբ երկնային զօրաց. Սուրբք եւ սիրեցեալք. էջ 431—434. 32. Աղերսանք ի դէմս սբ Ածածնին. Անարատ մաքուր անշաղախ. էջ 434—465. 33. Ոսկեբերանի Անսկիզբն ած եւ անհասանելի. էջ 465—478. 34. Նորին Երկրպագեմք քեզ տէր ած մր. էջ 478—482։

Յիշատակարանք. Էջ 67. Ո՞վ նր ճգնաւորդ Տէր Եղիոյ, եւ կրօնիւ աբեղայ. ընթերցիր եւ կարդայ, եւ առաւել քան զառաւել աղաստասեա զամ՛քա աշխատօղս. աւետիս. յիշեա. ու մեղաց թողութի հայցեա. ինձ որ սպըրդեալ անկայ. եւ յաւիտենից փըրեցայ ու անողջանալի ցաւոյ։ Ո՞վ ով արքայից արքայ աղաւթիւք անաստասայ զաղոսկեալ անձն իմ կանխեա. եւ զհոգւոյս վէրս բժշկեայ, ես 'ի քեզ ով յուսացայ։ դու ով կրկին 'ի յիս գթայ. եւ զառաջին փառսն շնորհեայ աւետիս գծօղի սոյնյ։

Էջ 342. Ժճռ. էհչ. ծշր. դխն. բմս. բիմ. գրիչ յիշել աղաչեմ. հանդերձ ծնօղօք եւ հարազատօք. եւ յիշօղքդ յիշեալ լիջիք։ (Այս ծածկագիրը կը մեկնուի Աւետիս, որուն վեց տառերը ճիշդ այն պակասներն են, որ պէտք է լրացնել վերի վեց երրեակներուն մէջ, զանոնք ծանօթ (աժճռ, էհչւ, եծշր եւն) քառեակներուն վերածելու համար)։

Էջ 482 (Գլխաւոր յիշատակարան). Ըստացօղ նր աղօթամատոյցիս, հեզահոգի ով եղբէն, կրօնաւոր աբեղէն. յիշատակ հոգոյ իւրոյ եւ ծնողացն, հօրն յոհաննէսին եւ մօրն եւգինեայ. եւ կուսակրօն եղբօրն Գրգր ոսկգին եւ ամ հարազատացն. կենդանեացն. եւ ննջեցելոցն։ (Նոտր աղիւսագոյն գրերով, օտար գրչէ) Դարձեալ։ Յիշեցէք եղեայ կրօնաւոր։ Աբեղէն վայ որ անուամբս եմ եւ ոչ գործովս. յիշողք յիշեալ (նոյն առաջին գրչէն) ընդ սոցին եւ սէւղ աշխատողս 'ի սմինն, աւետիս լոկ անուն քննյս յիշցէք եւ ած զձեզ յիշեա։ Թվին. ռ. ճ. եւ ժր։

Էջ 484 (Օտար գրչէ). Թվ ռճկթ յուլիսի զ. եկի գնջս (= Գանձակայ) անդրէաս? եպնկս կեւ իզափել? Քրիսի թվին ռճիդ գրեցաւ։

## 13.

## ՏՕՆԱՑՈՅՑ ԵՒ ԽԱԶԳԻՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 153: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×7,5×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր. միասիւն: – ԳԻՐ՝ մանր բոլորգիր. Թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր. տող 18: – ՆԻՒԹ՝ մագաղաթ: – ԿԱԶՄ՝ թաւշապատ խաւաքարտէ, եռեւը եւ բոլորտիքը սեւ կաշիով. վրան արծաթեայ թելով հիւսուած կապիչ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբէն եւ վերջէն 1-2 թերթ պակաս. մնացեալը մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 6ա-բ, 29բ, 37բ, 44բ, 51բ, 65ա-բ, 72բ, 98բ եւ 123բ. միւսները յետոյ գրուած: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՆ ու խորանները քիչ եւ շատ հասարակ. զարդագրեր չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ: Յիշատակարան եւ ոչ մէկ հատ: — Ձեռագիրս Վանեցի Յովհաննէս անուն անձը բերած է Սեպերիայէն եւ այժմ սեպհականութիւնն է պպ. Կարապետ, Բագրատ եւ Սիսակ Յովհաննէսեանց:*

**Ձեռագիրս կը պարունակէ էջ 1—98ա Տօնացոյց. էջ 99ա—153բ խազգիրք (կանոնագլուխք, Թագաւորք ապաշխարութեան եւ Մարտիրոսաց, Ալէլուք Կէչէրօ-Բեան, Կիրակամտի իւղաբերից, Առաւօտու երգեր, ժամամուտր, Ճաշու մեսեդիք եւ Սաղմոսքերք):** Ասոնցմէ դուրս օտար գրչէ նախկին պարապ էջերուն վրայ գրուած են, էջ 18ա՝ Գույլկապի աղօթք, էջ 44բ՝ զանազան հացէներ բոլորովին նոր ժամանակի, 72ա՝ աղօթք մը, 72բ՝ դեղ մը, 80ա - բ՝ Ողբ առ խաչին, 123ա՝ նոյնպէս նոր հացէ մը. այս բոլորը նօտր կամ շեղագիր:

## 14.

## ԱՌԱԿԱԳԻՐՔ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ, ԲԺՇԿԱՐԱՆ ԵՒ ԼՈՒՍՆԱՑՈՅՑ

(ԺԷ. դար։)

*ԹՈՒՂԹՔ՝ 203: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×15×3,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ Առակագրքի մէջ նօտր. Աղեքսանդրի պատմութեան եւ Բժշկարանի մէջ բոլորգիր. իսկ Լուսնացոյցը մանր նօտր: – ԹԱՆԱՔ՝ սեւ, բայց գլուխները, սկզբնատառերը, Աղեքսանդրի կաֆաները, լուսնացոյցի եւ բժշկարանի ցուցակներուն մէջ զանազան թուահամարներ եւ նշանագիրներ կարմիր, վարդագոյն, աղիւսագոյն եւ գեղեցիկ կանաչ: — Տող՝ 23-25: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբէն եւ վերջէն, նաեւ 171 էջէն քանի մը թերթ պակաս է. մնացեալը տեղ տեղ կեղտոտուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 51ա-53ա, 102ա, 161բ, 183բ, 184ա, 193ա եւ 196բ, որոնցմէ մէկ քանին յետոյ գրչափորձերով լցուած: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ եւն չկան. սկզբնատառերն ալ հասարակ գլխագրով են միայն: – ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ, որովհետեւ տող մ՚անգամ յիշատակութիւն չկայ: – Թուականի միակ հետքը կը գտնուի լուսնացոյցներուն մէջ՝ որոնք շինուած են հայոց ՌՁԴ-ՌՁԷ եւ Քրիստոսի 1635-8 թուականներուն վրայ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Սիսակ Բժշկեանի:*

**Ձեռագիրս կը պարունակէ՝**

1. **Էջ 1—50բ՝ Առակագիրք, որուն առաջին թերթերը պակսելով խորագիրը կորսուած է. առակները վերնագիրներ եւ թուահամարներ չունին, եւ առանց նոր տողի միահետ կը շարունակուին մինչեւ վերջ՝ առանց որեւէ յիշատակութեան:**

2. Էջ 52ա—101բ "Պատմութիւն Աղեքսանդրու", որուն սկիզբէն եւ վերջէն պակաս է. սկիզբն է "քանզի առեն ընեքտանեփոս. վերջին Թագաւոր յեգիպտացւոց", եւ վերջը "Ի սարայպեանս մեհենի աղաւթականս բարբառի տեսեալ զարծիւն վայրենի": Ասկէ զատ պատմութեան մէջերն ալ պակաս են. որովհետեւ քան տեղ տասնեակներով տողեր բաց թողուած են՝ յետոյ գրելու համար, մանաւանդ ներմուծուած կաֆաներէն յետոյ:

3. Էջ 102բ—170բ՝ բժշկարան: Այս գրուածքը երկու որոշ մասերէ կը բաղկանայ. առաջին մասն է (էջ 102բ—161ա) բժշկական բառարան, որուն մէջ դեղերը շարուած են այբուբենական կարգով տակէ տակ աղիւսակներու մէջ եւ անոնց դիմացը զանազան տեղեկութիւններ. իւրաքանչիւր բառ նշանակուած է 5 լեզուով՝ հայոց, հոռոմի, ֆռնկի. յոյնի, պռսից. ասոնց դիմացը տարբեր աղիւսակներու մէջ՝ "Որպիսութի, Աղէկն, Բնութի, Չափն, Դուան որ յիշէ զդեղերուն զօրութինն„ եւ լուսանցքի վրայ թէ ի՞նչ բանի կը ծառայէ: Ընդ ամէնը կայ 354 բառ:

Երկրորդ մասը (էջ 162ա—170բ) կը պարունակէ բժշկական պատուէրներ, դեղագիրներ, միւռոնի պատրաստութեան ծաղիկները եւ 9 էջ (27 օրինակ) դեղերու անուններ՝ իւրաքանչիւր օրինակը առանձին հիւանդութեան համար: Այնպէս որ այս մասը առաջինին հակադարձն է. քանի որ առաջինին մէջ կը ցուցուի թէ այս ինչ դեղը որ հիւանդութեան օգտակար է, իսկ երկրորդին մէջ կը ցուցուի թէ այս ինչ հիւանդութեան դէմ ինչ դեղեր կան:

4. Լուսնացոյց տախտակներ հայոց ՌՁԴ—ՌՁԷ եւ Քրիստոսի 1635—1638 թուականներուն վրայ. սկիզբէն եւ վերջէն պակաս է. այժմ կը բռնէ ձեռագրին 171ա—203բ էջերը. ընդ ամէնը 32 տախտակ, որոնց իւրաքանչիւրին վրայ գրուած է "Աղիւսակս ցուցանէ զէ մոլորական աստղն թէ որ կենդանակերպի եւ

որ յաստիճանի եւ որ մասի են. հայեցք լուսնին հետ՝ աստղին եւ գլխոյն եւ ագեան. Հայեցք՝ աստղինն ի ամն„:

Յիշատակարան. Էջ 50բ. Ցի քի ծառայ Եղիայ. Ամէն:

Էջ 51ա. Յիշատակ է հակիմարանս Այս սարգիսն ամարան վարդապետին որ ետ իւր ծառայ գասպարին. օվոր կարդայ, ասէ ած իւրն ողորմեացէ: Ամէն: (ուրիշ ձեռքէ) Մկրտիչ բութֆանեան բժիշկեան: (ուրիշ) ես վաթան ծառայ:

Աստնցմէ զատ էջ 51բ եւ 52բ կան հաշիւներ (1841 թուէն), 52ա բանք սաղմոսին են, էջ 102ա գրչափորձ, բոլորն ալ օտար գրչէ եւ անպիտան:

## 15.

## ԲԺՇԿԱՐԱՆ

(1784-էն առաջ.)

*ԹՈՒՂԹ.Ք՝ 106: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×15×2,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ, սկզբնատողերն ու սկզբնատառերը աղիւսագոյն եւ կարմիր. տող՝ 23-27: – ՆԻՒԹ՝ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ կիսակաշի, խաւաքարտեայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմը քրքրուած, բայց ամբողջութիւնը զոհացուցիչ: – ԳԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, լուսանցազարդ եւ զարդագիր բնաւ չկայ: – ԳՐԻՉ, թուական եւն անծանօթ: – Ձեռագիրս բերուած է Նոր-Նախիջեւանի մօտ գտնուող Նյսկ քաղաքէն եւ այժմ սեփականութիւնն է Պր. Յարութիւնի եւ որդւոյն Պր. Գարեգնի Սարաֆեանց:*

Ձեռագիրս է բժշկարան, կը պարունակէ էջ 2ա—91ա՝ զանազան դեղեր թուագրուած մէկէն մինչեւ 800 (ա – պ). էջ 92ա—100ա Ցանկարան հէքիմարանիս որ Բիւրաւ գտանիս զոր ինչ կամիս. էջ 102ա – բ բառարան բժշկական բառերու, սկիզբէն եւ վերջէն պակաս. էջ 103բ – 104ա Ամառցոյց որ զինչ է պարտ ուտելոյ եւ պատրաստ կենալոյ օգուտ մարդոյ. Մնացեալը օտար գրիչներէ աւելցուած դեղեր, թըլըսմներ են:

Յիշատակարան. Էջ 1բ. Թվին ռճկզ ին ամսեանն սեկտեմբերի Թ՞ին ես մհսի պաղտասարի որդի պաղտասարըս ընծայեցայ որդի օվսէփ ած բարի զաւակ անէ. եւ բարի յիշատակ անէ. եւ խորին ծերութին ամէն. Թվին ռճկզ ին ամսեան նոյեմբերի ժբին որդին իմ առ ած բոխեցաւ հոգին բարեխօս ըլայ ամէն:

Թվին ռճլեին ամսեանըն փետրվարի իընին ես մհսի պաղտասարի որդի պաղտասարըս ընծայեցայ որդի Թորոս ած բարի զաւակ անէ եւ բարի յիշատակ ու եւըս խորին ծերութ՞ին պարգեւէ ամէն: (Այսպէս կը շարունակուին ռճլէ փետրվարի մէկին մ...քոն, ռճխին նոյեմբերի ժբին դուստր իմ ալմաս, ռճխը ամենն փետրվարի էին օվսէփ, ռճծին հոկտեմբերի էին մանուէլ):

Կողքերուն վրայ կան շատ աւելի նոր գրութիւններ, որոնք աւելորդ համարեցի յիշել. բուն գրչէն յիշատակարան բնաւ չկայ. բստ այսմ ձեռագիրը 1784էն առաջ գրուած է:

## 16.

## ՏԱՂԱՐԱՆ ԱՌԱՔԵԼ ԲԱՂԻՇԵՑԻՈՅ

?

*ԹՈՒՂԹ.Ք 108: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×15,5×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, սքանչելի մաքրութեամբ. – ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը եւ սկզբնատառերը միայն կարմիր. տող 15: – Նիւթ՝ հաստ եւ ողորկ ընտիր թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: – ԳԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-բ եւ 108բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, զարդագիր եւ ճակատ մէկ-երկու հատ միայն, բայց կանոնաւոր: – ԳՐԻՉ եւն անծանօթ. Թուականը 1434-էն յետոյ, որովհետեւ այս թուին է Բաղիշեցին: — Ձեռագիրը այժմ սեփականութիւնն է Պր. Յարութիւն եւ որդին Պր. Գարեգին Սարաֆեանց, որոնք բերած են Պոլսէն:*

Ձեռագիրս կը պարունակէ. էջ 2ա – 35ա Առաքել վարդապետի ասացեալ վասն չարչարանաց Սրբոյն Լուսաւորչին ի չափ ոտանաւորի. 35բ—88ա նորին Առաքել վարդապետի վս Յովասափու թագաւորին եւ բարլաամու ճգնաւորին. 8?բ – 104բ երգ պիտանի Յառաքել վարդապետի բաղչիշեցւոյ Ցաղագս մարմնանալոյ բանին այ. էջ 104բ – 108ա նորին ...գովասանութիւն ի պլպուլն եւ ի վարդն:

Մինչեւ էջ 35 ձեռագիրը սրբագրուած է նօտրագիր գրչէ մը եւ ուղիղ ձեւերը տողերուն վրան նշանակած:

Յիշատակարան. Էջ 1. "այս տաղն շրպճի գէրիգորին որդուն սիմայոնին է„:

Էջ 35ա (առաջին գրչէն ամենամանր տառերով) Եւ ես աղաչեմ զձեզ եղբարք գծողի նոր մեղաց թողու՞թ խնդրեցէք եւ ստացողի. ած զձեր թողու ամէն:

## 17.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՋՁԴ = 1535** *Թուէն առաջ։*

*ԹՈՒՂԹՔ 117։— ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 26×17.5×2 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 20×5 սմ.։ — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր. տող 23. Թանաք սեւ. սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր եւ դեղին։ — ՆԻՒԹ՝ Թուղթ։ – ԿԱԶՄ՝ չունի։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ բոլորովին անգործածելի. կազմի չգոյութեան պատճառաւ բոլոր Թերթերը քայքայուած, մեծ մասը պատռած, պակասաւոր, ոմանց ծայրերը այրուած. ձեռագիրս կարելի է միայն հատակոտոր համարել։ – ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴՔ եւ խորանները յաջող նկարուած են։ – ԴՐԻՉ եւն անծանօԹ. Թուականը անշուշտ 1535 Թուէն առաջ է, որովհետեւ յիշատակուԹեանց մէջ կայ այս Թուականը։ – Ձեռագիրս մինչեւ 1904 ամառը կը գտնուէր Թաւրիզի մօտիկ Մուժամբար գիւղի Աներեւոյթ կոչուած մատուռին մէջ, իսկ այժմ սեփականուԹիւնն է Պր. Արմենակ Աղասեանի, որ մօտէ քրքրուելով փառուած ժամանակ ազատած է սոյն ձեռագիրը եւ տուն բերած է։*

**Յիշատակարան** (Ղուկասի վերջը օտար այլանդակ գրչէ մը). ես տէր զաքարս առի զբ աւետարանս ի հալալ ընչից իմոց եւ ծնողաց իմոց տէր ամատն մար իմոյ շահալամ պապին իմոյ տէր ածայտուր մամին իմոյ գոհայ մէլիք կողայկէցին իմոյ եայտկար սուլթան որդէմոյ Նախայարկայհակ Նազար փարիխան դուստր իմ իախիամառիխփառիխ[illegible] (այպէս) ով որ կարդայ ած այ ողորմի ասէք ծնողաց հոգոյն։ ամէն։ գիրք գնեցաւ ի Թվ հայոց։ Ջ. Ձ։ Դ։ ի Թավրիզոյ երէց։

(Նոր տակ այլ գրչէ) Արդ ես տէր զաքարս ֆրկեն գրեցի. Թոռն մեծ. տէր զաքարիս. հայրն իմ. Նազար. մայրն իմ բէկխի աչաց լուսԹան. որդին իմ. դիլանչին. գրեցի. Թվ. ռղԹ։

Աւետարանիս մէջ Ղուկաս այսպէս կը վերջանայ. «եւ էին հանապազ ի տաճարին գովէին եւ աւհէին զած. եւ ըստ համառօտագոյն պատմեցին այնոցիկ որք էինն ընդ պետրոսի։ Յետ այսորիկ ինքն յն յարուԹենէն մինչեւ ի մուտս արեւու առաքեաց եւ ետ ի ձեռս նց ըստ ծայրին զանապակին քարոզուԹին յաւիտենական փրկուԹե ամենայն արարածոց յաւիտենանս ամէն։»

Յաջորդ երեսն ունի հետեւեալը առաջին գրչէն. «Ողորմեա ինձ տր Աձ յայն մեծի աւուրն մինչ աչացս կողկողագին հայեցուածս ի բարձունս նկատիցի զքաղմակարծեան ուղղոյն զանզերծ ընԹացից զանփախչելին ճանապարհ յաչս բերելով մտացս տեսմամբ էանն յամի վրտանգեալ եւ յերդ բնակուԹե յարկիս նրկատեալ ՚ի խորոց աներեւուԹից զգործելոցս ողբալով հաշեմ։ Կարող ես բարեգուԹ եւ անդ հրաշագործել յաւէտ զաւրեզուԹն աւելով Թէ եղիջիր ողջ յոգոյդ խորտակմանէ. եւ կամ Թողեալ լիցին քեզ մեղանք քո եւ կամ Թէ երԹ ի խաղաղուԹի սրբեալ ի մեղաց եւ քեզ փառք յաւիտեանս ամէն։

## 18.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

(ԺԸ. դար։)

*ԹՈՒՂԹՔ՝ 218։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×17×4 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ զանազան տեսակ, բոլորն ալ միասիւն։ – ԳԻՐ՝ էջ 5-47 նօտրագիր, մնացեալը մեծ մասամբ շղագիր, տեղ տեղ դարձեալ նօտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը աղիւսագոյն, սկզբնատառերը ու սկզբնատողերը բալի գոյն։ Տող՝ 27-32։ – ՆԻՒԹ՝ Թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտեայ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր։ — ԴԱՏԱՐԿ՝ Թուղթ 168բ-175ա։ – ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴ եւն չկայ. սկզբնատառերը միայն խոշոր եւ գունաւոր։ — ԴՐԻՉ, տեղ անծանօԹ։ – Թուական՝ Թուի ԺԸ. դար, բայց վերջին ստացողը Մկրտիչ Բժշկեանց գրած է իրմէ շատ բան՝ 1859-1876 Թուականներուն։ – Ձեռագիրս այժմ սեփականուԹիւնն է Սիսակ Բժըշկեանի, ժառանգ նոյն Մկրտիչ Բժշկեանցի։*

Ձեռագիրս կը պարունակէ.

1. Հարցմունք Ս. կուսին եւ պատասխանիք Միքայէլի, էջ 1բ (կիսատ)։
2. Խրատ եւ Նասիեաթ օխտակարգ Նուշէրեւանի. էջ 2ա - 3բ (աշխարհաբար)։
3. Աշխարհս ունայնուԹեն համար –յ. Մարդ մի խելացի միշտ կը մտածէր. էջ 4ա – բ։
4. ԳուԹի փիլիսոփայի վերլուծուԹի ի ներածուԹին Պորփիւրի. էջ 5ա—47ա։
5. Կին մի երԹար յերուսաղէմ բազում ինչիւք. էջ 47ա։
6. Հարցմունք ՚որն գրիգորի լուսաւորիչին եւ պատմելոյ վնն հոգոց (հրեշտակի հետ խօսակցուԹիը). էջ 47բ—5°բ։
7. Հարցմունք ՚որյն բարսեղի կեսարացուն եւ ջատասխանիք եղբօր իւրոյ ՚որն գրիգորի էջ 53ա - 56բ։
8. Թումայ առաքեալ վկայեալ լուր եւ անտի յեղնդնիբոն եւ անտի ի Հնդկաց... էջ 57ա—58ա։
9. Անուշ քունիկն պալիս աչերն առել ա. (մանկական օրօր). էջ 58ա—բ.

10. Ոչխարն ասաց մոտ պահապան ունեմ (տրամախօսութիւն գայլի եւ ոչխարի). էջ 58բ 59բ.
11. Բարոյական խրատներ եւ առակներ. էջ 59բ – 61ա.
12. Կտակ վասն չարչարանաց եւ խաչելութեան... արտայհանեցեալ ի գրոց նրոց եւ շարայգրեցեալ ի յեպիսկոպոսէ Ցակոբայ որք կոչեցելոյ կոստանդնուպօլսի պատրիարգ... էջ 61բ—82բ։
13. Նամակ մը 1871 թուականով Լիլապար թաղի Ս. Սարգիս եկեղեցւոյ մասին. էջ 83ա։
14. Ածածնայ հարցմունք հրեշտակն միքայելի. էջ 83բ – 86բ։
15. Կտակ մեծի աւագ ուրբաթու համառօտապէս ժողովեցեալ ի գրոց. էջ 87ա—101բ։
16. Առակներ եւ հէքիաթներ. էջ 101բ – 103բ, 106բ, 110ա—բ. 116ա—բ, 117ա, 119ա—բ։
17. Նամակներու վերնագրեր, մուրհակներու եւ պայմանագրերու օրինակներ. էջ 104ա—122բ։
18. Բժշկարան. այն է զանազան դեղագրեր. էջ 122բ—167բ։
19. Հարցմունք Ս. Կուսին (քանի մը տող միայն). էջ 168ա։
20. Ընտանեկան ժամանակագրութիւն մը շատ նոր, 1899 – 1901 թուէն. էջ 175բ։
21. Պատմութիւն աղջիկ մանկանց. էջ 176ա—182ա։
22. Ութը այլեւայլ պատմութիւններ. էջ 182ա—187ա։
23. Խրատ խիկարայ իմաստոյ. էջ 187բ—195ա։
24. Պատմութիւններ. էջ 195բ—197ա, 202բ - 203ա, 216բ 217բ։
25. Հարցմունք Ս. Կուսին եւ պատասխանիք Միքայելի. էջ 197բ—202ա։
26. Բատմութին վան պղինձէ քաղաքին. էջ 203բ - 213ա։
27. Պատմութին թաւայորին փահլուլի. էջ 213բ—216բ։

Ասոնց մէջ հին են միայն թիւ 4, 12, 15 եւ 17. մնացեալը աւելցուած են վերջին ստացողէն, բոլորովին նոր ժամանակներ, այն է 1850—70։ Մուրհակներուն մէջ կը յիշուին 1761, 1762, 1785 թուականները իբր օրինակ։

Յիշատակարանք. 52բ. 1865ին յուլիսի 24ին օվ որ կարդայ մէկ ողորմի տար ստորայ գրողիս մկրտիչ ստեփաննեան բժիշկեանցս. թաւրէժ լինալոյ։

53ա. 1871 ի թիւին նոյեմբերի մէկին գրեցաւ դարվէժ։

102ա. 1875 յուլիսի 10ին։

168ա. 1875 սեպտեմպերի մէկին։

197բ. 1876 սեպտեմպերի մէկին գրեցի մկրտիչ ն բժիշկեանց ի դաւրէժ։

202ա. Աս իս մկրտիչ ստեփաննեան բժիշկեանց գրեցի ի գուղն բաշղալան 1859ին սեպտեմբերի 3ին։

218ա. 1866 – 1870 թուականներէն մէկերկու դէպքեր, ինչ. 1866 թաւրիզի խոլերան, 1868 Գրիգոր եպս.ի այցելութիւնը Էջմիածնէն, եւն։

## 19.

## ԲԺՇԿԱՐԱՆ

(ԺԹ դա՛ր։)

*ԹՈՒՂԹ.Ք՝ 163. էջք 326. նշանակուած է 336 որովհետեւ 90—99 փախցուած է: — ՄԵԾՈՒԹԻՒՆ, 21,5×16,5×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ նօտր, շղագրի մօտ. թանաք՝ սեւ. քանի մը թերթ միայն վերնագրերը կարմիր. տող՝ 21-22: — ՆԻՒԹ՝ կապոյտ անողորկ թուղթ: — ԿԱԶՄ՝ քուրձով պատած խաւաքարտէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ զոհացուցիչ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 5 եւ 334-6: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐ եւ զարդագրեր չկան: — ԳՐԻՉ եւն անծանօթ. թուական անծանօթ, բայց կայ ՌՄԿԲ թուի յիշատակութիւնը: — Ձեռագիրս սեփականութիւնն է այժմ Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի. որ ժառանգեր է իւր մօրեղբայր Վանի Իբրահիմ-Բէկեանցէն:*

Բովանդակութիւնն է. էջ 1—2 զանազան հաշիւներ եւն. 3—4 յաղագս շարժել ատամանց եւն. էջ 6 սկսած է բուն բժշկարանը՝ որ անընդհատ կ'երթայ մինչեւ էջ 333։

Յիշատակարանք. (առաջին կողի վրայ օտար գրչէ) "ի ամկս փրկչին ԺԲ ումն վճացի զբանն մեր. ողն (ուղիղն) եւ կորիւն պնտումք իմն յունա՛ 12"։

Էջ 168 լուսանցքի վրայ օտար գրչէ գրուած է միայն "1848"։

## 20.

## ԲԺՇԿԱՐԱՆ

(ԺԹ. դա՛ր.)

*ԹՈՒՂԹ.Ք՝ 60: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 19×13×1,3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր, անցման նօտր եւ շղագիր. թանաք՝ սեւ. մէկ երկու տեղ կապոյտ. կարմրատողեր չկան. տող 22-23: — ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կարմիր կաշեայ՝ առանց խաւաքարտի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ, թէեւ գրութիւնը խառնակ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ շատ կայ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐ եւ զարդագրեր չկան. իւրաքան-*

չիւր էջ վարդագոյն շրջանակով: – ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ: – Ձեռագիրս սեպհականութիւնն է այժմ Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իւր մօրեղբայր Վանի Իբրահիմ-Բէկեանցէն:

**Մատեանս է բժշկարան. բառարանի կարգով շարուած են հիւանդութիւններն ու դարմանները, իւրաքանչիւր գրէ յետոյ թողլով բաւական բաց տեղ ապագայ տեղեկութեանց համար. ատով դատարկ թուղթերու թիւը բազմաթիւ է։**

**Յիշատակութիւն չկայ բնաւ, բայց գործը շատ նոր ժամանակի է։**

## 21.

## ՌԱՄՋԱՐԿԻ ԳԻՐՔ

(ԺԷ – ԺԸ դա՞ր։)

ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 36. նշանակուած է էջ 1-86, որմէ պակաս են 47, 48, 59, 60, 75-84 եւ 86 էջէն անդին եղածները. նոյնպէս էջ 1 յետոյ նշանակուած ըլլալու է, որովհետեւ գիրքը սկիզբէն ալ պակաս է: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17×10,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. թանաք՝ սեւ. կարմրատառեր չկան. տող 27: – ՆԻՒԹ՝ բարակ թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ. ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴ եւն չկան. սկզբնատառերը մեծ երկաթագիր սեւով: – ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իւր հօրմէ:

**Ձեռագիրը կը պարունակէ գիր բանալու (ռամլ զարնելու) արուեստը, օրինակ գող գտնելու, գանձ հանելու, ճանապարհի բարին ու չարը իմանալու եւն եւն։**

## 22.

## ՎԻՃԱԿԱՐԱՆ

(ԺԸ—ԺԹ դա՞ր։)

ԹՈՒՂԹՔ՝ 28: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×0,8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. թանաք՝ սեւ. կարմիր եւ կանաչ սկզբնատառերով, տող՝ 26 եւ 20: – ՆԻՒԹ՝ թուղթ, կէսը կապոյտ գոյնով: – ԿԱԶՄ՝ թղթակազմ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ գործածութեամբ աղտոտած, բայց լրիւ: – ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 12ա: – ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴ եւն չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ: – Ձեռագիրը այժմ կը պատկանի Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իր հօրմէն:

**Կը պարունակէ. էջ 1—11բ լուսնի եւ կենդանակերպներու աղիւսակներ, զանազան դէպքերու բարին ու չարն իմանալու համար. էջ 12բ վիճակ քաշելու շրջանակ. էջ 13ա—28բ վիճակի տաղն եւ վեց ոտանաւորներ։**

**Յիշատակութիւններ բնաւ չկան. Ձեռագիրը կրնայ ըլլալ ԺԸ-ԺԹ դարերէն.**

## 23.

## ԼԵՀԱՑԻՈՅ ԲԱՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆՔ

?

ԹՈՒՂԹՔ՝ 215. – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13×10×3 սմ. – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր միասիւն: – Գիր՝ նօտր. թանաք սեւ, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ նոր եւ մաքուր: – ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա եւ 213ա-215բ: — ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴ կամ զարդագիր բնաւ չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ՝ յիշատակարանի բացակայութեան պատճառով: -- Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Յովհաննէս Յովհաննէսեանի:

**Մատեանս է "բանք իմաստասիրականք եւ ածաբանականք՝ համառօտաբար իբր սահմանօրէն արտագրեալք եւ հաւաքեալք ըստ այբուբենից, աշխատասիրութեամբ լեհացի ստեփաննոսի բանասիրի"։**

## 24.

### ՀԱՄԱՅԻԼ

**ՌՃԻԹ** = 1680?:

*Իրարու փակցուած թերթերով կազմուած երկար թուղթ մըն է, որուն երկարութիւնն է 4 մէթր 17 սմ. իսկ լայնութիւնը 10 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: — ԳԻՐ՝ նոտր. թանաք՝ սեւ. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող ընդ ամէնը 341: – ՆԻՒԹ՝ թուղթ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր, բայց թղթերը քանի մը տեղ կտրուելով՝ այժմ ամբողջը վերածուած է 5 կտորի: — ԴԱՏԱՐԿ է համայիլիս ամբողջ ետեւի երեսը, բացի 5 տող երկրորդական յիշատակութենէ մը: – ՀԱՄԱՅԻԼՆ ունի 13 մեծադիր պատկեր, որոնք են Խաչելութիւն Յիսուսի, Մարիամ Աստուածածին, Ս. Գէորգ, Ս. Սարգիս, Զենումն Իսահակայ, Աւետարանչէն պատկերներ եւ այլ սրբանկարներ: — ԳՐԻՉ՝ անծանօթ. տեղ՝ Կ. Պոլիս, թուական ՌՃԻԹ = 1680, բայց թուի կասկածելի: — Ձեռագիրն այժմ սեփականութիւնն է Պր. Սրապիոն Գրիգորեանի:*

**Համայիլս կը պարունակէ.** 1. **Աղօթք վա կապանաց դիւաց եւ կախարդաց եւ աղանդաւորաց եւ վա դատաստանին... Թագաւոր հզօր ապաւէն ծառաելոց:** 2. **Աղօթք ամենասուրբ ածածնի. Ով ամենասրբուհի ածածին. պարծանք կուսութեան ճրագ պայծառ...** 3—5. **Այլ եւ բարեխօսութեամբ (երեք յաջորդական շրջանակներու մէջ յիշուած են բազմաթիւ սուրբերու անուններ).** 6. **Աղօթք սբ երրորդութեան. Հայր սբ որբեայ զիս. մարմին քի մաքրեայ զիս.** 7. **Աղօթք սբ զօրականացն քի. բարեխօսութեամբ սբ զօրավարացն սրբոյն գէորգայ...** 8. **Աղօթք չար աչից. եւ չար լեզուի: Հրայնիւթ հրափայլ հրատն.** 9. **Աղօթք գլխցաւի եւ աչացաւի: Գայր գետն յորդանան եւ բերէր ծառ մի...** 10. **Աղօթք երդման եւ պապանձութեան չար լեզուի. Երդմնեցուցանեմ զքեզ սա՞նյ. եւ չար դեւք.** 11. **Աղօթք աբրահամու նահապետի. Եւ էառ աբրահամ զորդին իւր իսահակ եւ տարաւ ի գենլիս.** 12. **Աղօթք սրբոյն սարգսի զօրավարին. եւ որդոյ նր մարտիրոսին. Երջանիկ մեծ զօրական. եւ քի յաղթող վկայն:** 13. **Աւետարան ըստ մատթէոսի. Եւ մտեալ ի կափառնայումն, մատեաւ.** 14. **Աւետարան ըստ մարկոսի. Մինչդեռ նայ զայն խօսէր գան ոմանք.** 15 **Աւետարան ըստ Ղուկասու. Եւ եղեւ ի շաբաթու. երկրորդումն.** 16. **Աւետարան ըստ յոհաննու. Յետ այսորիկ տաւն էր հրէից:**

**Յիշատակարան.** — **Առաջին գրիչը աղօթքներուն վերջը «ծառայ Այ» ըսած եւ թողած է. նոր գրիչ մը սոսր ծայրը աւելցուցեր է «Նազլուին», կամ «եղիազարին. բէկիջանին», «Նազլուին օգնական եւ պահապան եղիցի ամէն»:**

**Ամբողջին վերջը դարձեալ նոր գրով. «գրեցաւ կպրիանոսըս թիւն ռճիթ սեպտեմբերի Ի օրն ի կոստ·նդինուպօլսումն . .»**

**Ետեւի կողմի յիշատակութիւնը նոր գրչով. «եւ այս կպրիանոս էս հմյոնցի (= համատանցի) օհանէսինս է եւ շնորհեցի իմ ձեռամբս եւ իմ կողակից արթենի դուստր Նազլուինէն բարւք վայելեսցի ամէն գրվեցաւ թվին** 1203 **ամէն»:**

## 25.

### ՏԱՂԱՐԱՆ

1857:

*ԹՈՒՂԹՔ 80: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×17×1,2 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ քաւական մաքուր, միասին: — ԳԻՐ՝ շղագիր. թանաք՝ սեւ. կարմրատողեր չկան. տող՝ մեծ մասամբ 20: — ՆԻՒԹ՝ նոր տեսակի գծաւոր վաճառականական հաշուետետր թղթեայ: – ԿԱԶՄ՝ թղթապատ խաւաքարտէ, ետեւը սպիտակ կաշի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 80բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ չկան. բայց տաղերուն առաջին տառերը գունաւոր զարդարուն թռչնագրեր են, իսկ միւս տուներուն առաջին տառերը սեւ խոշոր երկաթագիր: – ԳՐԻՉ՝ Ստեփան Մկրտչեան Բժշկեանց. տեղ՝ Դաւրէժ. թուական 1857 եւ աւելի յետոյ զանազան ժամանակներ: – Ձեռագիրն այժմ սեփականութիւնն է առաջին գրչին ժառանգ Պր. Սիսակ Բժշկեանի:*

**Ձեռագիրս կը պարունակէ հետեւեալ տաղերը.** 1. **Ի գնալ գարնան ես քեզ ճարոտ մնացի.** էջ 2ա—4բ: 2. **Առաւօտեան քաղցր եւ անուշ հովերն.** էջ 4բ, 7ա: 3. **Ի յանեղէն լուսոյ ընտրեալ հարսն երկրի.** էջ 5ա—7ա: 4. **Ի խիթմանէ խղճիս խարեալ խոցոտիմ.** էջ 7բ—9բ: 5. **Եսայի նոր մանուկ ի սեր քո այրիմ.** էջ 10ա—բ: 6. **Ես ետկար նոր մանուկ ի սեր քո այրիմ.** էջ 11ա—բ: 7. **Այսօր ցնծամք ճարելով.** էջ 11բ: 8. **Գոչեմ ձայնիւ արտասուական.** էջ 12ա—13ա: 9. **Յարեաւ Յիսուս նոր փեսայն ով մանկունք.** էջ 13բ—14ա: 10. **Հրաւէր սիրոյ հոգւոյն կողման աննիւթոյ.** էջ 14բ—15ա: 11. **Դու լուսեղէն տաճար ես.** էջ 15ա: 12. **Գարունք եանց ծաղկունք ամէն չորացան.** էջ 15բ—16բ: 13. **Վրդովմունք ունի աշխարհին ամպեր դուք եր էք որոտում.** էջ 16բ: 14. **Արփի անաղօտ ճաճանչ լուսահեղ.** էջ 17ա—18ա: 15.

Գցել ես սրտիս մէջն վառվառ կրակն. էջ 18ա—բ։ 16. Խնկի ծառի նման ես. էջ 18բ։ 17. Ցարփոյն անհուն սէր լուսափառաց. էջ 19ա—20ա։ 18. Երգնում արեւ արքայհական վարդ վարդ. էջ 20ա—բ։ 19. Միածին մայր եւ կոյս ապաւէն եւ յոյս. էջ 20բ։ 20. Կուռք ոսկեղէն յօրինեցայ բարձր մասեաց հոլովեցայ. էջ 21ա–22ա։ 21. Սիրտով սիրած սիրելի ես մէկ սիրական եմ ուզում. էջ 22ա—բ։ 22. Ասում ես դիմացիր ոնց դիմանամ միթէ. էջ 22բ—23ա։ 23. Վասն էր ջամիս քաւտժել աղքատիս չարաչար վիշտօք. էջ 23ա–24ա։ 24. Սեաւ եմ ես գեղեցիկ նազելի ցազելի. էջ 24ա—բ։ 25. Այսօր է Նոր օր եւ տօն ննծութեան. էջ 25ա–26բ։ 26. Առ քահանային գրէ (Նամակի սկիզբ). էջ 26բ։ 27. Դամբարան հրաշից դատակնիք հոգւոց. էջ 27ա–բ։ 28. Մաքրայգուն արփոյն վառեալ արուսեակ. էջ 28ա—28բ։ 29. Զուարթունք յերկնից դուք յիս հայեցէք. էջ 29ա—30ա։ 30. Ի բորբոքեալ անսաստ սիրոյս սխրանաց. էջ 30բ–31բ։ 31. Բարովագիր. էջ 31բ։ 32. Մաքուր խմբից մարգարէից. էջ 32ա—33ա. 33. Ցարփոյն անհուն ննջման ի քուն մրձեցեալ. էջ 33ա—34ա։ 34. Պարծանք մասեաց յառաւօտեան ցօղով լուսով լցեցան. էջ 34ա—35բ։ 35. Ցարփուն սիրոյ շողն որ շրթամբք շողշողէր. էջ 35բ—36բ։ 36. Գարնան աղէգն շողս արձակեալ ի յերկիր մեր յոյժ փայլէ. էջ 37ա—բ։ 37. Եար է մենէս եար է մէն էս տիլպար է մէնէս. էջ 38ա։ 38. Էյ քօմուլ ջան քօմուլ գօր բուլթիլ (Թրք.) էջ 38բ—39ա։ 39. Անաստուած անաստուած էտ ինչ բէս պանեբ. էջ 39ա–բ։ 40. Բոյրդ սալբի չինարի ծոցդ գուլի շան ունիս. էջ 40ա—41ա։ 41. Սիրտով սիրած սիրելի ես մէկ սիրեկան եմ ուզում. էջ 41ա–42ա։ 42. Փութայ առ մեզ նազշուն ջաքաւ. էջ 42ա–բ։ 43. Ցաւուրս յամիկ ես խնդամ հոգիս ուրախ եւ ես ցնծամ. էջ 42բ—43ա. 44. Արի իմ քաղցրիկ աղաւնի. էջ 43ա։ 45. Արէք ելցուք ի միասին ուրախութեամբ մտցուք այգին. էջ 43բ։ 46. Արի հոգի ջան ինձ եառ մի անիլ. էջ 43բ—44ա։ 47. Քաղցր ձայն ունի իմ սիրականին. էջ 44ա—45ա։ 48. Մարգարիտ կասեն ղանդի նապաթ ես. էջ 45ա. 49. Գայ քեզ պէս հողածին ինաան սիրելի. էջ 45բ—46ա։ 50. Այսօր տօն է ծննդեան աւետիս. էջ 46ա—բ։ 51. Մեզնից շատ առաջ կայր մին թագաւոր. հոգով դեռ արի. էջ 46բ–47բ։ 52. Բուլբուլ եմ բուլբուլն ասաց դետ մի գնայ եաղի գայ. էջ 47բ—48ա։ 53. Բոյրդ սալպի չինարի ծոցդ գուլի շան ունիս. էջ 48ա–բ։ 54. Ինձ շուտ մոռացաւ իմ սիրականս. էջ 49ա։ 55. Օգնեցէք ինձ սիրելիք սիրով սիրաբանս գնաց. էջ 49բ–50ա։ 56. Ասում ես քոյ սիրելին եմ դառնում ես լաղ եսանում. էջ 50ա–բ։ 57. Ինչ վասութիւնս տեսար ինձ եառ արիր հոգի ջան. էջ 50բ—51ա. 58. Ասում ես խեղճ ման գալով բոլորն ինձ արդար են ասում. էջ 51ա–52ա։ 59. Առանց քեզ եմ անմխիթար դուշա ջան. էջ 52ա–բ։ 60. Նոր ի նորոյ սիրելուցս սէր տեսայ. էջ 52բ—53ա։ 61. Որքան ցաւ է անխնամ սիրելու սէրին ջանալն. էջ 53ա–բ։ 62. Ներեցէք իմ անբախտութիւնս խորհուրդս ասեմ սիրական. էջ 53բ—54բ։ 63. Գնա՛ գնա՛ երկու լեզուանի սիրական. էջ 54բ–55ա։ 64. Քու մասին ով բարեկամ ասածս արդար եմ ասում. էջ 55ա–բ։ 65. Ամէն միտ ընկնելով սիրականս իմ տոչորվում է միանգամայն ջանս իմ. էջ 55բ—56ա։ 66. Ինչ մարդ սրտով սիրած սիրական չունի. էջ 56բ—57ա։ 67. Բացուիր նազելի վարդ ահա գարնան ժամանակի. էջ 57ա–բ։ 68. Մինչ երբ դու համափիւռ գովականս. էջ 57բ–58բ։ 69. Ասում ես աշխարհն դիփ ինձի գովական են ասում. էջ 58բ–59ա։ 70. Այգեպան ինչ ես անում շամբն բուրաստան չի լինի. էջ 59ա—բ։ 71. Քո սէրիդ կարօտովն բիւլբիւլի պէս տաղ եմ ասում. էջ 59բ—60բ։ 72. Կարդում եմ վարդուհի քու անունդ ոսխակի նման. էջ 60բ–61ա։ 73. Ապրիս համափիւռ դուն գովական աղջիկ ես. էջ 61ա—բ։ 74. Ախ իմ փոքրիկ բուրաստան ափսոս անջուր մնացիր. էջ 61բ–62ա։ 75. Այգեպան ինչ ես անում շամբը բուրաստան չի լինիլ. էջ 62բ—63ա. 76. Այսօր է նոր օր ի տօն ցնծութեան. էջ 63ա—64ա։ 77. Աշխարքս աշխարքէն կշտացաւ ես քեզանէն սով աչքի լուս. էջ 64ա–բ։ 78. Ամպն արեւէմէն ծլաց մայիս ամէն թացել ա. էջ 65ա—բ։ 79. Ալջայ դաղ բաշինդայ (Թրք.) էջ 65բ—66ա։ 80. Համբարձման ջան գիւլումներ. էջ 66բ—71ա։ 81. Լուսացաւ լուսացաւ աղօթքը. էջ 71ա։ 82. Աղջիկ արի մէկ պաչ տուր ջանիդ մատաղ. էջ 71ա—72ա։ 83. Եաթմիշդմ օթախդայ (Թրք.) էջ 72ա–73բ։ 84. Դէլեմ բի գեյրը թու բիքասի ուլֆաթ (պրս. եւ հայ). էջ 74ա—բ։ 85. Էշխիդ կրակը սիրտումս վառայ. էջ 75ա։ 86. Մէշ գիննի մամատամ (Թրք.) էջ 75բ։ 87. Տօմարական աղիւսակ 1848—1908 ամաց. էջ 76բ—80ա։

Յիշատակարան. Էջ 1ա–բ. 1862–1899 թուականներէն զանազան ընտանեկան դէպքերու յիշատակարան (ծնունդ, մահ եւն)։

Էջ 46բ. երկու քրօչ կօմովքն (իմա գովքն) 1878ին Սեպտեմբեր 4ին։

Էջ 49ա. 1858ին մայիսի 10ին ես գրեցի ստեփան մչեն (= մկրտչեան) բժիշկենց. 188.ին .ին յունվարի։

Էջ 62ա. 1880ին յունվարի մէջին դաւրեժ գրեցի ստեփան բժիշկենց լիլայվայ թաղի։

Էջ 76ա. 1896–7 թուերէն մէկ երկու տող յիշատակութիւն Նարեկատին շահի սպանման վրայ եւն։

## 26

### ԲԺՇԿԱՐԱՆ

**ԺԹ. դա՞ր։**

*ԹՈՒՂԹՔ՝ 136. էջ նշանակուած է միայն էջ 1-100: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21,5×17,5×1,8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ շղագիր. Թանաք՝ աժգոյն եւ աղօտ սեւ, տեղ տեղ կապոյտ. տող մինչեւ 40: – ՆԻՒԹ՝ սպիտակ եւ ողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ հասարակ կիսալաթ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 48-136. գրուած մասն է միայն էջ 1ա-47բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն չկայ: – ԳՐԻՉ եւն. անծանօթ՝ յիշատակարաններու չգոյութեան պատճառաւ, բայց թուի շատ նոր ժամանակի գործ: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Պր. Համբարձում Տէր Կարապետեանցի:*

**Ձեռագիրս է բժշկարան, առանց գլուխներու եւ դասակարգութեան կամ ցանկի. սկիզբէն մինչեւ վերջ 2—15 տողերէ բաղկացեալ կարճ հատուածներով կը շարունակէ խառն կերպով զանազան դեղեր եւ դարմաններ։**

## 27.

### ԱԽՏԱՐՔ

1810։

*ԹՈՒՂԹՔ՝ 264: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21.5×17×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ խառնակ եւ միասիւն: – ԳԻՐ՝ անցման նօտր, մօտ շղագրին. Թանաք սեւ, տող 20: – ՆԻՒԹ՝ կապոյտ գոյնով կոպիտ թուղթ, տեղ տեղ յետոյ աւելցուած սպիտակ թերթեր (այսպէս թղ. 6, 145-6, 173—208, 248-259): – ԿԱԶՄ՝ ամբողջ կաշի առանց խաւաքարտի: – ՀԱՆԳԱՄԱՆՔ զոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա—բ. 6ա, 145ա, 168բ—172բ, 188բ-196բ, 201բ-208բ, 238բ, 257ա-259ա: – ԶԱՐԴԱԳՐԵՐ եւն չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ: – ԹՈՒԱԿԱՆ՝ 1810: — Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Պր. Համբարձում Տէր Կարապետեանի:*

**Ձեռագիրս խառնակ ու անկանոն գրուածք մ'է, ուստի դժուար է տալ կատարեալ բովանդակութիւնը. կը պարունակէ էջ 2ա—5բ շաբթուան եօթը օրերուն չարն ու բարիին վրայ. էջ 6բ—27ա Այս է աղթարքի հեսապն. մարդոց եւ կանանց վիճակը ծննդեան օրուան որ կենդանակերպին պատահելուն համեմատ. էջ 27բ - 34բ նոյն՝ մարդոց եւ կանանց խառն. էջ 35ա—66բ Ռամլի աղիւսակ եւ ատոր 16 աչքերուն վրայ ամէն տեսակ գուշակութիւններ. էջ 67ա—87ա լուսնի օրերուն վրայ զանազան ֆանդեր, այն է կախարդական հնարքներ՝ սէր, ատելութիւն զարթեցնելու, գանձ, գող գտնելու եւն եւն։ էջ 87բ—90բ ամիսներու, շաբաթի եւ այլ աղիւսակներ, իրենց բացատրութեամբ. 91ա—114ա՝ 28 օրերու զօրութեան համեմատ զանազան գրկապներ, թըլսըմներ։ էջ 114ա—115բ Արդ եթէ կամիցիս զլոյսն գերազանցիկ տեսանել եւն, էջ 115բ - 121ա այս է որ թարգմանած էն արապ լեզուէն ի հայի որ լաւ խասիեաթ եւ զօրութիւն ունի այս... 21 արաբերէն (արաբերէն գրով եւ հայ տառադարձութեամբ) կախարդական աղօթքներ զանազան նպատակով. էջ 121բ - 123ա յաղագս քառասունք մեռանելոյ. էջ 123ա—132ա զանազան կախարդական գրեր. 132ա —144բ գեղեր, դայլկապ, դեւի աղօթք եւն. էջ 145բ—155բ լուսնի եւ կենդանակերպից վրայ բախտի եւ գուշակութեան աղիւսակներ. էջ 156ա—163ա կախարդական գրկապներ. էջ 163ա—165բ բժշկարան. էջ 166ա—168ա վասն չըղէրք կանանց զաւակի տեղ. Սողոմոն իմաստուն ժողովէց ամէն բժշկներն. էջ 173ա —188ա Նոր գրչէ յաւելուած՝ քաղուած նախորդներէն՝ լուսնի եւ կենդանակերպից վրայ օրերու եւ գործերու չարն ու բարին իմանալու համար. էջ 197ա—201ա կենդանակերպներու զօրութիւնը. էջ 209ա—218ա նոյնը թրք. եւ հայ. 218բ չարնեաթի աղօթք. 219ա վասն թրթուրի. 219ա—220բ վասն ցաւագարի, ջերմի, սիրոյ եւն. 221ա 225ա Աղօթք մը հանուած զանազան գրքերէ. ի սկզբանէ էր բանն եւն։ 225բ—226ա կախարդանաց աղիւսակք. 226բ ռամ չինելու ձեւը. 227ա—238ա Սողոմոնի եւ 33 դեւերու պատմութիւնը. "Ցամին տէրութեանն թագաւորին... սողոմոնի որդոյն դաւիթի" եւն. էջ 239ա—245բ վիճակացոյց կենդանակերպից վրայ. 246ա - 247բ զանազանք. 248ա—254ա վիճակացոյց այբուբենի վրայ. 254բ—256բ եւ 259բ թըլսըմներ (այս մասը 248—259 նոր գրութեամբ է եւ նախորդ թիւ 26 ձեռագրի գրիչը). 260ա—262ա կոկ ինան երին պասի տուշտի (երկնից եւ երկրի խօսակցութիւնը՝ ոտանաւոր՝ "Համբարցում օղլի օվանեսին չրաղի" հեղինակութեամբ). 262բ—264բ Հոգին մարմնին ասաց (ոտանաւոր)։**

**Յիշատակարան. միայն էջ 248ա (Նոր յաւելեալ մասին մէջ). Գրեցի այս գիրքս. Որ երրորդուԷն փրկէ զմեզ այսինքն Քրիստոնէին. Անօրէններէ ձեռքից. եւ Տէրն մեր յն քն զօրուԷ. կարօղուԷ տացէ Ռուսաց կայսերին. որ է պահապան Քրիստոնէից ազգին։ ամէն։ Մ. Ն. Ծ. Ն. Թ. Մ.։ (իմա ՌՄԾԹ = 1810 թիւ)։**

## 28.

### ԱԽՏԱՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ 120: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 17,5×10×2 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ խառնակ, միասիւն: – ԳԻՐ՝ անցման նոտր. թանաք սեւ, սկզբնատողերը կարմիր կամ դեղին. տող 19-25: – ՆԻՒԹ՝ սկիզբէն 9 թերթ սպիտակ, իսկ մնացեալը կապոյտ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԴԱՄԱՆՔ կազմահան եղած, թերթերը թափած. տեղ տեղ պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, լուսանցազարդ եւ զարդագիր չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ՝ յիշատակարանի բացարձակ բացակայութեան պատճառաւ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Սիսակ Բժշկեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. էջ 1ա– 9բ գիր, թըլսմ, աղօթք նազարի եւն. էջ 10ա – 23ա վիճակարան ըստ այբուբենից. էջ 23ա — 44բ վիճակարան ըստ ժբ կենդանակերպից. էջ 45ա—58բ 12 կենդանակերպներու հետ ծնած դեւերու եւ ատանց թըլսմներու վրայ. Հարցմունք Սողոմոնի դիւացն թէ որպէս հանդիպէք մարդոյ: էջ 58բ – 61ա բժշկութեան չորս գլուխ աւետարաններ. էջ 61ա—63բ 12 ամսոց օրերու բարին ու չարը. էջ 63բ—65ա վրան հպատուութեան առաքել վարդայպետէ տացեալ. Քան զամենայն գործս չարեաց (տաղ). էջ 65ա – 66բ բնութիւն մարդոց ըստ ամսաթուոց ծննդեան. էջ 66բ—110բ զանազան թլիսմներ եւ աղօթքներ դեւ հանելու, դեւ կապելու, ցաւեր ու ախտեր բուժելու եւն. էջ 110բ – 120ա բժշկարան. էջ 120բ 1845—63 թուականներէն ընտանեկան յիշատակարան, որոնցմէ յիշելի է միայն "1848ին յունիսի 4ին թաւրէզ հայերու տուներն թալայմիշ արան (կողոպտեցին)."„

## 29.

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՌՃԼ = 1681.

*ԹՈՒՂԹՔ՝ 213: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×16,5×4,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ կանոնաւոր, երկսիւն, իւրաքանչիւրը 16×5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր կամ կանաչ. տող 21: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԴԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր. մէկերկու տեղ (օրինակ Մարկոսի սկիզբը) թերթեր պատռած հանուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–2բ, 160ա, 210բ –213բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՆ ու պատկերները վերին աստիճանի անարուեստ: – ԳՐԻՉ՝ Եսայի քահանայ. տէր՝ գրիչը. տեղ Շաքիի Գուլստան գիւղը. թուական ՌՃԼ = 1681. – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս ունի ոչ Եւսեբեայ կանոնը, ոչ ցանկ, ոչ գլխակարգութիւնք եւ ոչ նախադրութիւնք. իսք կնոջն շնացելոյ գրուած է Յովհաննու վերջը:

Յիշատակարանէն այլ գրչէ. էջ 2բ. 1864 ամի օգոստոսի 19ին այս գիրս առայ մնաց աւագ եղնից տիմ.

Գլխաւոր յիշատակարան. էջ 209ա –210ա. փառք ամենայն երրորդութե՟ հօր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ. Այժմ եւ անզրաւ յաւիտեանս յաւիտենին ամէն: Արդ օրհնեալ ես քն ած մեր ստեղծօղ եւ արարիչ համայնեցից արարածոց քոց որդի ած կենդանոյ եւ կենդանարար միածինդ եւ մարդասէր ած ի քէն սարսեալ գողան իմանալի զօրութիք սրբասնեալ ածն բոչորից նք նք նք տր ած սաբաւովդ. լի են ամ արարածք փառօք քո: Դու տր տերանց եւ ած աստուծոց յաման ժամանակաց. վն մեր փրկութե՟ կամաւ հօր եւ հաճութե՟ նք հօգւոյդ խոնարհեցար յերկնից եւ մարմնացար յամէն ածհեալ նք կոյս ածածնէն մարիամայ եւ զատապարտեցեր զմեղս մեր ի մարմնի քում խաչեցար թաղեցար եւ յարեար. զդժոխս աւերեցեր եւ զհոգիսն ազատեցեր համբարձար փառաւք յերկինս եւ միւսանգամ գաս ոց ես դատել զերկոյտասան ազգն ՙիլի նովին բարեխաւս նք ածածնէն ազատեայ ըղհոգիս. Ամիրին: Հախնազարին: Մելքումին: Գողալին Պէկազին: Նազլուխանին: Եւ զմեղաւոր. գրչիս սուտ անուն եսայի էրեցիս ամէն: Արդ գրեցաւ նք աւետարանս. ձեռամբն եսայի քահանայիս եւ հայրն իմ. հախնազարն. եւ մայրն պէկազն. եւ հօրեղբայրն մելքումն: Որ էր աշխատաւոր առաւել քան զհայր: Որով բազում աշխատեցաւ ի վ՟ս իմ ի մանկութենէս մինչեւ ցայսօր. Որպէս յագեցաւ ի յագոյն իւրում. աշխատէ. այնպէս աշխատաւոր է ի վ՟ս իմ. մինչեւ կարգեաց զիս: Երեւս անկեալ աղաչեմք զձեզ. եղբայրք. այս մելքումես յիշեցէք ի քն լի-բերան եւ բոլոր հաւատով. Եւ զմիշողն յիշեալ. լիցի առաջի ածութեն ամէն: Կրկին անգամ աղաչեմք զձեզ եղբայրք Անմեղաւոր լերուք ի սխալութենէ. Որ առաջի գիրս է. չէր ուղիղ ուսեալ (նախապէս գրուած "չէին ուղիղ ուսուցեալ„), ի փափաքութենէս գրեցի. Արդ գրեցաւ նք աւետարանս: Յերկիրն շաքի ի գուղն գուլըստան ընդ հովանեաւ (մէկ բառ բաց) Եւ ի թվին ռճլէր: Որ եւ ածհեալ յածտն ամէն: Յիշեցէք ըստեփանոս սարկաւագս որ զթուխտս կոկեց—: (Աստ տակ նոր գրչէ) ի ժամանակին որում. նստեալ էր սարտարն. ի քաղաքն. կանջայ. եւ բազում բանակս ժողովեալ ընդ իւր:

## 30.

## ՏՕՄԱՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

### ՌՁԲ = 1633.

*ԹՈՒՂԹՔ՝ 315, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ մագաղաթեայ պահպանակ՝ միջին-մեսրոպեան երկաթագրով, մնացորդ հին աւետարանի մը: Նշանակուած է (2 թերթ սկիզբէն բաց թողլով) էջ 1-622. որոնց մէջ փախցուած են 312-3 եւ 615-6: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13,5×10×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17: – ՆԻՒԹ՝ սկիզբէն մինչեւ 336 էջը մագաղաթ. էջ 337—454 մագաղաթ եւ թուղթ խառն, իսկ 455 էջէն մինչեւ վերջ միայն թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ սկիզբէն երկու թերթ, էջ 408, 620—622: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագիր չկայ բնաւ: – ԳՐԻՉ անծանօթ. Թուական ՌՁԲ = 1633. տէր եւ տեղ՝ անյայտ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

**Ձեռագիրս կը պարունակէ.** 1. **Մեկնութիւն տոմարի. Զոր խնդրեաց Թումա վրդ. մեծափառանաց. ածարնակ որ ուխտին. Եւ սիրով ընծայեցաւ նորա կատարեալ յակոբ վրդպի ղրիմեցւ.** էջ 1 - 327. 2. **Նորին Յակոբ վրդպի ղրիմեցոյ յաղագս տոմարական մակացութեան թէ ի յորոց ի մարդկանէ արհեստաւորեցաւ.** էջ 327—345. 3. **Տաւմար արքայական որ է յոյժ դժուարիմաց. բայց միայն վարժիցն. Արքայական համարակութիւն այսպէս արա.** էջ 346—439 (**բազմաթիւ տոմարական գիտելիքներ, որոնք յայտնի չէ թէ մէկ ամբողջութիւն կը կազմեն, թէ առանձին առանձին հատուածներ են ասկէ անկէ հաւաքուած**). 4. **Ընդդէմ կորուսեալ ազգին այլազգեաց որք են կարապետ Նեռինն եւ Նոր հեթանոսք, հերձուածողքն արիոսի եւ կերինթոսի** (**այլազգեաց** 16 **մոլորութեանց դէմ պատասխաններ**). էջ 440— 579. 5. **Ի խնդրոյ Թովմա վարդապետի** (**ած**)**արնակ որ ուխտին մեծափառանից. Եւ ծառայաբար կատարեալ ճգնաւոր ածակիր հոգելից առն. Յակոբ վարդապետի Ղրիմեցւոյ Յաղագս ազգականութեան.** էջ 580—614. 6. **Առոր իբր յաւելուած Ներսէս կաթողիկոսի կազման բոլորակը՝ հարկաւոր բացատրութեամբ.** էջ 617—619.

**Յիշատակարանք.** էջ **բ. Տէ՛ր է իմ աւգնական եւ ես ոչ երկեայց՝ զի՞ արասցէ ինձ մարդ. Վա՜յ է ինձ.**

Էջ 137. **վա՜յ է գծողիս.**

Էջ 435. **վա՜յ է մոլորեալ խելագնար գրչիս.**

Էջ 439. **Գրեցաւ մեկնիչս ի թվս. ռձբ: լոյսն տեսողացն է. եւ բանն լսողաց. եւ շնորհքն այ սիրողաց այ.**

Էջ 583. **Եւ մեղաւորիս ած ողորմի սաս. որ յաղիւսակդ աշխատեցայ.**

Էջ 596. **եւ զմեղաւոր գծողս յիշեայ ի տր.**

Էջ 603. **եւ զմեղաւոր գծօղս յիշեայ ու ած ողորմի սաս.**

**Իսկ** էջ 344—5 **գրուած յիշատակարանը կը պատկանի Տոմարի հեղինակին. "Փառք անբաժանելի երրեակ անձնաւորութե եւ միակ բնութե հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն. Արդ ո՛վ բարունի եւ ածային իմաստութե ցանկացող հոգեւոր հայր իմ եւ եղբայր բաղձալի խաչատուր վրդպտ, առաջնորդ ածարնակ քրովբէագումար հաշտկաւոր նր ուխտի թումայի վանք անուանելոյ. Ահա եւ զայս եւս զխնդիր քո կատարեցի բազում աշխատութբ. եւ առաքեցես զաս եւ ըստ ուշիմ եւ Նրբահայեաց մտաց քոց որոնեսցես զպակասն լցուսցես եւ զաւելորդն կշռեսցես եւ զոր ինչ հաւանական գտցես. Տն մատուցանիցես զշնորհս եւ զփառս, զի նր են գանձք իմաստութե եւ ոչ հաւանականաւն տկարութես մեր ներեսցես. Զի թէպէտ խնդրելոյդ յաղթեալ ձեռնարկեցաք օժանդակութբ հոգւոյն սրբոյ, որ ոչ անտես առնէ զշահս հասարակաց օգտութե. Վն որոյ աղաչեմ զքոյն հեզութիդ սիրով բաղձանաց, զի յիմաստասիրելն քո, քոյովդ հանդերձ զհոգւոյ աղքատս քո. զմարտիրոս ասակ անուն անպիտանս եւ ի հառաչալից աղաւթս քո՝ մի մոռանայցես. այլ ի յիշելն քո եւ զած ողորմին յիշեսցես ողջ լեր ի տր. (Գրուած եւ յետոյ քերուած է հետեւեալը) Այլ եւ աղաչեմ զգաղափարողն սիրովն քն, զի զսակաւ յիշատակարանս իմ գրեսցես եւ ած զքեզ գրէ ի գիրն կենաց. Ամէն.**

## 31.

## ԳԻՐՔ ՄՈԼՈՒԹԵԱՆՑ

### ՌՃԻԵ = 1676.

*ԹՈՒՂԹՔ՝ 442. առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն մի մի թերթ մագաղաթեայ պահպանակները՝ անցման երկաթագրով, մնացորդ Մեկնութեան սաղմոսաց: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17,5×12×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ վարդագոյն. տող 25: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: — ԴԱՏԱՐԿ*

*ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-2բ եւ 441ա – 442բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ- ևւն միայն ուրուագծով: – ԳՐԻՉ՝ Զաքէոս. տէր՝ Յովհան- նէս վարդապետ. Թուական ՌՃԻԵ = 1676: – Այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք- Աբրահամեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Գիրք հաւաք- ման մելութեանց. մասն Ա. էջ 3ա—34բ: 2. Ցա- ղագս եօթն գլխաւոր մեղաց (ամէն մէկուն վրայ մանրամասն եւ երկար). էջ 35ա – 400ա: 3. Հաւա- քումն յաղագս տասն պատուիրանաց. էջ 400ա— 439բ: 4. Յիշատակարան. էջ 439բ 441ա:

Յիշատակագրութիւն (այլ գրչէ) էջ 2ա. Քարոզգիրքս այս անկեալ ի ձեռս պարսից անօրէն զօրացն զոր գի- տեալ ինձ խարայէլեան պետրէիս գնեցի եւ մատուցի սրբազնասուրբ հայրապետին հայոց Տեառն Դանիէլին. ի վայելումն նորին սրբազնութեանն առ ի յիշատակ ինձ պետրէ խարայելիս որ եմ ազգաւ յոյն եւ բնակեալ ի կարին եւ Այժմ վաճառականութեան աղագաւ եկեալ ի Թուրվէզ յամի Տն 1804 սեպտ" 20:

(Անդ՝ այլ գրչէ). 1814 ես մայհդեսի օվանէս գերեցի:

Էջ 3ա կնիք մը հետեւեալ մակագրութեամբ. "Գրքս. Սբ. Էջմէծնա է."

Էջ 164բ. երեք տող յիշատակութիւն մը, որ ջնջուած էր եւ հազիւ կրցայ կարդալ եւ ձեռագրին մէջ նոյնը դարձեալ գրեցի. "Գիրքս մելութեանց Սբ էջմիածնի (է). մի ոք համարձակեսցի իւրացուցանել. ապա թէ ոչ (զպատիժն?) յայ ժառանգեսցէ":

Էջ 400ա. Կատարեցաւ գիրք հաւաքման մե- լութեանց ի հերքումն մեղաց, եւ ի կատարումն առա- քինութեանց. յիշատակ յօհաննէս վդպի, առաջնորդի վանացն յովաննու որ յոտին արագածու:

Էջ 429բ. Զաքէոսս մեղօք շաղախեալ մի մո- ռանայք:

Էջ 437բ. Զզաքէոսս յիշեա.

Գլխաւոր յիշատակարան. Էջ 439բ—441ա. Աս- տանօր կատարեցաւ հաւաքումն Ժ բանեան օրինացն. ի փառս քրի որ է օրհնեալ յաւիտեանս Ամէն: Յա- նուցումն ընթերցօղաց: Փառք ամենայն երրորդութեն եւ մի ածուեն հօր եւ որդւոյ եւ ամենայն հգւյն. այժմ եւ". Արդ յամի ծննդեան փրկչին մերոյ ռ երորդի, Յ երորդի, Ի երորդի (= 1320). Թարգմանեցաւ գիրքս մելուեց եւ Ժ բանեան հրամանաց, ձեռամբ ֆրա պե- տրոսի. ազգաւ լատին. Տու (= աշխարհաւ) Պարա- գոնացի, ի կարգէ քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի, որ թարգմանէր ֆրա յակոբոս, ազգաւ հայ եւ նա ի կարգէ քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի. ի վերին վանս քռնայ (= Քռնայ). ընդ հովանեաւ Սբ ածածնիս որոյ առաջնորդ եւ հոգաբարձու էր յօհաննէս վարդապետն, որ մականուամբ կոչի քռնեցի (գրուած է փռնեցի). հիմնարկող կարգաց միաբանից: Յորոյ անուն շինեցաւ Սբ ուխտս: Իսկ ածաւէր եւ բարեպաշտօն պրոնն գօկի եւ ամուսինն իւր տիկին էլթիկն եւ յօհան վդպն եւ- ողքա գ եանն ինքնայօժար կամօք նուիրեցին զվանս կար- գին քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի տուրք յաւիտե- նական: Արդ վերոյգրեալ յօհան վդպն. Նոյնեւ պատ- ճառ բազում բարութեան, զոր ժողովեաց աստ վար- դապետք լատինացւոց, եւ հայոց տածելով զամեն ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ. եւ թարգմանեաց զայս ածա- շունչ գիրս. այլ եւ թարգմանէ գիրքս բազումս օգտ- շահս. եւ լուսաւորիչս. եւ ոչ այսչափ միայն: Այլ եւ եղեւ իբրեւ զհաւատարիմ լրտեսն յեսու Նաւեայ. մտա- նելով յերկիրն աւետեաց. ա(յսինքն) ի միաբանութիւն Սբ եկեղեցւոյն հռոմայ. եւ եբեր ազգիս հայոց զփրկական համբաւն. եւ առաջնորդեաց արժանաւորացն մտանել ի հնազանդութի գերագրական աթոռոյն հռոմայեցւոց. որ է մուտ եւ դուռն երկնից արքայութեն: Արդ որք ի գիր առնուք եւ օգտիք ի սմանէ. մեղաց թողութի խնդրեցէք յայ վերոյգրեալ աշխատաւորացս եւ նոցին երախտաւորացն: Եւս աղաչեմ զդասդ սրբազան ըն- թերցողաց եւ գրողաց, որք օրինակէք զգիրքս զսա- կաւ յիշատակարանս. եւ դուք յիշեալ լիջիք ի գիրն կենաց:

Եւ արդ եթէ ոք կամիցի զգիրս առանալ, պարտի զի եւ զգրեալսն որ ի նմա ի միտ առնուլ, ըստ ասա- ցելոյ ածահօրն դաւթի. սաղմոս ասացէք եւ ի միտ առէք: եւ զի երիս իրս արժան է բստանալ գրասի- րացն: նախ հեզ լինել առ ած իրս: Եկդ" խոնարհ առ ած ոք: Երր"դ. անյիշաչար առ ած անցաւորս: Ով եւ ստացեալ ունէր զայսոսիկ ընդ այլ ած առաքինուեցն եւ ազգի ազգի վարուցն. սրբազան եւ մեծ րաբունա- պետն Յօհաննէս. դաւառաւ արարատեան: Ի գեղա- քաղաքէն կարբու, սնեալ եւ վարժեալ, յածաբնակ եւ գերահռչակ հրաշափառ Սբ մենաստանս յօհաննու վանից: Ընդ հովանեաւ մեծի ամլորդւոյն եւ երանելոյ ամէնօրհնեալ բերանոյ փրկչին սրբոյն յովաննու Կարա- պետին. եւ հրաշակերտ Սբ կաթուղիկէին. որ յոտին արագածու՝ ի բնակութիս իշխանացն ամառունեաց. եւ ի նիստ կայանի արքեպիսկոպոսաց գաւառիս. հանդէպ մեծի լերինն արայի: ի վերայ կարճահօս եւ արագա- գնաց գետին քասախու: Որ եւ ընկալաւ առաջնորդուի Սբ ուխտիս ամս խ. որ աչա դեռ եւս հովուէ բարե- ձեւուի զվիճակեալ սեփհական ժողովուրդ ուխտիս. զգաւառս կարբու. եւ զինւոյ տան որ այժմ ասի շա- րապխանայ. եւ կէ"ոյն շիրակայ. որ եւ ընդ բազում արդեանցն որ ունի ի դրան Սբ կարապետիս. ստացաւ եւ զգիրքս մելուեց. եւ եդ յիշատակ ի դուռն Սբ կա- րապետիս. ի վայելումն մանկանց սորա. ի թուիս. ռ. ճ. ի. եւ ե. առ ի յիշումն ինքեան եւ վայելումն հո- գեւոր զաւակաց սորին: Իսկ որք ընթեռն յիշեն յա- ղօթս իւրեանց. զքաջ վդ"ն յօհաննէս: (Այստեղ թուղթ թերթ ինկած. յաջորդ երեսը այլ գրով գրուած եւ գրեթէ ջնջուած) Գիրք մելութեց Սբ էջմիածնի մի ոք համարձակեսցի իւրացուցանել ապա թէ ոչ անէծս ժառանգեսցէ: գրեցաւ ի թվին ռճլ դեկտեմբ" ա:

Պարզ է որ ձեռագիրս Ս. Էջմիածնի ձեռա- գրատունէն գողցուած է:

## 32.

## ՍՈՂՈՄՈՆ ԵՒ ԹՈՒՂԹՔ ԱՌԱՔԵԼՈՑ

### ՌՄԺԵ = 1766։

*ԹՈՒՂԹՔ՝ 280: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17×11×5,5 սմ. — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, առանց կարմրատառի. տող՝ 18: – ՆԻՒԹ՝ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր. կազմին առաջին կողը փրթելու վրայ է: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 252ա—բ, 273բ—276ա, 280ա—բ: — ԼՈՒՍԱՆՑԱՔԱՐԴ եւ զարդագիր չկայ. գլխաւոր գրքերու սկիզբները իբր խորան դրուած են սեւով ներկուած խազմզուքներ: — ԳՐԻՉ՝ Ստեփանոս քահանայ. տէր՝ գրիչը. տեղ՝ Կախոյ քարվանսարայ. թուական ՌՄԺԵ = 1766: – Այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Եկղեսիաստէս. էջ 1ա — 24բ։ 2. Երգ երգոց. էջ 24բ - 37բ։ 3. Իմաստութիւն Սողոմոնի. էջ 38ա — 77բ։ 4. Շարունակութիւն Եկղեսիաստիկի. էջ 78ա—100բ։ 5. Գիրք Առակաց. էջ 101ա — 170բ։ 6. Յակոբու Առաքելոյն թուղթ կաթուղիկեայց. էջ 171ա—180բ։ 7. Թուղթ Պօղոսի առ Հռովմայեցիս. էջ 181ա — 186ա։ 8. Կորնթացոց Ա. էջ 186ա—196ա։ 9. Կորնթացոց Բ. էջ 196ա—199բ։ 10. Գաղատացոց. էջ 199բ—200բ։ 11. Առ Եփեսացիս. էջ 200բ—202ա։ 12. Թուղթ Պօղոսի առ Փիլիպպես. էջ 202ա—բ։ 13. Առ Կողոսացիս. էջ 202բ—204ա։ 14. Թեսաղ. Բ. էջ 204ա—բ։ 15. Տիմոթ. Ա. էջ 204բ—206ա։ 16. Առ Տիտոս. էջ 206ա։ 17. Եբրայեցոց. էջ 206ա—216բ։ 18. Պետրոսի Ա. էջ 216բ—227բ։ 19. Պետրոսի Բ. էջ 227բ—235ա։ 20. Յօհաննու Ա. էջ 235ա—245ա։ 21. Յօհաննու Բ. էջ 245բ—246բ։ 22. Յօհաննու Գ. էջ 246բ – 248ա։ 23. Թուղթ Յուդայի. էջ 248ա - 251բ։ 24. Վասն ամսոց եղանակաց. Յունվար որ է հոռի թէ ի նոյն ամսոյ լուսինն խաւարի... էջ 253ա—266բ։ 25. Յաղագս երկոտասան տանուտերց. Յորժամ խոյն լինի տանուտէրն գարունն... էջ 267ա—273ա։ 26. Յիշատակարան. էջ 276բ։ 27. Պահոց օրերու աղիւսակներ. էջ 277ա—279բ։

Յիշատակարանք. Էջ 37բ. Առ նոյն յայնմանէ տուչութէ զի այսպէս ունէր։ Սայիադ նովույ գրէլ է։

Էջ 100բ. Գըրեցաւ ի Կախոյ քարվասարէն Ով ընթերցող յիշեայ ի Տր աղօթս քոյ զգծող մեղայպարտ ստեփանոս քահանյեայս եւ իւր ծնողացն մահտեսի կարապետին մօրն սառայէն եւ այլ ամ այրեանց մե (կիսատ թողուած)։

Էջ 170բ. Ով ընթերցող յիշեա ստեփանոս քհանայայս թլփսցի գրեցաւ կախ ռմժե։

Էջ 277ա. Թուին հայոց ռմժե. գիր տարւոյն ցոն է. տանուտէրն այծեղջիւրն է... Գրեցաւ ի կախոյ քարվասարէն. Ով ընթերցող յիշեայ զգծող գրչս մեղապարտ ստեփանոս քայհանայս որ սաեադ նովայ կոչեն եւ հայրն իմ մահտեսի կարապետն եւ մայր իմ սարրայ. եւ դուք յիշեալ լինիք յառաջի Այ ամէն։

Էջ 279բ (այլ գրչէ). մայհդեսի օվանէս զաղարի գիրեցի 1814 թարվիզ։

Առաքելոց թղթոց բաժնին մէջ ձեռագիրս լիակատար չէ, այլ կը ներկայացնէ քաղուածք մը։

## 33.

## ԲՆԱԶՆՆՈՒԹԻՒՆ

### ՌՃՂՋ = 1747։

*ԹՈՒՂԹՔ՝ 125: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×11×2 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր, թանաք սեւ. առանց կարմրագրերու. տող 20: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա-4ա, 122բ-125ա: — ԼՈՒՍԱՆՑԱՔԱՐԴ եւ զարդագրեր չկան: — ԳՐԻՉ, տեղ եւ տէր անծանօթ: – Թուական՝ ՌՃՂՋ = 1747 նոյեմբեր 1: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Ձեռագիրս է. Գիրք որ կոչի բնազննութիւն բոլորի մարմնոյ մարդկայնոյ. Արտադրեցեալ ի ճօան պաթիսթաէ պօռթայնոյ. եւ համառօտեցեալ ի փրանչեսկոսէ Սթելլուաթոյ. թարգմանեցեալ ի Յովհաննիսէ վարդապետէ կոստանդինուպօլսեցոյ, ի զուարճութիւն հայկազունեաց, ըստ խնդրոյ պարոն Գասպարի որդւոյ խոճա Սահրատին. ի յիշատակ յանձին իւրոյ եւ հոգոց ծնողաց իւրոց եւ ի վայելումն ընտանեաց նորին (էջ 5ա)։ Հայ վաճառականներուն ուղղուած կարճ դիմում մը եւք (էջ 5ա—բ), նախերգանքով մը կը դիմէ Ս. Գրիգոր լուսաւորչին, որուն կը ձօնէ այս թարգմանութիւնը (էջ 5բ – 6բ)։ Գիրքը կը բաժնուի 4 մասի, բազմաթիւ գլուխներով. Ա. Յաղագս թէ զիարդ բնազննութիւնք եւ կամ բնազննուք ի ձեռն նշանաց երեւեցելոյ ընմարմնոյ մտածիցեն զհակամիտմունս հոգոյն. էջ 7ա—48ա։ Բ. Յաղագս նշանից յատկութեանց եւ բաժանման բաղադրութեան մարմնոյ մարդկայնոյ (...Գլուխ մեծագոյն նշանակէ զքնափութիւն եւն.) էջ 48բ—80բ։ Գ.

Ցաղագս համագումարման նշանից մարմնոյ մարդկայնոյ. (Ներքին յատկութեանց արտաքին նշանները. օր. Առն արդարոյ բոլոր մարմինն է բարեխարմար, հերքն մթագոյնք են). էջ 80բ—92բ: Դ. Ցաղագս կերպից եւ եղանակաց, որովք մտածնելոց մերոց եւ այլոց ախտից մոլութեանց եւ վատթարութեանց դեղք եւ սպեղանիք (Ր. Ցաղագս թէ որպէս անգէտ ոք կարէ լինել գիտուն). էջ 92բ—113բ: Հոս կը վերջանայ գիրքը: Ասկէ յետոյ ուրիշ ձեռք մը հաւաքեր է զանազան բժշկական տեղեկութիւններ Գալիանոսէն եւն. էջ 114ա—122ա:

Յիշատակարանք. Էջ 1բ, 2բ. 3բ, 4ա գրչափորձեր եւ հաշիւներ օտար գրչէ:

Էջ 4բ այլ գրչէ. Գիրք իմաստութեն որ կոչի բընագննութին բոլորի մարմնոյ մարդկայնոյ. Ձեռնագննութին ալ կայ ուզողի. գրքիս գինն եար գրած է ով որ ուզէ առնու գիտողաց [Աւ] գիրք է չի գիտողաց անպէտ:

Էջ 113բ (բուն գրչէն) վերջ բնագննութե. ուճզզ նոյեմ„ ա̃:

Էջ 124բ (այլ գրչէ) մայհգեոի օվանէս զղաբեն. 1814:

Էջ 124բ, 125բ եւ կողի վրայ կան եւ գրչափորձեր եւ մէկ երկու տող ոտանաւոր:

# 34.

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ, ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

ՌՃԼԲ = 1683:

*ԹՈՒՂԹՔ՝ 194, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ մագաղաթ, մնացորդ մէջին-մեսրոպեան երկաթագիր աւետարանի մը: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20.5×15×4,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն. իւրաքանչիւրը 15,5+5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատառերն եւ սկզբնատողերը կարմիր. տող 24: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը վնասուած, թուղթերը գործածութեամբ ղեղնած, բայց գրութիւնը ամբողջովին անվնաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ լուսանցազարդ, զարդագիր չկայ մնաց: – ԳՐԻՉ՝ Մխիթար երէց. տեղ՝ Մոկաց գաւառի Նանենց գիւղ. թուական ՌՃԼԲ = 1683, ստացող անծանօթ: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Կը պարունակէ. 1. Առեհի Սաղմոս. էջ 1ա—108ա: 2. Հաւատով խոստովանիմ. էջ 108ա—110բ: 3. Կարգաւորութիւն հասարակաց աղօթից եկեղեցեաց հայաստանեաց որ կատարի ի մէջ գիշերի... էջ 110բ—112բ: 4. Առաւօտու ժամուն. էջ 112բ—120բ: 5. Արեւագալի ժամուն. էջ 120բ—122բ: 6. Երրորդ ժամուն. էջ 122բ—123բ: 7. Վեցերրորդ ժամուն. էջ 123բ–124բ: 8. Իններրորդ ժամուն. էջ 124բ–125ա: 9. Պատարագամատոյց էջ 125ա—142ա: 10. Երեկոյի ժամուն. էջ 142բ—147ա: 11. Խաղաղական. էջ 147ա—149ա: 12. Հանգստեան. էջ 149ա—151ա: 13. Մեղայ ամենասուրբ. էջ 151ա—152բ: 14. Տօնացոյց եւ աւետարանացոյց. էջ 152բ—194ա:

Յիշատակարանք. Էջ 1ա (շատ անվարժ գրչէ մը) բանք սաղմոսիս է պատ–ական (տուն մը միայն) Աբրահամ ծանեաւ զա̃ծ... (իբր գրչափորձ):

Էջ 41բ. Քն ա̃ծ մեր քո գըթութբ ողորմեա ըստացողի սորա (յետոյ 8 տող բաց թողուած):

Էջ 53ա. Տր ա̃ծ դաւթի մարգարէի բարեխաւսութբ ողորմի ըստացողի գրոցս (9 տող բաց):

Էջ 67ա. Ա̃ծ ողորմի ըստացողի գրոցս (2 տող բաց):

Էջ 79բ. Տր ա̃ծ յն քն աղաչանաւք նր ա̃ծածնին եւ դաւթի մարգարէին եւ ա̃մ նրոց ողորմի ստացողի գրոցս (4 տող բաց):

Էջ 92ա. Տր ա̃ծ յն քն ողորմեա ըստացողի գրոցս այս անուն (3 տող բաց):

Էջ 110բ. Ով դաք լոյսերամից յորժամ հանդիպիք սմա կարդալով կամ ուսանելով յիշեցէք ի նր յաղաւթս ձեր զստացող սորայ (այլ գրչէ) վերջին հանօն եւ իւր կողակցուն գուլաղին եւ որդոյն զիրաքին եւ կողակցուն. թագագուլին. եւ իւր որդոցն եւ դըստերաց ա̃ծ ողորմի ասացէք: Դարձեալ ա̃ծ ողորմի ասացէք հանօյին եւ եղբարց զիրաքին. սուքիասին եւ իւրեանց ծնօղաց լի բերանով ա̃ծ ողորմի ասացէք իւրեանց հոգոյն ա̃ծ ձեզ ողորմեսցի ամէն:

Էջ 125բ. Եւ յա̃մի. ողորմեա ստացողի սորա (բառ մը բաց) եւ գծողիս մխիթար իրիցուս ամէն:

Էջ 142ա (այլ գրչէ) ա̃ծ ոո̃մի հանօյին ամէն:

Էջ 152բ (այլ գրչէ) ա̃ծ ողորմի ասացէք հանօյին կողակցուն գուլաղին:

Էջ 174բ. Ջանա(ր)ժան գի̃չս յիշեայ ի քն:

Գլխաւոր յիշատակարան. Էջ 194ա. փառք ամենազաւր տո̃ւե̃ն քի̃ ա̃յ մերոյ. որ ետ չորող տկար ոգւոյ մխիթար իրիցոյ մեղապարտի: հասանել ի յաւարտ նր գրոցս որ է սղա̃արան տօ–նացոյց եւ աղաւթամատոց. Եւ արդ գրեցաւ սայ յերկի(ր)ս մոկաց. ի գիւղս որ կոչի նանենց ընդ հովանեաւ նր սարգսի զօրայվարին. ի կթղկութե̃ աղթամարա տն թումային տո̃ ա̃ծ յն քն զինքն անշարժ պահեսցէ ի վր̃ իւր աթոռին ամէն: Ի թուականիս հայոց. ռճլբ ի դառն եւ նեղ ժամանակիս. աղաչեմ զձեզ ով նր մանկունք յորժամ ընթեռնուք զգիրքս զա̃ծ ողորմի ասացէք եղկելոյս: անմեղադիր լերուք զի կար մեր այ(ս) է:

Էջ 194բ (այլ գրչէ աւելցուած). Դարձեալ յիշեցէք 'ի մաքրափայլ յաղօթս ձեր եւ ա̃ծ ողորմի ասացէք բարեմիտ եւ հեզայհոգի ըռէս հանօյին որ ըստացաւ զայս սաղմոս տօնացոյց աղօթքմատոյցս յիւր հալալ վաստակոց յիշատակ իւր հոգոյն եւ ծնօղացն հօրն՝ պապօյին եւ մօրն մարգարտին եւ որդոցն զիրա–

քին եւ մարգարտին Հերէքին նոնոֆարին մանիշակարին եւ իւր եղբօրն զիրաքին եւ Հարս Թագայ գուլին. եւ որդոցն ատոմին. մանուկին. յովանէսին. աբգարին լի բերանով ձեռ ողորմի ասացէք ձեռ ձեզ ողորմեսցի ամէն։

Դարձեալ երես անկեալ աղաչեմք յիշեցէք ի Տր յաղօթս ձեր եւ ձեռ ողորմի ասացէք բաէս Հանոյին. եւ իւր կողակցուն գուլաղին որդոյն զիրաքին. եւ իւր առ ձեռ փոխեցեալ եղբօրն զիրաքին եւ սուքիէասին որդոցն եւ Թոռներաց որք կան եւ որք առ ձեռ ընթացեալ են լի սըրտիւ եւ բոլոր Հաւատով ձեռ ողորմի ասացէք իւրեանց Հոգոյն ձեռ իւր միոս անգամ գալուստ ձեզ ողորմեսցի իւր առատ ողորմութենէն ամէն։

Վայելումն տր գաղպարին։

# 35.

## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

ՌԿԲ = 1613։

*ԹՈՒՂԹՔ 389: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 24×19×8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 19×6,5 սմ.: – ԳԻՐ՝ նօտր, իսկ էջ 351-386 բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ կանաչ. տող՝ 30: – ՆԻՒԹ՝ թուղթ. – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ, բայց սկիզբէն եւ վերջերէն քանի մը թերթ պակաս: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ եւ խորաններ կան, բայց անարուեստ. զարդագրեր չկան: – ՄԱԳԱՂԱԹԵԱՑ պահպանակներէն կը մնայ միայն թերթ մը վերջէն, բուն երկաթագիր գրութեամբ, մնացորդ հին սաղմոսի մը: – ԳՐԻՉ Մինաս քհ. տեղ Եճանանու Եղինկեան գիւղը. ստացող թուի Միաբանութիւնն Ստաթէի Վանաց. թուական ՌԿԲ = 1613: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Կը պարունակէ. 1. Վարք Հարանց. էջ 1ա — 350բ. 2. Դաւանութիւն պատուական եւ ցանկալի յոյժ Հաւաքեալ ի մի ի բազմաց առաքելոց վարդապետաց խոստովանիմ եւ Հաւատամ. էջ 351ա — 355բ։ 3. Երանելոյն եփրեմի յաղագս ապաշխարութեան. Ասէ երանելին մարգարէն եզեկիէլ. էջ 355բ—367ա։ 4. Ցորդորակ Սարգիս վրդպի ի տէրն ամ Հովիւն քաջ. Եւ արդ վասն զի նախանկար աւրինակ ունին. էջ 367ա—370ա։ 5. Ցորդորակ Սարգիս վրդպի բարձրապարծի ողորմութիւն Առ դատաստանաւ. Եւ արդ զի այսպիսի յորս կամէր առաջի. էջ 370ա – 373բ։ 6. Սարգսի վրդպի Զամ Հոգս ձեր ընկեցէք ի նա. Զի նա Հոգ". Եւ այսքիկ բստ տրունականաւ. էջ 374ա — 376բ։ 7. Անանիայ շիրակացւոյ ասացեալ. Ցաղագս գլխման արտասուաց. ի խնդրոյ Գրիգորի միայնակեցի. Ով ածասէր եղբայր. էջ 376բ — 383ա։ 8. Խրատք Ցոհաննու մանդակունեցւոյ միանձանց. Առն մնողոնի. էջ 383ա — 385ա։ 9. Նորին ի նոյն գրոց. Արդ են վանականք որք. էջ 385ա—386բ։ 10. Տօմարագիտական. Թուական այսպէս արա. էջ 387ա—388բ։ 11. Գլխաւոր յիշատակարան. էջ 389ա —բ։

Յիշատակարաններ. Էջ 7ա. Եւ զեղկելի գծողս յիշեցէք։

Էջ 28ա. Եւ զանպիտանս գրչաց յետին, որ չեմ արժան անուանս յիշին. եւ որ ասէ զտր ողորմին, Թողցին իւր մեղքն ամենեւին. Հազար ամէն եւ եղիցի։

Էջ 48բ. Եւ զանարժանս յիշել աղաչեմ ով պատուակագոյն եղբարք՝ զի Հաղորդս արասցէ զձմն երանելոյն պարապկեւի՝ ձեռն մեր յն։

Էջ 61բ. Եւ զմինաս անարժանին մաղթել զտրն ձմին՝ յերկարացնել ոչինչ աւգտին. աղաչեմ զձեզ ընթերցող սոցին. մի ողորմի ասել բազմամեղիս։

Էջ 66ա երկու կնիք՝ այս մակագրութեամբ. "Քի ծռ Տր Աբրհմ" եւ "Քի ծռ Տր Արիստկս"։

Էջ 82բ, 107ա, 153բ, 159ա եւ 188բ պարզապէս "զՄինաս յիշեցէք ի յն քն". (Մինաս բառը վերածուած միատառ անընթեռնլի փակագրի)։

Էջ 117բ. Եւ զիս փրկեա տր յայսցանէ։

Էջ 119ա. Ով պատուական եղբայրք՝ եւ սիրելիք յայ. եթէ պարտ է յորժամ վճարէք ընթերցմամբ կամ գրելով, յիշեցէք գծողս։

Էջ 141բ. Ո՜վ ընթերցողք՝ աղաչեմ յիշել զիս առ քն։

Էջ 175բ. Բարեխաւսութբ սրբոյն պետրոսի ողորմածին եւ Տր Հարցն ողորմուի եւ մեղաց թողուի շնորհեա տր ձեռ ձմ Համօրէն Հաւատացեալ քնէիցն. եւս առաւել անիմաստ գրչին եւ իւր ծնաւղացն ամէն։

Էջ 217ա. Եւ զմինաս զանարժան գրիչս՝ մի ողորմիւ յիշել ի տրն՝ աղաչեմ ով պատուական եղբարք։ թէ պարտ է։

Էջ 235բ. Ո՜վ դասք Տր եւ պատուական կրաւնաւորաց՝ որ միշտ ընթեռնոյք զձծաշունչ Տր գրեանս՝ արդ երես անկեալ աղաչեմ առ ոտս ձեր՝ յորժամ ընթեռնոյք. եւ կամ թէ աւրինակէք յիշեսջիք զմինաս զանարժան՝ ի Տր յաղաւթս ձեր Հանդերձ ծնաւղաւք եւ ձմ ազգականօք՝ ամէն։ Եւ 'ի թուականիս՝ ռկբ. գրեցաւ։

Էջ 243ա. Եւ զմինաս զանպիտանս յիշեցէք ի քն։

Էջ 243բ. Որ ընթեռնուք զայս մատենին, եւ աքանչանայք ընդ վարս Նոցին, տուք ողորմի այսմ գրաւղին, եւ ընդ նմին իւր ծնաւղին։ Մարտիրոսին վարդխաթունին, եւ եղբարցն սիրունին, եւ միւսոյն տր գրիգորին, եւ ասողին եւ լսողին. տրն ողորմի. Հազար ամէն եւ եղիցին։

Էջ 245ա. ԶՄինաս յիշեցէք։

Էջ 254բ. Ով եղբարք՝ զանարժանս Մինաս՝ յիշեցէք ի քն։

վարժապետն է, ըստ էջ 354բ) հովուն զհոգեւոր հայրն զԹադոս կրաւնաւոր, կաֆայեցին որ 'ի գնալն յեէմ 'ի ծովուն ընկղմեցաւ. եւ զկնոպ ոոկւգն, յիշեցէք 'ի քն զվերոյ գրեալքս 'ի սմա, եւ լի բերանով ած ողորմի ասել եւ ած որ առատ է 'ի տուրս բարեաց յիշողացդ եւ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի։ Դարձեալ աղաչեմ զձեզ մանկունք նոր եկեղեցւոյ՝ յիշել ի մտ զանարժան գրիչս ղազար եւ անմեղադիր լինել խոշորութե եւ սխալանաց զի կար մեր այս էր։ Եւ գիտելի է զի զսա սկսաք. ջա թվկիս հայոց, եւ աւարտեցաք՝ ջ. զ. վասն զառնութե եւ խռովութե ժամանակիս։ եւ զյիշատակարանի զհետ կարգի ոչ գնալոյն անմեղադիր լերուք, երբ սիրտն մաշխուել լինի, աչքն լուս պակասկու հայի։ մարդ զմարդոյ ցաւ չգիտէ՝ կէս գիշերին ժամ կու ձենէ Եւ արդ՝ գրեցաւ սա՝ 'ի Աթղկութե տեառն Տէր Գրիգորի որ նստեալ է 'ի վաղարշապատ քաղաքի. եւ քի յուսոյն մերոյ՝ փառք յ․ տնս ամէն (միատառ փակագրով)։

Էջ 632բ այլ գրչէ. Ած կակղ մըհէրն ածնի որ բազում աշխատանք ունի առ նր առաքեալն զվարձն նր առաքելոյն առցէ։

Էջ 633ա այլ գրչէ. Դարձեալ յիշեցէք ի քն զմաղդասի ստեփաննոսն. եւ զեղբաւր որդին իւր զկաքաւն. եւ զմխիթն եւ զկաքաւի կողակիցքն զԹամար եւ զհանզադէն։ Եւ զորդին զարդլաղիզն եւ զաարգիսն՝ եւ զգուսարն զգուլքան։ զգուլիջան եւ զբէկի խաթուն։ Եւ զայլ ամ արեան մերձաւորսն զկենդանիսն եւ զհանգուցեալսն. յիշեցէք եւ լի բերանով ած ողորմի ասացէք։ Որ ստացան զնր գիրքս յարդար վաստակոց իւրեանց. եւ ետուն զսայ լըման նր գէորգ զաւրավարին (։)

Էջ 633ա այլ գրչէ. Արդ՝ գրեցաւ սակաւիկ բանս՝ ձեռամբ սահակ անարժան աբեղայի՝ ի յերկիրս որ յաղբակ ասի՝. ընդ հովանեաւ նր առաքելոյն բարդուղիմէոսի, եւ յայլ սրբութեց որ աստ կան հաւաքեալ 'ի պահպանութի ազգիս հայոց, 'ի յառաջնորդութի տէր կիրակոս բաբունապետի՝ որ խիստ լաւ զարդարեր է զվանքս հոգեկանաւ.՝ եւ մարմնական պիտոյիւք. զի անպարապ է պատարագ եւ սաղմոսերգութի, եւ ժամակարգութի 'ի դրանէ նր առաքելոյս, զի քան զքսան եւ զերեսունն անպակաս է կարգացողք եւ սաղմոսերգուքն 'ի ժամատեղացս՝ զոր եւ զփոխարէն ջանից եւ վաստակոց սորա՝ ած տացէ սմա պարգեւս 'ի յարքայութե իւրում։

Եւ արդ՝ գրեցաւ սա՝ 'ի խնդրոյ ածասէր եւ քնադաւան քրիստոնէին միրիջանի՝ որ ըստացաւ զնր գիրքս 'ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, եւ ծնաւղաց իւրոց գուլամիրին, եւ փարիխանին, եւ կզկցուն իւր խանաղին. եւ դստերացն խանզադին. եւ էթարին. փարիխանին, եւ յամանին. եւ քուերն նոնուֆարին, եւ ամ արեան մերձաւորացն իւրոց, կենդանեաց եւ հանգուցելոց։ Եւ աղաչեմ զհանդիպեալքդ 'ի սմա կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք 'ի նր եւ 'ի մաքրափայլ յաղաւթս ձեր՝ զմիրիջան, եւ զկղկիցն իւր. եւ զծնօղսն իւր. եւ զամ ազգակիցսն իւր. եւ որ զած ողորմին ասէ սոցա՝ ած իւրն ողորմեսցի, ամէն։ Ու. եւ Ղէ. թուին գրեցաւ։

Եւ արդ՝ ե՛ս սակաւ մի ճառեցից զդառնութի ժամանակիս որ եմք 'ի մէջ վն ծովացեալ մեղաց մերոց՝ զի անաւրինաց հարկապահանջութի անչափ է՛ եւ անթիւ որ գրել չի գար։ եւ զայլն պատմեցից ձեզ եղբարցդ իմոց՝ որ վն մեղաց է պատուհասն։ զի քան զայս ամն՝ չորս ամաւ յառաջ 'ի յոստան մինչ 'ի հայկաձոր՝ եւ 'ի մահմուդանք մարախ եկաւ, եւ մարդիկ սարսեցան՝ որ ոչ էին տեսեալ. եւ մեղաց ոչ դարձան։ եւ դարձեալ երկու ամաւ 'ի յետոյ սաստիկ մահ անկաւ 'ի վան եւ 'ի յոստան. եւ զթիւ մեռելոցն չկարացաք իմանալ. եւ այնով այլ մեղայ ոչ տուին։ Եւ դարձեալ երկու ամաւ մինչ 'ի յայս ամս՝ որ եմք 'ի մէջ՝ նոր կրկին ածասաստ բարկութի սփռեցաւ յաշխարհս հայոց վն անթուելի մեղաց իմոց. մանաւանդ վանայ քաղաքին գեղարէիւքն, եւ յոստանայ մինչ 'ի խօշաբ. զի 'ի յաւագ մեծի ուրբաթի գիշեր լոյսն 'ի շաբաթ որ էր զատիկ՝ ած բարկացաւ, եւ շարժեաց զերկիր 'ի բազում տեղիս. եւ այն որ 'ի վան եւ յոստան շարժեաց՝ մարդ ոք չէր տեսեալ, եւ ոչ 'ի պատմութեց լուեալ. զի ոչ վանք մնաց, ոչ քաղաք, ոչ գեւղ, եւ ոչ շինութի. զի. խ. եկեղեցի վանայ բոլոր մինչ 'ի հայկաձոր 'ի հիմանց քլան՝ այն հրաշի աւրն, եւ սուգ ածին քրիստոնէից. եւ զաւերումն տանց եւ բարձրաշէն ապարանից, եւ զմնացեալ մարդ, կին եւ տղայ, եւ անասուն՝ որ 'ի տան հողի տակն մնացին՝ չկարացաք իմանալ եւ 'ի գիր արկանել՝ զի անթիւ էր, բայց նոյ միայն է գիտելի որ արար զնա վն մեղաց մերոց։ Եւ աղաչեմ զձեզ եղբարք՝ քն սաէ՝ յաւետարանն՝ թէ յամ ժամ արթուն կացէք։ եւ դարձեալ ասէ՝ եթէ ոչ ապաշխարիցէ ք, ամենեքեան նոյնպէս կորնչիցիք։ փառք ամ. ռ. բերան։

Ես միրիջանս 'ի սալամաստայ՝ որդի գուլամիրին, ըստացայ զնր գիրքս 'ի յարդար վաստակոց իմոց, եւ եդի 'ի դուռն նր գէորգեա զօրավարին. յիշատակ հոգոց մերոց՝ 'ի գեօղս մեր յաւթուան. եւ մարդ ոք մի իշխեսցէ հեռացուցանել զսա՝ 'ի դրանէ նր գէորգեա զօրավարիս, ոչ մերոց եւ ոչ յօտարաց. ոչ ծախելով, եւ ոչ գրաւելով. եւ ոչ գողանալով, եւ եթէ մարդ ոք յանդգնի եւ առնէ՝ նա զպատուհասն 'ի յած առնէ. եւ զպատիժն 'ի նր գէորգեա Ամէն։

Դարձեալ կրկին յիշեցէք եւ ած ողորմի ասացէք խօջա միրիջին. եւ կողակցին իւրոյ խանաղին, որ անուամբն միայն էր խօջա՝ եւ հոգովն էր վերացեալ 'ի դրախտն ադամա եւ գ տարի յառաջ, յայսմ աւուրն առեց. յիշատակ իւր. եւ այնու ոչ բաւականեցաւ. եւ ոչ լցաւ զփափաք սրտին իւրոյ, այլ եւ ես, եւս վախմ 'ի դուռն նր գէորգեա՝ զաւրավարին որ այնուեյանէ 'ի վերինն յեմ եւ ոպ զենովք որ կ ամ ծառեց յոգոյն իւրոյ, ոչ ճաշակեց 'ի պտղոյն։ իսկ ած հրմց հրշտկց իւրոց եդին 'ի դրախտին. սոյնպէս եւ միրիջանն արար. ամէն։

Էջ 657ա. Տր ած յն քն ողորմեա ստացաւղի նր գրոցս. մղդասի զարիպշին եւ ծնաւղաց նորին ածատրուն եւ խաթուն մելիքին եւ եղբարցն խըլըրշին եւ

աղաւաչին. եւ երախտաւոր վարդապետին իմոյ հեզահոգի Թադէոս կրաւնաւորին կաֆայեցւոյն. որ եւ նա բազում աշխատանք ունի 'ի վերայ մեր. զվարձս ի քնէ առցէ. եւ փծուն գրչիս Խնէրապետ քահանայի եւ մեր ծնաւղացն լի բերանով ած ողորմի ասացէք. եւ քն ած ձեզ ողորմեսցի Ամէն:

Էջ 657ա. ոՏ ած ողորմեայ ըստացողի գրոցս Մերիջանին եւ կողակցուն խանադին. եւ զաւերացն փարի խանին. խանզատին եւ եթարին. ամէն:

Էջ 657բ. Դարձեալ յիշեցէք եւ ած ողորմի ասացէք մերիջանին եւ կողակցին իւրո խանադին: Եւ արդ ստացօ զսայ բարի յիշատակ իւրն եւ ծնօղացն իւրոց: Յիշելով զասացեալն 'ի մեծաբարբառ բան մարգարէին որ ասէ երանի որ ունիցի զաւակ 'ի սիոն եւ յիշատակ բարի. եւ արդ գիտելի է զի գ. տարի յառաջ առեալ էր զայսմաւուրն եւ այնու ոչ լցօ զփափաք սրտի նՐ. այլ եւ ետ վախմ 'ի դուռն Տր գէորգայ զաւրավարին. եւ գ. տարի այլ վՐ անցաւ զսկին եւ զշուրջառ եւ այլ անաւթ որ ինչ ի պէտ (ի պէտս) պատարագին էր էառ ըստ հրամ ան որ ասէ թէ եկ ծառա բարի եւ հաւատարիմ եմուտ զուրախութի քո որովյետեւ սակաւ զայս արարեր 'ի վՐ բազմաց կացուցից զքեզ (:)

Էջ 667ա. Ներաւղ քն ողորմեա ստաց զի գրոցս մահդասս ստեփանոսին. եւ ծնաւղաց նորին ածատրուն եւ խաթուն մէլէքին: եւ եղբարցն խդրշին եւ խուդայբախշին. եւ ամ արեան մերձաւորաց նորին, եւ ինձ անարժանիս սակաւ աշխատողիս յվս քահի որ վն սիրոյ եղբօրս մեր մահդասի ստեփ" գրեցի զայս. գ սխալն ծառս: բայց անմեղադիր լինի զի մեծ աճիւ եւ դողով գրեցի 'ի դառն աւուրս, որ հասանն զմեզ դաշտն գերեաց զանմեղ քրիստոնեայսն. եւ մեք յուսահատեալ եմք ի կենաց մերոց' եւ 'ի տղայոց' թէ այսօր կամ վաղիւն առ մեզ հասանի' յայս դառն աւուրս գրեցի եւ ոչ թողի անփոյթ' վն սիրոյ մահդասուն' որ ամ օք զնա սիրէ եւ մեծարէ. վն հեզ, բարուցն եւ հաստատ հաւատոյն' եւ զի զամ գործս եւ զվաստակս ձեռաց իւրոց բաշխեաց առաջի մեր' ի գինս գերեացն զորս ազատեաց յանօրինաց, եւ զայլն ի գինս գրոց պատուականաց. եւ յայլ ստացս եկեղեցեաց. ընկալցի զփոխարէնն յամէնառատ բարոյն ա Ամէն: (այլ գրչէ) Ջերկնից բարութի եւ զանտրտում ուրախութի հանդերձ ծնաւղաւք եւ ամ արեան մերձաւորաւք: Ամէն: Դարձեալ յիշեցէք ի քն զմահդասի ստեփանոսի եղբաւր որդին ըզկաքաւն եւ զմլխամն: եւ զկողակիցքն զթամարն եւ զհանզադէն: եւ զորդիսն զաբդլազիզն եւ զսարգիսն: զզուլիջան եւ զդուստրն զգուլքան: զբէկի խաթուն, եւ զայլ ամ արեան մերձաւորս մահդասի ստեփանոսին յիշեցէք եւ լի բերանով ած ողորմի ասացէք: Եւ ած որ աւրհն է ի տուրս բարեաց. ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս ողորմեսցի ամէն:

Էջ 667բ (այլ գրչէ. անվարժ եւ յետոյ կիսովին քերուած)... սըտացի? ՃՀ... Յ զօլաթոյ տասանորդ ողորմութի խոստացան եւ որքան ասէի թէ բերէք որ գընամ ինքեանք հարէոյ լինելոյն եւ անգլուխ օրէօր ձըգելով պոչիկ մի աւել ..մէին զայս կամիմ ասել ձեզ սիրելիքդ իմ եղբայրք կարէորք. այս յամ մեր մեղացն որ աշխարհս հայոց քակեցաւ ցիրուցան եղեալ գերեցան... (քերուած 9 տող):

## 40.

### ԲԱՌԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹ.Ք՝ 413: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14,5×11×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ էջ 1–275 նոտր. մնացեալը բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17, 19, 20, 21: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 258ա–259բ եւ 412ա–413բ: – ՆԿԱՐԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ, որովհետեւ թէ սկիզբէն պակաս է եւ թէ վերջէն կտրուած է այն թերթը որ յիշատակարանը պիտի պարունակէր: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Ձեռագիրս կը պարունակէ երկու տեսակ բառարան 1. Բառարան հին եւ նոր կտակարանի դժուարիմաց բառերուն, շարուած ոչ թէ այբուբենական, այլ Աստուածաշնչի գրքերու եւ գլուխներու կարգով. էջ 1ա—257բ: 2. Այբուբենական բառարան անվերնագիր. էջ 260ա—411բ:

Յիշատակարան. Էջ 257բ. փառք' ամենակարող զօրութեան քո քն:

Ուրիշ ոչ մի տող յիշատակութիւն:

## 41.

### ՏԱՂԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹ.Ք՝ 146: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×3,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտրագիր, միայն էջ 107ա–121ա բոլորգիր. Թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը սկսեալ էջ 107ա մինչեւ վերջ կարմիր, բայց մինչեւ անդ միայն սեւ, տող՝ 20–23: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւ-*

*աքարտ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-բ, 19ա-բ, 97բ-98բ, 143ա-146բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ՝ չկայ ընաւ. զարդագրեր կան միայն 107 էջէն յետոյ: — ԹՈՒԱԿԱՆ եւն անծանօթ: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Կը պարունակէ. 1. Կանոն պաշտաման առ Ննջեցեալս ի քս. էջ 2ա—12ա: 2. Կարգ աղջկաթաղի. էջ 12ա—17բ (վերջէն թուղթ ինկած): 3. Տաղ. Ձեռ քո սիրոյն ով նազելի Հովերն առեր կը մաղէ. էջ 18ա: 4. Մառախլօրէն շուրջանակի պարաւին գերիս. էջ 18բ: 5. Նախագէկութի մեր (տես տակը յիշատակարանները). էջ 20ա: 6. Սուրբ գալստեան քո տր (եւ այլ մեղեդիներ). էջ 20բ—22բ: 7. Խնամեալ քո սիրով, խրատեալ մեծ գթով. էջ 23ա: 8. Արեւ լուսատու տաճար այ Մարիամ. էջ 23բ: 9. (կիսատ) Գոչումն ընձադին գովեստ քաղցրագին, էջ 24ա: 10. Ննջեա որդեակ քաղցր եւ անուշ. էջ 24բ: 11. (կիսատ) Որպէս ասացեալ ծերն պապանձեալ. էջ 25ա: 12. Ղեկ հաւատոյ մայր թագուհի. էջ 25բ: 13. Ղամբարափայլ սրբոյ տօնիս աւետիս. էջ 26ա: 14. Ով զարմանալի գործ այսօր յայտնի. էջ 26բ: 15. Ադամա ստեղծողն եկեալ իւր պատկերին տես. էջ 27ա—բ: 16. Ադամ նստեր դուռն դրախտին. էջ 27բ—28բ: 17. Եկայք այսօր ժողովեսցուք. էջ 28բ—29բ: 18. Իններակ դաս հոգեղինաց երկնաւոր զօրաց. էջ 29բ—30բ: 19. Ցանկ բազկատարած ցուցեալ երկիւղած. էջ 30բ—31ա: 20. Վասն այն յիշեսցուք փառաւորեսցուք տիրամայր որ կոյսն մաղթեսցուք. էջ 31ա—բ: 21. Քո փառաց թագաւորն այսօր եկեալ. էջ 31բ—32բ: 22. Մտեալ ի տաճարն այսօր ծնեալ ած. էջ 33ա—բ: 23. Վկայից հանդիսից հրաշալի. էջ 33բ—34ա: 24. Օրհնեալ է կամքն ածային. էջ 34ա—բ: 25. Տէր իմ գթած եւ բարերար անոխակալ անյիշաչար. էջ 35ա: 26. Ես եմ խաւարեալ ես մեղօք մեռեալ. էջ 35բ: 27. Առ հայրդ աղաղակեմ, անառակի որդոյս ողորմեա. էջ 36ա—37ա: 28. Բարեաց պատճառ տէր բարեգութ. էջ 37ա: 29. Քանքարթաքոյց եմ անարժան. էջ 37բ: 30. Կայր մեծատուն առէ աչագին. էջ 38ա: 31. Ըստ եփրայեցոյց մանկունքն զերգս քրօբէին առեալ. էջ 38բ: 32. Յորժամ նստեալ կայի ի տան, յանկարծ լուա զլուրըն այն. էջ 39ա: 33. Ածածին կո-յսըն Մարիամ կայր առ խաչին իւրոյ միածին. էջ 39բ: 34. Ածածինն կայր առ խաչին ասէր յս որդեակ իմ. էջ 40ա: 35. Գառն այ ի սպանդ վարեալ. էջ 40բ—41ա: 36. Մարիամ Մագդաղենին փարէր ի մէջ պարտիզին. էջ 41բ: 37. Կանխեալ ուղարեր կանայքն. էջ 42ա: 38. Ի տանս հայոց կառուցելոյդ զարմանամ. էջ 42բ: 39. Վայելչագեղ փառօք զուարճան" յածահրաշ լեառն վարադա. էջ 43ա: 40. Տաճարդ երկնային տուն քո-ին. էջ 43բ: 41. Կազմեա զմեզ կարող, կազդուրեա փրկող. էջ 44ա: 42. Յայնժամ սիրով տիրական. էջ 44բ: 43. Քաղցրաձայնեալ յս բարբառէր. էջ 45ա: 44. Յովսէփ յարէ-մաթացին աղերսէր պիղատոսին, էջ 45բ: 45. Օրհնեալ ես փայտ որ փրկական. էջ 46ա: 46. Այսօր անդրըշանիկ հօր միածին. էջ 46բ: 47. Այսօր որ հոգին ած եկեալ յաշխարհս. էջ 47ա: 48. Ամենազօր ած հոգի. շնորհաց բաշխող ամի. էջ 47բ: 49. Աղբիւր գիտութեան. պարգեւք բարութեան. էջ 48ա: 50. Գովեստ բերկրանաց. քաղցրաձայնեալ երգեմք ձեզ. էջ 48բ—49ա: 51. Հայցմամբ մաքուր յորովային. երեմիէ-այ մարգարէին. էջ 49բ—50ա: 52. Դուիթ հեսու կրտսեր որդին. էջ 50ա—բ: 53. Անդ ի խոսել մեծի հրեշտակին ընդ ամենօրհնեալ երջանիկ կուսին. էջ 50բ—51բ: 54. Ածազարդ գնդից ազանց. էջ 52ա—բ: 55. Իշխան համայնի, մարդկ-ին ազգի. յոլորս աշխարհի. էջ 52բ—53ա: 56. Բամբըրս բաբույնք. ճոխ արեգակունք. փայլուն աստեղունք. էջ 53բ: 57. Օրհնեալ ես փայտ կանգնեալ յերկրի. էջ 54ա: 58. Միայն բանի հօր իմաստնոյ. ծառայք վայելուչք. էջ 54բ: 59. Խոստովանիմ ած զհայր. անծին անեղ եւ անըսկիզբն. էջ 55ա—բ: 60. Այսօր տօնեմք ըղտօն վկայից. էջ 56ա: 61. Պաղատանօք սրբոց քո-ին. հայրաց հօր առաջին. էջ 56բ—57ա: 62. Ցուցեալ սագաչէն. ցանկ-հակաչէն. էջ 57բ—58ա: 63. Այսօր տապանակ ուխտին ընդ խորհուրդ մարմնոյ փրկչին. էջ 58բ: 64. Այսօր ցնծա լեառըն թափօր. էջ 59ա: 65. Այսօր եղեւ գալ դըշխանին. մօրն արքա-ին. էջ 59բ: 66. Այսօր գաբրիէլ հրեշտակապետն եկեալ. էջ 60ա: 67. Այլ եւ մետասան գոյնդքն սրբազան. էջ 60բ: 68. Արթունք զուարթունք բանին բանաւոր ծիծառունք. էջ 61ա—բ: 69. Ողբս առեալ մայրքըն սրտաբեկեալ. էջ 61բ: 70. Ամենեքեան ի մի բերան պարտիմք գովել յաղթող վկայն էջ 62ա—բ: 71. Ընտրեալ որ ծառայդ քոյ. էջ 63ա—բ: 72. Սարսափելի որոտմամբ եւ ահագին զօրութեամբ. էջ 63բ—64ա: 73. Ջառածեալ մեղօք եղկելի թշուառացեալ մարմնով եւ գերի. էջ 64բ: 74. Իմ սիրոյ պուլպուլ աննման. էջ 65ա—բ: 75. Պուլպուլի ձայնիկն անուշիկ, ձմեռն էանց գարունն է եկ. էջ 65բ—66ա: 76. Ով բարեկամ եւ սիրելիք. սրտի իմոյ յոյժ յաջելիք. էջ 66ա—բ: 77. Յարմար ձեւօք պատուական. էջ 66բ—67բ: 78. Հոգին ի մարմնոյն եղբօր շուռ ֆուգանք աշխարհս. էջ 68ա—69բ: 79. Աւաղ մեզ յայիլ պիտի այն արեւն որ լուս կծագէ. էջ 70ա—71բ: 80. Ես էի ազատագգի վայ աւաղ. էջ 72ա: 81. Այ իմ որդեակ աւետեաց զաւակ. էջ 72բ: 82. Ի քէն հայցեմք մեզ օգնութիւն. էջ 73ա—բ: 83. Ածածինան հարսնացեալ. զպաղատանս մեր ընկալ. էջ 73բ—75բ: 84. Ադամգիրք (համառօտեալ). էջ 76ա—92բ: 85. Յիսուս դու յոյս զղջացողաց. էջ 92բ—93ա: 86. Իակ ոչ խրատին մարդիք թէ մահու օրն գալոց է. էջ 93ա—94ա:

87. Մի աղօթից ծայլ կենար. էջ 94բ—95բ։ 88. Ցաղագս. գրանելեկոյ. Հուր մի տեսի (4 փոքր Հանելուկներ), էջ 95բ։ 89. Ի լոյսայրիպ քոյ բարեկերոյդ. էջ 96ա։ 90. Ամպն եկեալ կայծակալի քամին զօրեղ Հընչելով. էջ 96բ—97ա։ 91. Հերիք ոխպաս կոծես լաս եւ Հառաչես. էջ 97ա։ Վերջին 96—97 էջերը գրուած են այլ անվարժ գրչէ։ Իսկ 98 էջէն յետոյ կու գայ տպագրեալ Հատոր մը որուն վերնագիրն է. "Համառօտ Պատմութիւն տնօրինականաց տն մերոյ Յի Քի որ ի սբ քաղաքն Երուսաղէմ. Այլ եւ Թուղթն սիրոյ եւ միաբանութեան Կոստանդիանոսի եւ Տրդատայ ...տպեցեալ... յամի տն ՌՉ եւ Հայոց ՌՃԽԹ յուլիսի իէ ի Վէնէտիկ„ էջ 1—88։ Այն տպագրեալ Հատորը կազմողին կողմէ ներմուծուած է, ուստի եւ ձեռագրիս կազմն ալ 1700 թուէն յետոյ է։ Տպագրեալ Հատորէն յետոյ սկսած է նոր ձեռագիր մը, որ կը պարունակէ սիւնակներու մէջ աստեղագիտական գուշակութիւններ կենդանակերպերու վրայ. էջ 99ա—106բ։ Ասոր ալ կը յաջորդէ տարբեր լաւագոյն տաղարան մը, որուն տաղերն են. 1. Էջմիածին զարդ փառաց լոյս է. էջ 107ա—108բ։ 2. Էջմիածին ծընօղ մայր մեր ցանկալի. էջ 108բ—109բ։ 3. Ի կենաց նախկին վայելմանց զըրկեցին զիս. էջ 109բ—110ա։ 4. Անձն իմ առ քեզ աղաղակէ ով բժիշկ Հոգոյ իմոյ. էջ 110բ—111ա։ 5. Ցարմար ձեւով պատուական. էջ 111բ—112ա։ 6. Զարթիր սէր իմ առաւօտեան նազելի. էջ 112բ։ 7. Ի լեառըն մեծ զարմանալի. ի գողգոթայ դիտանոցի. էջ 113ա։ 8. Ի միասին ամենեքեան եկայք եղբարք իմ սիրական. էջ 113բ—114ա։ 9. Ղազարապատ զարմանաշէն պատուական. էջ 114բ—115բ։ 10. Ահա մեք ժողովեալք բոլոր միաբան. էջ 115բ—116բ։ 11. Շնորհօք միածնին կազմեալ կանգնեաց Հիանալի զայս նոր վեհարան. էջ 116բ—117բ։ 12. Ցարեան Հողմք Հիւսիսային յերկրէս մերմէ. էջ 118ա—119ա։ 13. Ցաւուրս յայսմիկ տօն մեծ է վաշ քրիստոնէից. էջ 119բ—120ա։ 14. Ի ժամուս ուրախութեան ով եղբարք իմ պատուական. էջ 120բ—121ա։ 15. Ցս որդի իմ միածին որ բեւեռեալ կաս ի խաչին. էջ 121բ։ 16. Նստէք ի մէջլիս Հայրք եւ եղբայրք. էջ 122ա։ 17. Առաւօտու քամին ելեր մաղէ զիս. էջ 122բ։ 18. Սարսափի անձն իմ լալի. էջ 123ա։ 19. Ինձ իմաստ. ով. քանզի. քեզ. Շնորհեա. Հատու տր. Հմամբ քո. Հեցայց ես. էջ 123բ—124ա։ 20. Ի ժամուս ուրախութեան ով եղբարք իմ պատուական. էջ 124ա—բ։ 21. Ննջեա որդեակ քաղցր եւ անուշ. էջ 125ա։ 22. Երկինք երկնից իմաց արարէք. էջ 125ա։ 23. Թէ շատ կափա չափես ի յաշ. էջ 125բ։ 24. Վասն ողջոյնի կաւ-ճաչօտ կերպիւ։ Ածասիրութեանցդ եւ բարեպաշտօն ժողովրդոցդ. էջ 126ա—128բ։ 25. Մենացեալ այր իմ սիրով սէրն իմ. էջ 128բ։ 26. Նախերգանք քարոզի. էջ 129ա–բ։ 27. Փրկաւէտ մահուան քո զգենու որ անկեալ գնիմ յանկողին. էջ 130ա—բ։ 28. Իմ անմահն յոյժ գովելի արարեր զիս ողորմելի. էջ 130բ—131ա։ 29. Զիս քո սիրոյն ով նազելի Հովերն առեր կու մաղէ. էջ 131ա—132ա։ 30. Զարմանալի վերնոց սուրբ կոյս անմահն. էջ 132ա—133ա։ 31. Մաքուր եւ սբ ըստեանց քոյին փափաքիմ. էջ 133բ—134բ։ 32. Ամենայն լեզուէ երանեալ ջոկ եւ ջոկ երամ երամ. էջ 134բ—135ա։ 33. Իսկակից Հօր ծնունդ անեղ ամենազօր արքայդ ահեղ. էջ 135ա—136ա։ 34. Վարանելով վարանելով մոլար դեգերիմ աւաղ. էջ 136բ—137ա։ 35. Իմ անմահն սիրելագոյն սիրելի. էջ 137ա—բ։ 36. Արեւս առնեմ երթամ իմ սիրուն. էջ 137բ—138ա։ 37. Գարնանային եղանակին պուլպուլն եկեալ շրջէր այգին. էջ 138ա—բ։ 38. Սափոր ոսկեղէն լի մանանայի. էջ 138բ։ 39. Ի քոյդ սիրոյ յագիլ երբէք երբ իցէ. էջ 139ա—բ։ 40. Տիրամայրն Հանդէպ որդւոյն ի խաչին. էջ 139բ—140ա։ 41. Աւաղ անկայ օտար երկիր ամայի. էջ 140ա—բ։ 42. Ի տարանջատ վայրէս ահա առընծայեմ քեզ ողջոյն. էջ 140բ—141բ։ 43. Ահա եհաս գարունն ազնիւ յորում Համայնք զարդարին. էջ 141բ—142բ։ 44. Հալէպ եօլին իշլար մօլա արապ աթլար (թրք.) էջ 142բ։

Յիշատակարաններ. Էջ 1ա. պրն միքայէլ մհս...։

Էջ 1բ. ես տաղարան ողորմայ յոգի Մնացականին այ օ որ կարդայ ա բերան ասայ ածն ողորմի։

Էջ 1բ. Նմրայ ա̄ ես մայհդես օվանէս գիրեցի իմ գիրքը"։

Էջ 20ա. կայ յիշատակարան մը, որ կը նայ իբր յառաջաբան ծառայել բուն տաղարանին. յիշատակարանը գրողն է Ստեփան վարդապետ Համադանցի, որ կը յայտնէ թէ յիշեալ տաղերը Համառօտելով Հանած է մեր եկեղեցական Գանձարանէն, բայց յայտնի չէ թէ այն յիշատակութիւնը առաջին Հեղինակի՞ն է, թէ արտագրողէն. վերջի պարագային յիշեալ Ստեփան Վարդապետը կ՚ըլլայ ձեռագրիս գրիչը։ "Նախաղեկւթի մեր՝ առ սիոնական մանկանցդ. քան զի ի բիւրոցն մի որք ընտրեալք էին. այսինքն որք Հայրքն մեր յառաջին, ազգս են որք զծորանս Հոգոյն արբին. եւ երգեցին. զեղանակաւոր երգս. ի պայծառութի Հայաստանեայց եկեղեցոյ. եւ անջընջելի յիշատակ։ ի տանն Թորգոմայ։ Վն որոյ տկարս սակաւ աշխատանս յանձին կալեալ։ ի նոցանէ կերտեալ իբր ովկիանոսէ. փոքր ինչ զովացուցիչ. սակս պասկեցութե՛ս. սակայն յոյժ ախորժելի. նուագարանցն անթիւոցն այս քանս ջանիւ Հնարել կարացաք. վն անվարժ գոլութեն որ եւ նուաստագունեղ։ Ըստեփաննոս Վարդպտս ընիկ երկրաւ Համադ"նեցոյ։ Գ.ծող ամին։ յիշե"լ մաղթեմ. զիպողացդ։ որ եւս դուք յիշե"լ լիջիք։„

Էջ 117բ. կնիք մը խառն փակագրով, որ թուի "պետրոս վարդապետ„։

Էջ 143ա. յամի տն ՌՉ եւ Հայոց ՌՃԽԹ յուլիսի ԻԷի (յետոյ ամբողջ այբուբենը. այս թուականը նշանակութիւն չունի, որովհետեւ արտագրուած է ուղղակի տպագրեալ գրքի կողէն)։

Էջ 143բ. 1794 յունիսի 1 ումն անզալից (այժմ կը կոչուի Ինճէլի) գուս եկի բայց յունիսի 13 ումն եկի Թարվիզ մնացի 1794 յունիսի 1 ումն անզալից գուս։

Էջ 144բ. Արզրում ուզին պազար յիչինդայ (Թրք. երգի մը երեք տողերը)։

Էջ 145բ. գրեցի գիրս բռաշտումն 1790 ումն Թիվն. սեպտեմբերի 15։ ումն բակոս դի եերակոսեան։

Էջ 146ա. Ես դաւիթ որդի ղազարս գրեցի։

## 42.

### ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 119։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14,5×10×3,5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն։ – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը պարզ կարմիր. տող՝ 15։ – ՆԻՒԹ՝ մագաղաթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. սկիզբը մի թերթ մագաղաթեայ պահպանակ՝ մնացորդ երկաթագիր աւետարանի մը։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ գէշ. 70–80 թերթերուն կողմերը եւ վերջէն տասնեակներով թերթեր պակաս. մասամբ սեւցած ու բորբոսնած, կազմը քայքայուած եւ վերջին կողը ինկած։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ։ – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ՝ պատկեր կամ զարդագիր միայն ուրուագծով։ – ԳՐԻՉ՝ Թուի Կարապետ. տեղ, թուական եւն բոլորովին անծանօթ։ – Ձեռագիրս այժմ կը պատկանի Պ.Պ. Ալէքսան եւ Յարութիւն Աֆթանդիլեան եղբարց։*

Յիշատակարան. Էջ 2ա. Զմեղաւոր Նկարող կարապետս յիշեայ եղբայր աչախ ինչ անեմ։

Էջ 2ա. կնիք մը՝ անընթեռնլի։

Էջ 73բ. Ով անոաՀ արքայ եւ երկնաւոր փեսայ մաքուր Հարսին եկեղեցոյ, մի մերժեր զմեզ, ի փառաց քոց։

## 43.

### ԱԽՏԱՐՔ

1776։

*ԹՈՒՂԹՔ 130. էջք նշանակուած 1–294. մնացեալները կը թուին յետոյ աւելցուած նոյն ձեռագրին վրայ։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×13×2,5 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ պարզ, միասիւն։ — ԳԻՐ՝ նոտր. թանաք՝ սեւ, վերնագրերը եւ սկզբնատառերը վարդագոյն. տող 31։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ — ԿԱԶՄ՝ նուրբ կաշիով պատած խաւաքարտէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–բ, 4բ–5ա, 27բ, 92բ, 93բ, 101բ, 111ա–բ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ չկան, ոչ ալ զարդագրեր. պատկերներ շատ կան. բացի լուսնի եւ կենդանակերպներու բազմաթիւ պատկերներէն, կան 20 մեծադիր պատկերներ՝ որոնք հին աւետարանէ մը հանելով կտրտուած եւ յարմարցուած են այս ձեռագրին. այս պատկերները դրուած են էջ 5բ. 36բ, 121բ–130ա, որոնցմէ մէկը աւետարանին ճակատն է, իսկ միւսները աւետարանիչներու եւ տնօրինական պատկերներ, բոլորն ալ բաւական անյաջող։ — ԳՐԻՉ՝ Ստեփաննոս Քարտուղար. տեղ Կոստանդնուպոլիս? թուական 1776 յուլիս 25։ – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պ.Պ. Ալէքսան եւ Յարութիւն Աֆթանդիլեան եղբարց։*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Ռամեր, Թլիսմներ եւն, կապոյտ Թանաքով, իբր բոլորովին նոր յաւելուած՝ օտար գրչէ. էջ 2ա—4ա։ 2. Բուն գիրքը, որու խորագիրն է. "...Եւ ի վր այսր ամի ժողովեցաք զայս գիրքս յամ ազգ գիտութեանց, ի տումաթէ եւ ամ ազգ աստեղաբաշխութեանց, եւ այս Հեռի է եւ զատակայ է յամ բանից՝ զոր Հակառակ կան կամ ներՀակ գտանէ ածպաշտութեան„. Հմայական, կախարդական, աստղաբաշխական առատ տեղեկութիւններ, բաժանուած բազմաթիւ գլուխներու կանոնաւոր կերպով. էջ 6ա—120բ։ 3. Մնացորդ Հին աւետարանէն, բոլորգիր, երկսիւն. էջ 121ա։ 4. պատկերներ. էջ 121բ—130ա։

Յիշատակարան. Էջ 90բ. Ցամի Տն։ 1776։ Յուլիսի։ 25։ Գաղափարեցաւ Ստեփ"ննոս. Քարտուղարէ Կոստանդնու"։

Ուրիշ յիշատակարան չկայ բնաւ։

## 44.

### ՃԱՇՈՑ

(1702էն առաջ։)

*ԹՈՒՂԹՔ՝ 421 (նշանակուած է 420, բայց 258 փախցուած է)։ –ՄԵԾՈՒԹԻՒՆ 27×17×8 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ բաւական խառնակ, երկսիւն, իւրաքանչիւրը 21×6 սմ.։ – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ, վերնա-*

*գրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 34-36: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ. բայց սկիզբէն, մէջէն եւ վերջէն թերթեր պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ եւն աննշան եւ անարուեստ: – ԳՐԻՉ՝ Մկրտիչ վարդապետ Մեծոփեցի, թուական ՌՃԾԱ = 1702էն առաջ. տեղ եւ տէր անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Ղազար Մելիք-Բաբաջանեանի:*

Յիշատակարանք. Էջ 16բ. Քն ած որ մկրտեցար յորդանան եւ սրբեցեր զմ արարածս ի մեղաց. սրբեա եւ լուսաւորեաւ զխաւարեալ հոգիս ծառայի սուտանուն վրդպտի մկրտչի եւ զմմ արեան մերձաւորաց իմոց եւ որ զամէնն ասէ ողորմեսցի նմա. զի կար մեր այս էր, անմեղադիր լինել աղաչեմ ընթերցողդ:

Էջ 49բ. Սբ հայրապետացս բարեխաւսութբ թողութի մեղաց խնդրեցէք մեղապարտ գրչիս: եւ ած զձեր մեղքն ոչ յիշէ ամէն. գիտութի լեցի ձեզ զի կար մեր այս է զի ծերութե ուսում այս չափս է:

Էջ 153ա. Զտառեալ (= զտառապեալ) աղքատ գծողս յիշեցէք ի նբ աղաւթս ձեր եւ ած զձեզ յիշէ յարքութին: զի կար մեր այս էր:

Էջ 159բ (օտար գրչէ). Ի դրանէ մեծի նբ անապատի եկեղեցւոյս որ անուամբ նբ ածածնին է կացուցօլ եւ ի մէջի նրց բաղմաց:

Էջ 254բ (այլ գրչէ). Կամաւն այ. Ես աբրայհամ աբեղէս. կալայ. նբ գիրքս. որ կոչի տարեգիրք. յիշատակ ինձ. հոգոյ իմոյ. եւ ծնաւղացն իմոց. հաւրն. իմ ախինիմ. եւ մաւրն իմ չահալամին. եւ եղբաւրն իմ աւանիսին. եւ ոսկումին. որ կէսաւրեայ. փոխեցաւ ի քն. եւ եղբաւրէն իմոյ. յոհանին. էվազին. եւ հոռոմին. եւ հարսն իմ. մարիանին. եւ ամ յարեան մերձաւորացն. եւ կենդանաց եւ ննջեցելոցն. Է— եւ ամ առհասարակ. ամէն. այլ եւ յիշեցե. զչամամն. յիշեցէք է քն ած զձեզ յիշէ:

Էջ 254բ (այլ գրչէ). Ես մեծն ճալալ որդի —կոբ Երէցս բանիւ —վանէս կթսին ծախեցի նբ տարեգիրքս դիւի ջամայհաթին աւանին տղայ աւանէս վկայ հասան վկայ մալքումն վկ —րդ——րէն աւանէսն վկ հէկազին տղ եղիշէն վկ ած վկ. ես նազարի որդի ղազարս ես նվաստրիս կրեցի թ ռճծա:

Էջ 254բ (այլ գրչէ). ես մեղաւոր եւ անարժան եւ անպիտան բինեաթի որդի օվանէսըս գերեցի:

Էջ 293ա. յիշեցէք զգծող սորա ի քն:

Էջ 399բ. զմեղաւք մեռեալ գրիչս. յիշեցէք ի քն զի յոյժ տրտմեալ եմ ի սուտ եղբարց. զի փառաց ծառաեն եւ ոչ այ:

Էջ 404բ. Զ յոհանէս եւ զբարսեղն յիշեցէք առ տր Ած (սոքա թուին գրած քանի մը էջ, իբր օգնական բուն գրչին):

Էջ 420բ. Ով եղբարք իմ հոգեւոր յորժամ ընթեռնուք զգիրս յիշեցէք ի նբ յաղաւթս զանարժան մկ"րչ վրդպս մեծոփեցի. եւ զհայրն իմ նահապետ եւ զմ արեան մերձաւորսն իմ ի քն հանգուցեալսն եւ ած զմիշողսն յիշէ, յարքայ. գրիս անմեղադիր լերուք զի կար մեր այս է. զի ծերութե (մնացեալը պատռած. կորսուած մասերուն մէջ է նաեւ գլխաւոր յիշատակարանը):

# 45.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

### (ԱՆԿԱՆՈՆ ԳԻՐՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ)

### ՌՄՂԹ = 1850:

*ԹՈՒՂԹՔ՝ 176, նշանակուած են էջք 1–299, բայց մեծամեծ ոստումներով: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×10×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, խառնակ: – ԳԻՐ՝ հին շղագիր. թանաք՝ դժգոյն սեւ. տող 16—19: – ՆԻՒԹ՝ հաստ ու կոպիտ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր. բայց կազմը պոկուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 173բ–176բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկայ. կարմրատողեր, զարդագրեր եւն չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ. թուական ՌՄՂԹ = 1850 մայիս 26: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Սիսակ Բժըշկեանի:*

Առաջին երեսին վրայ (էջ 2ա) կը կարդանք. Սկիզբն գրոց որ կոչի ժողածու (= ժողովածու) Գիրքս այս ճառէ զպտմութենէ նախահարցն սբց Այլ եւ զոնէ մերմէ Ցօէ Քօէ որ եւ մէկնէ բստ առաջադրին? իւր գեղեցիկ իմացածօվք շարագրեցեալ բայլ եւ քարոզ պիտանացուք ասացեալ սբց վարդպետաց ի յօգուտ վերծանողաց ի յուրապետութեան տն ներսէս կաթօղոկոս ամ հայոց ի թվականիս մերում ռմղթ մայսի իզ:

Ձեռագիրը կը պարունակէ հետեւեալ գլուխները.

1. Պատմութիւն եւ ճառ վասն ստեղծմանն ադամա եւ մարդնալուն քսի այ մերոյ. Նախ ըս(տ)եղծ տր ած զդաս հրեշտակաց եւ հրեշտակապետաց. էջ 2բ—9ա: 2. Պատմութիւն Սաքնաելեան փասուն թէ որպէսի պատճառաւ անկաւ ի փառաց իւրոց. Քանզի վասն միոյ մեղաց եւ հպարտութեանն աքսորեաց. էջ 9ա—15ա: 3. Վասն ելանելոյն ադամայ ե—այի ի դրախտէն. Յորժամ ադամ անկաւ ի լոյն. էջ 15ա—19ա: 4. Այլ եւ մեկնութիւն վասն ադամա եւ մարդկային բնութեան. Զի որպէս հայր որ զի իւր որդին ծախէ. էջ 19ա—25ա: 5. Պատմութիւն յաղագս կայենի եւ աբելի. Այս էր պատուէր ադամայ զոր պա-

Հիւր էջ վարդագոյն շրջանակով: – ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ: – Ձեռագրիս սեպհականութիւնն է այժմ Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իւր մօրեղբայր Վանի Իբրահիմ-Բէկեանցէն:

Մատեանս է բժշկարան. բառարանի կարգով շարուած են հիւանդութիւններն ու դարմանները, իւրաքանչիւր գրէ յետոյ թողլով բաւական բաց տեղ ապագայ տեղեկութեանց համար. առով դատարկ թուղթերու թիւր բազմաթիւ է։

Ցիշատակութիւն չկայ բնաւ, բայց գործը շատ նոր ժամանակի է։

## 21.

## ՌԱՄՋԱՐԿԻ ԳԻՐՔ

(ԺԷ – ԺԸ դար։)

ԹՈՒՂԹՔ արդի վիճակին մէջ 36. նշանակուած է էջ 1-86, որմէ պակաս են 47, 48, 59, 60, 75-84 եւ 86 էջէն անդին եղածները. նոյնպէս էջ 1 յետոյ նշանակուած ըլլալու է, որովհետեւ գիրքը սկիզբէն ալ պակաս է: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17×10,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր միասին: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ. կարմրատառեր չկան. տող 27: – ՆԻՒԹ՝ բարակ թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: – ԴԻՑԱՐԿ ԹՈՒՂԹ. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկան. սկզբնատառերը մեծ երկաթագիր սեւով: – ԳՐԻՉ եւն բոլորովին անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իւր հօրմէ:

Ձեռագիրը կը պարունակէ գիր բանալու (ռամ զարնելու) արուեստը, օրինակ գող գտնելու, գանձ հանելու, ճանապարհի բարին ու չարը իմանալու եւն եւն։

## 22.

## ՎԻՃԱԿԱՐԱՆ

(ԺԸ—ԺԹ դար։)

ԹՈՒՂԹՔ՝ 28: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×0,8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ. կարմիր եւ կանաչ սկզբնատառերով, տող՝ 26 եւ 20: – ՆԻՒԹ՝ թուղթ, կէսը կապոյտ գոյնով: – ԿԱԶՄ՝ թղթակազմ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գործածութեամբ աղտոտած, բայց լրիւ: – ԴԻՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ 12ա: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ: – Ձեռագիրը այժմ կը պատկանի Պր. Համբարձում Տէր-Կարապետեանցի, որ ժառանգած է իր հօրմէն:

Կը պարունակէ. էջ 1—11բ լուսնի եւ կենդանակերպներու աղիւսակներ, զանազան դէպքերու բարին ու չարն իմանալու համար. էջ 12բ վիճակ քաշելու շրջանակ. էջ 13ա—28բ վիճակի տասն եւ վեց ոտանաւորներ։

Ցիշատակութիւններ բնաւ չկան. ձեռագիրը կրնայ ըլլալ ԺԸ - ԺԹ դարերէն.

## 23.

## ԼԵՀԱՑԻՈՅ ԲԱՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆՔ

?

ԹՈՒՂԹՔ՝ 215. – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13×10×3 սմ. – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր միասին: – Գիր՝ նոտր. Թանաք սեւ, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: – ԴԻՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա եւ 213ա-215բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագիր բնաւ չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ՝ յիշատակարանի բացակայութեան պատճառով: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Յովհաննէս Յովհաննէսեանի:

Մատեանս է "բանք իմաստասիրականք եւ ածաբանականք՝ համառօտաբար իբր սահմանօրէն արտադրեալք եւ հաւաքեալք ըստ այբուբենից, աշխատասիրութեամբ լեհացի ստեփաննոսի բանասիրի"։

## 24.

## ՀԱՄԱՑԻԼ

**ՌՃԻԹ** = 1680?։

*Իրարու փակցուած թերթերով կազմուած երկար թուղթ մըն է, որուն երկարութիւնն է 4 մէթր 17 սմ. իսկ լայնութիւնը 10 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: — ԳԻՐ՝ Նօտր. թանաք՝ սեւ. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող ընդ ամէնը 341: – ՆԻՒԹ՝ թուղթ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր, բայց թղթերը քանի մը տեղ կտրուելով այժմ ամբողջը վերածուած է 5 կտորի: — ԴԱՑԱՐԿ է համայիլիս ամբողջ ետեւի երեսը, բացի 5 տող երկրորդական յիշատակութենէ մը: – ՀԱՄԱՑԻԼՆ ունի 13 մեծադիր պատկեր, որոնք են խաչելութիւն Յիսուսի, Մարիամ Աստուածածին, Ս. Գէորգ, Ս. Սարգիս, Ջեննումն Իսահակայ, Աւետարանչէն պատկերներ եւ այլ սրբանկարներ: — ԳՐԻՉ՝ անծանօթ. տեղ՝ Կ. Պոլիս, թուական ՌՃԻԹ = 1680, բայց թուի կասկածելի: — Ձեռագիրն այժմ սեպհականութիւնն է Պր. Սրապիոն Գրիգորեանի:*

**Համայիլս կը պարունակէ.** 1. **Աղօթք վասն կապանաց դիւաց եւ կախարդաց եւ աղանդաւորաց եւ վասն դատաստանին... թագաւոր հզօր ապաւէն ծարաւելոց։** 2. **Աղօթք ամենասուրբ ածածնի. Ով ամենասրբուհի ածածին. պարծանք կուսութեան ճրագ պայծառ...** 3—5. **Այլ եւ բարեխօսութեամբ (երեք յաջորդական շրջանակներու մէջ յիշուած են բազմաթիւ սուրբերու անուններ).** 6. **Աղօթք սբ երրորդութեան. Հայր սբ սրբեաց գիս. մարմին քո մաքրեաց զիս.** 7. **Աղօթք սբ զօրականացն քո. բարեխօսութեամբ սբ զօրավարացն սրբոյն գէորգայ...** 8. **Աղօթք չար աչից. եւ չար լեզւի։ Հրայնիւթ հրափայլ հրատն.** 9. **Աղօթք գլխցաւի եւ աչացաւի։ Գայր գետն յորդանան եւ բերէր ծառ մի...** 10. **Աղօթք երդման եւ պապանձութեան չար լեզւի. Երդմնեցուցանեմ զքեզ ամ'նյ. եւ չար դեւք.** 11. **Աղօթք աբրահամու նահապետի. Եւ էառ աբրահամ զորդին իւր իսահակ եւ տարաւ ի գենլիս.** 12. **Աղօթք սրբոյն սարգսի զօրավարին. եւ որդոյ նր մարտիրոսին. Երջանիկ մեծ զօրական. եւ քո յաղթող վկայն։** 13. **Աւետարան ըստ մատթէոսի. Եւ մտեալ ի կափառնայումն, մատեաւ.** 14. **Աւետարան ըստ մարկոսի. Մինչդեռ նոյ զայն խօսէր գան ոմանք.** 15 **Աւետարան ըստ Ղուկասու. Եւ եղեւ ի շաբաթու. երկրորդումն.** 16. **Աւետարան ըստ յոհաննու. Յետ այսորիկ տաւն էր հրէից։**

**Յիշատակարան.** — **Առաջին գրիչը աղօթքներուն վերջը «ծառայ Այ» բաց եւ թողած է. նոր գրիչ մը ասոր ծայրը աւելցուցեր է «Նազլուին», կամ «եղիազարին. բէկիջանին», «Նազլուին օգնական եւ պահապան եղիցի ամէն»։**

**Ամբողջին վերջը դարձեալ նոր գրով. «գրեցաւ կըպրիանոսըս թիւն ռճիթ սեպտեմբերի ի օրն ի կոստ Նդինուպօլսումն ..»**

**Ետեւի կողմի յիշատակութիւնը նոր գրչով. «եւ այս կպրիանոս Էս հմյոնցի (= համատանցի) օհանէսինն է եւ շնորհեցի իմ ձեռամբս եւ իմ կողակից արթենի դուստր Նազլուինէն բարդ վայելեցի ամէն գրվեցաւ թիվն 1203 ամէն»։**

## 25.

## ՏԱՂԱՐԱՆ

1857։

*ԹՈՒՂԹՔ 80: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×17×1,2 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ բաւական մաքուր, միասին: — ԳԻՐ՝ շղագիր. թանաք՝ սեւ. կարմրատողեր չկան. տող՝ մեծ մասամբ 20: — ՆԻՒԹ՝ նոր տեսակի գծաւոր վաճառականական հաշուետետր թղթեայ: – ԿԱԶՄ՝ թղթապատ խաւաքարտէ, ետեւը սպիտակ կաշի: — ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 80բ: – ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴԵՐ չկան. բայց տաղերուն առաջին տառերը գունաւոր զարդարուն թռչնագրեր են, իսկ միւս տուներուն առաջին տառերը սեւ խոշոր երկաթագիր: – ԳՐԻՉ՝ Ստեփան Մկրտչեան Բժշկեանց. տեղ՝ Դաւրէժ. թուական 1857 եւ աւելի յետոյ զանազան ժամանակներ: – Ձեռագիրն այժմ սեպհականութիւնն է առաջին գրչին ժառանգ Պր. Սիսակ Բժշկեանի:*

**Ձեռագիրս կը պարունակէ հետեւեալ տաղերը.** 1. **Ի գնալ գարնան ես քեզ ճարոտ մնացի.** էջ 2ա—4բ։ 2. **Առաւօտեան քաղցր եւ անուշ հովերն.** էջ 4բ, 7ա։ 3. **Ի յանեղէն լուսոյ ընտրեալ հարսն երկրի.** էջ 5ա—7ա։ 4. **Ի խիթմանէ խղճիս խաբեալ խոցոտիմ.** էջ 7բ—9բ։ 5. **Եսայի նոր մանուկ ի սեր քո այրիմ.** էջ 10ա—բ։ 6. **Ես ետկար նոր մանուկ ի սեր քո այրիմ.** էջ 11ա—բ։ 7. **Այսօր ցնծամք ճարելով.** էջ 11բ։ 8. **Գոչեմ ձայնիւ արտասուական.** էջ 12ա—13ա։ 9. **Յարեաւ Յիսուս նոր փեսայն ով մանկունք.** էջ 13բ—14ա։ 10. **Հրաւէր սիրոյ հոգւոյն կողման աննիւթոյ.** էջ 14բ—15ա։ 11. **Դու լուսեղէն տաճար ես.** էջ 15ա։ 12. **Գարունք եանց ծաղկունք ամէն չորացան.** էջ 15բ—16բ։ 13. **Վրդովմունք ունի աշխարհին ամպեր դուք էր էք որոտում.** էջ 16բ։ 14. **Արփի անաղօտ ճաճանչ լուսահեղ.** էջ 17ա—18ա։ 15.

Գցել ես սրտիս մէջն վառվառ կրակն. էջ 18ա—բ։ 16. Խնկի ծառի նման ես. էջ 18բ։ 17. Ցարփոյն անհուն սէր լուսափառաց. էջ 19ա—20ա։ 18. Երգնում արեւ արքայհական վարդ վարդ. էջ 20ա—բ։ 19. Միածին մայր եւ կոյս ապաւէն եւ յոյս. էջ 20բ։ 20. Կուսք ոսկեղէն յօրինեցոյ բարձր մասեաց հոլովեցոյ. էջ 21ա 22ա։ 21. Սիրտով սիրած սիրելի ես մէկ սիրական եմ ուզում. էջ 22ա—բ։ 22. Ասում ես դիմացիր ինձ դիմանամ միթէ. էջ 22բ—23ա։ 23. Վասն էր ջամիս ջառմել աղքատիս չարաչար վիշտօք. էջ 23ա-24ա։ 24. Սեաւ եմ ես գեղեցիկ նազելի ցաղելի. էջ 24ա—բ։ 25. Այսօր է նոր օր եւ տօն ցնծութեան. էջ 25ա 26բ։ 26. Առ քահանային գրէ (նամակի սկիզբ). էջ 26բ։ 27. Դամբարան հրաշից դատակնիք հոգւոյ. էջ 27ա-բ։ 28. Մաքրայգուն արփւոյն վառեալ արուսեակ. էջ 28ա—28բ։ 29. Զուարթունք յերկնից դուք յիս հայեցէք. էջ 29ա—30ա։ 30. Ի բորբոքեալ անսասան սիրոյս սխրանաց. էջ 30բ-31բ։ 31. Բարովագիր. էջ 31բ։ 32. Մաքուր խմբից մարգարէից. էջ 32ա—33ա. 33. Ցարփոյն անհուն ննջման ի քուն մերձեցեալ. էջ 33ա—34ա։ 34. Պարծանք մասեաց յառաւօտեան ցօղով լուսով լցեցան. էջ 34ա—35բ։ 35. Ցարփուն սիրոյ շողն որ շլթամբք շողշողէր. էջ 35բ—36բ։ 36. Գարնան աղէգն շողս արձակեալ ի յերկիր մեր յայտ փայլէ. էջ 37ա—բ։ 37. Եար է մենէս եար է մէն էս տիլպար է մէնէս. էջ 38ա։ 38. Էյ քօվուլ ջան քօվուլ գօր բուլթիլ (թրք.) էջ 38բ—39ա։ 39. Անաստուած անաստուած էտ ինչ բէս պանէր. էջ 39ա—բ։ 40. Բոյրդ սալբի չինարի ծոցդ գուլի շան ունիս. էջ 40ա—41ա։ 41. Սիրտով սիրած սիրելի ես մէկ սիրեկան եմ ուզում. էջ 41ա-42ա։ 42. Փութայ առ մեզ նաղշուն ջաքաւ. էջ 42ա բ։ 43. Յաւուրս յայսմիկ ես խնդամ հոգիս ուրախ եւ ես ցնծամ. էջ 42բ—43ա. 44. Արի իմ քաղցրիկ աղաւնի. էջ 43ա։ 45. Արիք ելցուք ի միասին ուրախութեամբ մտցուք այգին. էջ 43բ։ 46. Արի հոգի ջան ինձ եառ մի անիլ. էջ 43բ—44ա։ 47. Քաղցր ձայն ունի իմ սիրականին. էջ 44ա—45ա։ 48. Մարգարիտ կասեն ղանդի նապաթ ես. էջ 45ա. 49. Գայ քեզ պէս հողածին նման սիրելի. էջ 45բ—46ա։ 50. Այսօր տօն է ծննդեան աւետիս. էջ 46ա—բ։ 51. Մեզնից շատ առաջ կայր մին թագաւոր. հոգով դեռ արի. էջ 46բ—47բ։ 52. Բուլբուլ եմ բուլբուլն տաաց դետ մի գնայ եաղի գայ. էջ 47բ—48ա։ 53. Բոյրդ սալպի չինարի ծոցդ գուլի շան ունիս. էջ 48ա—բ։ 54. Ինձ շուտ մոռացաւ իմ սիրականս. էջ 49ա։ 55. Օգնեցէք ինձ սիրելիք սիրով սիրաբանս գնաց. էջ 49բ—50ա։ 56. Ասում ես քոյ սիրելին եմ դառնում ես լաղ եսանում. էջ 50ա բ։ 57. Ինչ վասութիւնս տեսար ինձ եառ արիր հոգի ջան. էջ 50բ—51ա. 58. Ասում ես խեղճ ման գալով բոլորն ինձ արդար են ասում. էջ 51ա-52ա։ 59. Առանց քեզ եմ անմխիթար դուշա ջան. էջ 52ա—բ։ 60. Նոր ի նորոյ սիրելուցս սէր տեսայ. էջ 52բ—53ա։ 61. Որքան ցաւ է անխնամ սիրելու սէրին ջանալն. էջ 53ա-բ։ 62. Ներեցէք իմ անբախտութիւնս խորհուրդս ասեմ սիրական. էջ 53բ—54բ։ 63. Գնամ գնամ երկու լեզուանի սիրական. էջ 54բ 55ա։ 64. Քու մասին ով բարեկամ տասծս արդար եմ ասում. էջ 55ա-բ։ 65. Ամէն միտ ընկնելով սիրականս իմ տանջրվում է միանգամայն ջանս իմ. էջ 55բ—56ա։ 66. Ինչ մարդ սրտով սիրած սիրական չունի. էջ 56բ—57ա։ 67. Բացուիր նազելի վարդ ահա գարնան ժամանակի. էջ 57ա—բ։ 68. Մինչ երբ դու համասփիւռ գովականս. էջ 57բ—58բ։ 69. Ասում ես աշխարհն դիփ ինձի գովական են ասում. էջ 58բ—59ա։ 70. Այգեպան ինչ ես անում շամբն բուրաստան չի լինի. էջ 59ա—բ։ 71. Քո սէրիդ կարօտովն բուլբուլի պէս տաղ եմ ասում. էջ 59բ—60բ։ 72. Կարդում եմ վարդուհի քու անունդ ոսխակի նման. էջ 60բ-61ա։ 73. Ապրիս համասփիւռ դուն գովական աղջիկ ես. էջ 61ա—բ։ 74. Ախ իմ փոքրիկ բուրաստան ափսոս անջուր մնացիր. էջ 61բ—62ա։ 75. Այգեպան ինչ ես անում շամբը բուրաստան չի լինիլ. էջ 62բ—63ա. 76. Այսօր է նոր օր ի տօն ցնծութեան. էջ 63ա—64ա։ 77. Աշխարքս աշխարքէն կշտացաւ ես քեզանէն սով աչքի լուս. էջ 64ա—բ։ 78. Ամպն արեւէմէն ծլաց մայիս ամէն թացել ա. էջ 65ա—բ։ 79. Աւջայ դաղ բաշինդայ (թրք.) էջ 65բ—66ա։ 80. Համբարձման ջան գիւլումներ. էջ 66բ—71ա։ 81. Լուսացաւ լուսացաւ աղօթքը. էջ 71ա։ 82. Աղջիկ արի մէկ պաչ տուր ջանիդ մատաղ. էջ 71ա—72ա։ 83. Եաթմիշդմ օթախդայ (թրք.) էջ 72ա—73բ։ 84. Դէլեմ բի գէյրը թու բիքասի ուլֆաթ (պրս. եւ հայ). էջ 74ա—բ։ 85. Էշխիդ կրակը սիրտումս վառայ. էջ 75ա։ 86. Մէշ գիննի մամատամ (թրք.) էջ 75բ։ 87. Տօմարական աղիւսակ 1848—1908 ամաց. էջ 76բ—80ա։

Յիշատակարանք. Էջ 1ա բ. 1862-1899 թուականներէն զանազան ընտանեկան դէպքերու յիշատակարան (ծնունդ, մահ եւն)։

Էջ 46բ. երկու քրոջ կօլովքն (իմա գովքն) 1878ին Սեպտեմբեր 4ին։

Էջ 49ա. 1858ին մայիսի 10ին ես գրեցի ստեփան մչեն (= Մկրտչեան) բժիշկենց. 188[illegible]ին [illegible]ին յունվարի։

Էջ 62ա. 1880ին յունվարի մէջին դաւրժ գրեցի Ստեփան բժիշկենց լիլայվայ թաղի։

Էջ 76ա. 1896-7 թուերէն մէկ երկու տող յիշատակութիւն Նասրէտտին շահի սպանման վրայ են։

## 26

## ԲԺՇԿԱՐԱՆ

**ԺԹ. դար։**

*ԹՈՒՂԹՔ՝ 136. էջ նշանակուած է միայն էջ 1-100: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21,5×17,5×1,8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ շղագիր. Թանաք՝ աժգոյն եւ աղօտ սեւ, տեղ տեղ կապոյտ. տող մինչեւ 40: – ՆԻՒԹ՝ սպիտակ եւ ողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ հասարակ կիսալաթ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 48-136. գրուած մասն է միայն էջ 1ա-47բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն չկայ: – ԳՐԻՉ եւն. անծանօթ՝ յիշատակարաններու չգոյութեան պատճառաւ, բայց թուի շատ նոր ժամանակի գործ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Համբարձում Տէր Կարապետեանցի:*

**Ձեռագիրս է բժշկարան, առանց գլուխներու եւ դասակարգութեան կամ ցանկի. սկիզբէն մինչեւ վերջ** 2—15 **տողերէ բաղկացեալ կարճ հատուածներով կը շարուին խառն կերպով զանազան դեղեր եւ դարմաններ։**

## 27.

## ԱԽՏԱՐՔ

1810։

*ԹՈՒՂԹՔ՝ 264: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21.5×17×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ խառնակ եւ միասին: – ԳԻՐ՝ անցման նօտր, մօտ շղագրին. Թանաք սեւ, տող 20: – ՆԻՒԹ՝ կապոյտ գոյնով կոպիտ թուղթ, տեղ տեղ յետոյ աւելցուած սպիտակ թերթեր (այսպէս Թղ. 6, 145-6, 173-208, 248-259): – ԿԱԶՄ՝ ամբողջ կաշի առանց խաւաքարտի: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-բ, 6ա, 145ա, 168բ-172բ, 188բ-196բ, 201բ-208բ, 238բ, 257ա-259ա: – ԶԱՐԴԱԳՐԵՐ եւն չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ: – ԹՈՒԱԿԱՆ՝ 1810: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Պր. Համբարձում Տէր Կարապետեանի:*

**Ձեռագիրս խառնակ ու անկանոն գրուածք մ'է, ուստի դժուար է տալ կատարեալ բովանդակութիւնը. կը պարունակէ էջ** 2ա—5բ **շաբթուան եօթը օրերուն չարն ու բարիին վրայ. էջ** 6բ—27ա **Այս է աղթարքի հեսապն. մարդոց եւ կանանց վիճակը ծննդեան օրուան որ կենդանակերպին պատահելուն համեմատ. էջ** 27բ-34բ **նոյն՝ մարդոց եւ կանանց խառն. էջ** 35ա—66բ **Ռամլի աղիւսակ եւ ասոր** 16 **աչքերուն վրայ ամէն տեսակ գուշակութիւններ. էջ** 67ա—87ա **լուսնի օրերուն վրայ զանազան ֆոնքեր, այն է կախարդական հնարքներ՝ սէր, ատելութիւն զարթեցնելու, գանձ, գող գտնելու եւն եւն: էջ** 87բ—90բ **ամիսներու, շաբաթի եւ այլ աղիւսակներ, իրենց բացատրութեամբ.** 91ա—114ա՝ 28 **օրերու զօրութեան համեմատ զանազան գրկապներ, թլսմներ: էջ** 114ա—115բ **Արդ եթէ կամիցիս գլոյն գերազանցիկ տեսանել եւն, էջ** 115բ-121ա **այս է որ թարգմանած էն արապ լեզուէն ի հայի որ լաւ խասիեաթ եւ զօրութիւն ունի այս...** 21 **արաբերէն (արաբերէն գրով եւ հայ տառադարձութեամբ) կախարդական աղօթքներ զանազան նպատակով. էջ** 121բ-123ա **յաղագս քառասունք մտանելոյ. էջ** 123ա—132ա **զանազան կախարդական գրեր.** 132ա—144բ **գեղեր, դայլկապ, դեւի աղօթք եւն. էջ** 145բ—155բ **լուսնի եւ կենդանակերպից վրայ բախտի եւ գուշակութեան աղիւսակներ. էջ** 156ա—163ա **կախարդական գրկապներ. էջ** 163ա—165բ **բժշկարան. էջ** 166ա—168ա **վասն չբերք կանանց զաւակի տեղ. Սողոմոն իմաստուն ժողովէց ամէն բժշկներն. էջ** 173ա—188ա **Նոր գրչէ յաւելուած՝ քաղուած նախորդներէն՝ լուսնի եւ կենդանակերպից վրայ օրերու եւ գործերու չարն ու բարին իմանալու համար. էջ** 197ա—201ա **կենդանակերպներու զօրութիւնը. էջ** 209ա—218ա **նոյնը թրք. եւ հայ.** 218բ **չարնեաթի աղօթք.** 219ա **վասն թրթուրի.** 219ա—220բ **վասն ցաւագարի, ջերմի, սիրոյ եւն.** 221ա 225ա **Աղօթք մը հանուած զանազան գրքերէ. ի սկզբանէ էր բանն եւն:** 225բ—226ա **կախարդանաց աղիւսակք.** 226բ **ուռ շինելու ձեւը.** 227ա—238ա **Սողոմոնի եւ** 33 **դեւերու պատմութիւնը. “Ցամին տէրութեանն թագաւորին... սողոմոնի որդոյն դաւիթի„ եւն. էջ** 239ա—245բ **վիճակացոյց կենդանակերպից վրայ.** 246ա-247բ **զանազանք.** 248ա—254ա **վիճակացոյց այբուբենի վրայ.** 254բ—256բ **եւ** 259բ **թլսմներ (այս մասը** 248-259 **նոր գրութեամբ է եւ նախորդ թիւ** 26 **ձեռագրի գրիչը).** 260ա—262ա **կով ինան երին պասի տուշտի (երկնից եւ երկրի խօսակցութիւնը՝ ոտանաւոր՝ “Համբարցում օղլի օվանեսին չրաղի„ հեղինակութեամբ).** 262բ—264բ **Հոգին մարմնին ասաց (ոտանաւոր)։**

*Յիշատակարան. միայն էջ 248ա (Նոր յաւելեալ մասին մէջ). Գրեցի այս գիրքս. Որ երրորդուին փրկէ զմեզ այսինքն Քրիստոնէին. Անօրէնների ձեռքից. եւ Տէրն մեր յն քն զօրուն. կարօղուն տացէ Ռուսաց կայսերին. որ է պահապան Քրիստոնեայ ազգին: ամէն:* **Մ. Ն. Ծ. Ն. Թ. Մ.:** *(հմմ ՌՄԾԹ = 1810 թիւ)։*

## 28.

## ԱԽՏԱՐՔ

?

*ԹՈՒՂԹ-Ք 120: – ՄԵԾՈՒԹԻՒՆ 17,5×10×2 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ խառնակ, միասիւն: – ԳԻՐ՝ անցման նօտր. թանաք սեւ, սկզբնատողերը կարմիր կամ դեղին. տող 19-25: – ՆԻՒԹ՝ սկիզբէն 9 թերթ սպիտակ, իսկ մնացեալը կապոյտ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմահան եղած, թերթերը թափած. տեղ տեղ պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ, լուսանցազարդ եւ զարդագիր չկան: – ԳՐԻՉ եւն անծանօթ՝ յիշատակարանի բացարձակ բացակայութեան պատճառաւ: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Պր. Սիսակ Բժշկեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. էջ 1ա– 9բ դիր, թըլսմ, աղօթք նազարի եւն. էջ 10ա – 23ա վիճակարան ըստ այբուբենից. էջ 23ա — 44բ վիճակարան ըստ ժբ կենդանակերպից. էջ 45ա—58բ 12 կենդանակերպներու հետ ծնած դեւերու եւ տասնց թըլսմներու վրայ. Հարցմունք Սողոմոնի դիւացն թէ որպէս հանդիպէք մարդոյ։ էջ 58բ – 61ա բժշկութեան չորս գլուխ աւետարաններ. էջ 61ա—63բ 12 ամսոց օրերու բարին ու չարը. էջ 63բ—65ա վրան հպատութեան առաքել վարդապետէ ասացեալ. Քան զամենայն գործս չարեաց (տաղ). էջ 65ա – 66բ բնութիւն մարդոց ըստ ամսաթուոց ծննդեան. էջ 66բ—110բ զանազան թլիսմներ եւ աղօթքներ դեւ հանելու, դեւ կապելու, ցաւեր ու ախտեր բուժելու եւն. էջ 110բ – 120ա բժշկարան. էջ 120բ 1845—63 թուականներէն ընտանեկան յիշատակարան, որոնցմէ յիշելի է միայն "1848ին յունիսի 4ին թաւրէզ հայերու տուներն թալայմիշ արան (կողոպտեցին)։„

## 29.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՌՃԼ = 1681։

*ԹՈՒՂԹ-Ք՝ 213: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×16,5×4,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ կանոնաւոր, երկսիւն, իւրաքանչիւրը 16×5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր կամ կանաչ. տող 21: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր. մէկ-երկու տեղ (օրինակ Մարկոսի սկիզբը) թերթեր պատռած հանուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–2բ, 160ա, 210բ –213բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՆ ու պատկերները վերին աստիճանի անարուեստ: – ԳՐԻՉ՝ Եսայի քահանայ. տէր՝ գրիչը. տեղ Շաքիի Գուլստան գիւղը. Թուական ՌՃԼ = 1681. – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս ունի ոչ Եւսեբեայ կանոնք, ոչ ցանկ, ոչ գլխակարգութիւնք եւ ոչ նախադրութիւնք. իսք կնոջն շնացելոյ գրուած է Յովհաննու վերջը։

Ցիշատակարան այլ գրչէ. էջ 2բ. 1864 ամի օգոստոսի 19ին այս գիրս առայ ձեռաց աւագ եղնից տիմ.

Գլխաւոր յիշատակարան. էջ 209ա –210ա. փառք ամենայն երրորդութեն հօր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ. Այժմ եւ անզրաւ յաւիտեանս յաւիտենին ամէն։ Արդ օրհնեալ ես քն ած մեր ստեղծող եւ արարիչ համայնոյից արարածոց քոց որդի ած կենդանոյ եւ կենդանաբար միածինդ եւ մարդասէր ած ի քէն սարսեալ զօղան իմանալի զօրութեք սրբասնեալ ածն բոլորից նր նր նր տր ած սաբաւովդ. լի են ամ արարածք փառօք քո։ Դու տր տերանց եւ ած աստուծոց յման ժամանակաց. վն մեր փրկութեն կամաւ հօր եւ համութեն նր հոգւոյդ խոնարհեցար յերկնից եւ մարմնացար յամէն ծնեալ նր կոյս ածածնին մարիամա եւ զատապարտեցեր զմեղս մեր ի մարմնի քում խաչեցար թաղեցար եւ յարեար. զդժոխս աւերեցեր եւ զհոգիսն ազատեցեր համբարձար փառաւք յերկինս եւ միւսանգամ գա ոց ես դատել զերկոյտասան ազգն ՙիլ նովին բարեխաւս նր ածածնին ազատեայ ըզհոգիս. Ամիրին։ Հախնազարին։ Մելքումին։ Գոզալին Պէկազին։ Նազլուխանին։ Եւ զմեղաւոր. գրչիս սուտ անուն եսայի էրեցիս ամէն։ Արդ գրեցաւ նր աւետարանս. ձեռամբն եսայի քահանայիս եւ հայրն իմ. հախնազարն. եւ մայրն պէկազն. եւ հօրեղբայրն մելքումն։ Որ էր աշխատաւոր առաւել քան զհայր։ Որով բազում աշխատեցաւ ի վն իմ ի մանկութենէս մինչեւ ցայսօր. Որպէս յագեգործ ի յագոյն իւրում. աշխատէ. այնպէս աշխատաւոր է ի վն իմ. մինչեւ կարգեաց զիս։ Երես անկեալ աղաչեմք զձեզ. եղբայրք. այս մելքումս յիշեցէք ի քն լեւոյբերան եւ բոլոր հաւատով. Եւ զմիշօղն յիշեալ. յիշի առաջի ածութեն ամէն։ Կրկին անգամ աղաչեմք զձեզ եղբայրք Անմեղադիր լերուք ի սխալութենէ. Որ առաջի գիրս է. չէի ուղիղ ուսեալ (նախապէս գրուած "չէին ուղիղ ուսուցեալ„), ի փափաքութենէս գրեցի. Արդ գրեցաւ նր աւետարանս։ Ցերկիրն չաքի ի գեղն գուլըստան ընդ հովանեաւ (մէկ բառ բաց) Եւ ի թվին ռճլնէր։ Որ եւ ծնեալ յածոն ամէն։ Ցիշեցէք Լուսափանոս սարկաւագս որ զթուխտս կոկեց—։ (Առոր սակ նոր գրչէ) ի ժամանակին որում. Նստեալ էր սարտարն. ի քաղաքն. կանջայ. եւ բազում բանակս ժողովեալ ընդ իւր։

## 30.

### ՏՕՄԱՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

**ՌՁԲ = 1633։**

*ԹՈՒՂԹՔ՝ 315, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ մագաղաթեայ պահպանակ՝ միջինմեսրոպեան երկաթագրով, մնացորդ հին աւետարանի մը: Նշանակուած է (2 թերթ սկիզբէն բաց թողլով) էջ 1-622. որոնց մէջ փախցուած են 312-3 եւ 615-6: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13,5×10×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասին: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17: – ՆԻՒԹ՝ սկիզբէն մինչեւ 336 էջը մագաղաթ. էջ 337—454 մագաղաթ եւ թուղթ խառն, իսկ 455 էջէն մինչեւ վերջ միայն թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ մաքուր: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ սկիզբէն երկու թերթ, էջ 408, 620—622: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագիր չկայ բնաւ: – ԳՐԻՉ անծանօթ. Թուական ՌՁԲ = 1633· տէր եւ տեղ՝ անյայտ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Մեկնութիւն տոմարի. Զոր խնդրեաց Թումա վրդ. Մեծոփավանաց. ածաբնակ աք ուխտին. Եւ սիրով գհայցուածս նորա կատարեալ յակոբ վրդի ղրիմեցւոյ. էջ 1–327. 2. Նորին Յակոբ վրդի ղրիմեցւոյ յաղագս տոմարական մակացութեան թէ ի յորոց ի մարդկանէ արհեստաւորեցաւ. էջ 327–345. 3. Տումար արքայական որ է յոյժ դժուարիմաց. բայց միայն վարժիցն. Արքայական հասարակութիւն այսպէս արա. էջ 346—439 (բազմաթիւ տոմարական գիտելիքներ, որոնք յայտնի չէ թէ մէկ ամբողջութիւն կը կազմեն, թէ առանձին առանձին հատուածներ են աստ անդ հաւաքուած). 4. Ընդդէմ կորուսեալ ազգին այլազգեաց որք են կարապետ նեռին եւ նոր հեթանոսք, հերձուածողքն արիոսի եւ կերինթոսի (այլազգեաց 16 մոլորութեանց դէմ պատասխաններ). էջ 440— 579. 5. Ի խնդրոյ Թովմա վարդապետի (ած)աբնակ աք ուխտին Մեծոփավանից. Եւ ծառայաբար կատարեալ ճգնաւոր ածակիր հոգելից առն. Յակոբ վարդապետի Ղրիմեցւոյ Յաղագս ազգականութեան. էջ 580—614. 6. Ասոր իբր յաւելուած Ներսէս կաթողիկոսի կազմած բոլորակը՝ հարկաւոր բացատրութեամբ. էջ 617—619.

Յիշատակարան. էջ բ. Տր̃ է իմ աւգնական եւ ես ոչ երկեայց՝ զի՞ արասցէ ինձ մարդ. Վա՜յ է ինձ.

էջ 137. վա՜յ է գծողիս.

էջ 435. վա՜յ է մոլորեալ խեղաթիւր գրչիս.

էջ 439. Գրեցաւ մեկնիչս ի թվս. ռձբ. լոյսն տեսողացն է. եւ բանն լսողաց. եւ շնորհքն այ սիրողաց այ.

էջ 583. Եւ մեղաւորիս ած ողորմի սաստ. որ յաղիւսակդ աշխատեցայ.

էջ 596. եւ զմեղաւոր գծողս յիշեայ ի տր.

էջ 603. եւ զմեղաւոր գծողս յիշեայ ու ած ողորմի սաստ.

Իսկ էջ 344—5 գրուած յիշատակարանը կը պատկանի Տօմարի հեղինակին. "Փառք անքաժանելի երրեակ անձնաւորութե եւ միակ բնութե հօր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն. Արդ ով բարունի եւ աստուածային իմաստութե ցանկացող հոգեւոր հայր իմ եւ եղբայր բաղձալի խաչատուր վրդտ, առաջնորդ ածաբնակ քրովբէագումար հաչակաւոր սբ ուխտի թումայի վանք անուանելոյ. Ահա եւ զայս եւս զխնդիր քո կատարեցի բազում աշխատութբ. եւ առցես զսա եւ ըստ ուշիմ եւ նրբահայեաց մտաց քոց որոնեսցես զպակասն լցուսցես եւ զաւելորդն կշռեսցես եւ զոր ինչ հաւանական գտցես. Տնն մատուցանիցես զշնորհս եւ զփառս, զի նր են գանձք իմաստութե եւ ոչ հաւանականն տկարութեւս մեր ներեսցես. Զի թէպէտ խնդրելոյդ յաղթեալ ձեռնարկեցաք օժանդակութբ հոգոյն սրբոյ, որ ոչ անտես առնէ զշահս հասարակաց օգտութե. Վն որոյ աղաչեմ զքո՛ն հեզութիդ սիրով բաղձանաց, զի յիմաստասիրելն քո, քոյովդ հանդերձ զհոգոյ աղքատս քո. զմարտիրոս սուտ անուն անպիտանս եւ ի հառաչալից աղաւթս քո՝ մի մոռանայցես. այլ ի յիշելն քո եւ զած ողորմին յիշեսցես ողջ լեր ի տր. (Գրուած եւ յետոյ քերուած է հետեւեալը) Այլ եւ աղաչեմ զգաղափարողն սիրովն քո, զի զսակաւ յիշատակարանս իմ գրեսցես եւ ած զքեզ գրէ ի գիրն կենաց. Ամէն.

## 31.

### ԳԻՐՔ ՄՈԼՈՒԹԵԱՆՑ

**ՌՃԻԵ = 1676։**

*ԹՈՒՂԹՔ՝ 442. առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն մի մի թերթ մագաղաթեայ պահպանակները՝ անցման երկաթագրով, մնացորդ Մեկնութեան սաղմոսաց: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17,5×12×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասին: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ վարդագոյն. տող 25: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: — ԴԱՑԱՐԿ*

*ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-2բ եւ 441ա-442բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն միայն ուրուագծով: – ԳՐԻՉ՝ Զաքէոս. տէր՝ Յովհաննէս վարդապետ. Թուական ՌՃԻԵ = 1676: – Այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Գիրք Հաւաքման Մոլութեանց. մաս Ա. էջ 3ա—34բ: 2. Յաղագս եօթն գլխաւոր մեղաց (ամէն մէկուն վրայ մանրամասն եւ երկար). էջ 35ա – 400ա: 3. Հաւաքումն յաղագս տասն պատուիրանացն. էջ 400ա—439բ: 4. Յիշատակարան. էջ 439բ 441ա:

Յիշատակարան (այլ գրչէ) էջ 2ա. Քարոզգիրքս այս անկեալ ի ձեռս պարսիկ անօրէն զօրացն զոր գիպեալ ինձ իսրայէլեան պետրէիս գնեցի եւ մատուցի սրբազնասուրբ Հայրապետին Հայոց Տեառն Դանիէլին. ի վայելումն Նորին սրբազնութեանն առ ի յիշատակ ինձ պետրէ իսրայելիս որ եմ ազգաւ յոյն եւ բնակեալ ի կարին եւ Այժմ վաճառականութեան աղագաւ եկեալ ի Թարվէզ յամի ՏՆ 1804 սեպտ" 20:

(Անդ՝ այլ գրչէ). 1814 ես մայհդեսի օվանէս գէրեցի:

Էջ 3ա Կնիք մը հետեւեալ մակագրութեամբ. "Գրքս. Սբ. Էջմէծնա է.„

Էջ 164բ. երեք տող յիշատակութիւն մը, որ ջնջուած էր եւ հազիւ կրցայ կարդալ եւ ձեռագրին մէջ նոյնը դարձեալ գրեցի. "Գիրքս մոլութեանց որ էջմիածնի (է). մի ոք համարձակեսցի իւրացուցանել. ապա թէ ոչ (զպատիժն?) յայ ժառանգեսցէ„:

Էջ 400ա. Կատարեցաւ գիրք հաւաքման մոլութեանց ի հերքումն մեղաց, եւ ի կատարումն առաքինութեանց. յիշատակ յօհաննէս վդպի, առաջնորդի վանացն յովաննու որ յոտին արագածու:

Էջ 429բ. Զաքէոսս մեղօք շաղախեալ մի մոռանայք:

Էջ 437բ. Զզաքէոսս յիշեա:

Գլխաւոր յիշատակարան. Էջ 439բ—441ա. Աստանօր կատարեցաւ հաւաքումն ժ բանեան օրինացն. ի փառս քի որ է օրհնեալ յաւիտեանս Ամէն: Ծանուցումն ընթերցօղաց: Փառք ամենայն երրորդութեն եւ մի ածութեն հօր եւ որդւոյ եւ ամենայն հգյն. այժմ եւ". Արդ յամի ծննդեան փրկչին մերոյ ռ երրորդի, Յ երրորդի, Ի երրորդի (= 1320): Թարգմանեցաւ գիրքս մոլութեց եւ ժ բանեան հրամանաց, ձեռամբ ֆրա պետրոսի. ազգաւ լատին: ~ւ (= աշխարհաւ) Դարագօնացի, ի կարգէ քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի, որ թարգմանէր ֆրա յակոբոս, ազգաւ հայ եւ նա ի կարգէ քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի. ի վերին վանս քռնայ (= Քռնայ). ընդ հովանեաւ նր ամամնիս սրոյ առաջնորդ եւ հոգաբարձու էր յօհաննէս վարդապետն, որ մականուամբ կոչի քռնեցի (գրուած է փռնեցի). հիմնարկօղ կարգաց միաբանից: Յորոյ անուն շինեցաւ նր ուխտս: Իսկ ամասէր եւ բարեպաշտօն պրոնն գօկի եւ ամուսինն իւր տիկին էլթիկն եւ յօհան վդպն եւ տոքա գ եանն ինքնայօժար կամօք նուիրեցին զվանս կարգին քարոզողաց սրբոյն դոմէնիկոսի տուրք յաւիտենական: Արդ վերոյգրեալ յօհան վդպն. Եղեւ պատճառ բազում բարութեան, զոր ժողովեաց սաստ վարդապետք լատինացւոց, եւ հայոց տածելով զամեն ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ. եւ թարգմանեաց զայս ամաշունչ գիրս. այլ եւ թարգմանէ գիրքս բազումս ոգեշահս. եւ լուսաւորիչս. եւ ոչ այսչափ միայն: Այլ եւ եղեւ իբրեւ զհաւատարիմ լոտեսն յեսու նաւեայ. մտանելով յերկիրն աւետեաց. ա(յսինքն) ի միաբանութիւն նր եկեղեցւոյն հռօմայ. եւ եբեր ազգիս հայոց զփրկական համբաւն. եւ առաջնորդեաց արժանաւորացն մտանել ի հնազանդութի գերագրական աթոռոյն հռօմայեցւոց. որ է մուտ եւ դուռն երկնից արքայութեն: Արդ որք ի գիր առնուք եւ օգտիք ի սմանէ. մեղաց թողութի խնդրեցէք յայ վերոյգրեալ աշխատաւորացս եւ նոցին երախտաւորացն: Նաեւ աղաչեմ զդասդ սրբազան ընթերցողաց եւ գրողաց, որք օրինակէք զգիրքս զաւակաւ յիշատակարանս. եւ դուք յիշեալ լիջիք ի գիրն կենաց:

Եւ արդ եթէ ոք կամիցի զգիրս ստանալ, պարտի զի եւ զգրեալսն որ ի նմա ի միտ առնուլ, ըստ սասացելոյ ամահօրն դաւթի. սաղմոս ասացէք եւ ի միտ առէք: եւ զի երիս իրս արժան է ըստանալ գրասիրացն: Նախ հեզ լինել առ ամ իրս: Եկդ" խոնարհ առ ամ ոք: Երր"դ. անյիշաչար առ ամ անցաւորս: Որ եւ ստացեալ ունէր զայսոսիկ ընդ այլ ամ առաքինութեցն եւ ազգի ազգի վարուցն. սրբազան եւ մեծ րաբունապետն Յօհաննէս. գաւառաւ արարատեան: Ի գեղաքաղաքէն Կարբու, սնեալ եւ վարժեալ, յամծարանակ եւ գերահռչակ հրաշափառ նր մենաստանս յօհաննու վանից: Ընդ հովանեաւ մեծի ամլորդւոյն եւ երանելոյ ամենօրհնեալ բերանոյ փրկչին սրբոյն յովաննու Կարապետին. եւ հրաշակերտ նր կաթուղիկէին. որ յոտին արագածու՝ ի բնակութիս իշխանացն ամատունեաց. եւ ի նիստ կայանի արքեպիսկոպոսաց գաւառիս. հանդէպ մեծի լերինն արայի: ի վերայ կարճահօս եւ արագագնաց գետոյն քասախու: Որ եւ ընկալաւ առաջնորդութի նր ուխտիս ամս ի. որ ահա դեռ եւս հովւէ բարեձեւուք զվիճակեալ սեփհական ժողովուրդ ուխտիս. զգաւառս կարբու. եւ զինւոյ տան որ այժմ ասի շարապխանայ. եւ Կէ"ոյն շիրակայ. որ եւ ընդ բազում արդեանցն որ ունի ի դրան նր կարապետիս. ստացաւ եւ զգիրքս մոլութեց. եւ եդ յիշատակ ի դուռն նր կարապետիս. ի վայելումն մանկանց սորա. ի թուին. ռ. ճ. ի. եւ ե. առ ի յիշումն ինքեան եւ վայելումն հոգեւոր զաւակաց սորին: Իսկ որք ընթեռն յիշէն յաղօթս իւրեանց. զքաջ վդ"ն յօհաննէս: (Այստեղ թուի թերթ ինկած. յաջորդ երեսը այլ գրով գրուած եւ գրեթէ ջնջուած) Գիրք մոլութեց նր էջմիածնի մի ոք համարձակեսցի իւրացուցանել ապա թէ ոչ անէծս ժառանգեսցէ: գրեցաւ ի թվին ռճլ դեկտեմբ" ա:

Պարզ է որ ձեռագիրս Ս. Էջմիածնի ձեռագրատունէն գողցուած է:

## 32.

### ՍՈՂՈՄՈՆ ԵՒ ԹՈՒՂԹՔ ԱՌԱՔԵԼՈՑ

**ՌՄԺԵ = 1766։**

*ԹՈՒՂԹՔ՝ 280: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 17×11×5,5 սմ. — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, առանց կարմրատառի. տող՝ 18: – ՆԻՒԹ՝ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր. կազմին առաջին կողը փրթելու վրայ է: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 252ա—բ, 273բ–276ա, 280ա—բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր չկայ. գլխաւոր գրքերու սկիզբները իբր խորան դրուած են սեւով ներկուած խազմզուքներ: — ԳՐԻՉ՝ Ստեփանոս քահանայ. տէր՝ գրիչը. տեղ՝ Կախոյ քարվանսարայ. թուական ՌՄԺԵ = 1766: – Այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Եկղեսիաստէս. էջ 1ա—24բ։ 2. Երգ երգոց. էջ 24բ–37բ։ 3. Իմաստութիւն Սողոմոնի. էջ 38ա—77բ։ 4. Շարունակութիւն Եկղեսիաստիկի. էջ 78ա—100բ։ 5. Գիրք Առակաց. էջ 101ա—170բ։ 6. Ցակոբու Առաքելոյն թուղթ կաթուղիկեայց. էջ 171ա—180բ։ 7. Թուղթ Պօղոսի առ Հռովմայեցիս. էջ 181ա—186ա։ 8. Կորնթացոց Ա. էջ 186ա—196ա։ 9. Կորնթացոց Բ. էջ 196ա—199բ։ 10. Գաղատացոց. էջ 199բ—200բ։ 11. Առ Եփեսացիս. էջ 200բ—202ա։ 12. Թուղթ Պօղոսի առ Փիլիպպ... էջ 202ա—բ։ 13. Առ Կողոսացիս. էջ 202բ—204ա։ 14. Թեսաղ. Բ. էջ 204ա—բ։ 15. Տիմոթ. Ա. էջ 204բ—206ա։ 16. Առ Տիտոս. էջ 206ա։ 17. Եբրայեցոց. էջ 206ա—216բ։ 18. Պետրոսի Ա. էջ 216բ—227բ։ 19. Պետրոսի Բ. էջ 227բ—235ա։ 20. Յօհաննու Ա. էջ 235ա—245ա։ 21. Յօհաննու Բ. էջ 245բ—246բ։ 22. Յօհաննու Գ. էջ 246բ—248ա։ 23. Թուղթ Յուդայի. էջ 248ա–251բ։ 24. Վասն ամաց եղանակաց. Յունվար որ է հոռի թէ ի նոյն ամսոյ լուսինն խաւարի... էջ 253ա—266բ։ 25. Ցաղագս երկոտասան տանուտեարց. Յորժամ խոյն լինի տանուտէրն գարունն... էջ 267ա—273ա։ 26. Յիշատակարան. էջ 276բ։ 27. Պահոց օրերու աղիւսակներ. էջ 277ա—279բ։

Ցէլտրա|--բէ-՚+. Էջ 37բ. Առ նոյն յայնմանէ տուչութէ զի այսպէս ունէր։ Սպիադ նովույ գրէլ է։

Էջ 100բ. Գըրեցաւ ի Կախոյ քարվանսարէն ՈՎ ընթերցող յիշեայ ի Տր աղօթս քո զգծող մեղապարտ զստեփանոս քահանյեայս եւ իւր ծնողացն մահտեսի կարապետէն մօրն սառայէն եւ այլ ամ այրեանց մե (կիսատ թողուած)։

Էջ 170բ. ՈՎ ընթերցող յիշեա զստեփանոս քհանայայս թլփացի գրեցաւ կախ ռմժե։

Էջ 277ա. Թուին հայոց ռմժե. գիր տարւոյն ցոն է. տանուտէրն այծեղջիւրն է... Գրեցաւ ի կախոյ քարվասարէն. ՈՎ ընթերցող յիշեայ զգծող գրոյս մեղապարտ ստեփանոս քայհանայս որ սաեաղ նովայ կոչէն եւ հայրն իմ մահտեսի կարապետն եւ մայր իմ սարբայ. եւ դուք յիշեալ լինիք յառաջի Այ ամէն։

Էջ 279բ (այլ գրչէ). մահտէսի օվանէս ղազարի գիրեցի 1814 թարվին։

Առաքելոց թղթոց բաժնին մէջ ձեռագիրս լիակատար չէ, այլ կը ներկայացնէ քաղուածք մը։

## 33.

### ԲՆԱԶՆՆՈՒԹԻՒՆ

**ՌՃՂԶ = 1747։**

*ԹՈՒՂԹՔ՝ 125: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×11×2 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր, թանաք սեւ. առանց կարմրագրերու. տող 20: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա–4ա, 122բ–125ա: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագրեր չկան: — ԳՐԻՉ, տեղ եւ տէր անծանօթ: – Թուական՝ ՌՃՂԶ = 1747 նոյեմբեր 1: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Ձեռագիրս է. Գիրք որ կոչի բնազննութիւն բոլորի մարմնոյ մարդկայնոյ. Արտադրեցեալ ի ճօան պաթիսթաէ պօռթայնոյ. եւ համառօտեցեալ ի Փրանկեսկոսէ Սթելլուաթոյ. Թարգմանեցեալ ի Յովհաննիսէ վարդապետէ կոստանդինուպօլսեցոյ, ի զուարճութիւն հայկազունեաց, ըստ խնդրոյ պարոն Գասպարի որդւոյ խոճա Սահրատին. ի յիշատակ յանձին իւրոյ եւ հոգոց ծնողաց իւրոց եւ ի վայելումն ընտանեաց նորին (էջ 5ա)։ Հայ վաճառականներուն ուղղուած կարճ դիմում մը եւք (էջ 5ա—բ), նախերգանքով մը կը դիմէ Ս. Գրիգոր լուսաւորչին, որուն կը ձօնէ այս թարգմանութիւնը (էջ 5բ–6բ)։ Գիրքը կը բաժնուի 4 մասի, բազմաթիւ գլուխներով. Ա. Ցաղագս թէ զիարդ բնազննութիւնք եւ կամ բնազննուք ի ձեռն նշանաց երեւեցելոյ ընմարմնոյ մտածիցեն զհակամիտմունս հոգոյն. էջ 7ա—48ա։ Բ. Ցաղագս նշանից յատկութեանց եւ բաժանման բաղադրութեան մարմնոյ մարդկայնոյ (...Գլուխ մեծագոյն նշանակէ զքնափութիւն եւն.) էջ 48բ—80բ։ Գ.

Ցաղագս համագումարման նշանից մարմնոյ մարդկայնոյ. (ներքին յատկութեանց արտաքին նշաններր. օր. Առն արդարոյ բոլոր մարմինն է բարեյարմար, հերքն մթագոյնք են). էջ 80բ—92բ։ Դ. Ցաղագս կերպից եւ եղանակաց, որովք մտածնելոց մերոց եւ այլոց ախտից մոլութեանց եւ վատթարութեանց դեղք եւ ապեղանիք (Ր. Ցաղագս թէ որպէս անգէտ ոք կարէ լինել գիտուն). էջ 92բ—113բ։ Հոս կը վերջանայ գիրքը։ Անկէ յետոյ ուրիշ ձեռք մը հաւաքեր է զանազան բժշկական տեղեկութիւններ Գալիանոսէն եւն. էջ 114ա—122ա։

Յիշատակարանք. Էջ 1բ, 2բ. 3բ, 4ա գրչափորձեր եւ հաշիւներ օտար գրչէ։

Էջ 4բ այլ գրչէ. Գիրք իմաստութեն որ կոչի բընազննութիւն բոլորի մարմնոյ մարդկայնոյ. Զննազննութիւն ալ կայ ուզողի. գրքիս գինն եառ գրած է ով որ ուզէ առնու գիտողաց լԱւ գիրք է չի գիտողաց անպէտ։

Էջ 113բ (բուն գրչէն) վերջ բնազննութե. ուճզզ նոյեմ„ ա։

Էջ 124բ (այլ գրչէ) մայհդեոի օվանէս զզաբէն. 1814։

Էջ 124բ, 125բ եւ կողի վրայ կան եւ գրչափորձեր եւ մէկ երկու տող ոտանաւոր։

# 34.

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ, ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

ՌՃԼԲ = 1683։

*ԹՈՒՂԹՔ՝ 194, առանց հաշուելու սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ մագաղաթ, մնացորդ միջին-մեծութեան երկաթագիր աւետարանի մը: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20.5×15×4,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն. խորաքանչիւրը 15,5+5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատառերն եւ սկզբնատողերը կարմիր. տող 24: — ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը մաշուած, թուղթերը գործածութեամբ ղեղնած, բայց գրութիւնը ամբողջովին անվնաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ լուսանցազարդ, զարդագիր չկայ մնաւ: – ԳՐԻՉ՝ Մխիթար երէց. տեղ՝ Մոկաց գաւառի Նաննենց գիւղ. թուական ՌՃԼԲ = 1683, ստացող անծանօթ: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի:*

Կը պարունակէ. 1. Առենի Սաղմոս. էջ 1ա—108ա։ 2. Հաւատով խոստովանիմ. էջ 108ա—110բ։ 3. Կարգաւորութիւն հասարակաց աղօթից եկեղեցեաց հայաստանեաց որ կատարի ի մէջ գիշերի... էջ 110բ—112բ։ 4. Առաւօտու ժամուն. էջ 112բ—120բ։ 5. Արեւագալի ժամուն. էջ 120բ—122բ։ 6. Երրորդ ժամուն. էջ 122բ—123բ։ 7. Վեցերրորդ ժամուն. էջ 123բ—124բ։ 8. Իններրորդ ժամուն. էջ 124բ—125ա։ 9. Պատարագամատոյց էջ 125ա—142ա։ 10. Երեկոյի ժամուն. էջ 142բ—147ա։ 11. Խաղաղական. էջ 147ա—149ա։ 12. Հանգստեան. էջ 149ա—151ա։ 13. Մեղայ ամենասուրբ. էջ 151ա—152բ։ 14. Տօնացոյց եւ աւետարանացոյց. էջ 152բ—194ա։

Յիշատակարանք. Էջ 1ա (շատ անվարժ գրչէ մը) բանք սաղմոսիս է պատ-ական (տուն մը միայն) Ըբրահամ ծանեաւ զած... (իբր գրչափորձ)։

Էջ 41բ. Քն ած մեր քո գչթութե ողորմեա ըստացողի տառիս (յետոյ 8 տող բաց թողուած)։

Էջ 53ա. Տր ած դաւթի մարգարէի բալեխաւսութբ ողորմի ըստացողի գրոցս (9 տող բաց)։

Էջ 67ա. Ած ողորմի ըստացողի գրոցս (2 տող բաց)։

Էջ 79բ. Տր ած յն քն աղաչանաւք նր ածածնին եւ դաւթի մարգարէին եւ ամ նրոց ողորմի ստացողի գրոցս (4 տող բաց)։

Էջ 92ա. Տր ած յն քն ողորմեա ըստացողի գրոցս այս անուն (3 տող բաց)։

Էջ 110բ. Ով դաւք լոյսերամից յորժամ հանդիպիք սմա կարդալով կամ ուսանելով յիշեցէք ի նր յաղաւթս ձեր զստացող սորայ (այլ գրչէ) վերջին հանօն եւ իւր կողակցուն գուլաղին եւ որդոյն զիրաքին եւ կողակցուն. թազագուլին. եւ իւր որդոցն եւ դըստերաց ած ողորմի ասացէք։ Դարձեալ ած ողորմի ասացէք հանօյին եւ եղբարց զիրաքին. սուքիասին եւ իւրեանց ծնողաց լի բերանով ած ողորմի ասացէք իւրեանց հոգոյն ած ձեզ ողորմեսցի ամէն։

Էջ 125բ. Եւ յամի. ողորմեա ստացողի սորա (բառ մը բաց) եւ գծողիս մխիթար իրիցուս ամէն։

Էջ 142ա (այլ գրչէ) ած ոըմի հանօյին ամէն։

Էջ 152բ (այլ գրչէ) ած ողորմի ասացէք հանօյին կողակցուն գուլաղին։

Էջ 174բ. Զանա(ր)ժան գիչս յիշեայ ի քն։

Գլխաւոր յիշատակարան. Էջ 194ա. փառք ամենազաւր տրուեն քի ամ մերոյ. որ ետ կարող տկար ոգւոյ մխիթար իրիցոյ մեղապարտի։ հասանել ի յաւարտ նր գրոցս որ է սղմարան տօնացոյց եւ աղաւթմատոց. Եւ արդ գրեցաւ սայ յերկի(ր)ս մոկաց. ի գիւղս որ կոչի նաննենց ընդ հովանեաւ նր սարգսի զօրավարին. ի կթղկութե աղթամարայ տն թումային տր ած յն քն զինքն անշարժ պահեսցէ ի վր իւր աթոռին ամէն։ Ի թուականիս հայոց. ուճլբ ի դառն եւ նեղ ժամանակիս. աղաչեմ զձեզ ով նր մանկունք յորժամ ընթեռնոյ զգիրքս զած ողորմի ասացէք եղկելոյս։ անմեղադիր լերուք զի կար մեր այ(ս) է։

Էջ 194բ (այլ գրչէ աւելցուած). Դարձեալ յիշեցէք 'ի մաքրափայլ յաղօթս ձեր եւ ած ողորմի ասացէք բարեմիտ եւ հեզահոգի ըռէս հանօյին որ ըստացաւ զայս սաղմոս տօնացոյց աղօթքմատոցս յիւր հալալ վաստակոց յիշատակ իւր հոգոյն եւ ծնողացն հօրն՝ պապօյին եւ մօրն մարգարտին եւ որդոցն զիրա–

քին եւ մարգարտին հերեքին նոնոփարին մանիշակարին եւ իւր եղբօրն զիրաքին եւ հարս Թագայ գուլին․ եւ որդոցն աստուին․ մանուկին․ յովանէսին․ արգարին ըի բերանով ած ողորմի ասացէք ած ձեզ ողորմեսցի ամէն։

Դարձեալ երես անկեալ աղաչեմք յիշեցէք ի Քս յաղօթս ձեր եւ ած ողորմի ասացէք բաէս հանօյին․ եւ իւր կողակցուն գուլաղին որդոյն զիրաքին․ եւ իւր առ ած փոխեցեալ եղբօրն զիրաքին եւ սուքիէասին որդոցն եւ Թոռներաց որք կան եւ որք առ ած ընթացեալ են ըի ւղրտիւ եւ բոլոր հաւատով ած ողորմի ասացէք իւրեանց հոգոյն ած իւր միոյս անգամ գալուստ ձեզ ողորմեսցի իւր առատ ողորմութենէն ամէն։

Վայելումն տր գաւպարին։

# 35.

## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

ՌԿԲ = 1613։

*ԹՈՒՂԹՔ 389։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 24×19×8 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 19×6,5 սմ.։ – ԳԻՐ՝ նոտր, իսկ էջ 351-386 բոլորգիր․ Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ կանաչ, տող՝ 30։ – ՆԻՒԹ՝ Թուղթ․ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ զոհացուցիչ, բայց սկիզբէն եւ վերջերէն քանի մը Թերթ պակաս։ – ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ։ – ՆԿԱՐԱՑԱԶԱՐԴԵՐ եւ խորաններ կան, բայց անարուեստ. զարդագրեր չկան։ – ՄԱԳԱՂԱԹԵԱՑ պահպանակներէն կը մնայ միայն Թերթ մը վերջէն, բուն երկաթագիր գրութեամբ, մնացորդ հին սաղմոսի մը։ – ԳՐԻՉ Մինաս քհ․ տեղ Եմանանու Եղինկեան գիւղը․ ստացող Թուի Միաբանութիւնն Ստաթէի Վանաց․ Թուական ՌԿԲ = 1613։ – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի։*

Կը պարունակէ․ 1․ Վարք հարանց․ էջ 1ա — 350բ․ 2․ Գիւտնութիւն պատուական եւ ցանկալի յոյժ հաւաքեալ ի մի ի բազմաց առաքելոց վարդապետաց խոստովանիմ եւ հաւատամ․ էջ 351ա — 355բ։ 3․ Երանելոյն եփրեմի յաղագս ապաշխարութեան․ Ասէ երանելին մարգարէն եզեկիէլ․ էջ 355բ—367ա։ 4․ Ցորդորակ Սարգիս վրդպի ի տէրն ամ հովիւն քաջ․ Եւ արդ վասն զի նախանկար աւրինակ ունին․ էջ 367ա—370ա։ 5․ Ցորդորակ Սարգիս վրդպի բարձրապարծի ողորմութիւն Առ դատաստանաւ․ Եւ արդ զի այսպիսի յորս կամէր առաջի․ էջ 370ա – 373բ։ 6․ Սարգսի վրդպի Ջամ հոգս ձեր ընկեցէք ի նա․ Զի նա հոգ"․ Եւ այսոքիկ բստ տրունականաւ․ էջ 374ա — 376բ։ 7․ Անանիայ շիրակացւոյ ասացեալ․ Ցաղագս պղջման արտասուաց․ ի խնդրոյ Գրիգորի միայնակեցի․ Ով ածասէր եղբայր․ էջ 376բ — 383ա։ 8․ Խրատք Յոհաննու մանդակունեցւոյ միանձանց․ Առն մոնոզոնի․ էջ 383ա — 385ա։ 9․ Նորին ի նոյն գրոց․ Արդ են վանականք որք․ էջ 385ա—386բ։ 10․ Տօմարագիտական․ Թուական այսպէս արա․ էջ 387ա—388բ։ 11․ Գլխաւոր յիշատակարան․ էջ 389ա—բ։

Յիշատակագրութիւն․ Էջ 7ա․ Եւ զեղկելի գծողս յիշեցէք։

Էջ 28ա․ Եւ զանպիտանս գրչաց յետին, որ չեմ արժան անուանս յիշին․ եւ որ ասէ զտր ողորմին, Թողցին իւր մեղքն ամենեւին․ հազար ամէն եւ եղիցի։

Էջ 48բ․ Եւ զանարժանս յիշել աղաչեմ ով պատուականդոյն եղբարք՝ զի հաղորդս արասցէ զամն երանելոյն պարասկեւի՝ ածն մեր յն։

Էջ 61բ․ Եւ զմինաս անարժանին մաղթել զտրն ամին՝ յերկարացնել ոչինչ աւգտին․ աղաչեմ զձեզ ընթերցող սոցին․ մի ողորմի ասել բազմամեղիս։

Էջ 66ա երկու կնիք՝ այս մակագրութեամբ․ "Քն ծա Տր Աբրհմ„ եւ "Քն ծա Տր Արիստկս„։

Էջ 82բ, 107ա, 153բ, 159ա եւ 188բ պարզապէս "զՄինաս յիշեցէք ի յն քն„․ (Մինաս բառը վերածուած միատառ անընթեռնլի փակագրի)։

Էջ 117բ․ Եւ զիս փրկեա տր յայսցանէ։

Էջ 119ա․ Ով պատուական եղբայրք՝ եւ սիրելիք յայ․ եթէ պարտ է յորժամ վճարէք ընթերցմամբ կամ գրելով, յիշեցէք գծողս։

Էջ 141բ․ Ո՞վ ընթերցողք՝ աղաչեմ յիշել զիս առ քն։

Էջ 176բ․ Բարեխաւսութբ սրբոյն պետրոսի ողորմածին եւ Քր հարցն ողորմւի եւ մեղաց Թողուի շնորհեա տր ած ամ համօրէն հաւատացեալ քնէիցն․ եւս առաւել անիմաստ գրչին եւ իւր ծնաւղացն ամէն։

Էջ 217ա․ Եւ զմինաս զանարժան գրիչս՝ մի ողորմիւ յիշել ի տրն՝ աղաչեմ ով պատուական եղբարք։ Թէ պարտ է։

Էջ 235բ․ Ո՞վ դասք Քր եւ պատուական կրաւնաւորաց՝ որ միշտ ընթեռնոյք զածաշունչ Քր գրեանս՝ արդ երես անկեալ աղաչեմ առ ոտս ձեր՝ յորժամ ընթեռնոյք․ եւ կամ Թէ աւրինակէք յիշեսջիք զմինաս զանարժան՝ ի Քր յաղաւԹս ձեր հանդերձ ծնաւղաւք եւ ամ ազգականօք՝ ամէն։ Եւ 'ի Թուականիս՝ ռկբ․ գրեցաւ։

Էջ 243ա․ Եւ զմինաս զանպիտանս յիշեցէք ի քն։

Էջ 243բ․ Որ ընթեռնուք զայս մատենին, եւ աքանչանայք ընդ վարս Նոցին, տուք ողորմի այսմ գրաւղին, եւ ընդ Նմին իւր ծնաւղին։ Մարտիրոսին վարդ խաԹունին, եւ եղբարցն սիրունին, եւ միւսոյն տր գրիգորին, եւ աստղին եւ լողին․ տրն ողորմի․ հազար ամէն եւ եղիցին։

Էջ 245ա․ ԶՄինաս յիշեցէք։

Էջ 254բ․ Ով եղբարք՝ զանարժանս Մինաս՝ յիշեցէք ի քն։

Էջ 269ա. ԶՄինաս զանարժան գրիչ յիշեցէք ի Քս։

Էջ 277բ. Բարեխաւսութ՟ սրբոյն աբբա մարկոսի եւ աբբա սրապիոնի, եւ յոհւ մեծի ծերոյն՝ ողորմուի եւ մեղաց թողութ՟ շնորհեա տ՟ր ա՟ծ՝ ա՟մ հաւատացեալ քրիստոնէից՝ եւս առաւել մեղապարտ գրչի Մինաս Ռկնի, հանդերձ ա՟մ ծնօղաւք մինչ 'ի յարեան յեգըն, եւ եւս անդրանիկ եւ սիրելի որդին իմ զմանկասարն յիշելով, յիշողքդ յիշեալ լիցի՝ առաջի ա՟յ. ամէն։

Էջ 279բ. Աղաւթիւք սրբոյն պաւղա պարղամոի՝ ողորմեա Քս ա՟ծ ա՟մ համաւրէն հաւատացեալ քրիստոնէիցն. եւս առաւել մեղսաթաւալ գրչիս, եւ այլ ա՟մ մերձաւորաց հանդերձ ծնօղաւք՝ յիշողքն յիշեալ լիջին Քի։ Եւ նմա փառք յ.ա՟.նս։

Էջ 301բ. Որ ողորմի Քս ա՟մ հաւատացելոց կարդացողաց եւ լսողաց ամէն։ ԶՄինաս զանարժանս յՏ՟Լ աղ՟չեմ։

Էջ 350բ. Տ՟ր յն Քն ա՟ծ եւ ար՟իչ ա՟մի՝ սոցին աղօթիւք՝ ողորմեա ինձ բազմամեղիս։

Էջ 388բ. Եւ զմինաս զանարժանս յիշեցէք ի Քս։

Գլխաւոր յիշատակարանը թէեւ կիսովին պատըռւած, բարեբախտաբար դեռ ընթեռնլի վիճակի մէջ է մեծ մասամբ. ապագայ կորուստէ ազատելու համար՝ ճշգիւ կ'արտատպենք զայն այստեղ.

Ա. սիւն (էջ 389ա)

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

եւ կգ ամի, ի տէրութ՟ խոյին. Ի թագաւորութ՟ն, Անաւրէն եւ ար(եանա)րբու Արքայի շահապազի, (յորմէ հե?)ոտէ տիրեցաւ Ռէս հայոց՝ (եւ բազում) ծնաւղաց սիրտ [մորմոքեց (այց եւ զա)ղիս գալարեցոյց՝ ի պատճ(առս մե)ղասիրութ՟, ընտրեաց զգե(ղեցիկ)ս եւ զպատուականս՝ տղայոց (եւ ի)կոյս աղջկանց՝ յաղագս պիտոյի(ց ի)ւրոց։ զոր եւ հայցեն ամենառատ (տէ) եւ 'ի փրկչէն յէ Քէ՝ զի բարձցէ 'ի մէջնջ եւ) 'ի սահմանաց մերոց՝ առհասարկ (քր)իստոնեայք՝ վս անողորմ բարուց սորա։ Արդ գրեցաւ տառս հոգէլից ս՟բ հարանցն՝ Ձեռամբ յամենամեղ յանձնէ Մինաս անարժան գրչի Ռկնի։ Զի անուամբ կոչիմ Քհ եւ ի ծածուկ իբրեւ զմի Ռկն, վս որոյ վայ է ինձ։ Ի տեղիս ուր գրեցաւ սայ՝ ի յՌրէս էճանանու՝ եւ 'ի գեղջէս եղինկեան։ որ եմ ծնեալ եւ սնեալ 'ի սմայ։ ի ս՟բ եւ հրաշափառ ուխտիս ստաթէի ս՟բ առաքելոյն։ Այլ եւ 'ի գլխաւոր ս՟բ առաքլոցն պետրոսի եւ պօղոսի։

Բ. սիւն (էջ 389ա)

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

...որք աստ կան ի պահապան Ռի, եւ ի հանդերձեալ աւուրն ահեղի բարեխաւս առ տ՟ր վս մեր։ 'Ի առաջնորդութ՟ տ՟ր մեսրոպ եպնէ՝ 'ի նոր ընծայ եւ ի կրկին լուսատու հոգւոց մերոց զրաբունապետն զտ՟ր Մովսէս վարդ՟պ՝ ի բազմապատիկ լուսաւորիչ Ռիս հայոց՝ զս՟բ յանապատն ստաթէի՝ որ եւ պատճառ եղեւ իմաստուն հայրն կիրակոս՝ ի յարեւմտից դիմեալ յարեւելս՝ ողորմութ՟ն ա՟յ վս փրկութ՟ հոգւոց մերոց։ եւ ի համախոհ ընկերք սորին, զտ՟ր սարգիս եպն. զտ՟ր թումայ եպն հայր վանից (գրուած եւ յետոյ վրայէն քերուած) եւ զայլ միաբանսն միախհդ. թէով յիսուն՝ կամ այլ աւելի։ Քն ա՟ծ անփորձ եւն սասան պահեսցէ զնս մինչեւ ինքն կամեսցի։ Արդ աղաչեմ զամենեսեանդ որք հանդիպիք ի ս՟մ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք զիս զանարժան գրիչս։ Զհայրն իմ զաքարի այ քհայն. զմայրն իմ գուլաղէն. եւ զեղբայրն իմ զանդրիաս քհայն։ հանդերձ ծնաւղաւք՝ մինչ ի յարեան եգըն։

Ա. սիւն (էջ 389բ)

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

չինութ՟ լինի ի սմա, այլ... հրամանք չկայ որ տեղացս հանէ, ապա յորժամ որ չինութ՟ն նուազի զնա ս՟բ աթոռն ստաթեւայ՝ եւ անդ մնացէ մինչեւ յաւիտեան։ — Եւ դարձեալ յիշեցէք զգրիգոր վարդապետն՝ դեռաւբոյս եւ նոր ընծայ լի շնորհաւք անպակաս յա՟մի, որ եւ յն Քն անփորձ պահեսցէ ա՟մ հնարից սատանայի Ամէն։

Բ սիւն (էջ 389բ)

(այլ գրչէ)

Ես Տաթեւացի Յո(վանն) եւ վր՚դ՚պն որ էր Առա(ջն)որդ տաթեւու վանքին. որ էր հայրապետութեն Ղազար կաթողիկոսին թւ ռճզզ թվին

(այլ գրչէ)

Ես անարժան եւ անպիտան սուտանուն Ոհանէս գրեցի որ աշակերտի Յովաննէս արխաջան վր՚դ՚պն գրեցաւ ռճզ թվն հաոց մարտի ժդ

(այլ գրչէ)

Ես անարժան, պօղոս որ եկի ս՟բ Աթոռս թվին Ռճի էր։

Ձեռագրիս պահպանակին վրայ կան յաջորդ յիշատակութիւնները.

1. 1814 ես մայհդեսի օվանէս գիրեցի չի կորի։
2. Ես զաքարիա վրդպտին եղբայր որդի էվազս կրեցի ով այս գիրս կարդայ ողորմի ասի ռճծբ էր։
3. Առուտուրի հաշիւներ։

## 36.

## Ն. ՇՆՈՐՀԱԼԻՈՅ ԲԱՆՔ ՉԱՓԱՒ

**ՌՂՁ = 1647։**

*ԹՈՒՂԹՔ 261: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 15×10×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 17: — ՆԻՒԹ՝ հասարակ տեսակի թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական հինցած, տեղ տեղ սեւցած, քիչ քորքոտած. սկիզբէն 4 թերթ կիսովին մնակեր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 80ա—բ, 118ա—բ, 164ա—բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր չկայ: — ԳՐԻՉ՝ Մարիամ. ստացող՝ Յօրեղբայրը Մարկոս եպիսկոպոս. տեղ "յերկիրս Քաշթաղու, ի գիւղս Խանածախ" (Ղարաբաղի գիւղերէն մէկն է). Թուական ՌՂՁ = 1647: — Ձեռագիրս սեպհականութիւնն է այժմ դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

**Կը պարունակէ.** 1. Ցիսուս Որդի. էջ 1ա—116բ։ 2. Շնորհալւոյ վոյժտաղ Ստեփանոսէ. Սբ երջանիկ տէրըդ ներսէս. էջ 117ա—բ։ 3. Բան հաւատոյ. էջ 119ա—163բ։ 4. Այբն այ գեղ մերձակայ. էջ 165ա—174ա։ 5. Այբն անսկիզբն աստէ զած. էջ 174բ - 179ա։ 6. Այբն առաջին գեղ տղայ. էջ 179բ—184ա։ 7. Ած անեղ անհասակայ հայր գթութեանց ինձ ողորմեայ. էջ 184բ—186բ։ 8. Յիշատակարան գրոցն Սողոմոնի էջ 187ա – 189ա։ 9. Քաղցրագունի այս մաղթանաւք. էջ 189բ—191բ։ 10. Նորին ժողովող անուն ասացեալ է. Սայ մարգարէ ածաբան. էջ 192ա – 194ա։ 11. Թուխթ մխիթարական տն ներսէսի հայոց կթղկսի Առ ամն իշխան արեւելեան վասն որդւոյ իւրոյ տարաժամ մեռանելոյ. Անտես է լոյս ածային. ըստ առաքելոյ անսուտ բանին. էջ 194բ—197ա։ 12. Ցաղագս երկնից. իմ եղական գոլով բնութիւն եւ սկզբնական. էջ 197բ—207ա։ 13. Միշտ էիդ անեղ բնութիւն բնօրեցան. էջ 207ա—209բ։ 14. Վիպասանութիւն. էջ 210ա – 259բ։

**Գլխաւոր յիշատակարան.** էջ 260ա 261ա. փառք ամենասբ երրորդութե հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Արդ՝ ես մարկոս եպկս ըստացի զայս որդիս գրել տուի ձեռամբ եղբօր դստերն իմոյ մարիամին եւ փծուն գրչի որ ապաշխարող կոչի։ Յիշատակ ինձ եւ փրկութե հոգւոյ եւ ծնողացն իմոց հօրն իմոյ դաւութին եւ մօրն իմոյ թանկաղլին, եւ եղբօրն իմոյ ղուկասին, մելքոնին, եւ պաղին եւ եղիսաբեթ քորն իմ եւ եղբօր որդոցն իմոյ ենկիպարին. գրիգորին. դօվլաթխեարին, եւ հարսներն վառին եւ թումանին, զիլփին, եւ եղբօրթոռներացն մարտին, եղմուրին, թառանին ասլին մարգարտին թիլին. եւ եղբօր հարսներուն գարիանին, գուլումին. փարիզատն եւ դաւլին որ որ (երկեցս) փոխեցաւ առ քն եւ նորատողղող որդոյ նր սենէքարիմին եւ ամ արեան մերձաւորացն, գրեցաւ ըզսայ ի յերկիրս քաշթաղու, ի գ—ղս խանածախ, ընդ հովանեաւ ամենափրկչիս, ի թվականիս հայոց. ռ. ղղ. ին որում եւ մեք թողաք զսա յիշատակ, ով որ զսա կարդայ եւ աւրինակէ. մի բերան զմեղ յիշէ եւ ողորմի ասէ, ած իւրն ողորմեսցի իւր միւսան(գամ) գալստեանն Ամէն։

Ինչպէս կը տեսնուի յիշատակարանս ստացողէն է եւ ոչ գրչէն. ասկէ ետք, էջ 261բ շատ անվարժ գրչով "յիշայտակ յա որդին ...ին ած հոգին լուսաւորի"։

## 37.

## ՑՈՒՑԱԿ ՌԱՄԶԱՐԿԻ

**(ԺԹ. դա՞ր։)**

*ԹՈՒՂԹՔ 53, նշանակուած է էջ 1—80: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22×18×0,7 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ բազմասիւնակ: — ԳԻՐ՝ հին շղագիր. Թանաք սեւ, առանց կարմրատողերու. տող մինչեւ 30: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ թղթեայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ նոր եւ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1ա—6բ, 47ա—բ եւ 48բ—53ա: — ԼՈՒՍՆՑԱԶԱՐԴ, յիշատակարան եւն չկայ բնաւ: — ԳՐԻՉ եւն անծանօթ: — Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Կը պարունակէ իւրաքանչիւր երեսի վրայ վեց սիւնակով աղիւսակներ, որոնց առաջինը կը ներկայացնէ ռամզարկի ձեւերը եւ միւսները կը ցուցնեն թէ այդ ձեւերը ինչ կը գուշակեն. այս աղիւսակները կը բռնեն էջ 7ա—46բ, առանց բացատրութեան. իսկ էջ 48ա կայ ուրիշ աղիւսակ մը ուր գրուած են շաբթուան 7 օրերուն բոլոր 24 ժամերուն ռամզները։

## 38.

### ԱԽՏԱՐՔ

(ԺԹ. դա՞ր:)

*ԹՈՒՂԹ՝ 299: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 30,5×18×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ շղագիր. թանաք՝ սեւ. առանց կարմրատառերու. տող 24–25: – ՆԻՒԹ՝ թուղթ: ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 49ա–101ա, 113բ, 115ա–116բ, 120բ, 127ա–բ, 132ա–137ա, 138ա, 142բ-263բ, 265ա, 266ա, 270բ—288ա եւ 299ա—բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր, յիշատակարան չկայ: — ԳՐԻՉ եւն անծանօթ, բայց շատ նոր գործ: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է դերօակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանի.*

Ձեռագիրս է Ախտարք, որ սկիզբները կանոնաւոր, բայց յետոյ խառն կերպով կուտայ բազմաթիւ տեղեկութիւններ, կենդանակերպներով գուշակութեան, ռամ զարնելու, բախտի, վիճակի վրայ եւն, բժշկական դեղեր, աղօթքներ, գրկապ, թլիսմ եւն։ էջ 264—298 գրուած է հակառակ դիրքով, այն է էջ 298բ համարելով իբրեւ էջ 1ա եւն շարունակաբար։

## 39.

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

ՋԶ = 1457։

*ԹՈՒՂԹՔ 668, նշանակուած 667, բայց 290 bis. — ՄԵԾՈՒԹԻՒՆ 31×21×17 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 24×6 5 սմ.: — ԳԻՐ բոլորգիր. թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 39: – ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմը բաւական քրքրուած, բայց գրութիւնը մաքուր է: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 3բ-4ա: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ եւ զարդագրեր շատ կան, մէկ խորան, մէկ մեծադիր եւ բազմաթիւ փոքր պատկերներ, բոլորն ալ միջակ արուեստով: – ԳՐԻՉ՝ զանազան. մեծագոյն մասը գրած է Ղազար կամ Ղազարիկ, որուն տեղ տեղ օգնած են Անդրէաս կրօնաւոր, Յովհաննէս քահանայ եւ անշուշտ ուրիշներ, որովհետեւ էջ 378բ կ՚ըսուի "եւ գրչացս որ շատ եւ որ սակաւ": Նկարող՝ Մինաս: Տեղ՝ Լիմ կղզի, Քաջբերունիք եւ շրջակայ տեղերը. թուական՝ սկսած ՋԱ = 1452 թուին եւ վերջացուցած ՋԶ = 1457 թուին. տէր՝ Մահտեսի Ստեփաննոս ղարիպշայ: — Այժմ սեփականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Ձեռագիրս է Յայսմաւուրք. պարունակած նոր վկաներն են կարգաւ. Յիմար վանեցի (1418), Յովհաննէս մանուկ խլաթեցի (1438), Աւագ Սալմաստցի (1390), Սահակ պարսիկ դաւրիժեցի (1417), Թամար մոկացի (1397), Եղիսաբեթ ի խառաբաստոյ (1391), Յովսէփ Դունեցի (1170), Թէոդորոս Սեբաստացի (1155), Ստեփաննոս արքեպս. Սեբաստիոյ (1387), Զաքարիա կաթ. Աղթամարցի (1393), Խոսրով Գանձակեցի (1167), Մելքիսեթ եւ կարապետ վանեցի (1403) եւ Գոհարինէ Սեբաստացի (1155), որոնց նորագոյնին թուականն է 1438։ Յայսմաւուրքին վերջը կան հետեւեալ գրուածները. 1. Յիշատակ եւ պատմութիւն Անդամալուծին զոր բժշկեաց քս. Այր ոմն անդամալոյծ եւ աղքատ էջ 658ա – 660ա։ 2. Յիշատակ վարուց սքանչելի առնն այ Գրիգորի հռոմայ պապուն. Այր ոմն կոմս էր ի վրէնդիս քաղաքէն. էջ 660ա –664բ։ 3. Յիշատակ վարուց սբ հաւրն Մարկոսի հռոմայեցոյ որ քսան մղոնաւ հեռի մերձ դրախտին աղաւթէր. Արք երեք աբեղայք ի Միջագետաց, էջ 664բ—667ա։

Յիշատակարանները շատ բազմաթիւ են. գրեթէ ամէն վկայաբանութենէ վերջ կը յիշուի ստացողը կամ գրիչը իր այս կամ այն ազգականին հետ. այս տեղեկութիւնները բոլոր հաւաքուած են գլխաւոր յիշատակարանին մէջ, ուստի զանց ընելով մի առ մի կրկնել, մէջ կը բերենք միայն այն յիշատակութիւնները, որոնք նորութիւն մը կը պարունակեն։

Էջ 1ա. (օտար գրչէ). ես անպիտան. բարեմիտ եւ ամենաթ... սուտանուն սարգիս?... գրեցի այս գիրս....։

Էջ 4բ. մեծադիր պատկերին մէջ "Զմաւզդասի Ստեփնոս եւ զծնողս իւր յիշեցէք ի քս ածն ամենայնի", "Ստփնոս մազդասին է եւ եղբայր նորին խըդըրշէն է", "Զմինաս նկարող ի տր յշց"։

Էջ 48ա. Որոց աղօթիւքն ողորմի ստացողի գրոցս մահդասի ստեփաննոսին մականուն ղարիպշին եւ ծմ արեան մերձաւորաց։

Էջ 185բ. Որոց աղաւթիւքն ողորմի ստացողի գրոցս մահդասի ստփնսին եւ ծնաւղաց նորին ծծատրուն, որ ջերմեռանդ սրտիւ տայր զգին սորա՝ եւ խաթուն մելիքին։

Էջ 200բ. Որ ողորմի ստացողի գրոցս... եւ հոգեւոր որդոյս մերոյ կարապետ սարկաւագի որ բազում աշխատութեամբ սպասաւորէ մեզ։

Էջ 217ա. Որ ողորմի եւն... եւ անպիտան գրչիս ղազարի եւ վարդպետին մերոյ տէր իգնատոսի

*պատուական կրաւնաւորին հանգուցելոյն ի քն ամէն. եւ որ լի բերանով մեծ ողորմի ասէ մեծ գիր մեղքն ոչ յիշէ։*

Էջ 229ա. *Որոց աղաւթիւքն ողորմի քն. եւն.... եւ կարապետ սարկաւագի որ բազում աշխատութեամբ կոկեաց զթուղթս եւ ինձ անպիտան գրչիս ղազարիս։*

Էջ 310ա. *Որոց աղաւթիւքն ողորմի քն ստացողի գրոցս մահդասի ստփնսին եւ ծնաւղաց նորին մեծատրուն եւ խաթունմելիքին եւ անպիտան գրչիս ղազարի, եւ ծնաւղաց իմոց ամիրշահին եւ արմելիքին, եւ հանգուցելոյն ի քն եղբօրն իմոյ բաղշաիշին ամէն։*

Էջ 378բ. *Զոր ունիմք բարեխաւս առ քն մեծ վասն մահդասի ստփնսին եւ ծնաւղաց նորին եւ մեր արեան մերձաւորացն եւ գրչացս որ շատ եւ որ սակաւ։*

Էջ 404ա. *...եւ անդրիաս կրօնաւրի որ գրեաց զայս գ տետրս։*

Էջ 413ա. *Քն մեծ արժանի արա այն վերջի կիրակէին, որ ասես եկայք աւհնեալք հաւր իմոյ. նոյն ողորմութեդ լսեցէ զձայնդ երանաւէտ՝ մահդասին եւ ծնօղքն իւր եւ ղազար գրչակս, եւ անդրէաս, եւ յհնէս։*

Էջ 554ա. *Որոց աղաւթիւքն ողորմի տր մեծ ստացողի գրոցս մահդասուն, եւ ծնաւղաց նորին մեծատրուն, ատոմին (թուի հոգեհայր), եւ խաթուն մելիքին եւ եղբարցն խըդըրշին, խուդաբաղշին եւ աղաշին. եւ մեր արեան մերձաւորաց եւ որք մասն ունին յամենայն բուրաստանիս. եւ կարապետ սարկաւագին որ զթուղթս կոկեաց եւ բազում աշխատութբ սպասաւորէ մեզ ի յանաւրիկ ամուրս յիմ կոչեցեալ ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս գէորգեա։*

Մահտեսի Ստեփաննոսէն ետք յայսմաւուրքիս երկրորդ ստացող մ՚է Միրիջան, որուն անունը իր այս ու այն ազգականներուն հետ կը յիշուի լուսանցքներուն վրայ, երբեմն նաեւ բնագրին մէջ առանձին կամ Ստեփաննոսի հետ. օրինակ՝

Էջ 456բ. *Առ ծնեալդ մեծ բարեխաւսեա վն ստացօղի գրոցս միրիջանին, կողակցուն խանաղին, եւ ծնօղացն գուլամիրին, եւ փարիխանին, եւ դստերացն խանզադին, էթարին. յամանին* (կամ *համանին*), *քուերն նոնաւփարին* (այլուր աւելցած նաեւ չորրորդ դուստրը *փարիխան*)։

Էջ 631բ (այլ գրչէ). *արտ կրեցաւ սաչկաւիք* (= *սակաւիկ*) *բանըս ձեռամբ սարգիս անարժան քհանայիս որ գողեն* (= *ի գիւղէն*) *սավր գեղայ որ ի մեղաց կինս մեռաւ շատ բըրզագի տր էի չիմացայ մարդոյ ֆիանքայ սուտ է թարկայ դունայ արի աշխարս պաֆայ չունի սուտ համարիմ ով որ կարդայ իւր մեղաց թողութն լինի որ մէ բերան մեզ ողորմի ասէ մեծ իւր ողորմէ ամէն գրեցաւ օգոստոսի ամսոյ ժե թվն ռմժ ին որ ազատ խան եկաւ որմի սալմաս կոտորեց։*

Գլխաւոր յիշատակարանն էջ 632ա. *Փառք ամենանանք երրորդութեն, հաւր, եւ որդւոյ. եւ հոգւոյն սրբոյ, որ ետ կարողութի. տկար եւ տարտամ անձին ղազարի* (էջ 130բ եւն *ղազարիկ*), *հասանել յաւարտ յայսմաւուրաց գրոցս։ Որ աւր ըստ աւուրց. սսկացուցանէ՝ զոսկերս լըսաւղաց սորա։ Պատմութի կարծրագոյն տանջանաց, եւ աքանչելի հնաշխարհիկ վարուց սրբոցն, որ աստ հաւաքեալ կան։ Որոց սիրատարփ տենչմամբ սրտի, ցանկացաւ՝ ամենազով եւ պատուական մահդասին ստեփաննոս։ Նա ստացաւ զսա՝ յիշատակ բարի, իւրն, եւ ծնաւղաց իւրոց։ Հաւրն մեծատրուն, եւ մաւրն խաթուն մելիքին։ Յիշելով զասացեալն 'ի մեծաբարբառ մարգարէէն որ ասէ։ Երանի՞ որ ունիցի զաւակ 'ի սիոն, եւ յիշատակ բարի որպէս զընդանի սիրելի յեէմ, որ է նր եկեղեցի։ Եւ արդ՝ գրեցաւ սա՝ յանաւրէկ ամուրն յիմ։ Ընդ հովանեաւ սրբոյն գէորգեա, եւ այլ սրբութեցս որ աստ կան հաւաքեալ։ Եւ այլն գրեցաւ յերկիրն քաջբերունի, 'ի վանս Սուխարայ՝ ընդ հովանեաւ Սբ մեծածնին եւ մեր սրբութեցն։ Եւ այլն գրեցաւ 'ի վանս արգելան ընդ հովանեաւ Սբ մեծածնիս, եւ նր կարպի, եւ նր յարութեա, եւ նր ստեփաննոսիս տէր յուսկան որդոյ նր գերեզմանիս, վասն խռովութե աշխարհիս հայոց, վասն զի ջհանշէն որդի ղարա ուսուֆին գնացեալ էր յախարհն նետողաց՝ եւ առեալ զամ ամուրս նոցա։ Զհամադան։ Զսաւայ։ Զապահան։ Զռէ եւ զղազւին։ Զգելան, եւ զքաշան։ Զշիրազ եւ զքրման։ եւ զխորասան. եւ զքաղաքս անթիւս։ Եւ կամի երթալ 'ի հրէ։ Եւ 'ի ներքին կողմանէս՝ թռան ղարայոթմանին, զաշխարհս հայոց 'ի տատանման պահէր հասան բակն։ Արդ՝ ըստացաւ զսա՝ պատուական մահդասին ստեփաննոսն՝ յիշատակ իւրն, եւ ծնաւղաց իւրոց, եւ ազգականացն, եւ մեր արեան մերձաւորացն։ Հաւրն՝ մեծատրուն, եւ Մօրն՝ խաթունմելիքին, եւ հարազատ եղբօրն՝ խըդըրշին, եւ խուդաբաղշ սարկաւագին, եւ հանգուցելոյն 'ի քն՝ աղաշային։ Եւ երախտաւոր եւ մեծ պապերուն մարտիրոսին, եւ* (բառ մը բաց)։ *եւ մեծ մամերուն՝ աննայ խաթունին, եւ սառայ խաթունին։ եւ մաւր քուերն՝ գոհար մելէքին, եւ իւր որդոցն՝ փալօշին, եւ զաքարին՝ սպանելոյն յընկերոյն իւրմէ։ Վասն զի սուտ քրիստոնեայ ընկերն իւր խաբեաց զնա՝ ասելով թէ գնանք գինի հմենք* (հ տառը քերուածի վրայ) *եւ ածեալ զնա 'ի տուն, յարձակեցաւ 'ի վերայ նորա՝ եւ սպան զնա՝ երկրորդ կայենն, որ եսպան զեղբայրն իւր զաբէլ։ Քն մեծ որ հանգիստ է մեր հաւատացելոց՝ հանգչէ 'ի զաքարէ հոգին, եւ սրբոյն աբէլայ՝ դասակից եւ պսակակից արասցէ ամէն։ Արդ՝ աղաչեմ զձեզ զամենեսեան կողկողագին պաղատանաւք ով ոք որ հանդիպիք սմա՝ աւրինակելով, կամ ընթեռնլով, եւ կամ ինչ իւիք տեսութբ, յիշեցէք 'ի քն զպատուական մահդասին զստեփաննոսն, եւ զծնաւղսն իւր. զմեծատուրն, եւ զխաթունմելիք, եւ զեղբայրսն, զխըդըրշէն, զխուդաբաղշ, եւ զհանգուցեալն 'ի քն զաղաշէն, եւ զմեծ պապքն՝ զմարտիրոս,* (բառ մը բաց) *եւ զմեծ մամերն զաննայ խաթունն, եւ զսառայխաթունն, եւ զմօրքուրն զգոհարմելէքն, եւ զիւր որդիքն, զփալօշ՝ եւ զզաքարիայ եւ զեղբաւրորդին զմեծատուրն եւ զգուլքան խաթունն, եւ զմամքանն, եւ զհարսն զաղիզ մելիքն, եւ զմաւրքոյրն զնիգարփաշէն, եւ իւր որդոյն խուդաբաղշին, հաւրեղբաւրն իմոյ սարգսին եւ իւր որդոյն մղդասի առաքելին, եւ դստերն սառային, եւ վարդգետացն հոգեւորաց եւ մարմնաւորաց՝ եւ զամենահայրն զպարոն վարդ՝ եւ զմաւրքուերորդին թումայ* (սա Ստեփաննոսի

վարժապետն է, ըստ էջ 354բ) հովիւն զհոգեւոր հայրն զԹադէոս կրաւնաւոր, կաֆայեցին որ 'ի գնալն յե՟մ 'ի ծովուն ընկղմեցաւ. եւ զկ՟րպ ս՟րկւգն, յիշեցէք 'ի ք՟ն զվերոյ գրեալքս 'ի սմա, եւ լի՟ բերանով ա՟ծ ողորմի ասել եւ ա՟ծ որ առատն է 'ի տուրս բարեաց յիշողացդ եւ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի։ Դարձեալ աղաչեմ զձեզ մանկունք ն՟բ եկեղեցւոյ՝ յիշել ի տ՟ր զանարժան գրիչս ղազար եւ անմեղադիր լինել խաշորութե՟ եւ սխալանաց զի կա՟ր մեր այս էր։ Եւ գիտելի՛ է զի զսա սկսաք. ջա Թվկիս հայոց, եւ աւարտեցաք՝ ջ. ղ. վասն դառնութե՟ եւ խառովութե՟ ժամանակիս։ եւ զժխշատակարանի զհետ կարգի ո՛չ գնալոյն անմեղադիր լերուք, երբ սիրտն մաշխուլ լինի, աչքն լուս պակա՛ս կու հայի։ մարդ զմարդոյ ցաւ չգիտէ՝ կէս գիշերին ժամ կու ձենէ Եւ ա՛րդ՝ գրեցաւ սա՛ 'ի Կթղկութե՟ տեառն Տէր Գրիգորի որ նստեալ է 'ի վաղարշապատ քաղաքի. եւ քի յուսոյն մերոյ՝ փառք յ. տնս ամէն (միատառ փակագրով)։

Էջ 632բ այլ գրչէ. Ա՟ծ կակոյ մըհէրն ա՟հնի որ բազում աշխատանք ունի առ ն՟բ առաքեալն զվարձն ն՟բ առաքելոյն առցէ։

Էջ 633ա այլ գրչէ. Դարձեալ յիշեցէք ի ք՟ն զմաղդասի ստեփանոսն. եւ զեղբաւր որդին իւր զկաքաւն. եւ զմլխամն եւ զկաքաւի կողակիցքն զԹամար եւ զհանզադէն։ Եւ զորդի ն զարդլազիզն եւ զսարգիսն՝ եւ զդուստրն զգուլքան։ զղուլիջան եւ զբէկի խաԹունն։ Եւ զայլ ա՟մ արեան մերձաւորսն զկենդանիսն եւ զհանգուցեալսն. յիշեցէք եւ լի բերանով ա՟ծ ողորմի ասացէք։ Որ ստացան զն՟բ գիրքս յարդար վաստակոց իւրեանց. եւ ետուն զսայ լըման ն՟բ գէորգ զաւրավարին (։)

Էջ 633ա այլ գրչէ. Արդ՝ գրեցաւ սակաւիկ բանս՝ ձեռամբ սահակ անարժան աբեղայի՝ ի յերկիրս որ յաղբակ ասի՛. ընդ հովանեաւ ն՟բ առաքելոյն բարդուղիմէոսի, եւ յայլ սրբութե՟ց որ ա՛ստ կան հաւաքեա՛լ 'ի պահպանութե՟ ազգիս հայոց, 'ի յառաջնորդութե՟ տէր կիրակոս րաբունապետի՝ որ խի՛ստ լաւ զարդարեր է զվանքս հոգեկանաւ՝ եւ մարմնական պիտոյիւք. զի անպարապ է պատարագ եւ սաղմոսերգութե՟, եւ ժամակարգութե՟ 'ի դրանէ ն՟բ առաքելոյս, զի քան զքսան եւ զերեսունն անպակաս է կարգացողք եւ սաղմոսերգուքն 'ի ժամատեղացս՝ զոր եւ զփոխարէն ջանից եւ վաստակոց սոցա՛ ա՟ծ տացէ սմա պարգեւս 'ի յարքայութե՟ իւրում։

Եւ արդ՝ գրեցաւ սա՛ 'ի խնդրոյ ա՟ծասէր եւ ք՟նադաւան քրիստոնէին միրիջանի՝ որ ըստացաւ զն՟բ գիրքս 'ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, եւ ծնաւղաց իւրոց գուլամիրին, եւ փարիխանին, եւ կզկցին իւր խանաղին. եւ դստերացն խանզադին. եւ էԹարին. փարիխանին, եւ յամանին. եւ քուերն նոնուֆարին, եւ ա՟մ արեան մերձաւորացն իւրոց, կենդանեաց եւ հանգուցելոց։ Եւ աղաչեմ զհանդիպեալքդ 'ի սմա կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք 'ի ն՟բ եւ 'ի մաքրափայլ յաղաւԹս ձեր՝ զմիրիջան, եւ զկզկիցն իւր. եւ զծնօղսն իւր. եւ զա՟մ ազգակիցսն իւր. եւ որ զա՟ծ ողորմին ասէ սոցա՛ ա՟ծ իւրն ողորմեսցի, ամէն։ Ու. եւ Ղե. Թուին գրեցաւ։

Եւ արդ՝ ե՛ս սակաւ մի ճառեցից զդառնութե՟ ժամանակիս որ եմք 'ի մէջ մ՟ծ ծովացեալ մեղաց մերոց՝ զի անաւրինաց հարկապահանջութե՟ անչափ է՛ եւ անԹիւ որ գրել չի գար։ եւ զայլն պատմեցից ձեզ եղբարցդ իմոց՝ որ մ՟ծ մեղաց է պատուհասն։ զի քան զայս ամս՝ չորս ամաւ յառաջ 'ի յոստան մինչ 'ի հայկաձոր՝ եւ 'ի մահմուդանք մարախ եկաւ, եւ մարդիկ սարսեցան՝ որ ոչ էին տեսեալ. եւ մեղաց ո՛չ դարձան։ եւ դարձեալ երկու ամաւ 'ի յետոյ սաստիկ մահ անկաւ 'ի վան եւ 'ի յոստան. եւ զԹիւ մեռելոցն չկարացաք իմանալ. եւ այնով այլ մեղայ ո՛չ տուին։ Եւ դարձեալ երկո՛ւ ամաւ մինչ 'ի յայս ամս՝ որ եմք 'ի մէջ՝ նոր կրկին ա՟ծասաստ բարկութե՟ սփռեցաւ յաշխարհս հայոց մ՟ծ անԹուելի մեղաց իմոց. մանաւանդ վանայ քաղաքին գեղարէիւքն, եւ յոստանայ մինչ 'ի խօշաբ. զի 'ի յաւագ մեծի ուրբաԹի գիշեր լոյսն 'ի շաբաԹ որ էր զատիկ՝ ա՟ծ բարկացաւ, եւ շարժեաց զերկիր 'ի բազում տեղիս. եւ ա՛յն որ 'ի վան եւ յոստան շարժեաց՝ մարդ ոք չէր տեսեալ, եւ ո՛չ 'ի պատմութե՟ց լուեալ. զի ո՛չ վանք մնաց, ո՛չ քաղա՛ք, ո՛չ գեւղ, եւ ո՛չ շինութե՟. զի. խ. եկեղեցի վանայ բոլոր մինչ 'ի հայկաձոր 'ի հիմանց քըլան՝ ա՛յն հրաշի աւրն, եւ սու՛գ ածին քրիստոնէից. եւ զաւերումն տանց եւ բարձրաշէն ապարանի՛ց, եւ զմնացեալ մարդ, կի՛ն եւ տղա՛յ, եւ անասո՛ւն՝ որ 'ի տան հողի տակն մնացին՝ չկարացաք իմանալ եւ 'ի գիր արկանել՝ զի անԹիւ էր, բայց ն՟ր միայն է գիտելի որ արար զնա՛ մ՟ծ մեղաց մերոց։ Եւ աղաչեմ զձեզ եղբարք՝ ք՟ն ասէ՛ յաւետարանն՝ Թէ յա՟մ ժամ արԹուն կացէք։ եւ դարձեալ ասէ՝ եԹէ ո՛չ ապաշխարիցէ ք, ամենեքեան նոյնպէս կորընչիցիք։ փառք ա՟յ. ռ. բերան։

Ես միրիջանս 'ի սալամաստայ՝ որդի գուլամիրին, ըստացայ զն՟բ գիրքս 'ի յարդար վաստակոց իմոց, եւ եդի 'ի դուռն ն՟բ գէորգեա զօրավարին. յիշատակ հոգոց մերոց՝ 'ի գեօղս մեր յաւԹուան. եւ մարդ ոք մի իշխեսցէ հեռացուցանել զսա՛ 'ի դրանէ ն՟բ գէորգեա զօրավարիս, ո՛չ մերոց եւ ոչ յօտարաց. ո՛չ ծախելով, եւ ո՛չ գրաւելով. եւ ո՛չ գողանալով, եւ եԹէ մարդ ոք յանդգնի եւ առնէ՝ նա՛ զպատուհասն 'ի յա՟յ առնէ. եւ զպատիժն 'ի ն՟բ գէորգեա՛ Ամէն։

Դարձեալ կրկին յիշեցէք եւ ա՟ծ ողորմի ասացէք խօջա միրիջին. եւ կողակցին իւրոյ խանաղին, որ անուամբն միայն էր խօջա՝ եւ հոգո՟վ էր վերացեալ 'ի դրախտն աղամա եւ գ տարի յառաջ, յայսմ աւուրն առեց. յիշատակ իւր. եւ այնու ո՞չ բաւականեցաւ. եւ ոչ լըցաւ զփափաք սրտին իւրոյ, այլ եւ ես, եւս վախմ 'ի դուռն ն՟բ գէորգեա՛ զաւրավարին որ այնու ելանէ 'ի վերինն յե՟մ եւ ոպ զենովք որ կ ամ ծառեց յոգոյն իւրոյ, ոչ ճաշակեց 'ի պտղոյն։ իսկ ա՟ծ հրմց հրշտկց իւրոց եդին 'ի դրախտին. սոյնպէս եւ միրիջանն արար. ամէն։

Էջ 657ա. Տ՟ր ա՟ծ յ՟ն ք՟ն ողորմեա ստացաւղի ն՟բ գրոցս. մղդասի զարիպշին եւ ծնաւղաց նորին ա՟ծատրուն եւ խաԹուն մելիքին եւ եղբարցն խդըրշին եւ

ազատչին. եւ երախտաւոր վարդապետին իմոյ հեզահոգի Թադէոս կրաւնաւորին կաֆայեցւոյն. որ եւ նա բազում աշխատանք ունի 'ի վերայ մեր. զվարձս ի քէն առցէ. եւ փծուն գրչիս Խնէրապետ քահանայի եւ մեր ծնաւղացն լի բերանով ած ողորմի ասացէք. եւ քն ած ձեզ ողորմեսցի Ամէն։

Էջ 657ա. տր ած ողորմեայ ըստացողի գրոցս Մերիջանին եւ կողակցուն խանաղին. եւ դստերացն փարի խանին. խանզատին եւ եթարին. ամէն։

Էջ 657բ. Դարձեալ յիշեցէք եւ ած ողորմի ասացէք մերիջանին եւ կողակցին իւրո՞ խանաղին։ Եւ արդ առաջի զայս բարի յիշատակ իւրն եւ ծնողացն իւրոց։ Ցիշելով զասացեալն 'ի մեծաքարոզա բան մարգարէին որ ասէ երանի որ ունիցի զաւակ 'ի սիոն եւ յիշատակ բարի. եւ արդ գիտելի է զի գ. տարի յառաջ առեալ էր զայսմաւուրն եւ այնու ո՞չ լցօ՞ զփափաք սրտի նր. այլ եւ ետ վախմ 'ի դուռն նր գէորգայ զաւրավարին. եւ գ. տարի այլ վր անցաւ զսկին եւ զշուրջառ եւ այլ անաւթ որ ինչ ի դէս (ի պէտս) պատարագին էր էառ ըստ հրամ տն որ ասէ թէ եկ ծառա՞ բարի եւ հաւատարիմ եմուտ զուրախուն քո որովյետեւ սակաւ զայս արարեր 'ի վր բազմաց կացուցից զքեզ (։)

Էջ 667ա. Ներեւզ քն ողորմեա ստաց զի գրոցս մահդասս ստեփանոսին. եւ ծնաւղաց նորին ծատուրուն եւ խաթուն մելէքին։ եւ եղբարցն խդրշին եւ խուդայբախշին. եւ ամ արեան մերձաւորաց նորին, եւ ինձ անարժանիս սակաւ աշխատողիս յմս քսհի՝ որ վն սիրոյ եղբօրս մեր մահդասի ստեփ'' գրեցի զայս. գ սխրալն ծառա։ բայց անմեղադիր լինի՝ զի մեծ ահիւ եւ դողով գրեցի 'ի դառն աւուրս, որ հասանն զմեզ դաշտն գերեաց զանմեղ քրիստոնեայսն. եւ մեք յուսահատեալ եմք ի կենաց մերոց՝ եւ 'ի տղայոց՝ թէ այսօր կամ վաղին առ մեզ հասանի՝ յայս դառն աւուրս գրեցի եւ ոչ թողի անփոյթ՝ վն սիրոյ մահդասուն՝ որ ամ եք զնա սիրէ եւ մեծարէ. վն հեզ, բարուցն եւ հաստատ հաւատոյն՝ եւ զի զամ գործս եւ զվաստակս ձեռաց իւրոց բաշխեաց առաջի մեր՝ ի գինս գերեացն զորս ազատեաց յանօրինաց, եւ զայլն ի գինս գրոց պատուականաց. եւ յայլ սպասս եկեղեցեաց. ընկալցի զփոխարէնն յամէնառատ բարոյն այ Ամէն։ (այլ գրչէ) Զերկնից բարութի եւ զանսպառ ուրախութի հանդերձ ծնաւղաւք եւ ամ արեան մերձաւորաւք։ Ամէն։ Դարձեալ յիշեցէք ի քն զմահդասի ստեփանոսի եղբաւր որդին ըզկաքաւն եւ զմլխամն։ եւ զկողակիցքն զթամարն եւ զհանզադէն։ եւ զորդիսն զաբդլազիզն եւ զսարգիսն։ զզուլիջան եւ զդուստրն զգուլքան։ զբէկի խաթուն, եւ զայլ ամ արեան մերձաւորս մահդասի ստեփանոսին յիշեցէք եւ լի բերանով ած ողորմի ասացէք։ Եւ ած որ առատն է ի տուրս բարեաց. ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս ողորմեսցի ամէն։

Էջ 667բ (այլ գրչէ. անվարժ եւ յետոյ կիսովին քերուած)... սըտացի? ՃՀ... Յ զօլաթոյ տասանորդ ողորմութի խոստացան եւ ոչքան ասէի թէ բերէք որ գընամ ինքեանք հարէոյ լինելոյն եւ անգլուխ օրէօր ձըգելով պօչիկ մի աւել ..մէին զայս կամիմ ասել ձեզ սիրելիքդ իմ եղբայրք կարէորք. այս յամ մեր մեղացն որ աշխարհս հայոց քակեցաւ ցիրուցան եղեալ գերեցան... (քերուած 9 տող)։

# 40.

## ԲԱՌԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 413: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14,5×11×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ԳԻՐ՝ էջ 1–275 նոտր. մնացեալը բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17, 19, 20, 21: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 258ա-259բ եւ 412ա-413բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր չկայ: – ԳՐԻՉ՝ եւն անծանօթ, որովհետեւ թէ սկիզբէն պակաս է եւ թէ վերջէն կտրուած է այն թերթը որ յիշատակարանը պիտի պարունակէր: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Ձեռագիրս կը պարունակէ երկու տեսակ բառարան 1. Բառարան հին եւ նոր կտակարանի դժուարիմաց բառերուն, շարուած ոչ թէ այբուբենական, այլ Աստուածաշնչի գրքերու եւ գլուխներու կարգով. էջ 1ա—257բ։ 2. Այբուբենական բառարան անվերնագիր. էջ 260ա—411բ։

Ցիշատակարան. Էջ 257բ. փառք՝ ամենակարող զօրութեան քո քն։

Ուրիշ ոչ մի տող յիշատակութիւն։

# 41.

## ՏԱՂԱՐԱՆ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 146: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×3,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտրագիր, միայն էջ 107ա—121ա բոլորգիր. Թանաք սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը սկսեալ էջ 107ա մինչեւ վերջ կարմիր, բայց մինչեւ անդ միայն սեւ, տող՝ 20–23: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւ-*

*աքարտ: – ՀԱՆԴԱՄԱՆՔ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–բ, 19ա–բ, 97բ–98բ. 143ա–146բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ՝ չկայ բնաւ. զարդագրեր կան միայն 107 էջէն յետոյ: — ԹՈՒԱԿԱՆ եւն անծանօթ: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է դերձակ Պր. Սողոմոն Մելիք-Աբրահամեանցի:*

Կը պարունակէ. 1. Կանոն պաշտաման ամ ննջեցելոց ի քս. էջ 2ա—12ա: 2. Կարգ տղայեթաղի. էջ 12ա—17բ (վերջէն թուղթ ինկած): 3. Տաղ. Ձիս քո սիրոյն ով նազելի հովերն առեր կը մաղէ. էջ 18ա: 4. Մառախլօրէն շուրջանակի պարաւրն գերիս. էջ 18բ: 5. Նախագեկութի մեր (տես տակը յիշատակարաններ). էջ 20ա: 6. Սուրբ գալստեան քո տր (եւ այլ մեղեդիներ). էջ 20բ—22բ: 7. Խնամեալ քո սիրով, խրատեալ մեծ գթով. էջ 23ա: 8. Արեւ լուսատու տաճար այ Մարիամ. էջ 23բ: 9. (կիսատ) Գոչումն ըղձագին գովեստ քաղցրագին, էջ 24ա: 10. Ննջեա որդեակ քաղցր եւ անուշ. էջ 24բ: 11. (կիսատ) Որպէս սասցեալ ծերն պապանձեալ. էջ 25ա: 12. Ղեկ հաւատոյ մայր թագուհի. էջ 25բ: 13. Ղամբարափայլ սրբոյ տօնիս աւետիս. էջ 26ա: 14. Ով զարմանալի գործ այսօր յայտնի. էջ 26բ: 15. Ադամա ստեղծողն եկեալ իւր պատկերին տես. էջ 27ա—բ: 16. Ադամ նստեր դուռն դրախտին. էջ 27բ—28բ: 17. Եկայք այսօր ժողովեցուք. էջ 28բ—29բ: 18. Իններակ դաս հոգեղինաց երկնաւոր զօրաց. էջ 29բ—30բ: 19. Ցանկ բազկատարած ցուցեալ երկիւղած. էջ 30բ—31ա: 20. Վասն այն յիշեսցուք փառաւորեսցուք տիրամայր որ կոյսն մաղթեսցուք. էջ 31ա—բ: 21. Քո փառաց թագաւորն այսօր եկեալ. էջ 31բ—32բ: 22. Մտեալ ի տաճարն այսօր ծեալ ած. էջ 33ա—բ: 23. Վկայից հանդիսից հրաշալի. էջ 33բ—34ա: 24. Օրհնեալ է կամքն ածային. էջ 34ա–բ: 25. Տէր իմ գթած եւ բարերար աննախակալ անյիշաչար. էջ 35ա: 26. Ես եմ խաւարեալ ես մեղօք մեռեալ. էջ 35բ: 27. Առ հայրդ աղաղակեմ, անառակի որդւոյս ողորմեա. էջ 36ա—37ա: 28. Բարեաց պատճառ տէր բարեգութ. էջ 37ա: 29. Քանքարթաքոյց եմ անարժան. էջ 37բ: 30. Կայր մեծատուն սաէ ահագին. էջ 38ա: 31. Աստ եփրայեցւոց մանկունքն գերդս քրօբէից առեալ. էջ 38բ: 32. Յորժամ նստեալ կայի ի տան, յանկարծ լուս գլուրըն այն. էջ 39ա: 33. Ածածին կոյսըն Մարիամ կայր առ խաչին իւրոյ միածին. էջ 39բ: 34. Ածածինն կայր առ խաչին սաէր յս որդեակ իմ. էջ 40ա: 35. Գառն այ ի սպանդ վարեալ. էջ 40բ—41ա: 36. Մարիամ մագդաղենին փարէր ի մէջ պարտիզին. էջ 41բ: 37. Կանխեալ ուղաբեր կանայքն. էջ 42ա: 38. Ի տանս հայոց կառուցելոյդ զարմանամ. էջ 42բ: 39. Վայելչագեղ փառօք զուարճան" յածահրաշ լեառն վարագա. էջ 43ա: 40. Տաճարդ երկնային տուն քոյին. էջ 43բ: 41. Կագնեա զմեզ կարող, կազդուրեա փրկող. էջ 44ա: 42. Յանժամ սիրով տիրական. էջ 44բ: 43. Քաղցրաձայնեալ յս բարբառէր. էջ 45ա: 44. Յովսէփ յարէմաթացին աղերսէր պիղատոսին, էջ 45բ: 45. Օրհնեալ ես փայտ որ փրկական. էջ 46ա: 46. Այսօր անդրանիկ հօր միածին. էջ 46բ: 47. Այսօր որ հոգին ած եկեալ յաշխարհս. էջ 47ա: 48. Ամենազօր ած հոգի. շնորհաց բաշխող ամի. էջ 47բ: 49. Աղբիւր գիտութեան. պարգեւք բարութեան. էջ 48ա: 50. Գովեստ բերկրանաց. քաղցրաձայնեալ երգեմք ձեզ. էջ 48բ – 49ա: 51. Հայցմամբ մաքուր յորովային. երեմիէայ մարգարէին. էջ 49բ – 50ա: 52. Դաւիթ հեռու կրտսեր որդին. էջ 50ա – բ: 53. Անդ ի խօսել մեծի հրեշտակին ընդ ամենօրհնեալ երջանիկ կուսին. էջ 50բ—51բ: 54. Ածազարդ գնդից ազանց. էջ 52ա—բ: 55. Իշխան համայնի, մարդկային ազգի. յոլովս աշխարհի. էջ 52բ—53ա: 56. Բամբըշս բարբոնք. ճոխ արեգակունք. փայլուն աստեղունք. էջ 53բ: 57. Օրհնեալ ես փայտ կանգնեալ յերկրի. էջ 54ա: 58. Միայն բանի հօր իմաստոյ. ծառայք վայելուչք. էջ 54բ: 59. Խոստովանիմ ած զհայր. ածին անեղ եւ անըսկիզբն. էջ 55ա—բ: 60. Այսօր տօնեմք ըղտօն վկայից. էջ 56ա: 61. Պաղատանօք սրբոյ քոին. հայրաց հօր առաջին. էջ 56բ—57ա: 62. Ցուցեալ սագաշէն. ցանկ-հակաշէն. էջ 57բ—58ա: 63. Այսօր տապանակ ուխտին ընդ խորհուրդ մարմնոյ փրկչին. էջ 58բ: 64. Այսօր ցնծա լեառըն թափօր. էջ 59ա: 65. Այսօր եղեւ գալ դըշխոհին. մօրն արքային. էջ 59բ: 66. Այսօր գաբրիէլ հրեշտակապետն եկեալ. էջ 60ա: 67. Այլ եւ մեռասան գոյնդքն սրբազան. էջ 60բ: 68. Արթունք զուարթունք բանին բանաւոր ծիծաունք. էջ 61ա—բ: 69. Ողբս առեալ մայրըըն սրտաբեկեալ. էջ 61բ: 70. Ամենքեան ի մի բերան պարտիմք գովել յաղթող վկայն էջ 62ա—բ: 71. Ընտրեալ որ ծառայդ քոյ. էջ 63ա—բ: 72. Սարսափելի որոտմամբ եւ ահագին զօրութեամբ. էջ 63բ – 64ա: 73. Ջառածեալ մեղօք եղկելի թշուառացեալ մարմնով եւ գերի. էջ 64բ: 74. Իմ սիրոյ պուլպուլ աննման. էջ 65ա բ: 75. Պուլպուլի ձայնիկն անուշիկ, ձմեռն էանց գարունն է եկ. էջ 65բ—66ա: 76. Ով բարեկամ եւ սիրելիք. սրտի իմոյ յոյժ յաջելիք. էջ 66ա — բ: 77: Յարմար ձեւօք պատուական. էջ 66բ — 67բ: 78. Հոգին ի մարմնոյն եղբօր շուռ ֆուգանք աշխարհս. էջ 68ա—69բ: 79. Աւաղ մեզ յոյժ պիտի այն արեւն որ լուս կծագէ. էջ 70ա—71բ: 80. Ես էի ապատազգի վայ աւաղ. էջ 72ա: 81. Այ իմ որդեակ աւետեաց զաւակ. էջ 72բ: 82. Ի քէն հայցեմք մեզ օգնութիւն. էջ 73ա—բ: 83. Ածածնիան հարսնացեալ. զպաղատանս մեր ընկալ. էջ 73բ—75բ: 84. Ադամգիրք (համառօտեալ). էջ 76ա—92բ: 85. Յիսուս դու յոյս զղջացողաց. էջ 92բ—93ա: 86. Իսկ ոչ խրատին մարդիկ թէ մահու օրն գալոց է. էջ 93ա—94ա:

87. Մի աղօթից ծոյլ կենար. էջ 94բ—95բ։ 88. Ցաղագս. գտանելեկոյ. Հուր մի տեսի (4 փոքր հանելուկներ), էջ 95բ։ 89. Ի լոյսայտիւ քոյ ծաղկերոյդ. էջ 96ա։ 90. Ամպըն եկեալ կայծակալի քամին զօրէզ հրնչելով. էջ 96բ—97ա։ 91. Հերիք ոխպաս կոծես լաս եւ հառաչես. էջ 97ա։ Վերջին 96—97 էջերը գրուած են այլ անվարժ գրչէ։ Իսկ 98 էջէն յետոյ կու գայ տպագրեալ հատոր մը որուն վերնագիրն է. «Համառօտ Պատմութիւն տնօրինականաց տն մերոյ Յի Քի որ ի սբ քաղաքն Երուսաղէմ. Այլ եւ Թուղթն սիրոյ եւ միաբանութեան Կոստանդիանոսի եւ Տրդատայ ...տպեցեալ... յամի տն ՌՁ եւ Հայոց ՌՃԽԹ յուլիսի իէ ի Վէնէտիկ» էջ 1—88։ Այն տպագրեալ հատորը կազմողին կողմէ ներմուծուած է, ուստի եւ ձեռագրիս կազմն ալ 1700 թուէն յետոյ է։ Տպագրեալ հատորէն յետոյ սկսած է նոր ձեռագիր մը, որ կը պարունակէ սիւնակներու մէջ աստեղագիտական գուշակութիւններ կենդանակերպերու վրայ. էջ 99ա—106բ։ Ասոր ալ կը յաջորդէ տարբեր լաւագոյն տաղարան մը, որուն տաղերն են. 1. Էջմիածին զարդ փառաց լոյս է. էջ 107ա—108բ։ 2. Էջմիածին ծընող մայր մեր ցանկալի. էջ 108բ—109բ։ 3. Ի կենաց նախկին վայելմանց զըրկեցին զիս. էջ 109բ—110ա։ 4. Անձն իմ առ քեզ աղաղակէ ով բժիշկ հոգոյ իմոյ. էջ 110բ—111ա։ 5. Ցարմար ձեւով պատուական. էջ 111բ—112ա։ 6. Զարթիր սէր իմ առաւօտեան նազելի. էջ 112բ։ 7. Ի լեառըն մեծ զարմանալի. ի գողգոթայ դիտանոցի. էջ 113ա։ 8. Ի միասին ամենեքեան եկայք եղբարք իմ սիրական. էջ 113բ—114ա։ 9. Ղազարապատ զարմանաշէն պատուական. էջ 114բ—115բ։ 10. Ահա մեք ժողովեալք բոլոր միաբան. էջ 115բ—116բ։ 11. Շնորհօք միածնին կազմեալ կանգնեաց հիանալի զայս նոր վեհարան. էջ 116բ—117բ։ 12. Ցարեան հողմըք հիւսիսային յերկրէս մերմէ. էջ 118ա—119ա։ 13. Ցաւուրս յայսոսիկ տօն մեծ է վաշ քրիստոնէից. էջ 119բ—120ա։ 14. Ի ժամուս ուրախութեան ով եղբարք իմ պատուական. էջ 120բ—121ա։ 15. Ցո որդի իմ միածին որ բեւեռեալ կաս ի խաչին. էջ 121բ։ 16. Նստէք ի մէջլիս հայրք եւ եղբայրք. էջ 122ա։ 17. Առաւօտու քամին ելեր մաղէ զիս. էջ 122բ։ 18. Սարսափի անձն իմ լալի. էջ 123ա։ 19. Ինձ իմաստ. ով. քանզի. քեզ. Շնորհեա. հատու տր. հմամբ քո. հեցայց ես. էջ 123բ—124ա։ 20. Ի ժամուս ուրախութեան ով եղբարք իմ պատուական. էջ 124ա—բ։ 21. Ննջեա որդեակ քաղցր եւ անուշ. էջ 125ա։ 22. Երկինք երկնից իմաց արարէք. էջ 125ա։ 23. Թէ շատ կափա չափես ի յաջ. էջ 125բ։ 24. Վասն ողջոյնի կար-ճարօտ կերպիւ։ Ածասիրութեանցդ եւ բարեպաշտօն ժողովրդոցդ. էջ 126ա—128բ։ 25. Մենացեալ այր իմ սիրով սէրն իմ. էջ 128բ։ 26. Նախերգանք քարոզի. էջ 129ա—բ։ 27. Փրկաւէտ մահուան քո գգենս որ անկեալ գնիմ յանկողին. էջ 130ա—բ։ 28. Իմ աննման յոյժ գովելի արարեր զիս ողորմելի. էջ 130բ—131ա։ 29. Զիս քո սիրոյն ով նազելի հովերն առեր կու մաղէ. էջ 131ա—132ա։ 30. Զարմանալի վերնոց սուրբ կոյս աննման. էջ 132ա—133ա։ 31. Մաքուր եւ սբ ըստեանց քոյին փափաքիմ. էջ 133բ—134բ։ 32. Ամենայն լեզուէ երանեալ ջոկ եւ ջոկ երամ երամ. էջ 134բ—135ա։ 33. Իսկակից հօր ծնունդ անեղ ամենազօր արքայդ ահեղ. էջ 135ա—136ա։ 34. Վարանելով վարանելով մոլար դեգերիմ աւաղ. էջ 136բ—137ա։ 35. Իմ աննման սիրելագոյն սիրելի. էջ 137ա—բ։ 36. Արեւս առնեմ երթամ իմ սիրուն. էջ 137բ—138ա։ 37. Գարնանային եղանակին պուլպուլն եկեալ շրջէր այգին. էջ 138ա—բ։ 38. Սափոր ոսկեղէն լի մանանայի. էջ 138բ։ 39. Ի քոյդ սիրոյ յագիլ երբէք երբ իցէ. էջ 139ա—բ։ 40. Տիրամայրն հանդէպ որդւոյն ի խաչին. էջ 139բ—140ա։ 41. Աւաղ անկայ օտար երկիր ամայի. էջ 140ա—բ։ 42. Ի տարանջատ վայրէս ահա առընծայեմ քեզ ողջոյն. էջ 140բ—141բ։ 43. Ահա եհաս գարունն ազնիւ յորում համայնք զարդարին. էջ 141բ—142բ։ 44. Հալէպ եօլին իշլար մօլա արապ աթլար (թրք.) էջ 142բ։

Յիշատակարանք. Էջ 1ա. պրն միքայել մհս...։

Էջ 1բ. ես տաղարան ողորմաց յոգի Մնացականին այ օ որ կարդայ ա բերան տայ եա ողորմի։

Էջ 1բ. նմրայ ա ես մայհդես օվանէս գիրեցի իմ գիրքը»։

Էջ 20ա. կայ յիշատակարան մը, որ կրնայ իբր յառաջաբան ծառայել բուն տաղարանին. յիշատակարանը գրողն է Ստեփան վարդապետ համադանցի, որ կը յայտնէ թէ յիշեալ տաղերը համառօտելով հանած է մեր եկեղեցական Գանձարանէն, բայց յայտնի չէ թէ այն յիշատակութիւնը առաջին հեղինակէ՞ն է, թէ արտագրողէն. վերջի պարագային յիշեալ Ստեփան Վարդապետը կ'ըլլայ ձեռագրիս գրիչը։ «Նախազեկութի՛ մեր՝ առ սիոնական մանկանցդ. քան զի ի բիւրոցն մի որք ոչ ընտրեալք էին. այսինքն որք հայրքն մեր յառաջին, սոքա են որք զծորանս հոգոյն արբին. եւ երգեցին. զեղանակաւոր երգս. ի պայծառութի հայեաստանեացս եկեղեցոյ. եւ անջընջելի յիշատակ։ ի տանն թորգոմայ։ Վն որոյ տկարս սակաւ աշխատանս յանձին կալեալ։ ի նոցանէ կերտեալ իբր ովկիանոսէ. փոքր ինչ ըովացուցիչ. սակս պասկեցութեես. սակայն յոյժ ախորժելի. նուագարանցն անթիւոցն այս քանս ջանիւ հնարել կարացաք. վն անվարժ գոլութեն որ եւ նուաստագունեղ։ Ըստեփաննոս Վարդպտս ընիկ երկրաւ համադ"նեցոյ։ Գ.ծող սմին։ յիշե"լ մաղթեմ. դիպողացդ։ որ եւս դուք յիշե"լ լիջիք։»

Էջ 117բ. կնիք մը խառն փակագրով, որ թուի «պետրոս վարդապետ»։

Էջ 143ա. յամի տն ՌՁ եւ հայոց ՌՃԽԹ յուլիսի ԻԷի (յետոյ ամբողջ այբուբենը. այս թուականը նշանակութիւն չունի, որովհետեւ արտագրուած է ուղղակի տպագրեալ գրքի կողէն)։

Էջ 143բ. 1794 յունիսի 1 ումն անգալից (այժմ կը կոչուի Էնգէլի) գուս եկի բայց յունիսի 13 ումն եկի Թարվիզ. մնացի 1794 յունիսի 1 ումն անգալից գուս։

Էջ 144բ. Արզրում ուզին պազար յիւինգայ (Թրք. երգի մը երեք տողերը)։

Էջ 145բ. գրեցի գիրս ըռաշտումն 1790 ումն Թւին. սեպտեմբերի 15։ ումն բակոս դի կերականան։

Էջ 146ա. ես գաւիթի որդի ղազարս գրեցի։

## 42.

### ՄԱՇՏՈՑ

?

ԹՈՒՂԹՔ՝ 119: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14,5×10×3,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերն ու սկզբնատառերը պարզ կարմիր. տող՝ 15: – ՆԻՒԹ՝ մագաղաթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ. սկիզբը մի թերթ մագաղաթեայ պահպանակ՝ մնացորդ երկաթագիր աւետարանի մը: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ գէշ. 70–80 թերթերուն կողմերը եւ վերջէն տասնեակներով թերթեր պակաս. մասամբ սեւացած ու բորբոսնած, կազմը քայքայուած եւ վերջին կողը ինկած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ՝ պատկեր կամ զարդագիր միայն ուրուագծով: – ԳՐԻՉ՝ Թուլի Կարապետ. տեղ, Թուական եւն բոլորովին անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի ՊՊ. Ալէքսան եւ Յարութիւն Աֆթանդիլեան եղբարց:

Յիշատակարանք. Էջ 2ա. Ջմեղաւոր Նկարող կարապետս յիշեայ եղբայր աչախ ինչ անեմ։

Էջ 2ա. կնիք մը՝ անընթեռնլի։

Էջ 73բ. Ով անսահ արքայ եւ երկնաւոր փեսայ մաքուր հարսին եկեղեցոյ, մի մերժեր զմեզ, ի փառաց քոց։

## 43.

### ԱԽՏԱՐՔ

1776։

ԹՈՒՂԹՔ 130. էջք նշանակուած 1–294. մնացեալները կը թուին յետոյ աւելցուած նոյն ձեռագրին վրայ: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×13×2,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ պարզ, միասիւն: — ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը եւ սկզբնատառերը վարդագոյն. տող 31: — ՆԻՒԹ՝ Թուղթ: — ԿԱԶՄ՝ նուրբ կաշիով պատած խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–բ, 4բ-5ա, 27բ, 92բ, 93բ, 101բ, 111ա–բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ չկան, ոչ ալ զարդագրեր. պատկերներ շատ կան. բացի լուսնի եւ կենդանակերպներու բազմաթիւ պատկերներէն, կան 20 մեծադիր պատկերներ՝ որոնք հին աւետարանէ մը հանելով կտրտուած եւ յարմարցուած են այս ձեռագրին. այս պատկերները դրուած են էջ 5բ. 36բ, 121բ–130ա, որոնցմէ մէկը աւետարանին ճակատն է, իսկ միւսները աւետարանիչներու եւ տնօրինական պատկերներ, բոլորն ալ բաւական անյաջող: — ԳՐԻՉ՝ Ստեփաննոս Քարտուղար. տեղ Կոստանդնուպոլիս? Թուական 1776 յուլիս 25: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է ՊՊ. Ալէքսան եւ Յարութիւն Աֆթանդիլեան եղբարց:

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Ռամբ, Թլիսմներ եւն, կապոյտ Թանաքով, իբր բոլորովին նոր յաւելուած՝ օտար գրչէ. էջ 2ա—4ա։ 2. Բուն գիրքը, որու խորագիրն է. «...Եւ ի վը այսր ամի ժողովեցաք զայս գիրքս յամ ազգ գիտութեանց, ի տլմաթէ եւ ամ ազգ աստեղաբաշխութեանց, եւ այս հեռի է եւ զատակայ է յամ բանից՝ զոր հակառակ կան կամ ներհակ գտանէ ածպաշտութեան». հմայական, կախարդական, աստղաբաշխական առատ տեղեկութիւններ, բաժանուած բազմաթիւ գլուխներու կանոնաւոր կերպով. էջ 6ա—120բ։ 3. Մնացորդ հին աւետարանէն, բոլորգիր, երկսիւն. էջ 121ա։ 4. պատկերներ. էջ 121բ—130ա։

Յիշատակարանք. Էջ 90բ. Յամի Տն։ 1776։ Յուլիսի։ 25։ Գաղափարեցաւ Ստեփ«ննոս. Քարտուղարէ Կոստանդնու»։

Ուրիշ յիշատակարան չկայ բնաւ։

## 44.

### ԺԱՄՈՑ

(1702էն առաջ։)

ԹՈՒՂԹՔ՝ 421 (Նշանակուած է 420, բայց 258 փախցուած է): – ՄԵԾՈՒԹԻՒՆ 27×17×8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ բաւական խառնակ, երկսիւն, իւրաքանչիւրը 21×6 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնա-

*գրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 34-36: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ. բայց սկիզբէն, մէջէն ու վերջէն թերթեր պակաս: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ են աննշան եւ անարուեստ: – ԳՐԻՉ՝ Մկրտիչ վարդապետ Մեծոփեցի, թուական ՌՃԾԱ = 1702էն առաջ. տեղ եւ տէր անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Ղազար Մելիք-Բաբաջանեանի:*

Ցեւտօկօռբենդ. Էջ 16բ. Քն ած որ մկրտեցար յորդանան եւ սրբեցեր զմն արարածս ի մեղաց. սրբեա եւ լուսաւորեալ զխաւարեալ հոգիս ծառայի սուտանուն վրդպտի մկրտչի եւ զմմ արեան մերձաւորաց իմոց եւ որ զամէնն առէ ողորմեացի նմա. զի կար մեր այս էր, անմեղադիր լինել աղաչեմ ընթերցողդ:

Էջ 49բ. Սբ հայրապետացս բարեխաւսութբ թողութի մեղաց խնդրեցէք մեղապարտ գրչիս: եւ ած զձեր մեղքն ոչ յիշէ ամէն. գիտութի լիցի ձեզ զի կար մեր այս է զի ծերութն ուսում այս չափս է:

Էջ 153ա. Զտառեալ (= զտառապեալ) աղքատ գծողս յիշեցէք ի նբ աղաւթս ձեր եւ ած զձեզ յիշէ յարքութին: զի կար մեր այս էր:

Էջ 159բ (օտար գրչէ). Ի գրանէ մեծի նբ անապատի եկեղեցոյս որ անուամբ նբ ածածնին է կացուցօղ եւ ի մէջի նրց բաղմաց:

Էջ 254բ (այլ գրչէ). Կամաւն այ. Ես աբրահամ աբեղէս. կալայ. նբ գիրքս. որ կոչի տաբեգիրք. յիշատակ ինձ. հոգոյ իմոյ. եւ ծնաւղացն իմոց. հաւրն. իմ ախնիմ. եւ մաւրն իմ շահալամին. եւ եղբաւրն իմ աւանիսին. եւ ոսկումին. որ կէօաւրեալ. փոխեցաւ ի քն. եւ եղբաւրէն իմոյ. յոհանին. էվազին. եւ հոռոմին. եւ հարսն իմ. մարիանին. եւ ամմ յարեան մերձաւորացն. եւ կենդանեաց եւ ննընկլոցն. ե– եւ ամմ առհասարակ. ամէն. այլ եւ յիշեցէ. զշամամն. յիշեցէք է քն ած զձեզ յիշէ:

Էջ 254բ (այլ գրչէ). Ես մեծն ճալալ որդի ակոբ երէցս բանիւ սվանէս կթսին ծախեցի նբ տարգիրքս դիւի ջամայհաթին աւանին տղայ աւանէս վկայ հասան վկայ մալքումն վկ ոքոտբէն աւանէսն վկ հէկազին տղ եղիշէն վկ ած վկ. ես նազարի որդի ղազարս ես նվաստրիս կրեցի թ ռճծա:

Էջ 254բ (այլ գրչէ). ես մեղաւոր եւ անարժան եւ անպիտան բինեաթի որդի օվանէսըս գերեցի:

Էջ 293ա. յիշեցէք զգծող սորա ի քն:

Էջ 399բ. զմեղաւք մեռեալ գրիչս. յիշեցէք ի քն զի յոյժ տրտմեալ եմ ի սուտ եղբարց. զի փառաց ծառաեն եւ ոչ այ:

Էջ 404բ. Զ յոհանէս եւ զբարսեղն յիշեցէք առ տր Ած (սորա թուին գրած քանի մը էջ, իբր օգնական բուն գրչին):

Էջ 420բ. Ով եղբարք իմ հոգեւոր յորժամ ընթեռնուք զգիրս յիշեցէք ի նբ յաղաւթս զանարժան մկրչ վրդպս մեծոփեցի. եւ զհայրն իմ նահապետ եւ զմն արեան մերձաւորսն իմ ի քն հանգուցեալսն եւ ած զփրկողսնդ յիշէ, յարքայ. գրիս անմեղադիր լերուք զի կար մեր այս է. զի ծերութն (մնացեալը պատռած. կորսուած մասերուն մէջ է նաեւ գլխաւոր յիշատակարանը):

## 45.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

### (ԱՆԿԱՆՈՆ ԳԻՐՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ)

### ՌՄՂԹ = 1850:

*ԹՈՒՂԹՔ՝ 176, նշանակուած են էջք 1-299, բայց մեծամեծ ստուրմներով: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×10×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, խառնակ: – ԳԻՐ՝ հին շղագիր. թանաք՝ ղժգոյն սեւ. տող 16—19: – ՆԻՒԹ՝ հաստ ու կոպիտ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր. բայց կազմը պոկուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 173բ-176բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ են չկայ. կարմրատողեր, զարդագրեր են չկան: — ԳՐԻՉ են անծանօթ. թուական ՌՄՂԹ = 1850 մայիս 26: — Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Սիսակ Բժըշկեանի:*

Առաջին երեսին վրայ (էջ 2ա) կը կարդանք. Սկիզբն գրոց որ կոչի ժողածու (= ժողովածու) Գիրքս այս ճառէ զպատմութենէ նախահարցն սրց Ադամ եւ զոնէ մերմէ Ցսէ Քսէ որ եւ մէկնէ ըստ առաջադրին? իւր գեղեցիկ իմացածօվք շարագրեցեալ բոյլ եւ քարոզ պիտանացուք ասացեալ սրց վարդապետաց ի յօգուտ վերծանողաց ի յուրապետութեան տն ներսէս կաթօղոկոս ամ հայոց ի թիւականիս մերում ռմղթ մայսի իզ:

Ձեռագիրը կը պարունակէ հետեւեալ գլուխները.

1. Պատմութիւն եւ ճառ վասն ստեղծմանն ադամա եւ մարդնալուն քսի այ մերոյ. Նախ ըս(տ)էղծ տր ած զդաս հրեշտակաց եւ հրեշտակապետաց. էջ 2բ—9ա: 2. Պատմութիւն Սաբաելեան դասուն թէ որպէսի պատճառաւ անկաւ ի փառաց իւրոց. Քանզի վասն միոյ մեղաց եւ հպարտութեանն աքսորեաց. էջ 9ա—15ա: 3. Վասն ելանելոյն ադամայ եւ այի ի դրախտէն. Յորժամ ադամ անկաւ ի լոյն. էջ 15ա—19ա: 4. Ադամ եւ մեկնութիւն վասն ադամա եւ մարդկային բնութեան. Զի որպէս հայր որ զի իւր որդին ծախէ. էջ 19ա—25ա: 5. Պատմութիւն յաղագս կայենի եւ աբելի. Այս էր պատուէր ադամայ զօր պա-

ռչ-րեաց որդոցն. էջ 25ա—34ա։ 6. Այլ եւ պատմութիւն բանիս պարզաբար թէ որպէս տասանորդեն ի հնչեց իւրեանց պանիւ հրեշտակին. Եւ արդ մեզ զայս օրինակաւ խրատուաոյց. էջ 34ա—41բ։ 7. Վասն աւետեացն սեթա զօր եա ած ափամս յաղագս աբելի զօր ըսպան կայէն ի մխիթարել զափամ եւ զեւա. Եւ որն քաղցրացաւ ի վերայ ափամայ. էջ 42ա—52բ։ 8. Առսեմք եւ մեկնութիւն ճառիս. Վասն այն պատուհասի կորոյս գնոսա զի մեք. էջ 52բ—60ա։ 9. Յաղագս չէ-րնկալութեան խրատ. Զի յորժամ վաղճանեց նոյ թոչունքն որ մնացան զած. էջ 60ա—67բ։ 10. Վասն չէ-րնկալութեան աբրահամու ի վերա ճանապրին. Իբրեւ եաես աբրահամ զայս մեծ ըսկանչելիսն. էջ 67բ—73ա։ 11. Վասն ծնունդեան իսհակա. Իբրեւ մերձեցաւ աբրահամ առ սառայ. էջ 73ա—78ա։ 12. Այլ եւ պատմութիւն յակոբայ նահապետին. Իսկ յակոբ ծնաւ ԺԲ որդիս եւ հետնածինն յօսէփ. էջ 78ա—97ա։ 13. Վասն գերութեան որդոցն իսրայելի. Եւ յետ յօվսեփայ բազմեցան ազգն իսրայելի. էջ 97ա—113բ։ 14. Այս է մեկնութիւն բանիս եւ առակիս. Զի փարաւօն օրինակ է սատանայի եւ մովսէս օրինակ էր քսի. էջ 113բ—119ա։ 15. Պատմութն վասն Մանասէի թագաւորին. Թագաւորն եզեկիէա մեղաւ ինչ ժամանակ իւր. էջ 119ա—126բ։ 16. Պատմութիւն Տապանակ ուխտին Տեառն այ. Եւ Իսրայէլի ժողովուրդն ասացին ցմովսէս. էջ 127ա—136բ։ 17. Երանելւոյն Եփրեմի խուրին ասրոյ (= ասորոյ) ասացեալ յաղագս նինվէի. Աստ հրաման հասեալ առ մարգարէն յոնան. էջ 136բ—164բ։ 18. Այլ եւ մեկնութիւնն բանիս վասն յոնանու. Քանզի յոնան օրինակ էր քսի եւ նինուէ օրինակ էր. էջ 164բ—168ա։ Ասոր կը յաջորդէ ցանկը, էջ 168բ—171բ, որու մէջ յիշեալ 18 գլուխներէն յետոյ կը նշանակուին նաեւ ԺԹ—ԻԱ գլուխները, որոնք չկան ձեռագրիս մէջ. ասոնք առհասարակ կը վերաբերին նոր կտակարանի անկանոն գրոց. իսկ գլուխ ԺԹ. «Յաղագս գնալոյն ի հռոմ թագաւորն եւ սեղբեստրոս հայրապետ...»։ Վերջին երկու թերթերն են «Այսօր ձայնն հայրական» եւ երգ մը «Հայոց ազգը, հայոց ազգը եօթնագլխեան վիշապի պէս կրցաւ պահել իւրեան կեանքը»։

Յիշատակարան. էջ 1ա—բ նամակի սեւագրութիւն եւն. էջ 175բ. գրչափորձ. ուրիշ յիշատակութիւն չկայ բնաւ։

## 46.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

1880։

*ԹՈՒՂԹՔ՝ 86։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21×16,5×1,3 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, սխալաշատ։ – ԳԻՐ՝ շղագիր. թանաք սեւ, տող՝ 25։ – ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կիսակաշի, խաւաքարտէ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 75ա եւ 85բ։ – ԶԱՐԴԵՐ եւն չկան. սկզբնատողերը երբեմն մանուշակագոյն։ – ԳՐԻՉ՝ Մկրտիչ Բժշկեան. տեղ՝ Թաւրիզ. տէր գրչը. թուական 1880։ – Այժմ կը պատկանի Սիսակ Բժշկեանի։*

Կը պարունակէ. 1. Երգեր, մեծագոյն մասամբ Զարկեարի աշուղական տաղերը. նաեւ քանի մ'աղօթքներ. էջ 1ա—16բ։ 2. Առակագիրք. ունի 67 առակ. էջ 17ա—41բ։ 3. Հարցմունք Ս. Բարսեղի Սբն Գրիգորի մերոյ լուսաւորչին. էջ 41բ—45ա։ 4. Հարցմունք Գրիգորի առ հրեշտակն. էջ 45ա—50բ։ 5. Հարցմունք Ս. Կուսին հրեշտակին. էջ 50բ—55ա։ 6. Մնացեալն է զանազան գրքերէ եւ թերթերէ հանուած փոքր պատմութիւններ, ոտանաւորներ (Զարկեարի, գրչին եւ այլոց), Ս. Գրքէն կտորներ՝ գրաբար կամ աշխարհաբար թարգմանութեամբ, խրատք Խիկարայ, Չինու Մաչին քաղաքներն, Քարոզ Ս. Գր. Տաթեւացւոյ, վերջին ռուս-թրքական պատերազմէն լուրեր, եւ վերջապէս Րաֆֆիի Խենթէն մաս մը՝ էջ 78բ—84բ։

## 47.

## ՍԱՂՄՈՍ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 217։ – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 8×6×3 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մանր, շատ մաքուր միասիւն։ – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, կապոյտ եւ ոսկեզօծ. տող 23։ – ՆԻՒԹ՝ կոկած մագաղաթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ, ոսկեզօծ լուսանցքով. թէ կազմը եւ թէ կաշին նոր ոճով. քովերը երկաթեայ փականքներ։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ նոր ու շատ մաքուր։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա, 204ա, 216ա–217բ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ 134 հատ. նկարներ՝ լուսանցքներուն վրայ 63, մեծադիր 11.*

*մէկ խորան եւ 7 գլխազարդ. բոլորն ալ նուրբ եւ յաջող՝ իրենց շատ փոքրութեան մէջ: Կան եւ զարդարուն սկզբնատառեր: – ԳՐԻՉ, տէր եւ անծանօթ, որովհետեւ տող մ'անգամ չկայ յիշատակութեան: — Ձեռագիրս այժմ կը պատկանի Վարդան Վարդանեանի:*

## 48.

## ՃԱՇՈՑ

### ՊՀ = 1421։

*ԹՈՒՂԹՔ 437: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 35×26×9 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 27×9 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 33: — ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր, միայն կազմը քանդուած եւ վերջին կողը փրցուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 3ա–բ, 189բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, խորաններ շատ կան, բայց մեծ մասը ուրուագծով, առանց ներկի: – ԳՐԻՉ՝ Կարապետ աբեղայ. Թուական ՊՀ = 1421. տէր հիւսն Յովհաննէս. տեղ Ցաղէթ, վանք Ս. Յակոբայ: – Ձեռագիրս կը պատկանէր Թաւրիզի մօտիկ Սէօհլիւր Թըրքմնակ գիւղի հայ եկեղեցւոյն. բայց տեղացի շատ սակաւաթիւ հայերը այժմ վերջնականապէս թողելով նոյն գիւղը, գաղթած են Թաւրիզ, իրենց հետ բերելով նաեւ իրենց հնութիւնները, որ մտադիր են նուիրել Լիլաւայի եկեղեցւոյն: Այժմ կը գտնուի Պարոն Աւետիս Բալալեանի քով:*

**Ձեռագիրը կը պարունակէ. էջ 1ա—2բ եւ 436ա—437բ մոգաղաթեայ պահպանակ՝ միացորդ երկաթագիր աւետարանի. միացեալը ճաշոցն է։**

Յիշատակարանք. Էջ 3բ. "այս ճաշու գիրքն Թաւրիզու ...: Մեր եկեղեցւոյն. ընծայեցաւ ի սորհուրդ ընկալսց։ 'ի ձեռամբ Աւագ քայանայ որ գարրիէլին յամին Տն 1850 դեկտեմբերի 16 յիշատակ ավօղաց յիշատակն ած օրհնեսցէ։

Էջ 4ա. Զկազմող սորա զհերապետ սուտանուն քհնյ յիշեցէք ի քն եւ ած ողորմի ասացէք եւ ած ձեզ ողորմի։

Էջ 27բ. Զվերջին կազմօղս. յիշեցէք ի քն. զպարոն ախիջանն. եւ զեղբայրսն իւր զնուրիջան. զյովաննէսն. եւ ած ողորմի ասացէք սոցա ամէն։ Նայ եւ անդրէասին ած ողորմի. որ զթուխթս գնեց. ած ողորմի իւրն եւ իւր ծնողացն ամէն։

Էջ 54ա. Եւ զեղկելի արստակէսս յիշեայ վն ածյ. ռ։ հ. թվ։

Էջ 105ա. Զի ուտել գիւր մ... այն մարդն որ կասէ թէ պոռեցին լուսինցի ծաղիկ չի գիտել հանել։

Էջ 150բ. Տր յն քո անճառ խոնարհութբդ եւ մարդասիրութբդ խոնարհեցար ի լըւանալ զոտս, հոգեղէնս եւ սրբեցեր զենջակաւն, նոյն ողորմութբդ քոյ սրբեա եւ մաքրեա ի մեղաց զստացող գրոցս լզհուսն յոհաննէսն, եւ զծնաւղսն իւր զաւետիս եւ զխութլու մելէք. եւ զեղբայրսն իւր զամիր սարգիս եւ զմարտիրոսն։

Էջ 161բ. Քն ած քո ածային խաչելութբդ՝ եւ գերահրաշ նր նշանաւդ՝ պարլապեալ պահեա զերջանիկ ծառայն քո զհոգեհշահն եւ զսյժ աղքատասէրն, զուսթայ յոհաննէսն, զստացօղ նր տառիս, որ իբրեւ զիմաստուն վաճառական շրջեցաւ խնդրել մարգարիտս գեղեցիկս, եւ եգիտ զայս մարգարիտ զանազան եւ պատուական քան զո քարինս պաղպաջունս, եւ պայծառս եւ պանծալիս։ Մանաւանդ որ գեր ի վերոյ է երկու աշխարհաւք։ Տր ած վայելել տացէ զնր տառս զայս ուսթայ յոհաննիսին, եւ ահշութն եղբարցն ամիրսարգսին, եւ մարտիրոսին։ Եւ ողորմի քն ած ծնողաց իւրոց. եւ ամենամեղ կրպտ գծողին ամէն։

Էջ 186բ. Քն ած քոյ՝ ածային՝ յարութբդ ողորմեա ստացողի նր տառիս, ուսթա յոհաննիսին, եւ ծնողաց նորին աւետիսին՝ եւ խութլու մելէքին՝ եւ եղբարցն՝ ամիր սարգսին, եւ մարտիրոսին, եւ հարսնեբուն. շայմելէքին, եւ (բառ մը բաց թողած) եւ այլ արեան մերձաւորացն ամէն եղիցի։ Այլ եւ բազմամեղ եւ տըրտում ոգոյ կարապետ գրչի։ եւ իւր ծնողացն. եւ եղբաւրն թումա, նորընծայ քահանային։ Այլ եւ թումա վարպետին իմոյ՝ որ կու աշխատի 'ի թըղթի կոկելն, եւ իւր ծնողացն. եւ մեր աշակերտիս աւետարիս, որ իբր զջուր է ի ձեռս մեր. քն զսա ահէ ամէն։

Էջ 187ա–188բ. Յիշատակարան նր գրոցս։ Փառք եզակի անճառելոյ եռահիւսակ դաւանութբ. համագգղափառ. զուգակշիռ. վսեմագոյ. ինքնագոյ. անեղի. եւ մշտընջենաւորի. էութի. նոյնութի միութի. հրաշալի երիս անձնաւորութի եւ մի ածութի. հրաշահոսան եւ հիացուցանող զաւրութե. փառս վերառաքեմ ի ներկայս. եւ առ յապայն. յաստի. եւ յապառնին. յայժմունս. եւ ի հանդերձեալսն. յաւիտենից ամէն։ Արդ ի վերջին դարիս. եւ յերեկոյացեալ ժամանակիս. երեւեալ ոմն ածասէր եւ հաւատարիմ. եւ ածային ձրիւքն բարգաւաճեալ բարեպաշտ եւ երկիւղած եւ հեզահոգի քնքուշ եւ ածասէր եւ ողորմած տանուտէրն պարոն ուսթայ ախիջանն. չարժեալ աստմամբ նր հոգոյն. վառեալ սիրով անմահական փեսային. ցանկացող եղեւ այսմ ածային գանձիս. եւ մեծաւ փափագանաւք եւ ջերմեռանդ սրտիւ ի խնդիր եղեալ այսմ ածային նր տառիս եւ պայծառ մարգարտիս. վարդափթիթ բուրաստանիս. եւ անուշահոտ մանուշակիս։ Եւ ետ վերըստին. նորոգել զնր գիրքս. յիշատակ հոգոյ իւրոյ եւ ծնաւղացն զարապաշին եւ իւր կողակցին. ախիջանին. նուրիջանին. յովանիսին. Եւ այլ ամ արեան մերձաւորացն. կենդանեաց եւ հանգուցելոց ամէն։ Վ՟սն որոյ բարեխաւսութբ նր եւ փառաւորեալ ածածնիդ մարիամու. եւ աղաչանաւք ամ ընտրելոց սրբոց. քն ած որ տէրն է փառաց եւ տուող ողորմութեց, արժանի արասցէ իւր սաւ-

տապէս ողորմութե եւ անբաւ բարութե. եւ երկից արքայութե զյառաջ յիշեցեալսն զպարոն ախիջանն եւ զծնաւղսն իւր. եւ զեղբայրսն իւր զնուրիջան. զյովաննէսն եւ ած ողորմի ասացէք սոցա ամէն: Դարձեալ քն ած ողորմի ասացէք սրբասէր կրաւնաւորին տր մելքիսեթին եւ հոգահոգի քհնին տր ստեփաննոսին եւ անդրէասին որ զթուղխթս առեալ եւ ած ողորմի ասացէք սոցայ ամէն: Այլ եւ յիշել ի տր աղաչեմ զթումայ քհնյն. որ յորդորիչ եւ միջնորդ եղեւ նր գրոցս. տր ած տացէ վարձս վաստակոց իւրոց զերկնից արքայութի ամէն: Դարձեալ աղաչեմ զըրբութիդ ձեր. ով բարի ընթերցողք եւ լսող. ի բոլոր սրտէ ասասցուք արտասուալից պաղատանաւք. քն ած մեր վն անճառ տնաւրէնութե քո. եւ չարչարանաց խաչի քո որ վն մեր եւ վասն ածային մարմնոյ եւ արեան քո. որ պատարագեալ բաշխիս ի քաւութի մեղաց մերոց եւ ամ աշխարհի. եւ ող վասն միոյ բանի ողորմեցար աւազակին ի ժամ խաչին. նոյնպէս ողորմեա պարոն ախիջանին. նուրիջանին. յովանիսին եւ իւրեանց ծնաւղացն. տր մելքիսէթին եւ իւր ծնաւղացն. տր ստեփաննոսին եւ իւր ծնաւղացն. անդրէասին եւ իւր ծնաւղացն սոցայ հոգոյն լսել տայ զերկնից արքայութին ամէն: Եւս առաւել քն ած ողորմի սուրբ ֆ――ղէ. քհնյիցն եւ տանուտէրացն. տր թումին. տր գրիգորին. տր ստեփաննոսին. տր յոհանիսին. տր մարտիրոսին. տր յովաննիսին. տր ներսէսին. տր մխիթարին. եւ մեր հոգեւոր հաւրդ հերդեփ տր թումին. որ զմեզ բազում աւուրս պահեաց եւ կերակրեաց. ած զանմահական կերակուրն իւրն պարգեւէ յերկնից յարքայութին ամէն. տր մելքիսէթին ած ողորմի. որ գնաց ի բաղէշ եւ եբեր զթուխթս: Նայ եւ ած ողորմի. ըռէս բուլութին. կրպտին. աւետիսին. դանաբեկին. անդրէասին. մելքիսեթին. յոհանիսին. շնուռ մկրչին. այլ եւ միւսին որ մականուն բուսիկ ասեն. եւ այլ տանուտէրացն ամի առհասարակ. զոր յանուանէ ոչ գիտեմ: Եւ դրձլ ինքն քն ած, որ տրն է փառաց եւ տուող ողորմութեց. տացէ զերկնային զխաղաղութի իւր ամ աշխարհի: Եկեղեցեաց զանշարժ զհաստատութի: Հայրեապետաց ընդ ամ տեղիս ուղղափառ վերադիտողութե: Վարդապետաց ճշմարտութի: Կրաւնաւորաց. վարս առաքինութի: քհնյից սրբութի: ճգնաւորաց. ժուժկալութի: Սարկաւագաց. պարկեշտութի: Թագաւորաց հաւատացելոց յաղթութի: Իշխանաց հանդարտութի: Տանց շինութի: Տղայոց պահպանութի: Աւգոց քաղցրութի: Անձրեւոց առատութի: Ըստ պատշաճի: Անասնոց անաղալ ծնընդականութի: Մեղաւորաց. դարձ ապաշխարութե: Համաւրէն հաւատացեալ ննջեցելոց, մեղաւորաց թողութի: հանգիստ եւ ողորմութի: Եւ մեք յամի գոհացողական փառատրութբ փառաւորեսցուք զհայր եւ զորդի եւ զսբ հոգին այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

Էջ 189ա. Նորոգեցաւ ձեռամբ սուտանուն վարպետ գալուստի եւ որդոյ իւրոյ պօղոսի. թվ ռ. ճխդ. թողուի արարէք ով եղբարք խիստ չարչարանօք կազմեցի. լգ. ――――――――― տակն ամէն կտրած էր անեղով կարած այսպէս այլ գիրք չէի տեսած բըմ չարչարանօք շինեցի:

(Անդ. այլ) Ես տր մելքոնս ըստաց― հալալ ընչից իմոց զճաշու գիրքըս պապն իմ խոշնատար մամն իմ ազիզ հայրն իմ տր սիմոն մայրն իմ գուլըստան եղբայրքն իմ տր կոստանդ―ն. մարութան ―վանէսն քեռ―ցն իմ խաթունին մարիանին տր ալեքսանին միլիտոսին եւ ամ արեանառու մերձաւորցն արանցն եւ կ―ն―ն կարդացողաց եւ լսողացն ամէն թիւն ռճծզ ―նվարի ը ած ողորմի յիշատակ ―ողացն (= տուողացն) որք ողորմի ասէք ամէն: Հայր մեր որ յերկինս նր:

(Անդ. այլ՝ ոտանաւորով).

Հայոց ազգիս թվականի.
քան եւ երկու յոբելինի:
Ութիւք հզգիւք քառ աւելի.
ի փառս անուն տեառն յիսուսի:
Նորոգեցաւ գիրքս կրկին.
Ձեռամբ գալուստ վարպետին:
Պատճառք եղեն երկ աբեղայք.
տէր կիրակոսն եւ տէր նիկօլն:
Ծախսըն եսուն երկու գրչիս,
յայսմաւորին եւ ճաշուիս:
Երկուքեան մի ամանակի.
Կազմել եսուն ի միասին:
Գալուստին ած ողորմի.
յայսմաւուրըն ձրի կազմի:
Վանիցս հայր ռըստակիսի.
խոնարհամիտ քահանայի:
Ջճաշուին կազմելոյ վարձն.
Ես հայր տանըս տէր ըռստկին:
Ջչորեքին վերոյ գրեալքս.
եւ անթերի մեղք լըցեալքս:
Ո՛վ ոք յիշէ յամենայնի.
եւ ասասցէ տէրն ողորմի:
Յիշեալ լիցի 'ի քրիստոսէ.
եւ կրկնակի գալըստենէ:
Ջոր եւ հրեշտակք եւ զմարդիկք.
աղաղակեն 'ւասեն ամէն:
Շինող բանիս մեղաւոր.
եւ առ իւր տրն յոյժ յանցաւոր:
Եղբարք խըղճիք ողորմի տայք.
եւ դուք լինիք հարիւրաւոր:
Գրեցաւ նամնեանն մայիսի.
ի յաւուրս տասներեքի:
Ձեռամբ տրուպ հ լ ո բ հ շ վ լ.
եւեթ անուն աբեղայի:

(վերջընթեր տողին ծածկագրութիւնը եղբայրագրով կը կարդացուի կիրակոսի):

Էջ 211բ. Իսկ ի յայս կիրակիս ի թիւս հայոց ՋկԷ եւ ապրիլի ժը. ձիւն երեկ կանգնէն մի. եւ չաբաթ մի անասուն անսուաղ մնաց (ստորին լուսանցքի մէջ անվարժ գրչէ մը):

Էջ 234բ. Զստացող լուսազարդ գրոցս զհեւսն յոհանէս ամիրզայն՝ յիշեցէք ի քն հանդերձ ծնողաւքն իւր. եւ զկարապետ գծող գըրոցս. եւ զծնողս նր:

Էջ 251ա. Որ ողորմի ստացողի գրոցս յոհանիսին. եւ ծնողաց նոցին. եւ կարապետ գրչին. ամէն:

Էջ 261բ. (Փ)առք անբաժանել(ի) եւ միանական նր երրորդութեն հաւր եւ որդոյ եւ հոգոյն. նրոյ յաւիտեանս յաւիտենից յամէն: Արդ եւ ես ըստացաւղ

եղալ յայսմ լուսափայլ տաճարս. որ կոչի տարեգիրք: Ածայսէր աւետիսս. եւ իմ ծնաւղացն իմոց մարգարին. եւ մաւրն իմ մաղթուածին. եղբաւրն իմ խոճայ ճանին. հայրապետին. աղայճանին. եւ մաւրն գուլփաշին. եւ կողակիցն իւր սայիպն. եւ միւս եղբաւր կողակիցն իւր. աղայ սուլտանին. ամիրճանին. եւ միւս եղբաւրն իմ բաբայճանին. որ յառ ած են փոխեր. Որք հանդիպիք սմայ կարդալով կամ յաւրինակելով. Ած ողորմի ասասջիք եւ ած արեան մերձաւորաց ննջեցելեացն. ամէն:

Էջ 264ա. Հոգւոյ ոմ ած ճշտ ողորմեա ստացողի գրոցս. ամիրզայ հիւսանն յոհանիսին. եւ ծնողաց նորին:

Էջ 313բ. Զստացող ոք գրոցս զուսթա յոհաննէսն յիշեցէք ի քս. եւ զծնողսն իւր. եւ զեղբարսն ամէն:

Էջ 341բ. Ով ողորմի կարապետ գրչին եւ յոհաննէս ստացողին. եւ ծնողաց նոցին. ամէն:

Էջ 434ա—435բ (Գլխաւոր յիշատակարան). Փառք ամենայն երրորդութեան. հաւր եւ որդւոյ. եւ հոգւոյն սրբոյ. մի էութեան. եւ մի բնութեան. միոյ տէրութեան. եւ միոյ աստուածութեան. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից՝ ամէն: Աւարտեցաւ քանհիւ. առաքելաշէն. մարգարէախօս սոյն գիրք: Յամի՝ Պ եւ Հ. Թվականիս հայոց: ձեռամբ կարապետ տեղւոյ: Ի խնդրոյ բարեմիտ հիւսանն յոհանիսի: Քանզի որք մեծութեան ընչից ըղձանան. ոչինչ աշխատութեան զմտաւածեն. յայլմէ՝ յայլ անցանել գաւառս հեռագնաց ուղաւորութեան. որպէս զի զշահն աճեցուցանել մարթասցեն: Նա եւ ընդ համատարած ծովուն ծփանաց նաւարկեալք որ բարկացեալ ալեաւքն լեռնացեալ կոհակաձեւ դաշտանան: Անդ ընդ ապտակ խորոցն, ըքացեալ կուտիցն, մե՛տ առ մետ ալեացն. ահ պակուցանող տեսողացն արկանելով: Իսկ արիացեալքն ասորիքիցն ի խմեշ խոռոշիցն, ի խորս խաւարային, ձորոցն համարձակին: Ի քարաժեռս դժ—արամուտս տեղեացն 'ի խնդիր ականց զանազանից: լաւ համարելով զմահ անձանց՝ քան թէ ունայն ձեռաւք զվաստակն ժողովել զանուն: Եւ այլք ըստ քրէական ար—եստին. հալոցաւք հնոցացն զոսկւոյն զգի՛ւտ ար—եստաւորեալ յառաջ բերին զանաւթն պատ—ական: ըստ նմին աւրինակի. եւ ամ ասէր յոհաննէսն հիւսն ամիրզայն: Որ ոչ ունէր զաւակ մարմնաւոր, զի միակեց էր. եւ անախտ 'ի մարմնական ամուսնութենէ: Վասն որոյ 'ի խնդիր եղեալ՝ այսմ հոգենորոգ եւ ծաղկաւէտ. վարդափթիթ անուշահոտ բուրաստանիս. եւ ստացաւ զմարգարտաշար եւ զանաւրէն փարթամութիս: Զպայծառութիս մանկանց սիոնի. եւ զուրախութի՛ս նր եկեղեցւոյ: Ի վայելումն անձին իւրոյ. եւ յիշատակ բարի. ծնողաց իւրոց՝ աւետիսին. եւ խութլու մելիքին. եւ եղբարցն սարգսին. եւ մարտիրոսին. շնոհֆորին. եւ շամշին: Յիշելով զասացեալն 'ի մարգարէէն թէ երանի որ ունիցի զաւակ 'ի սիոն. եւ յիշատակ բարի յեմ: Յայսմիտս, եւ բարեմիտ հեւսն յոհանէսն ստացաւ զամենագով գի՛րքս զայս յետ աւուրցս յիշատակ իւր եւ ծնողացն իւրոց: Եւ քանզի ունի, սա զբոլոր մասունս, տաւնի՛ց տրունականաց՝ զոր նր հայրքն հաստատեցին: Զընթերց—ածսն յակոբսս, ան եղբայրն. եւ կիւրեղ եմացին: եւ զգործս առաքելոցն կաթուղիկէից՝ թըղթովքն եւ յոհաննու աւետարանաւն: եւ զմեծ մարգարէութին եսայայ եւ զփողն տարսոնացի. հզձ աւետարանաւն: Եւ զտաւնամակս սրբոց առաքելոց. եւ զմարգարէից: զվարդապետաց. եւ զհայրապետաց: մարտիրոսաց եւ ճգնաւորաց: զզաւրականաց եւ զկուսանաց: Զկիւրակէի՛ ըղ զշորեքշաբաթի, եւ զուրբաթի: Յիսկըզբանէ տարւոյն, մինչեւ ցկատարումն տարւոյն՝ ա աւուր ըստ պատշաճի իւրում, ունի յինքեան. զգիրք եւ զաւետարան: Եւ վասն տաւնի՛ցս կարգելոցս մի՛ ոք յերկ—ասցի: Զի կարգեա՛լ է զայս սրբոց հարանցն, եւ նր վարդապետին գէորգեայ 'ի նր ուխտն որ կոչի դրազարկ, 'ի սահմանս կիւլիկեայ՝ յերկրին սըսայ: Զոր ընկալեալ լուսաւորեցան եկեղեցիք հայաստանեայց. 'ի պայծառ տաւնակարգութիւնս: Իսկ երջանիկ քահանայն տիրացու ի քաղաքէն մըշոյ: որ կարողութիւն այ: եւ հրամանաւ երանեալ վարդապետին ստեփաննոսին, որ ի վանսն իննակնեան, որ յանուն նր կարապետին, 'ի գաւառին տարաւնոյ. Զայս ած բազմութի ծաղկանց՝ 'ի հոգւոյն սրբոյ՝ գաղըստեան աւրէն մինչ 'ի յաւագ պահսն. աղուհայից շարագրեաց 'ի վայելումն, եւ 'ի պայծառութի սուրբ եկեղեցւոյ Վասն որոյ հայցեմք յայ՝ զի զցաւղն ողորմութեան, ցաւղեսցէ՝ յոսկերս նոցին, եւ բուսուսցէ զնոսին՝ յօրն վերջին: ընդ նոցին. եւ ի ստացողի գրոցս յամիրզայ յոհաննեսին եւ 'ի ծնողաց նորին աւետեսին. եւ խութլումելիքին: եւ եղբարցն. սարգսին, եւ մարտիրոսին: եւ ի քըւերցն, շնոհֆորին. եւ շամշին. եւ ամ ազգականաց նորին հեւսն յոհանիսին: որ ստացաւ զսա 'ի հալալ ընչից եւ յարդար վաստակոց իւրոց, յիշատակ բարի յեկեղեցի: Արդ՝ որք հանդիպիք սմա. տեսութք եւ կամ աւգտութք ինչ իւիք: Յիշիցէք ի միտս բարիս, եւ ի պատկանաւոր խնդր—ածս զստացող գրոցս. զմիակից յոհանէս հեւսն, եւ զծնողսն իւր: նա, եւ զկարապետ, աբեղայ՝ գրծող սորին: որ բզմ աշխատութք գրեցի զգիրքս՝ յաղէթ ընդ հովանեաւ սրբոյն յակոբայ. ի խնդրոյ յոհանէս հիւսանն: Որ էր նա, անկի՛ն, եւ անտուն: Վարուքն մաքուր, եւ ողջախոհ անբամբաս, եւ անպարսաւ ի բազմանաց մարդկան: Վասն որոյ եւ ես տեսի՝ զյաւժարութի կամաց նորա. եւ զբարի մտածմունսն. եւ յանձն առեալ գրեցի զսա. բզմ աշխատութ, եւ տառապանաւք՝ յահ եւ ի փախստանմամբ եւ դողութք: Զի շահ բաւուս չաղաթայն բարեսէր եւ արդարադատ արքայն. եկն ի խլա՛թ. եւ փախեալ զթուրքմանն: եւ շատ պակասութի եղեւ մեզ եւ շատոց: Զի թուրքմանն զառաջինն փախեաւ ի ներքին երկիրն: եւ անտի, դարձեալ եկն ի վեր թուրքմանն բզմ զաւրաւք. ճ եւ ծ. հազար ձիաւորաւք: եւ խիստ խայտառակ կոտորեցան ի չաղաթի զօրացն ի գաւառն վաղաշկերտոյ մերձ բագւանայ: բայց զի ողորմած էր շահ բաւուսն. եւ քաղցր էր բարուքն, թոյլ ետ նոցա փախչել մազապուրծ: եւ զնոս գերեացն ազատ արար: Եւ մեր գրեալ ըզգիրքս՝ յայս պըղտոր, տարիս եղեւ որ էր հեծելաշարժ սըղութի՛ հացի. եւ ած իւրոց պակասութի: իսկ բարեսէր յոհանէսն յայս դառն տարին. վառեցաւ

ի սէր գրոցս. զըրկեալց զմարմինն եւ զաւրացոյց զհոգին: Վասն որոյ ո՛չ ունին իշխանութի՛ իղբայրք սորա. եւ կամ այլ ոք յազգականաց՝ տիրապետել զգիրքս: Զի 'ի սմանէ՝ ընծայեալ է այ. յոր տեղ որ լինի: եւ այլ մարդոյ հուքմ, ո՛չ կայ 'ի վերայ գրոցս: զի այ նուիրեալ է: Իսկ ի յամի՝ ութ հարիւրին, նա եաւթանասուն թըւականին: Ղարայ ուսուֆ տէրըն թախթին սատակեցա՛ւ ըստ արժանին: խազք խայտառա՛կ որպէս տեսին՝ անկեալ յերկի՛ր զպըղծոյն մարմին: Ուռեալ նեխաւ՝ գէշ գարշելին, ւ ագռաւք հանին զաչեր նորին: Զի չփութեցա՛ւ զաւրքըն չարին. եւ յիրերաց փախուստ տուին: Իսկ յետ երից աւուրց եկին. բարձին ըզգէշն եւ թաղեցին: Իսկ զաւրք չարի՛ն մեր ուսուֆին. ընդ որ գնացին աւերեցին: Զար անըզգա՛մ որդիք էին. եւ անսասխ ազգ թուրքմանին: Ընդ մեռանելն ուսուֆ բէկին. զաւրք չաղաթի՛ն եկին հասին: Որոց գլխուն եւ առաջնորդ. էր շահ ըռուխ անուն նորին: Էր նա որդի՛ մեր թամուրին. կրտսեր եղբա՛յր միրանշային: Զաւրքըն բազում քան զթամուրին. այլ աւելի՛ քան ըզնոսին: Հինգ բիւր, որ է յիսուն հազար. էր սորա զօրքն ընդ նոյն համար: Զի երսուն բիւր էր թամուրին. ու այս աւելի՛ քան ըզնոսին: Բայց ո՛չ ունէր սա չարութի՛. այլ բարեսէ՛ր հանդարտութի՛: Ցորմէ սարտեաւ ազգ թուրքմանին. վասն իւր չարեացըն զոր ունին: Զի անողո՛րմ էր ւանիրաւ. էր անմըրւա՛թ ւ անշաղաւա՛թ: Անդագաստա՛ն. եւ անհաւատ. պէղծ չարագործ իսկ եւ տըմարդ: Անպատկառ եւ անամաւթ մըղաց ամա՛ն չարեաց անաւթ: Փառք այ զոր ինչ արար. ընդ թուրքմանի՛ չարեացն յարմար: Քանզի խըտա՛ն նախ եւ փախեան. եւ յետ դարձեա՛լ կոտորեցան: Ըստ արժանեա՛ց 'ի ձեռս անկան. շահ ըռուխի՛ն եւ պարտեցան: Շատք 'ի սըրո՛յ նոցա մեռան. ւ այլքն փախեա՛ն եւ գերեցան: Կողոպտեցա՛ն. եւ յաղթեցան. ձիոց կոխա՛ն սատակեցան: Խազք խայտառա՛կ թալանեցան. ի սար ւ ի ձոր փախըստական: Ընդ որ փախեա՛ն հալածեցան. ւ ինքեանք միմեա՛նց դահիճ դարձան: Անթիւ ըռզա՛կ էր զոր տարան. աղւոր ձիա՛ն եւ շատ ուղտան: Կին եւ տըղա՛յքն ի թիւ չանկան. զոր գերեցա՛ն եւ կոխեցան: Բայց ողորմա՛ծ եւ խըղճական. նա սիրտ ունէր շահ ըռուխն այն: Ասաց արա՛ր. հուք եւ հրաման. ոչ կոտորե՛լ զամենեւեան: Այլ թոյլ երե՛տ որ ցըրւեցան. ւ յաւտար երկի՛ր վըտարեցան: Եւ շահ ըռուխն այն մեծ սուլտան. գընաց դարձա՛ւ ի խորասան: Երթալ յաթոռն իւր ըբնական ի սըմըրղը՛նդ հայրենական: Զթախթն թողեա՛լ ըզշահատան. անտէր զթաւրէզ քաղաքըն զայն: Ապա որդի՛ք ուսուֆ բէկին, եկեալ թախթի՛ն այն տիրեցին:

Բայց ինքեանք ո՛չ բարիշեցին. այլ մին ըզմի՛ւսըն փախուցին: Իսկ անիծեա՛լն ամենեւին. կըռւեր որդի՛ մեր ուսուֆին: ապանդիա՛րն անաւթ չարին. լիրբ անըզգա՛մ յիմար հոգին: Էր վնասակա՛ր եւ աւերիչ. չէն բարելի շատ գաւառին: Զարծկէ եւ զա՛րճէշ աւիրեց. զբասեն եւ զա՛ւնիկըն քակեց: Զկարնոյ քաղա՛քըն զարզըռում քան զամենա՛յն խիստ աւէրեց: Իսկ ըռքանդա՛ր աւագ որդին. զարայ ուսու՛ֆ Բախադուռին: Նա 'ի թաւրէզ տիրեաց թախթին. ւ ասաս արա՛ր շատ բարութիւն. Բայց մեղ աւա՛ր ած եւ խաւար. եւ չարութի՛ դառն եւ դըժար: ի տարելի՛ց իւր փախըստին. որ ի ձեռա՛ցըն չաղաթին: Հեծել արար շատ բազմութի՛. ւ եկն ի վերա՛յ խլաթայ բերդին: Բերդին վնասե՛լ ոչ կարացին. այլ ըզքաղա՛քըն այրեցին: Ի յաղու վա՛նց արշաւեցին. եւ չար ոճի՛ր անդ ածեցին: Ըզբերդն աւի՛ն կոտորեցին. շատ քրիստոնեա՛յ անդէն սպանին. Քան զերկերի՛ւրն այլ աւելի. զորըս սըրո՛յ ճարակ տըւին: Թող զորս 'ի ծովըն խեղդեցան. եւ քարավէժ եղեալ կորան: Ո՛հ գեղեցի՛կ կերպ ու սուրաթ այն մանկտեկա՛ցն որ կորուսան: Լաւ հարկեւո՛ր տանուտրայք. ճոխ եւ աղւո՛ր տանտիկնայք: Բարձրահասա՛կ ւ աղէկ տեսակ գուն ու կերպո՛վ ճոխ կըտըրճակ: Այս ամենա՛յն ի սուրն անցան. գերեզմանի՛ չարժանացան: Կանայք տըղայա՛ւքն գերեցան. քան զհինգ հարի՛ւրն այլ? աւելան: Զի 'ի միո՛յ գեղջէ չէին. այլ ի բազում տեղաց էին: Ի խիզանա՛յ ւ ի Բաղիշոյ, որք հասկաքա՛ղ եկեալ էին: Ծըղաք ւ աղա՛ղ ամենեւին. շատք յաղեթա՛յ անդէն էին: Որք ի սուրըն քարշեցան. կին եւ տըղա՛յքըն գերեցան: Այս այ ի պճռէ (ի պատճառէ) այն շամ՚գդի՛ն ամիրայէ: Սատանայի՛ն արբանեկէ. եւ ի նեռին կարապետէ: Որ նա աւա՛ր հըպարտութի՛. չհնազանդեցա՛ւ ըռքանդարին: Շատք որ մեռա՛ն անթաղ մնացին. ո՛չ հաց հողո՛յ ւ ոչ դրամ հողին: Եւ որք գերի՛ վարեալ գնացին. յաւտար երկի՛ր վտարեցին: ի յայլազգի՛ս խառնակեցան. ըզչարութի՛ նոցա ուսան: Ցռւացան ւ աւտարացան. ըզհայրենի՛սըն մոռացան. Ոչ 'ի կամա՛ց այլ յակամա՛յ (կիսատ):

Այս բոլորէն դուրս էջ 4ա՝ գրքին առաջին երեսին մեծ խորանին մէջ գրուած է. "զայս ծաղիկս. ջաթեւայ. անապատին եղեւ. թիւականին ռ. հ. գ. ամին. եթէ յիշէք զնկարող սորայ ըզ ովանէս աբեղայ. երես անկոյլ աղաչեմ անմեղադիր լերուք վասն թէն. ապայ այծ ողորմի ասացէք մեղաւորիս. որ ողորմեսցի քն այծ ի գալստ—ն. ձեզ ասողացդ եւ ինձ խնդրողացս. ամենեցուն ա՛մ, ի այն տարին ծաղկեցաւ որ սեղանատեղն շինել ետ ըստակէս վրդպն որ առաջնորդ էր անպատին այծ ողմ:

## 49.

## ՄԵԿՆ. ՄԱՏԹԷԻ, ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ ԵՒ ՏՕՄԱՐ

ՌՁ = 1631:

*ԹՈՒՂԹՔ 337 (նշանակուած 336, բայց 6 bis): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×15×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 15×4,5 սմ. իսկ էջ 265–324 միասիւն: — ԳԻՐ՝ նոտր. թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր. տող 29: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակ, որմէ*

միայն վերջին կողը կը մնայ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՑ ՊԱՀՊԱՆԱԿ՝ գրքին վերջը երկու թերթ, երկաթագիր աւետարանի մը մնացորդ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբէն մէկ երկու թերթ պակաս, կազմի առաջին կողը ինկած. մնացեալը մաքուր է: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 292ա, 313բ, 322բ եւ 336ա: – ԼՈՒՍԱՆՑԱՔԱՐԴԵՐ եւ զարդագրեր գրեթէ չկան. եղածներն ալ միայն ուրուագծով: — ԳՐԻՉ՝ Եւդոկիացի կարապետ երէց, իսկ վերջի 325–335 թերթերը Սեբաստացի. Ներսէս վարդապետ, որ գրքին ստացողն է: — ՏԵՂ՝ Բերիա (Հալէպ): – ԹՈՒԱԿԱՆ ՌՁ = 1631 եւ ՌՁԲ = 1633: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Դաւիթ Տանգեղեանի:

Ձեռագիրս կը պարունակէ. 1. Գրիգորի Աշակերտի եռամեծի եւ տիեզերալոյս վարդապետի. Յոհաննու Որոտնեցւ. հաւաքեալ քաղուածոյ Մեկնութիւն սուրբ աւետարանին Մատթէոսի: Բոլորը վեց հատոր, իւրաքանչիւր հատորին սկիզբը ցանկով. էջ 1ա—264բ:

2. Հարցումն Յոբնաղի եւ պատասխանի Մովսէսի հօրց քերթողի եւ դաւթի անյաղթ փիլիսոփայի հարցումն: էակք բ են ի բնութեանցն քի... 266ա – 274ա:

3. Դաւթի մեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեանցն չորից պիռհոնի իմաստակի. եւ սահմանք եւ տրամաբանութիւնք իմաստասիրութեան: Ամենայն զար տանջելի, ոչ ոք տանջեալ անապական. ոչ ոք ապականացու անեղ... էջ 274ա—բ:

4. Մեկնութիւն բանից Դաւթի փիլիսոփայի Որ է ի կատարումն նորին տառի Որ վասն սահմանացն իմաստութեան ասացեալ Ներսէսի եղբօր կաթուղիկոսի հայոց Գրիգորի. ի խնդրոյ սրումն սիրողի իմաստութեան. Ջխնդիր հոգեւորական հաւատով եւ սիրով... էջ 274բ–281բ:

5. Դաւթի փիլիսոփայի էակաց գիրք. Ի քանիս բաժանի էակն. կամ յոր երկակն. ի գոյացութիւն եւ ի պատահումն... էջ 281բ—291բ:

6. Տոմարագիտութիւն. էջ 292բ—324բ:

7. Քարոզ վարդապետաց ի բան մարգարէին Դաւթի որ ասէ. Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ տէր իմ... էջ 325ա—326ա:

8. Վասն աստիճանաց վարդապետութեան թէ որքան է կամ որպէս ստանալի է զաստիճան վարդապետութեան: Ասէ աւետարանիչն Ղուկաս թէ եղեւ... էջ 326ա—331բ:

9. Անվերնագիր կտակ չարչարանաց Յիսուսի. սկսած է այսպէս "եւ թէ ոք երթա եւ տա գործ ընտանեաց նորա„... էջ 332ա – 335ա:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 2բ. Տր իմ եւ Ած զսկսեալս իմ դու կատ") Աւգնեա հոգի նբ Ած ճշմարիտ տկար բնութես իմո զի թէզ հասից սմին վերջի:

Անդ. Աննխնձ նբ հոգիդ Ած ճշմարիտ օգնեա ինձ տկարիս:

Էջ 10ա (օտար գրչէ). ի թվին ռձծգ հունիս բ'

Էջ 2բ. Եւ վայ է ինձ սուտ քրիստոնէիս. որ երեւելիս եւ գծվս ոչ:

Էջ 167ա. օրինակն տրկասիւ էր վն այն տեղն թողի:

Էջ 231ա. եւ զիս յիշեայ ի բարի:

Էջ 264բ. Զըստացող սրբոյ քաղուածուիս մատթէոսեան գլխի տր Ներսէս սեբաստացի քաջ բաբունապետի որ ըստացաւ զսայ յիշատակ յաւիտենից. ձեռամբ անարհեստ եւ փծուն գրչի մեղապարտ թողաթցի կարապետ իրիցի. Ամի. ռ. ձ. թվի. ընդ հովանեաւ նբ նիկողայոսի եւ նբ Աձածնի: (Ասոր տակ) Զվերջի ստացող սորա՝յ ղազար բանասէր բիւզանդացի՛. ամի ռ. ճ. ը. թվի: որք ընթեռնուք Ած ողորմի ասացէք ամէն:

Էջ 265բ (այլ գրչէ). Գրձլ. 'ի թվին հայոց. ռճխգ. (= 1694) զօրացան վէնէտիկ քաղաքին քրիստոնէից զօրքն. եւ եկեալ. գճ նաւօք. եւ մեծաւ պատերազմաւ առեն. զ սաղքզի կղզին. որ էր զարմանալի կղզի. եւ բռնութբ առին ի թուրքաց. եւ բզւմ գերիս արարին. որ ոմանց ասի թէ լռ. տղայ եւ աղջիկ տարան. եւ այնչափ զօրացան մինչի ընդ հարկաւ արարին զԱմ կղզիսն. նայ եւ իզմիրու եւս. խ քէսայ խարաճ առին: ի թգրկն հարկացն. այսինքն ի գօմրուկէն որոց լիցի օգնական. քն Աձն մեր:

(Անդ) Գրձլ ի թվին ռճխգ շինեցաւ նբ թումայի առաքելոյն եկեղցին. ագուլեաց վանաց. որ է աթոռն մեր: 'Ի սոյն ամի մեռաւ շահսլէմանն եւ թգւրեց սուլթան հուսէնն:

Էջ 291բ. Զմեղաւոր եւ զանարժան գրիչս. զհողս եւ զփոշիս. զթափուրս յԱմ բարեաց. եւ զփարթամս չարեաց. զմեղօք զառածեալս. զկարապետ փծուն գրիչս. աղաչեմ յիշել ի տր. եւ թողութի մեղաց հայցել. յապենիազ արարչէն. որ է Աճլ յուսոյ ամէն. հայր":

Էջ 307ա. եւ զսակաւ աշխատողս միով հայր մեղայիւ յիշեցէք 'ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանարժան գրիչս. եւ Ած զձեզ 'ի բարին յիշէ. ամէն:

Էջ 33'բ. Գրեցաւ ձեռամբ մեղսամած գրչի միայն անուամբ վրդ"պի սեբաստացի Ներսէսի ի մայրաքաղաքն բերիայ ընդհովանեաւ նբ Աձածնի եւ նբ քառասունք եկեղեցեաց յառաջին ամի հայրապետութե սիմէոն կաթողիկոսի սեբաստացոյ որ ի կիլիկեայ թվ"կն հայոց. ռձբ: մարտ ամսոյ խթ. Յիշեցէք ի մաքրափայլ յաղ"թս ձեր սրբզան ընթերցողք Ած ողորմի ասելով հանդերձ մերովս հաւատացելոցս ի քն աղաչեմ:

Էջ 33'բ (այլ գրչէ). յշտկ է զայս մաթէոսի Աւտրնի մեկնիչս Դանիէլ եպնին ճարաղերդեցի ի օրհնեալ գիւղէն մոխրաթաղեցի որ է թոռն տէր Ներսէսին տրն յն իւրեանն վայելումն տացէ մինչեւ ի մարանաթայ ի թուին հայոց Ռ երկու հարիւր թ նոյեմբերի ամսոյ ժ. առ. գրանն սբյ երից նբ մանկանցն:

Էջ 336բ (այլ գրչէ). յորժամ թվականն հայոց ռճլ էր. հեբրայեցոց թվականն. Ետ. գճ. իէ էր. իսկ

արաբացոց եւ մակեդոնացոց թվկնն ռճլթ էր. փռանկաց թվականն ռ դճ. խբ էր. յունաց թվականն ռճլէ էր. ասորոց թվականն ռ բճ ժթ չորք էր. եգիպտացոցն թվական ռբճ. լդ էր. եթովպացոցն թվկ"նն. ռճխը էր։

(Անդ) ի սոյն ամի յորժամ Հայոց թվականն էր ռճլը. Նաւասարդի ամսին Հայոց. որ Նոր փոխեցաւ յԸ. ազգն Փռանկաց զօրացեալ ի քէ առին զԵւրոպ քաղք"ն. ի տաճկաց. եւ բարձրացաւ եղջիւր խաչին քէ։

## 50.

## ՀԱՄԱՌՕՏ ՈՐՊԻՍՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ

1820։

*ԹՈՒՂԹՔ 73. Նշանակուած եւ գրուած են էջք 131, մնացեալ 15 էջը դատարկ: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 19×12×1 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, կանոնաւոր: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ: — ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ խաւաքարտեայ, նոր: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ նոր եւ մաքուր: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւն չկան: – ԳՐԻՉ՝ Յովհաննէս. տէր Տփխիսեցի Ստեփաննոս եպիսկոպոս Ենովքեան: — Թուական 1820: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Տիկին Երանուհի Գորոյեանի:*

**Մատեանս է. "Համառօտ Որպիսութիւն եկեղեցւոյ, աշխատասիրեալ եւ համաժողովեալ ի որբոյ աւետարանական վարդապետութենէ պարզ եւ դիւրիմաց ոճիւ։ Շարադրեալ ի Մարգար Զաքարիայ Խօջենց երեւանցւոյ... յամի տռն ռչղթ. եւ մեր ռմխը. յունվ. 20. ի Սանկտ Պետրբուրգ. Այժմ ընդօրինակեալ ի նոյն գաղափարէ ի վայելումն տփխիսեցւոյ Ենովքեան Ստեփաննոս Հեգահամբոյր արհիապանծ եպսի. ի յովհաննէ Նուաստէ 1820"։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ չկան։

## 51.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՌՃՁԷ = 1738։

*ԹՈՒՂԹՔ՝ 377: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×11×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն կանոնաւոր: – ԳԻՐ՝ մանր նօտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, անզարդ. տող՝ 26: – ՆԻՒԹ՝ ողորկ Թուղթ: — ԿԱԶՄ՝ ինկած է: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը փրթելու պատճառաւ սկիզբէն եւ վերջէն Թերթեր կը պակսին. բայց մնացեալը մաքուր եւ նոր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ եւ լուսանցազարդք չկան: – ԳՐԻՉ՝ Աբրահամ վրդ. Պալաթեցի. տէր գրիչը. տեղ Երուսաղէմ. Թուական ՌՃՁԷ = 1738: – Ձեռագիրս այժմ սեպհականութիւնն է Դաւիթ Ճահգելղեանի:*

**Մատեանս է ժողովածու, որուն պարունակութիւնն է։**

**Աստուածաբանութիւն, որմէ միայն վեց գլուխ կրցեր է արտագրել "գողութեամբ առեալ զօրինակն" Գլուխ Ա պակաս թերթերուն մէջն է։ Գլուխ Բ. Ցաղագս թէ Է Աստուած, պսինքն հարկաւոր էութիւն։ Գլուխ Գ. Եւ անկար լինի ամենեւիմբ հակ ստրին։ Գլուխ Դ. Ցաղագս թէ մի է սկիզբն։ Գլ. Ե. Ցաղագս թէ Է երրորդութիւն նբ յԱստուածութիւնն։ Գլ. Զ. Ցաղագս թէ երրորդական անձանց մինն մարմնացաւ. էջ 1ա—48բ։**

**2. Բանք իմաստասիրականք եւ ածաբանականք համառօտաբար... լեհացի Ստեփաննոսի բանասիրի։ Աբրահամ է առաջին օրինակ հաւատոյ. էջ 49ա—118բ։**

**3. Վանական վարդապետի ասացեալ յաղագս խնդրոյ Պետրոսի. Ուրախացիր պսակ։ Անծախրութիւն ի մարդս ոչ թէ յօրինացն պատուիրելոյ եւեթ են... էջ 1:9ա—124բ։**

**4. Վարդանայ վարդապետի ի խնդրոյ սարգսի. յանթառամ ծաղիկն։ Թագաւորեալ նբ եկեղեցի ածաբար հրաման տայ... էջ 125ա—133բ։**

**5. Եղիշէի մեծիմաստ վարդապետի եւ անյաղթ փիլիսոփայի ասացեալ ի հայր մեր որ յերկինսդ... Որպէս պարզ բնութեամբ եւ առաւել ունի զբարձրութիւն... էջ 133բ—140ա։**

**6 Ի բան Աւետարանին որ ասէ բանն մարմին եղեւ. ի Տիրատուր վարդապետէ Հայոց ասացեալ. Որպէս օրէն է հրոյ մշտաշարժ գոլով... էջ 140ա—147բ։**

**7. Ի Տիրատուրէ ասացեալ ի բան Սաղմոսին որ ասէ. Որպէս զի մեծ են գործք քո տէր. Զխորս անճառելի իմաստից հոգւոյն եւ զգործս անպատումս... էջ 147բ—157ա։**

**8. Ի Տիրատուրէ ասացեալ ի բանն Զաքարիայի. Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի. եւ քարոզեա դուստր Եմի. Ահա թագաւոր քո գայ առ քեզ արդ։ Պայծառ եւ հրաշալի է մեզ տօնս... էջ 157ա – 164բ։**

**9. Հողմ օրինակի Հոգին Սուրբ։ Նախ վասն նրբութեան, զի նուրբ եւ անօսր է... էջ 164բ—166բ։**

**10. Ցաղագս որբոյ Երրորդութեան քարոզ ի բանն Ցոհաննու. Հոգի է Ած. եւ երկրպագու։ Զածային**

անեղ էութիւնն գ անձինք եւ մի բնութիւն... էջ 167ա—169բ:

11. Ի բանն Պօղոսի եթէ հաւատալ պարտ է թէ է Ած. հաստատածպաշտութեան օրինակ յերից իրաց ուսուցանէ... էջ 169բ—174ա:

12. Ի բան Աւետարանին որ ասէ. Ապաշխարեցէք զի մերձեալ է արքայութիւն երկնից: Նախ տեսցուք թէ զինչ է ապաշխարութիւն... էջ 174ա—178ա:

13. Քարոզ խաչի. ի Բանն Պօղոսի որ ասէ. Զի ճառ խաչին կորուսելոյն յիմ: Չարչարանք եւ մահն Քրիստոսի... էջ 178ա—182ա.

14. Քարոզ Դանիէլի մարգարէի Դանիէլի գրոցն մարգարէականաց թէ Հին Աթոռքականաւորացն Նստաւ. Դ լոյսն անմատոյց ի մէջ աներեւոյթ... էջ 182ա—189բ:

15. Յաղագս այգոյ բան ինչ. Այն որ հաւատովն պնդի, այլ գործովն աղտեղի... էջ 189բ—191բ.

16. Սբյ. հօրն մերոյ Յոհաննու քհնյ կրօնաւորի Դամասկացւոյ Յաղագս անհասանելութեան Աստուծոյ. եւ թէ ոչ է պարտ քննել եւ խնդրել զոր ոչ է տուեալ մեզ ի մարգարէիցն եւ յառաքելոցն: Զած ոչ ոք ետես... էջ 192ա—221բ (Բոլորը 18 գլուխ).

17. Բանք ինչ համառօտ ի վերայ վարդապետական գաւազանի. Զի երբեմն ամենաբարին ած... էջ 221բ—222բ:

18. Բան ինչ թէ ոչ է պարտ զկինն արձակել. Զի երբեմն ոմանք ի սադուկեցոց... էջ 223ա—225ա.

19. Ի քէն է տր աղբիւր կենաց. սակս հոգւոյն սրբոյ: Ասեն իմաստունք թէ պարզ գոյացութիւնն... 225ա—226բ:

20. Ի տաւթեւացւոյն յաղագս տապանակին եւ տր Ածածնին: Արի տէր ի հանգիստ քո... էջ 226բ—228բ:

21. Համառօտ հաւաքումն յաղագս հոգւոյ եւ զօրութեանց նորին: Ասէ Արիստոտէլ ի գիրս... էջ 229ա—268բ:

22. Յաղագս մեծութեանն Մարիամու միշտ կուսին մօրն Աստուծոյ. Որք խորհրդաւորք եւ գեղեցիկք այն բանքն... էջ 274ա—280բ:

23. Յաղագս ցաւոյն եւ ցաւակրութեանն Մարիամու կուսին յորժամ կայր մերձ առ խաչին Յիսուսի ի Գողգոթայ: Ցաւ առաւել դառնագին եւ նեղութիւն առաւել սաստկագին... էջ 280բ—286ա:

24. Յաղագս Անարատ յղութեան մօրն Աստուծոյ. Ոմն վարդապետ Մարիամու կուսին... էջ 286բ—294ա:

25. Յաղագս անհնոյ ողորմութեանն Աստուծոյ ի զղջումն մեղաւորին: Հրեշտակական վարդապետն սրն Թովմաս... էջ 294ա—295բ.

26. Յաղագս խաղաղութեան եւ բարեացն զոր պատճառի ի քրիստոնեայն: Հաղուագիւտ եւ խորհրդաւոր մակագիրն... էջ 295բ—299բ:

27. Յաղագս թէ պարտիմք փախչիլ ի պատճառէ մեղաց, եթէ ցանկամք մնալ եւ պահիլ ի շնորհս ԱՅ. Գէր պայծառ արքայն եւ սրբազոյն մարգարէն... էջ 229բ—304բ:

28. Յաղագս զօրութեանց աղօթից եւ իւրոյ թէութեանն: Եթէ ոչ պարտիմք ոչ սակաւ գեղեցիկ... էջ 304բ—313բ:

29. Լուսաւոր զմի այլ դրամակշռումն սրբոյն Յոհաննու Ոսկեբերանին ի վերայ նորոյ բանին որ ասէ թէ նոքա այսինքն մարդիկքն յամառելովք... էջ 314ա—319բ:

30. Յաղագս ծանրագունի դժուարութեանն զոր դառնալ առ Ած խոստացեալ մեղաւոր ոք: Մեզրածորան ոմն խօսելով... էջ 319բ—328ա:

31. Յաղագս անարատ յղութեան մօրն Աստուծոյ: Հանդէս վեհութեան, գերազանցութեան... էջ 328ա—333բ:

32. Յաղագս հոգեւոր եւ մարմնաւոր գեղեցկութեան մօրն Աստուծոյ. Եզական գեղեցկութիւնն այսուրիկ... էջ 334ա—340ա:

33. Յաղագս խորագունի խոնարհութեան մօրն ԱՅ: Միանգամ յառաջադրեցաւ ի յԱթեն մայրն գիտուն... էջ 340բ—341բ, որուն իբր շարունակութիւն պէտք է կարդալ էջ 269ա—274ա, սխալմամբ այսպէս առաջ դրուած:

34. Ի սաղմոսի քաղ—ածուէն: Ցանադիւ սաղմոսարանաւ ի ձայն օրհնութեան... էջ 341բ—342բ:

35. Ի սաղմոսի քաղ-ածուէն գրեալ եղեւ: Տէր թագաւորեաց, զվայելչութիւն զգեցաւ... էջ 342բ—344ա:

36. Յայլմէ ի բանն. պահեաց զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր. ապա քաղցեաւ: Ասէ յոբ: Թէ կեանք մարդոյ պատերազմ է... էջ 344ա—348բ:

37. Որպէս արեգակն ի ջուրն տեսանի, այսպէս ստեղծողն ի ստեղծուածս... էջ 349ա—350բ:

38. Հաւաքումն սակաւ ի գրոցն Փիլոնի: Գլուխն մտաց տաճար է... էջ 350բ—357ա:

39. Գրիգորի Նիւսացւոյն ի գրոց կուսութեան: Սնափառութիւնն հեշտութեան սկիզբն է... էջ 357ա—358բ:

40. Ի բանիցն սրբոյն Գրիգորի Աճառանի. Մովսէս վասն փարաւոնի ած, բայց ան ծառայ է... էջ 358բ—369բ:

41. Սրբոյն Աթանասի աղէքսանդրացւոյ թուղթ յաղագս սրբոյ հոգւոյն: Զի եթէ ուղղակի խորհէին սակս բանին... էջ 369բ—375ա:

42. Յանուանցն Աստուածայնոց: Անուանքն յետոյ գտեալ են... էջ 375ա—376ա:

43. Ի բանից սրբոյն Ռեթէոսի: Ամենեցուն պատճառ եւ լցողականն յն ածութեանն... էջ 376ա—377բ (վերջը կիսատ):

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 48բ. Ես կղակատես խղճուկ պանդոյր. աբրահամ իբր բանի սպասաւորս պալաթեցի. միաբան նըյն Յակոբայ՝ գողութեամբ առեալ զօրինակն՝ սակս այն փութիւ գըրեցի անյարմարապէս այնքան ինչ. 'ի նը. Էմ: ռճձէ. ամին:

Էջ 222բ. ...եւ այս գաւազանս իշխանութեան յառաքելոց եւ ի հետեւողացն նոյին եկեալ եհաս մինչ ի նը յոհան ոսկեբերան... մինչեւ ի մեծ եւ ի

հոգելի վարդապետն իմ եւ առ խղճալիս եւ առ մեղաւորս անարժան Աբրահամ կզակ վարդապետս։

Էջ 268բ. Վերջ բանիս զԱբրահամ կըզան վարդապետս սոսամպոլցի աշակերտ մեծի Գրիգորի նր երուսաղիմայ հայրապետին յիշեսջիք ի տէր։ Զկնի բանիս հետեւեալ տետրին սկիզբն է սորեւ տետրաց միջի գիտ եւ ի յառեյն նախադասեա սմա։

Էջ 341բ. Սորա վերջն նախադասեցեալ ներ տետրոջ գտեալ ծանիցես։

Էջ 348բ. ԶԱբրահամ կզակ վարդապետս պալաթեցի որ ի սոսամպոլ. եւ աշակերտ գրիգորի մեծի Պատրիարքի սրբոյ Երուսաղիմայ. կարի չեշտիւ սակս իմոյ անձին ծրեցի ի սուրբ Երուսաղէմ զգիրքս զայս. ուճձէ ամին. յիշեցէք ի տր։

# 52.

## ԱՒԵՏԱՐԱՆ

(ՌՃՀԳ = 1724էն յառաջ։

*ԹՈՒՂԹՔ 189: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 12×9×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, խւրաքանչիւրը 8×2,5 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 21: – ՆԻՒԹ՝ հաստարակ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ, որմէ միայն վերջին կողը կը մնայ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական հինցած, կազմը քրքրուած, սկիզբէն, մէջերէն եւ վերջէն թղթեր պակաս, խոնաւութենէ կրած, բայց գրութիւնը սովորաբար անաղարտ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 139ա—140բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐԸ, խորաններն ու զարդագրերը յաջող են: – ԳՐԻՉ՝ Յովհաննէս. տէր եւ տեղ՝ անծանօթ. Թուական՝ անծանօթ, բայց 1724 թուէն բաւական առաջ (տես տակը): – Ձեռագրիս արդի տէրն է Տէր Հմայեակ քահանայ Ներսէսեան:*

Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ, Մատթէոս՝ էջ 1ա—22ա (սկիզբէն մեծ մասը ինկած). գլխակարգութիւն Մարկոսի. էջ 22ա - 23ա. Նախադրութիւն Մարկոսի՝ էջ 23բ. Աւետարան ըստ Մարկոսի (սկիզբէն պակաս)՝ էջ 24ա —65բ. Ցարուցեալ առաւօտուն՝ էջ 65բ—66բ. ցանկ Ղուկասու՝ էջ 66բ—67բ. Ղուկաս՝ էջ 68ա —137բ. ցանկ Յովհաննու՝ էջ 137բ—138ա. Նախադրութիւն Յովհաննու՝ էջ 138բ. Յովհաննէս՝ էջ 141ա—188բ. յիշատակարանը ինկած է, բայց կը մնայ վերջին 189րդ թերթը։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ (էջ 66բ առաջին գրչէն). Համբարձմանն կարդա զսա եւ զմեղաւոր յովանէս գրիչս յիշեա ի տր։

Էջ 189ա (կիսատ) ...այլ ես միայն մնացի ատա ի գերութե ոչ կին ունիմ եւ ոչ որդի. բայց միայն ած որ ազատեցէ զիս ի յայլազգացս. Այլ ես խիստ փափաքանօք գնեցի զՏր աւետարանս ի յերկիրն բուրվարոյ ի գեօղն ջուղիզանկ. եւ առաքեցի ի հետ եղբօրս ի հայրենիսն իմ ի յարմաղան եղբօրորդոյն իմոյ զօրխմաղին. որ թէ ած կամենի քհնյ պիտի լինի. այլ դուք խնդրեցէք զԹողութի տղայութեան մեղաց իմոց. եւ չդարձումն իմ առ հայրենիսն իմ։ Եւ զմեզ յիշողն յիշեալ լիջի ի քնէ այ մերոյ ամէն։

Անդ. (այլ գրով). Մեղայոր եւ անարժան տր մարտիրոսի ձեռամբ գրեցաւ աւետարանի մարկոս? մարկոսըն այլ ձեռացըս անմեղայգիր լինիք ղալամըս ամբախտ էր որ օրհնվեցայ Թիֆն ուճիգ էր դաւիթ վարդայպիտի ձեռամբն։

Էջ 189բ. Դարձեալ յիշեցէք զիս զնուաստ եւ զմեղսամած ստեփաննոս սուտիկ անուամբս իմ քահանայ եւ գործովս հեռացեալ եւ մեկուսացեալ եմ ի քահանայական կարգէն Ա(ռեալ?) զՏր աւետարանս եւ եկի ի յերկիրն բուրվարու վն հատկի եւ նստեալ ծաղկեցի ի գեօղն ջուղիզանկ. ի խնդրոյ պարոն Թամազին եւ ղպարոն գաբրիէլին որ մականուն պ(ար)ոնեա կոչի որք հանդիպիք ի սըմա կարդալով կամ օրինակելով անմեղադիր լերուք ծաղկիս զի շտապով ծաղկեցի գիշեր ու ցերեկ. քանզի շուտով կերթայր պարոն գաբրիէլն։ ած իւր բանն յաջողէ. եւ զմեզ յիշողն յիշեալ լիջի ի քէ այ մերոյ յաւուրն դատաստանի ամէն։ Հայր մեր որ յերկ"։

Ինչպէս կը տեսնուի վերջին ստացող մ'է Ստեփանոս քահանայ, որ ձեռագիրը Բուրվարու Ջուղիզանկ գիւղն է բերեր եւ հոն ծախեր է Պարոն Թամազին. վերջինիս եղբօրորդին քահանայ պիտի ձեռնադրուէր իր հայրենիքը. եւ որովհետեւ Թամազի եղբայրը Գաբրիէլ շուտով պիտի երթար հայրենիք, ուստի այս երկուքը ձեռագիրը կը յանձնեն ծախող Ստեփանոս քահանային ծաղկելու համար եւ յետոյ Գաբրիէլ զայն նուէր կը տանի իր քահանայացու եղբօրորդւոյն։ Ձեռագիրն ստանալէ յետոյ վերջինս քահանայ կը ձեռնադրուի 1724 թուին։ Ձեռագրին գրութեան թուականը այս թուէն բաւական առաջ պիտի ըլլայ։

Ձեռագրին գրութեան թուականը այս թուին բաւական առաջ պիտի ըլլայ։

## 53.

## ԱՏԵՆԻ ՍԱՂՄՈՍ

?

*ԹՈՒՂԹՔ 195: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 13×10×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր. տող 13: — ՆԻՒԹ՝ հասարակ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ գէշ, գրեթէ անգործածելի. կազմը քայքայուած, Թղթերը սկիզբէն եւ վերջէն պակաս, մաշուած, հինցած ու ճմըրթկուած· – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 15բ իսկ էջ 87բ-88ա հնութենէն գրերը անյայտացեր են, եւ յետոյ նոր ձեռք մը նօտր գրերով գրեր է դրսէն սաղմոսի տողեր եւ յիշատակութիւն մը: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, տակտեր կամ զարդագրեր բոլորովին կը պակսին: – ԳՐԻՉ՝ Նիկողայոս սարկաւագ. տէր. տեղ եւ Թուական անծանօթ, յիշատակարանի բացակայութեան պատճառաւ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Տէր Հմայեակ քահանայ Ներսէսեանի:*

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 88ա. **Այս սաղմոս մի փն... յԻ քԻ ա̃յ ծառայ պետրոսին Հասն. շատ բարեւ:**

Էջ 146ա. **Տր ա̃ծ դաւԹի մարգարէի բարեխաւսուԹե̃ն ողորմեա մեղաւոր գծողիս Նիկեղոսին։**

Էջ 181ա. **Յոյս կենդանուԹեան յոյս եւ ապաւէն փրկիչ փարատեցոյ զցաւս անձին իմոյ մարդասէր տր։ Տր ա̃ծ դաւԹի մարգարէի բարեխօսուԹեամբն ողորմեա մեղաւոր եւ անարժան գծողիս սուտանուն Նիկեղոս սարկաւագին եւ Հաւրն իմոյ առամին ամէն։**

**Վերջին երկուքը առաջին գրչէն են. գլխաւոր յիշատակարանը կորսուած ԹերԹերուն մէջ կրնայ ըլլալ:**

## 54.

## ԺԱՄԱԳԻՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ 100: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 12×9×2,5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. վարդագոյն, կապոյտ, բալագոյն եւ ոսկեզօծ. տող 20: – ՆԻՒԹ՝ նուրբ եւ ողորկ մագաղաԹ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փոյտ՝ կապիչներով: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ, սկիզբէն եւ վերջէն պակասներով: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 34բ, 41ա-բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ, խորաններ եւ զարդագրեր բաւական լաւ: – ԳՐԻՉ՝ տէր, տեղ եւ Թուական բոլորովին անծանօԹ: — Ձեռագիրս այժմ կը պատկանի Տէր Հմայեակ քահանայ Ներսէսեանի:*

**Մատեանս է ժամագիրք, որ էջ 1 (կիսատ) սկսած է սաղմոսներէն, մինչեւ էջ 27բ. Տէր ամենակալ՝ էջ 28ա—29բ. Հրաժարիմք՝ էջ 30ա—31բ. Մեղայ՝ էջ 31բ 34ա[1]. ասկէ ետք՝ նոր ձեռք մը ներմուծեր է Թղթեայ յաւելուած մը՝ որ կը բռնէ էջ 35ա—41բ. եւ կը պարունակէ քանի մը սրբասացուԹիւններ, գրուած խոշոր բոլորգրով (մէկ էջը 11 տող). ձեռագիրը կը վերսկսի էջ 42ա. Գիշերապաշտաման՝ էջ 42ա—53բ. Առաւօտու ժամուն՝ էջ 53բ—67բ. Արեւագալի՝ էջ 67բ—75բ. երրորդ ժամուն՝ էջ 75բ—80բ. վեցերորդ ժամուն՝ էջ 80բ 85ա. իններորդ ժամուն՝ էջ 85ա 89բ. ժամամուտք՝ էջ 90ա—100բ (վերջը կիսատ)։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ **եւ ոչ մի տող։**

[1] **Մեղայ ի Հաւմար կ'ըսուի վերնագրին մէջ "զոր արարեալ է մեծ վարդապետն Հայոց Գրիգոր տաԹեւացին"։**

## 55.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՌԿԳ = 1614.

*ԹՈՒՂԹ՝ 243 (առնցմէ էջ 138 փախցուած, իսկ 233 bis): – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22×18×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն. իւրաքանչիւրը 1·×5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 22: – ՆԻՒԹ՝ հասարակ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու Թերթ. առաջինը մագաղաԹեայ երկաԹագիր մեծադիր երկսիւն ճաշոցի մը մնացորդ, իսկ վերջինը մեծ մասամբ կտրուած հանուած ըլլալով՝ անյայտ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գէշ. սկիզբի մասերը զոհացուցիչ բայց ամբողջ Յովհաննէսը փտած, ու բոլորովին անգործածելի: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ*

*1ա-2ա, 114ա-115ա, 241բ. 242բ—243բ: – ԼՈՒՍԱՆՑԱՔԱՐԴԵՐԸ, գլխազարդերը, չորս աւետարանիչներու մեծադիր պատկերները եւ զարդագրերը չափազանց անարուեստ: — ԳՐԻՉ՝ Մարտիրոս · տէր Մարգար քահանայ. տեղ Աջանանի բերդ գիւղը. Թուական՝ ՌԿԳ = 1614: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Տէր Հմայեակ քահանայ Ներսէսեանի:*

Պատկանն է Աւետարան. կը պարունակէ՝ Աւետարան ըստ Մատթէոսի՝ էջ 3ա—71ա. Մարկոս՝ էջ 72ա—113բ. Ղուկաս՝ էջ 116ա—189ա. Յովհաննէս՝ էջ 190ա—240բ: Ցանկերն ու նախադրութիւնները կը պակսին:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ (պահպանակին վրայ) կողակիցն տէր ակոբ. հայրն պարոն ջանսաւլթան. մայրն. պաճի. եղբայրն. ղարիբ. որդին հանգուցեալ եղբ'' աւետիք, մովսէս մարինոս:

Էջ 2բ՝ կնիք մը սա մակագրութեամբ. «Քի ծռ տր Սհակ»:

Էջ 113բ. (առաջին գրչէն) ի թվկնս. հայոց. ռկգ:

Էջ 240բ 241ա (գլխաւոր յիշատակարանը, որուն սկիզբէն չորս տող փչրուած է)... ամենասբ հոգոյն ելողի ի նորին էութենէ. մհուէ. գոհութիւն եւ բարեբանութիւն. համագոյ եւ միասնական. սուրբ երրորդութեանն. հաւր անծննի զորդի ծնողի. ի նբ հոգոյն բխողի, երեքն մի եւ մի յերիցն. անճառելի. անբաւանդակելի. անհասանելի, անիմանալի. անքննելի. անպարագրելի. անկետ եւ անժամանակ աստուածութեն. հաւր եւ որդոյ եւ հոգոյն սբյ. յամ եղականացս յիմանալեացն եւ զգալեացս. ի բանակաց. եւ յանբանից. եւ ի բնաւին եղելուէ արարածոցս երկրպագուէ եւ փառք յաւիտեանս յաւիտենից ամէն: Շնորհիւ ամենակալին այ. եւ ողորմութեամբ նորին. եւ գործակցութեամբ սբ հոգոյն: յանկ ելեալ աւարտեցաւ սբ աւետարանս ի յերկիրն աջանան. ի գեւղս բեխն. ի դուռն սբ գէորգայ զաւրավարին: Ձեռամբ. մարտիրոս. անպիտան ծառայի: ի հայրապետութեան տն մեսրոբ եպիսկոպոսին. տր մարտիրոսին. տր ազարիային: Արդ ցանկացող եղեալ [այսմ սբ աւետարանիս բարեմիտ եւ հեզահոգի տր մարգար... եւ հաւրն մարտիրոսին. եւ մաւրն բանտուշին. եւ հոմն սամանգու... եւ հաւրեղբայրն բինիաթին եւ քոյրն ջանգատին եւ փոքր եղբայրն ազարիային. եւ հանգուցեալ եղբարցն մելքումին. ուհակին կիրակոսին. եւ մաւրուն հիւրիխանին. եւ կողակցին մարիանին: Ամէն: Դրձեալ յիշեցէք ի կրիս առաջնորդ ղպարուն ղաղարն Ամեն. ի թուին ռկգ]: (Անկիւնաւոր փակագծի մէջ առնուած մասը այնքան փտած ու սեւցած էր որ անոնց ընթերցումը ժամեր նստաւ, եւ ընթերցումէս յետոյ արդէն փշրուեցան ու վերջացաւ: Հոս նօտրագիր մասերը ենթադրութեամբ են, իսկ կէտագրեալ մասերը կը պարունակեն մէկ կամ երկու տառ):

Էջ 242ա. Յիշատակ է այս սբ աւետարանս Փարհատին որ գնեց իւր հալալ վաստակոցն այծ իւր հոգին լուսաւորէ. եւ երկնից արիութեան պարգեւեսցէ ամէն դարձեալ իւր մայրն ասլիխանին հայրն շահնազարին հօրեղբայրն տր յուսէփին եւ իւր կողակցուն ալթունին եւ իւր որդոյն. սաւզուն. ամէն եղբայրն յակոբվն ամէնն:

# 56.

## ՏՕՆԱԿԱՆ

ՊՂՋ = 1447:

*ԹՈՒՂԹՔ 529. էջք սխալներով նշանակուած են 7-1078. այժմ էջք 1—6 չկան: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 30×21×13 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 25×7 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 39: – ՆԻՒԹ՝ թուղթ. – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ կազմը բաւական քրքրուած, սկիզբէն եւ վերջէն մէկ-երկու թերթ պակաս, առաջին երեսը սեւցած, բայց մնացեալը մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 67բ, բայց որովհետեւ ձեռագրիս իւրաքանչիւր թերթը կազմուած է երկու բարակ թերթեր իրարու կցնելով, թերթերէն ոմանք բացուած եւ ձեւացուցած են կրկին դատարկ երեսներ, որոնք չենք փաշուիր: – ԼՈՒՍԱՆՑԱՔԱՐԴԵՐԸ, զարդագրերը միջակ արուեստով: — ԳՐԻՉ՝ Մաթէոս քահանայ. տէր Ստեփաննոս արքեպիսկոպոս Գողթան գաւառի. տեղ՝ Ագուլիս. Թուական՝ ՊՂՋ = 1447: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Հմայեակ քահանայ Ներսէսեանի:*

Պատկանն է Տօնական. կը պարունակէ 150ի չափ ընդարձակ ճառեր՝ իւրաքանչիւր տօնի վրայ:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ (օտար գրչէ). էջ 2ա. Թվն ռմծթ մայիսի ՟իբին ես կարապետ իբր վարդապետս ելայ գնացի դէպ նուխի ժողրար (= ժողովարար) այծ ողջութեամբ պահեսցէ եւ բարի յաջողութեամբ:

Էջ 67բ. եղբայրն իմ յոյժ ցանկալի աչացս լոյս զարմանալի սէր ընդ սիրուս միաւորի եւ անորոշ միշտ շաղկապի աբրահամ անուն սիրոյդ հար+ի հազար եւ բիւր բարի լիցի զկնի բարեւիս սիրելի զի տէրն մեր ամենայնի որ պահեսցէ միշտ կենդանի ամէն ես անպիտան վարդանս գրեցի:

Էջ 87ա (բացուած երեսին վրայ). Ես անարժան եւ անպիտանս Մէլիք Միրզայ եւ իմ ծընող հայր աղաջան նաեւ Մեր կամակից եւ խորհրդակից Տիրացու

Գրիգոր 'ի Տիրապահ գաւառէն Ղարատաղու սոորնարնակ նահանգէն 'ի գեղջէն որ անուանեալ կոչի Խնձենի ուղիղ հաւատով եւ յօժարական կամօք Մերօք սոյն այս շնորհալի տօնական մատեան տուաք յիշատակ 'ի նը աթոռոյն Թադէոսի սրբազան առաքելոյն. Նախկին լուսաւորչին. 'ի թուականութեան Տեառն մերոյ եւ փրկչին յմի քնի 1846 'ի 18 փետրվարի ամսոյն 'ի ձեռն նոյն աթոռոյն յաջորդ Փիլիպպոս վարդապետին եւ կամ շնորհազարդեալ Տէր յակոբի գիտութեամբ ով ոք ընթերցի զայս մատեան մի բերան ողորմի ասասցէ ծնողաց մերոց ած ձիղ ողորմեսցի ամէն:

Եջ 88ա (բացուած երեսին վրայ). Աստուծոյ ծառայ մեղապարտ եւ անպիտան տիրացու վարդանս գրեցի ամէն:

Եջ 382բ (լուսանցքին վրայ). ռմծթ թւոջս մայիսի ժ եւ ը ին: Կարապետ իբր աբեղայս միաբան էի Թադէոսի առաքելոյն. բայց յայժմս եղէ միաբան նը Թովմայի առաքելոյ վանիցն. ի յառաջնորդ եսայի վարդապետի հրամ-ւն ելայ գնացի ժողովք ի նուխի ած յինքն բարի յաջողումն տացէ ով եղբայրք ա՛րելի. որք հանդիպի զայս ընթեռնլով յիշէք զտառապեալ եղբայրն ձեր:

Բուն գրչէն դրուած յիշատակագրութիւնները շատ բազմաթիւ են եւ կը գտնուին գրեթէ ամէն ճառէ վերջ. ընդ ամէնը 125 հատ. զանց կ'ընենք յիշել բոլոր այս յիշատակագրութիւնները մի առ մի, քանի որ գրեթէ միշտ միեւնոյն բառերն են. եւ կը դնենք միայն անոնք որ ձեւով կամ նիւթով նորութիւն մը կը պարունակեն։

Եջ 16ա. Ո՜վ ամէնաւրհնեալ ածածին նը կոյս մարիամ պարծանք քրիստոնէից. բարեխաւսեա առ որդի քո միածին թողուլ զմեղս ծմ հաւատացելոց: Եւս առաւել զստացողի նը գրոցս զտր ստեփաննոսի. եւ զերջանիկ քեռոյն իւրոյ զտէր տերունականին եւ զծնողաց նոցին: եւ զանարժան եղկելի գրողի սորա՝ զմաթէոս երիցի. եւ քեզ փառք. յւ:

Եջ 93ա. Ո՜վ դասք սրբասէր քահանայից. եւ ածասէր ժողովրդոց. յորժամ կարդայք եւ լսէք զայս քաղցր եւ զքաղցրելի ճառս. լի՛ սրտիւ ասացէք. քն ած քո նը հայրապետացն բարեխաւսութբ սրբոյն գրիգորի ածաբանի. եւ գրիգորի աւռականդացոյն. ողորմեա ծմ հաւատացելոց. եւս առաւել ստացողի նը գրոցս տր ստեփաննոսի արհեպիսկոպոսին գողթան եւ ծնողաց իւրոց. եւ ինձ թշուառացելոյս մաթէոսի գրչի եւ իմ ծնողացն. եւ քի փառք յաւիտեանս. ամէն:

Եջ 173բ. Քն ած քո նը հայրապետացն բարեխաւսութբ կոստանդնուպաւլսի նը ժողովոյն. փրկեա զծմ հաւատացեա՛լ ուղղադաւան քրիստոնեայքս 'ի զազրալի խորհրդոց եւ յաղանդոց հերձուածողաց. եւ ի նոցին սուտ հաւատոցն. որ չարութեամբն իւրեանց հայհոյեն զքն: եւ ուղիղ հաւատով վերափոխեա 'ի կենանն յաւիտենից եւ արքայութեան քում արժանի ա: Ընդ նոսին եւ եւս առաւել զստացող սը գրոցս զստեփաննոս արհեպիսկոպոս գողթան վիճակիս, վասն զի յոյժ եռափափագ սիրով ետ գրել զհրաշափառ, ամենալի, ծաղկափթիթ, անուշահոտ, գեղեցկապտուղ, քաղցրաճաշակ, համեղահամ, հոգեկեցոյց, ածաշունչ նը տաւնականս. 'ի յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ երիցս երանեալ նախնոյն իւր, տէր տերունականի, արհեպիսկոպոս նոյն վերասացեալ վիճակիս գողթան, եւ վասն 'ի քեզ հանգուցեալ ծնողացն իւրոց: եւ քի այդ մեր՝ փառք յւտնս. յւտնց: Կարդալ եւ զմաթէոս գծողս յիշեա. ով տէր ստփնս:

Եջ 178բ. Քն՛ ած. քո նը ծնաւղի՛դ բարեխաւսութեամբ. շնորհեա ծմ հաւատացելոց քրիստոնէից. սրբութեամբ եւ արդարութեամբ պահել զպա՛հս քառասնորդաց: արժանի՛ լինել մեզ հասանել 'ի տա՛ւն մեծի յարութեան քո. եւ արժանապէս հաղորդիլ 'ի սուրբ մարմնոյ եւ յարենէ քումմէ: եւ զե՛լս մեր յաշխարհէս, ուղղաւորեա 'ի կենաց յաւիտենից. եւ արքայութեանդ երկնից արժանաւորեա: եւս առաւել, զստացօղ սուրբ գրոցս՝ զա՛րհեպն զտէր ստփնս. ծնողաւքն իւրովք. արժանաւորեա՝ արքայութեան քո. ամէն:

Եջ 181ա. Ով եղբայր. պահոցս 'ի ծէր (= ի ծայր). զարդսի յորդորակնիս 'ի հետ կարդա. ած. դշրի.

Եջ 307բ. Պսակի՛չ սրբոց որ պսակես զսուրբս քո. պսակեա զծմ քրիստոնէից հոգիս. Եւս առաւել զստացաւղի՛ նը գրոցս զտէր ստեփաննոսի՛ արհ եւ քա՛ջ հովուապետի արհիականին գողթան. եւ զծնաւղա՛ցն իւրոց. եւ քեզ փառք:

Եջ 391ա. Քն ած 'ի քո ահագին սոսկալի՛ եւ սարսափելի՛ ահե՛ղ ատենին. ողորմեա ծմ հաւատացելոց. Եւս առաւել ստացողի՛ նը գրոց տէր ստեփաննոսին. եւ ծնողա՛ցն իւրոց. եւ ծմ արեա՛ն մերձաւորա՛ցն իւր. եւ փեսայի՛ն իւր մուրատշին. եւ ծնողա՛ցն իւր. որ յուսո՛վ էբեր ըղկուկի՛շն եւ զընճուփր. եւ քեզ փառք յւտ":

Եջ 401ա. Ընդ նոսին եւ զստացո՛ղ նը գ՛րոցս զտէր ստեփաննոս արհեպ՛իսկոպոս գողթան նահանգիս. որ բազո՛ւմ յաւժարութեամբ եւ ջե՛րմ սիրո՛վ եւ եռափափա՛գ յուսով. ետ գրե՛լ մեղապա՛րտ գրչի. վասն փառաց քոց տէր եւ յուսո՛յ արքայութեանդ. եւ յիշատա՛կ ծնողա՛ց իւրոց հանգուցելո՛ցն 'ի քնդ. հա՛ւրն իւր աղպուղլի՛ն եւ երջանիկ մա՛ւրն իւր խուանդ° խաթունին: Նա՛ եւ փառաւորեա՛լ մեծի՛ արհիականի՛ն եւ գիտապետի ա՛յսմ նահանգի՛ գողթա՛ն վիճակի՛ քեռոյն իւրոյ տէ՛ր տերունականի՛ եւ ծնողա՛ց նմին. եւ քեզ փա՛ռք յաւիտեա":

Եջ 421բ. Քն ած որ եկի՛ր կամաւ հաւր՝ խոնարհութեա՛մբ 'ի չարչարանս. խաչեցար. եւ թաղեցա՛ր. եւ յերրո՛րդ աւուր յարեա՛ր. զդժո՛խս աւերեցե՛ր եւ զգերեա՛լսն ազատեցեր. եւ զյաւիտենից ննջեցեա՛լսն 'ի դա՛ռն տանջանա՛ցն ազատեցեր. ա՛րդ ողորմեա՛ ծմ հաւատացելոցս 'ի քեզ. եւ տո՛ւր մա՛սն եւ բաժին յարքայութեան քում, Ե՛ւս առաւել ստացողի՛ նը գրոցս տէ՛ր ստեփաննոսի եւ ծնողա՛ց նորին. աղպուղլի՛ն եւ խուա՛նդ խաթունին. եւ երջանիկ քեռոյն իւրոյ տէ՛ր տերունականին մեծի՛ եպիսկոպոսին՝ նա՛ եւ ա-

նարհեստ եւ փցուն՝ եղկելի եւ ախմար գրչիս մաթէոսի: Այլ եւ ողորմեա՝ ծերունի (փոքր բառ մը քերուած) պապին. որ սիրով եւ թախանձանաւք քաջալերեաց զտկար գրիչս. գծել զսուրբ գիրս զայս 'ի փառս մեծութեան քո քն. եւ քեզ ընդ հաւր հոգւովդ սրբով. փառք յաւիտենից յետնս":

Էջ 527բ - 529բ (Գլխաւոր յիշատակարան). Ցիշատակարան նր գրոցս. Ամ բանն. իւր անհաս գիտութեամբն. եւ գործակցութեամբ հաւր եւ նր հոգւոյն: ստեղծագործեալ զերկինս եւ զերկիր. զհրեղէնսն եւ զհողեղէնս. զկենդանն եւ զանկենդանն: Զգեաց զերկինս խորանաձեւ. անբաւ բարձրութեամբ: եւ հրամայեաց բանիւ՝ եւ եղեն իննեակ դասք լուսեղէնք եւ անմարմինք. 'ի փառաբանութիւն անմահ սուրբ երրորդութեանն: զոր մին 'ի նոցանէ՝ անհնազանդութեամբն սողոքեալ անկաւ 'ի փառացն. եւ երկնայինն՝ սանդարամետական եղեւ: եւ փոխանակ հրեշտակական անուանն՝ սատանայ կոչեցաւ. այսինքն՝ հակառակ: Իսկ զներքին աշխարհս ստեղծ 'ի բնակութիւն հողեղինաց: Զոր ստեղծեալ զմարդն առաջին զադամ 'ի հողոյ ածային ձեռաւք իւրովք. եւ փչեաց յերեսս նորա շունչ կենդանի. եւ եղեւ մարդն յոգի կենդանի: Եւ արար զկինն 'ի կողէն. եւ ետ զնա աւգնական նմա. եւ եդ զնոսա 'ի վայելուչ դրախտին՝ զոր տնկեաց յարեւելս: Եւ եդիր նմա պատուիրան՝ չճաշակել 'ի ծառոյն գիտութեան: եւ 'ի պահել պատուիրանին՝ խոստացաւ բարձրացուցանել զնա յայլ եւս գերագոյն փառս: Իսկ հակառակն սատանա նախանձեցաւ ընդ փառս մարդոյն. եւ այնուհետեւ՝ եմուտ յիմաստուն գազանն այսինքն յաւձն. եւ նովաւ խաւսեցաւ ընդ ունկն եւայի՝ շրջախաւսելով զբանն յաղագս տեղի տանելոյ բանին իւրոյ: եւ խաբեաց զնա իբրեւ զտղայ. եւ ետ ճաշակել 'ի պտղոյն, նմա եւ առն իւրում. եւ բարկացեալ տէրն՝ եհան զնոսա 'ի վայելչատեսակ դրախտէն. եւ բնակեցոյց յերկիր փշաբեր: այլ եւ մահ տիրեաց նոցա եւ ծննդոց իւրեանց: Իսկ տէրն եւ բարերարն դարձեալ ոչ կարաց անտես առնել զանարատ ձեռաց իւրոց ստեղծուածն: այլ գթացաւ հայրախնամ ողորմութեամբն իւրով. ետ աւրէնս յաւգնականութիւն: խաւսեցաւ ընդ նախահարսն: եդ ուխտ ընդ նոյի: եւ աւրհնեաց, 'ի նմանէ՝ զտասներորդն զաբրահամ: խաւսեցաւ ընդ նախամարգարէին մովսէսի: եւ եդ պատգամս 'ի բերանս սրբոց մարգարէիցն. յաղագս գուշակման գալստեան իւրոյ յաշխարհս: զոր եւ գրեաց թագաւոր եւ մարգարէն դաւիթ. եթէ որդի իմ ես դու՝ եւ ես այսաւր ծնայ զքեզ: եւ այլ. թէ ել 'ի բարձունս եւ գերեաց զգերութիւն, այսինքն 'ի խաչն քառաթեւ: Եւ յեսայի թէ ահա կոյսն յղասցի եւ ծնցի որդի: Եւ երեմիա, թէ հոգի երեսաց մերոց տր քս: Եւ դանիէլ. թէ վէմն առանց ձեռին հատեալ. այսինքն է, կոյսն առանց սերման ծնեալ: Եւ այլ ամ մարգարէքն բազմադիմի խաւսեցան 'ի դարս դարս. զոր նր հոգին եդ 'ի բերանս նոցա. յաղագս տնաւրէնութեան որդւոյն այ: Զոր 'ի վախճան աւուրս եկն բանն այ եւ կատարեաց զգուշակումն սրբոցն: առաքեաց 'ի բարձանց զհրեշտակապետն գաբրիէլ՝ առ նր կոյսն մարիամ, աւետիտալով նմա զգալուստ թագաւորին երկնաւորի եւ անմահի: Զոր եկեալ անմարմնաբար՝ եմուտ ընդ ունկն նր կուսին. եւ ընդ նախամաւր ունկն սրբեաց՝ յաւձապատիր թունիցն: եւ էառ մարմին 'ի մարիամայ որպէս ինքն կամեցաւ: եւ իննամսեայ ժամանակաւ՝ բնակեցաւ յարգանդին եւ եկն 'ի ծնունդ. եւ ծնաւ 'ի նմանէ այ եւ մարդ կատարեալ՝ անբաժանելի միով բնութեամբ: եւ կերակրեցաւ նր կաթամբ կուսին. եւ եկն քառասնաւրեայ 'ի տաճարն. եւ գրկաւք նր ծերունոյն գգուեցաւ: եւ անյայտ շրջեցաւ 'ի վերայ երկրի մինչեւ եղեւ երեսնամեայ. եւ եկն 'ի յորդանան՝ մկրտեցաւ 'ի յաւհաննէ: եւ վկայութեամբ հաւր եւ նր հոգւոյն՝ ծանուցաւ աշխարհի այ ճշմարիտ. էակից հաւր եւ փառակից նր հոգւոյն: Եւ դարձեալ սկիզբն արար նշանաց եւ սքանչելագործութեան: Լուսաւորեաց զկոյրս: հաստատեաց զանդամալոյծս: յարոյց զմեռեալս: գնացոյց զկաղս: բժշկեաց զախտաժետս: երանելի ցամ ցաւս 'ի մարդկանէ: ազգի ազգի նշանս կատարեաց ածապէս: Իսկ ապերախտ եւ յանդուգն ազգ հրէից նախանձեալ ընդ նմա եւ խնդրէին կորուսանել զնա: եւ ոչ կարէին բանս պատճառանաց գտանել 'ի վերայ նորա: յետ այսր ամենայնի մի յաշակերտաց իւրոց գնացեալ եդ բանս ընդ նոսա եւ եղեւ նոցա խորհրդակից. զի առեալ մատնեսցէ զնա նոցա: եւ նոքա խոստացան տալ նմա կաշառս զի տացէ զնա 'ի ձեռս նոցա: եւ նա յանձին կալեալ եւ առեալ զինուորս 'ի նոցանէ հասոյց 'ի վերայ վարդապետին իւրոյ. զոր եւ ինքն կամաւ ետ զինքն 'ի ձեռս նոցա: եւ նոքա ըմբռնեցին մարմնով զանըմբռնելին այ. եւ առեալ տարան 'ի ձեռն հեթանոս դատաւորին. եւ նա կատարեաց զկամս չարութեան նոցա. եւ հանեալ զնա 'ի խաչ 'ի վերայ գլխոյն ադամայ: արեգակն խաւարեցաւ: երկիր շարժեցաւ: վէմք պատառեցան: վարագոյր տաճարին ցելաւ: թաղեցաւ 'ի գերեզմանի որպէս մարդ: յարեաւ յաւուր երրորդի իբրեւ այ: եւ յարոյց ընդ իւր զադամ: յետ. խ: աւուր համբարձաւ փառաւք յերկինս այապէս: եւ զնր հոգին առաքելով 'ի դասս առաքելոցն 'ի նր վերնատունն: եւ առաքեաց զնր առաքեալսն ընդ ամ տիեզերս քարոզել զայութիւնն իւր: եւ մկրտել զամենայն ազգ յանուն նր երրորդութեանն եւ 'ի մի այութեանն: Իսկ յետ քարոզութեանն եւ դարձուցանելոյ զամ տիեզերս յածգիտութիւն, կատարեցան նր առաքեալքն եւ փոխեցան յանճառ փառսն խոստացեալ: Ցետ սոցա յարեան սուրբ եւ ընտրեալ ուղղադաւան հայրապետքն. եւ դարձեալ հաստատեցին զառաքելական սահմանս կանոնաց ուղղափառ հաւատոյ: եւ կարգեցին եկեղեցիք եւ քահանայք փառաբանիչք նր երրորդութեանն: եւ այլ եւս սահմանադրեցին տաւնս տէրունականս եւ յիշատակ սրբոց. զի անխափան կատարեսցեն քահանայք ամ յամէ յամ եկեղեցիս հաւատացելոց սաղմոսերգութեամբ՝ եւ եղանակաւոր փառաբանութեամբ. եւ կարդացմամբ սուրբ գրոց: Զոր տեսեալ զայս ամենայն վայելչութիւնս հրաշից. երիցս երանեալ. հաւատարիմ, հեզ հոգի, հանճարամիտ. հոգով աղքատասէր. նա եւ այասէր: քահա-

նայապետն քո․ եւ արհիական մեծ եպիսկոպոսն՝ գողթան վիճակիս՝ տէրն ստեփաննոս գովելին․ բորբոքեալ 'ի սէրն այ․ զի 'ի բազում ժամանակաց․ ջերմ յուսով՝ եւ եռանդնափափագ սիրով, ցանկացա՛ւ եղեալ այսմ ածային նը գրոցս․ որ կոչի ամենալի տաւնական։ Զոր եւ սա՝ ունի յինքեան՝ լիակատար․ զպատմութիւն եւ ըղգովասանութիւն, տաւնից տէնաւրինականացն քո այ մերոյ․ զծննդեանն․ եւ զյարութեանն․ եւ որ ըստ կարգին։ այլ եւ զյիշատակ նը եւ փառաւորեալ ածածնին։ եւ զածածնայք նը առաքելոցն։ եւ․ զածայք նը մարգարէիցն։ եւ զհոգեհաւացեալ նը հայրապետացն։ եւ զարեամբ չաղախ նահատակեալ նը մարտիրոսացն։ եւ զուղղափառ նը թագաւորացն։ եւ ըղճգնազգեաց նը միանձնացելոցն։ եւ զվսեմական նը վարդապետացն։ եւ զարիացեալ նը կուսանացն։ այլ եւ զպատուէր քարոզութեանն յաւուրս պահոց զոր գրեցին նը վարդապետքն․ զի հանապազ ընթեռնուն նը քահանայք 'ի լսելիս աւրհնեալ ժողովրդեանն։ զի լսելով զայս ած հրամանս պատուիրանացս․ հաստատեսցին 'ի հաւատս ուղղափառս զոր ունին ի սկզբանէ։ Եւ յիշեսցեն առաջի քո յաղօթան իւրեանց զստացօղ նը գրոցս զտէր ստեփաննոս արհեպիսկոպոսն․ եւ զծնաւղսն իւր 'ի քն հանգուցեալ․ զհայրն աղպուղայ․ եւ զերջանիկ մայրն իւր խուանդ խաթունն։ եւ զամ արեան մերձաւորս իւր․ զկենդանիս եւ զհանգուցեալս։ Նա՛ եւ զերկոս երանեալ՝ երջանիկ եւ քաջ հաւատապետն։ նոյն աստցեալ գողթան աթոռոյս արհեպիսկոպոս զքեռին իւր զտէր տերունական զառ 'ի քն հանգուցեալն․ հանդերձ ծնաւղաւքն իւրովք․ եղիցին յիշատակք նոցա աւրհնութեամբ․ 'ի փառս քո այ մերոյ։ Եւ քանզի յոյժ փափագմամբ սիրոյ․ եւ վասն յուսոյ արքայութեանն․ վերոյ ասացեալ նոյն տէրն ստեփաննոս։ ետ գրել զնը տաւնականս զայս, 'ի հալալ վաստակոց իւրոց․ առ 'ի լինել նմա՝ յիշատակ բարի, հոգւոյ իւրոյ, այժմ եւ առ յապա յաւիտեանն։ Վասն զի սովաւ զուարճանան մանկունք նը եկեղեցոյ։ հանապազ կարդալով զսա անխափան։ Իսկ դուք քո հաւատացեալք հարք եւ եղբարք․ քահանայք եւ ժողովուրդք․ տեսողք եւ լսողք ածային նը տաւն 'ի տաւնականիս այս ամենայն․ աննախանձաբար եւ միամիտ սրտիւ՝ եւ բոլորախաւս բերանով՝ ասասջիք․ եթէ յն քն եւ ա՛ծ բան․ քո ամ սրբոց բարեխաւսութեամբ․ երկնաւորաց եւ երկրաւորաց։ եւ նը ածածնին աղաչանաւքն։ սրբոյն յովաննու կարապետին պաղատանաւք։ սրբոյն ստեփաննոսի՝ նախավկայի՛ն խնդրուածովք։ սրբոց առաքելոցն․ եւ մարգարէի՛ցն․ եւ սրբոյն գրիգորի հայոց լուսաւորչին։ եւ միահամուռ ամ սրբոց․ հայրապետաց եւ մարտիրոսաց․ եւ մի անձանց ճգնաւորաց․ որք ի սկզբանէ հաճոյ եղեն քեզ քն ած։ Ողորմեա՛ քաղցրութեամբ ամենայն հաւատացելոց քրիստոնէից․ արանց եւ կանանց։ ծերոց եւ տղայոց։ կենդանեաց եւ մեռելոց։ եւ ամ չափու հասակի։ Եւ սա առաւել ստացողի՝ նը գրոցս տէր ստեփաննոսին զմեղա՛ց թողութի՛ւն շնորհեա։ եւ ի քո յահաւոր եւ 'ի միւսանգամ գալստեանն՝ յահեկի՛ն դասատանին․ յանուանէ կոչեա՛ զնա․ եթէ ծառայ բարի՝ եւ հաւատարիմ․ մուտ յուրախութիւն տն քո․ եւ ժառանգեա՛ զանսպառ բարիսն․ զանտրտում ուրախութիւնսն․ զանվախճան արքայութիւնն․ եւ զանթառամելի՝ վայելչութիւնն։ Եւ արդ՝ ես ունայնս 'ի գործոց բարեաց, եւ փցունս 'ի գրչաց, մաթէոս․ սուտ անուն քահանայ․ որ անուամբ եմ կոչեցեալ՝ բաց (= բայց) հոգւովս եմ ես խաւարեալ։ Եղէ անարժանս եւ թախանձեալ․ 'ի նոյն վերստացեալ տէր ստեփաննոսէն․ որ եւ բազում սիրով հրաւիրեաց զմեզ․ առ 'ի գրել զսուրբ տաւնականս։ Իսկ մեք ոչ կարացաք ընդդիմանալ՝ մեծի՝ հրամանաց նորա։ վասն զի տեսաք զեռափափագ սէր նորա որ առ հոգեւորսն։ եւ թէպէտ ոչ ունելով մեր՝ զաւրութիւն եւ կարողութիւն, սակայն ապաւինեցա՛ք 'ի ձեռնտուութիւն, շնորհաբաշխ հոգւոյն այ․ որ անհերեւապէս հասանէ 'ի թիկունս եւ աւգնէ, եւ զտկարս՝ կարօղս յարդարէ։ ապա՛ յանձն առաք․ եւ գրեցաք զսուրբ տաւնականս զայս ըստ իմում կարի, գրչամամբ մեղսամած մատամբ՝ անձինս կործանելոյս․ բազում եւ պէսպէս աշխատանաւք։ զի մեծաւ չարչարմամբ եւ անժուժելի տքնութեամբ, հասուցաք զսուրբ տաւնականս ա°ռ 'ի յաւարտ կատարման։ զոր միայն տէրն ի°սկ գիտէ զդիտաւմն մտաց մերոց․ եթէ վասն ոյր ուրուք մտածման, ծածկեցաք զսուրբ գիրքս զայս։ Արդ՝ աղաչեմ աղաչեմ, զի եւ զիմս անարժանութիւն յիշելոյ արժանի առնէք՝ յերկնաքնաց սուրբ յաղաւթս ձեր։ զի մարգարէրն ած զթացի՝ 'ի ձեզ․ եւ ողորմութեամբ ձերով՝ անձինս իմ մա°հապարտիս եւ մեղաց թողութիւն շնորհեսցէ․ եւ ազատեսցէ յաննրելի տանջանացն․ եւ արքայութեանն արժանի արասցէ․ եւ անմահ անեղրական հանգստեանն իւր գրեցաւ սուրբ տօնականս այս 'ի գեղաքաղաքս ա°գուլիս․ գովելի գողթան վիճակիս․ 'ի նոյն իւրոյ աթոռիս․ ընդ հովանեաւ առաքելայարկ խորանիս․ ածածնակ տաճարիս․ քրիստափորի՝ մեծ նահատակիս․ եւ թումայի առաքելոյ սքանչելագործ հրաշալի աջիս․ առ ոտս երջանիկ նոյն վերասացեալ տէր ստեփաննոսիս։ Ի թուականութեանս հայոց․ ՊՂԶ․ Եւ 'ի հայրապետութեան մեծի՝ աթոռոյ, ածայարկ սուրբ էջմիածնին․ երիցս երանեալ տն գրիգորի խարաւզն ճգնաւորի․ Նա՛ եւ երկրորդ լուսաւորչի։ զոր տէր ած անսասան պահեսցէ․ եւ անգրթելի 'ի յայսմ աշխարհի։ եւ յետ աստեացս ելանելոյ 'ի վերի՛ն գաւառ հայրենի․ ընդ նախնի սուրբ պատրիարգացն, դասակի՛ց գոլով նա լիցի։ Նա՛ եւ ստացաւղ նը տաւնականիս տէր ստեփաննոս գողթա՛ն վիճակիս․ նախնեաւն իւրով տէր տերունականաւ․ եւ ամ ազգայնօքն իւրովք․ ողորմութեամբ քո քն․ մասնակի՛ց լիցին ամ գերերջանի՛կ սրբոցն, որք հաւաքեալ կան աստ 'ի հրաշափառ ամենալի նը տօնականիս։ Ո՛վ գերապայծառ զարմանագործ տիրանման մաքրափայլեալ․ դասք սրբազանից․ որք հաճոյ եղէք կամաւոր չարչարանաւք ձերովք, ամէն աչհեալ սուրբ երրորդութեանն։ (Մնացեալը կորած է)։

Ասոնցմէ դուրս էջ 86բ բացուած թերթին վրայ նօտր գրով նոր ձեռք մը գրեր է Ս․ Ածածնայ Աւետեաց գանձը "խնդութեան ձայն բարբառ աւետեաց" համառօտեալ ձեւով։

## 57.

## ՄԱՇՏՈՑ

?

*ԹՈՒՂԹՔ 173: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×12×3 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, տող՝ 21: – ՆԻՒԹ՝ հաստաբակ թուղթ: – ԿԱԶՄ՝ այժմ չկայ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ այժմ չունի: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ գէշ. կազմը փրթած, սկիզբէն եւ վերջէն պակաս, իսկ ամբողջը կամ խոնաւութենէ եւ կամ ջուրի մէջ ինկած ըլլալով գիրերը աւրուած եւ գրեթէ անգործածելի: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 127բ (յետոյ լցուած) եւ էջ 129բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ, զարդագրեր եւն քիչ եւ անարուեստ: — ԳՐԻՉ՝ տէր, տեղ եւ թուական անծանօթ: — Ձեռագրիս տէրն է այժմ ոմն Յակոբ:*

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. էջ 127բ: Տ՛ր ած ամենակալ ամենագութ ողորմած քաղցր գթած գթա ի հոգին ննջեցելոցն խոջախաւորովլին: որ նա ի մեր հայոց ազգումս բարի է ողորմած եկեղեցայս, քահանայից: գերատերոչ: Կատարիչ խնդրուածոց կատարեա զխնդրուածս խոջախաւորովլին ի բարի հոգեւոր եւ ի մարմնաւոր. ի նստել ի տան ի գնալ ի ճանապարհի ի ննջել եւ յառնել նորա բարի եղիցի. եւ մեզ գրողացս եւ ձեզ կարդացողացդ եւ լսողացդ մեղաց թողութիւն շնորհեսցէ ած. ամէն. Կու հրամոէ աւետարանիչն յոհաննէս, եթէ չամաչէի զողորմած կոչէի. դարձեալ ասէ ողորմածն ած ասեմ եւ ոչ ամաչեմ: Երանի է այնոցիկ որ ունի զաւակ ի սրին:**

## 58.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊՐՈԿՂԻ

**ՌՃՂԹ = 1750.**

*ԹՈՒՂԹՔ 156, էջք՝ թողլով սկզբի 5 պարապ թերթերը՝ նշանակուած են վեցերորդ թերթէն՝ 1—285. մնացեալը բաց թողուած է: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×11×2,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր. թանաք սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը վարդագոյն, առանց զարդերու, տող՝ 22: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ բարակ տախտակէ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ, նոր եւ մաքուր: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ էջ 1, 288—302՝ նոյնպէս եւ սկիզբէն 5 թուղթ, որոնք էջահամար չունին: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն չկայ բնաւ: – ԳՐԻՉ՝ Սիմէօն Վարդապետ Երեւանցի. տէր՝ անշուշտ գրիչը. տեղ՝ Ս. Էջմիածին. թուական՝ ՌՃՂԹ = 1750: – Ձեռագիրս այժմ կը պատկանի ոսկերիչ Ալէքսան Աւետեանի:*

**Մատենիս նիւթը լիովին կը ցուցնէ հետեւեալ գլխաւոր յիշատակարանը, որ գրուած է էջ 285-287, գրքին առաջին թարգմանիչ Սիմէօն Գառնեցւոյն յիշատակարանէն անմիջապէս յետոյ:**

**"Բան առ ընթերցօղսդ: (Գ.)իտասջիք եւ զայս վերջապէս սիրելիքդ իմ ուսումնասէր եղբարք. զի այս գրոցս պրոկղի՝ յետ ժամանակաց՝ յամելախօս կոչեցեալ եպիսկոպոս ոմն՝ արարեալ էր զլուծմունս նախապէս: Եւ յետոյ ի թուականութեանս հայոց՝ հազարերորդի՝ ուսումնասէր քահանայ ոմն Սիմէօն Անուն՝ թարգմանեալ է զսա հանդերձ լուծմամբն յամելախօսին 'ի վրաց լեզուէ 'ի հայ լեզուս: իսկ 'ի ՌՃ երորդ թուոջն մերում՝ ջուղայեցի Սիմէօն գերիմաստ վարդապետն՝ որ էր եպիսկոպոս գառնւոյ՝ վերստին արար սմա զնոր լուծմունս պարզ ոճով. որք 'ի նաւարտս իւրաքանչիւրոց Պրակաց բնաբանիցն եդեալք կան: Նաեւ՝ սոյնոյ վարդապետիս է արարեալ զքերականութիւն եւ զտրամաբանութիւն ըստ լեզուիս հայոց. նաեւ զայն որոյ յըսկզբանն ասէ: Եւ բառքն ասելիք՝ են այսօրիկ. թերեւս եւ զայլս բանս: Բայց Այս վարդապետս ըստ շնորհաբուղխ մտաց իւրոց՝ 'ի մեկնելն զգիրս զայս, յուրեք յուրեք ոչ է այնքան հոգ տարեալ զբառից եւ զբանից ըստ շարադրութեանն. զորս իբր դիւրիմաց գոլ վարկելով՝ զանց էր արարեալ: Այլ եւ՝ ի յոլով տեղիս բազում սխալմունք եւ աղճատմունք եւս էին ներմուծեալք, ի գիրս յայս ի յանհմուտ գրչաց եւ յօրինակաց՝ վասն խրթնամիտ շարադրութեանն, յորոյ պատճառէ՝ որքան առ յայս գիրս, յառաջանային անտեղեկութիւնք, եւ կորուստ մտաց բանիցն: Վասնորոյ ես յետինս ի բանասիրաց՝ Սիմէօն վարդապետս՝ յերկրէն Այրարատու, 'ի քաղաքէն Երեւանու. եւ միաբան սրբոյն Էջմիածնի ընդհանրականի Աթոռոյն. գոլով իբր սիրահարեցեալ 'ի գրոյս յայսմանէ, 'ի թուականութեանս մերում, ՌՃՂԹ. ժողովեցի առ իս զբազում օրինակս գրեցեալս 'ի հնոց. եւ գրեցի զայս գիրքս իմով ձեռնագրով. (որ թէպէտ անսխալ միայն ԱԾ է, նաեւ՝ գիրս իմ յոյժ տգեղատես, սակայն՝) յամենայնի ջանիւ, կարի ուշադրութեամբ եւ մտաւորութեամբ գրեցի: Նաեւ զոմանս բանս զանց եղեալսն ի սիմէօն վարդապետէն՝ լուծեցի ըստ կարեաց իմոց. եւ եդի յաւարտսն Սիմէօն վարդապետի լուծմանցն իւրաքանչիւր պրակսն. եւ ի լուսանցսն հանդէպ իմոց բանից սկզբանց՝ գծագրեցի զխաչանշան գիծս, որովք որոշեսցին բանք՝ իմ, եւ Սիմէօն վարդապետին: Որեմն՝ 'ի դնիլն թուոց հանդէպ բնաբանից, եւ լուծ՝ հանդէպ լուծմանց Սիմէօն հեղինակին իմոյ, դնի եւ խաչ հանդէպ իմոց բանից: Վասն որոյ՝ աղաչեմ զձեզ՝ որք հանդիպեալք այսմ՝ հաւանիցիք, եւ օրինակել կամիցիք, գրեցէք եւ**

զիմ բանս Նիւրաքանչիւրն տեղւոջ, եւ նոյնով խաչանիշ գծիւն որոշեցէք. որովք յատկացին ի բաքանչիւրքն. եւ զիս հանդերձ իմայնօքն յիշեսջիք, ի յաջօթս ձեր տալով զփառս տուողին ամենայն շնորհաց։ Իսկ եթէ ոչ հաւանիցիք իմոցն բանից, մի գրիցէք. սակայն մի մոռադրեցէք զմեզ իբր դատաւոր լինելով 'ի վերայ այլոց. զի մի է տէր եւ դատաւոր ամենայնի. որում փառք յաւիտեանս Ամէն. վերջ։

Այս յիշատակարանէս կը տեսնուի թէ գիրքը Սիմէօն վարդապետ Երեւանցւոյն բնագիրն է։ Ուրիշ յիշատակութիւն չկայ, բացի աննշան գրչափորձերէ միւս դատարկ էջերուն վրայ։

# 59.

## ՑԱՅՍՄԱՒՈՒՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ՝ արդի վիճակին մէջ 524: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 40×27×8 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն՝ իւրաքանչիւրը 29×8,5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր եւ վարդագոյն. տող 35: — ՆԻՒԹ՝ գէշ տեսակ թուղթ: – ԿԱԶՄ՝ փրթած է: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ այժմ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ ոչ լաւ. կազմը նանուած, թուղթերուն ծայրերը մնակեր եւ օր ըստ օրէ փճանալու վրայ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ չկայ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ եւ զարդագրերը բաւականլաւ: — ԳՐԻՉ՝ Սարգիս. տէր՝ Տէր Ազարիա, Տէր Յակոբ եւ Տէր Յոհան աբեղաները. տեղ անծանօթ (բայց տես տակը էջ 394բ յիշատակութիւնը). թուական՝ անյայտ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Ալէքսան Աւետեանի:*

**Մատեանս է Ցայսմաւուրք, որ սկսած է Նաւասարդի ժդէն եւ կ'երթայ մինչեւ Հրոտից ը (Օգոստոս 24 — Յուլիս 14). Պակսելը սկիզբէն եւ վերջէն պատռած ինկած։ Ձեռագրիս մէջ գտնուած նոր վկաները վերը թիւ 39 Յայսմաւուրքին մէջ գտնուածներն են, որոնցմէ կը պակսին Յովհաննէս Խլաթեցի եւ Գոհարինէ Սեբաստացի. բայց հոս աւելի է նաեւ Միրաք Թաւրիզեցի, որ ձեռագրիս նորագոյն նոր վկան է 1486 թուէն։**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ **շատ բազմաթիւ են եւ կը գտնուին գրեթէ ամէն վկայաբանութենէ վերջ. բայց ասոնք բոլորն ալ գրեթէ հետեւեալ ձեւով են.**

Էջ 203ա. **Մանաւանդ ստացողի սուրբ գրոցս կուսակրօն աբեղայիցս տէր ազարիային, տէր յակոբին, տէր յոհանին եւ ծնօղացն յակոբեանցն եւ մարցն զաւմին, եղիսաբեթին, սանդուխտին եւ մեղապարտ սարգիս գծողիս եւ ամենայն արեան մերձաւորացն։**

**Ուրիշ տեղ մը աբեղաներուն կը տրուի "բարեմիտ եւ հեզահոգի" ածականները. երեք տեղ զաւմ անունը դարձած է զուռման, զարման. վերջապէս մէկ երկու տեղ ալ կը յիշուի "հարցն եւ եղբարցն", առանց անունները տալու։**

Էջ 277բ. **բացի սոյն յիշատակութենէն՝ կայ եւ հետեւեալ ծածկագիրը, որ կը կարդացուի «Քրիստոսի ծառայ տէր յոհան».**



**վերի յիշատակութենէն տարբեր են միայն յաջորդ երկու յիշատակութիւնները։**

Էջ 74ա. **Մանաւանդ ստացող գրոցս երեք աբեղայքս եւ զամենայն երախտաւորս սոցին. եւ զայնոսիկ որք յանձնեալ են 'ի նա յիշատակել յաղօթս եւ զանարժան սարգիս գծողս յիշել։**

Էջ 394բ. **Մանաւանդ՝ զստացօղ կուսակրօն աբեղայիցս՝ զտէր ազարիէն. որ է 'ի գեղջէն բըստու՝ 'ի բնակութիւն հաչակաւոր վանիցն որ սուրբ նշան անուանի. նա եւ տէր յակոբն եւ տէր յոհանն. 'ի գեղջէն դեւու. բնակութիւն սոցայ սուրբ ստեփաննոս վանիցն. եւ ծնօղքն յակոբեանքն. եւ մայրքն. զաւմն. եղիսաբեթն. սանդուխտն. եւ ամենայն արեանաւու մերձաւորքն. կարդացողիս եւ լսողացդ՝ եւ որք վողորմին ասէք. Ամէն։**

# 60.

## ԿՏԱԿ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ

ՌՄԼԸ = 1789։

*ԹՈՒՂԹՔ 40: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×11×0.5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր, թանաք՝ սեւ, առանց կարմրատառերու. տող 20: — ՆԻՒԹ՝ հաստ. բայց անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գոհացուցիչ, պակասներ չկան: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 39բ-40բ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ ու զարդագրեր չկան. — ԳՐԻՉ՝ Կարապետ. տէր՝ գրիչը. տեղ՝ անյայտ. թուական՝*

*ՌՄԼԸ = 1789: — Ձեռագիրս այժմ կը պատկանի Ալէքսան Աւետեանի:*

**Մատեանս է Յակոբ պատրիարքի հեղինակած "կտակ խաչելութեան քո այ մերոյ":**

Գլխաւոր յիշատակարան՝ էջ 39ա. Արդ գրեցաւ ի կտակ չարչարանաց տեառն մեր յիսուսի քրիստոսի, որ ասացեալ է ի յակոբ աստուածիմաստ պատրիարքն. որ գրեցաւ ի ձեռամբ աճարծնի որդի կարապետին ի թվին ռմլը. նոյեմբերի իդ. Արդ որ հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զանարժան կարդեւսս եւ զմայր իմ փարին յիշէք ամէն։

Ուրիշ յիշատակութիւն չկայ։

## 61.

### ՀԱՄԱՅԻԼ

?

*Իրարու փակցուած թերթերէ կազմուած երկար թուղթ մըն է, որուն երկայնութիւնն է 4 մեթր եւ 3 սմ. լայնքը 12 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ անցման նօտր. թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը մուգ կարմիր. տող՝ ընդ ամէնը 342: – ՆԻՒԹ՝ հաստարակ թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի: – ՀԱՆԴԱՄԱՆՔ՝ սկիզբի մասերէն պատկերներուն կէսերը պատռած ինկած է. մնացեալը լաւ: — ԴԱՏԱՐԿ է համայիլիս ամբողջ ետեւի երեսը: — Համայիլիս պատկերներն են. 1. կէս մեթր մեծութեամբ գեղեցիկ պատկեր մը՝ ուր ներկայացուած են՝ վերը ամպերու եւ լոյսերու մէջ հայր Աստուած, անկէ վար Յիսուս մանուկ եւ մոգերու երկրպագութիւնը, եւ ասոր ալ տակ Յիսուս խաչը ձեռքը յերկինս. 2. Խաչելութիւն. 3. Մատթէոս աւետարանիչ. 4. Երկոտասան առաքեալք առանձին առանձին, նկարները թէեւ նոր արուեստով. բայց շատ նուրբ ու գեղեցիկ են: – ԳՐԻՉ եւ տէր՝ տիրացու Գէորգ. տեղ եւ թուական անյայտ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Սեներքերիմ Տէր Յակոբեանի:*

**Համայիլս կը պարունակէ. 1. Հաւատով խոստովանիմ (24 տուն). 2. Աղօթք վասն կապանաց դիւաց եւ կախարդաց... Թագաւոր ծառայելոց... 3. Աւետարան ըստ Մատթէոսի. Եւ մինչդեռ անցանէր ընդ այն Յիսուս... իշխանաւն դիւացն հանէ դա դեւս։ 4. Աւետարան ըստ Մարկոսի. Եւ եղ լուր նորա ընդ ամենայն կողմն... զի գիտէին զնա թէ Քրիստոսն է. 5. Աւետարան ըստ Ղուկասու. Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել ի լեառն... եւ բժշկէր ամենեսին. 6. Աւետարան ըստ Յոհաննու. Եկն դարձեալ ի կանա... եկեալ ի Հրէաստանէ ի Գալիլեայ. 7. Ընկալ քաղցրութեամբ. այս աղօթքը գրիչը զանազան ուղղութեամբ գրելով ձեւացուցած է ինը մեծ փակագրեր, իւրաքանչիւրը մինչեւ 8 սմ. երկարութեամբ, որոնք կը կարդացուին "Գրիգորի ծառայ Գէորգ" (այն է Գրիգորի Նարեկացւոյն). 8. "Աստուածածին ամէնօրհնեալ զպաղատանս մեր ընկալ" տաղը երկու տուն. 9. Աղերս առ երկոտասան առաքելոց. Անմահ գառնրն հզօրի եւ 10. Աղերս առ սուրբ ամլորդին. Զայն բարբառոյ անապատի (երկուքն ալ մի մի տուն տաղ). 11. Ջեռումն իսահակայ. Եւ էառ Աբրահամ զփայտ ողջակիզին. գրուած է սապատաձեւ հիւսկէնի մը մէջ՝ անկիւնէ անկիւն։**

ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ (բուն գրչէն). Օգնական եւ պահապան եղիցի ծառայիս այ, տիրացու Գէորգին (գրուած է 8 անգամ զանազան աղօթքներու տակ):

(Վերջին ստացողէն՝ համայիլիս ետեւը, երկու անգամ գրուած). "Վերջին ստացող հմայեկիս Սենեքերիմ Տէր-Յակոբեան, բնիկ Կիւմիւշխանեցի, 1904 թուի յունիսի 21ին Եւրոպա ուղեւորելուս առթիւ բարեկամէ մը նուէր ստացայ, որը Ախալքալաքէն բերած էր հետը"։

## 62.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

1840։

*ԹՈՒՂԹՔ 165, էջք նշանակուած են չորրորդ թերթէն սկսեալ 1–324, որոնց մէջ 188 փախցուած է, իսկ 238 bis: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22,5×17,5×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ հին շղագիր. թանաք՝ սեւ. առանց կարմրատառերու. տող 20—32: – ՆԻՒԹ՝ կապոյտ անողորկ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԴԱՄԱՆՔ՝ նոր ու մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ սկիզբէն 3 թերթ եւ էջք 316-324: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, պատկեր եւ զարդագիր չկայ: – ԳՐԻՉ՝ Դանիէլ դպիր Մելքոնեան. տէր՝ գրիչը. տեղ՝ Թաւրիզ. թուական՝ 1840: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Մուշեղ Շահբազեանի, որդի ձեռագրի գրչին:*

**Մատեանս է Պատմութիւն Յովհաննու կաթուղիկոսի, որուն առաջին էջին վրայ կը կարդանք. "Գիրք պատմութեան Արարեալ տեառն յովհաննէսի գերիմաստ եւ երջանիկ կաթողիկոսի ամենայն հայոց, Աշակերտի եւ այգականի երանելոյն Մաշտոցի սրբոյ հայրապետի հայոցս ազգի։**

Որ եւ ըստ իւրում իսկ յօրինողի անուանն կոչի Յովհաննէս պատմագիր։ Սկիզբն առնէ սա 'ի ծննդոցն Յաբեթի... զԹագաւորութենէ ցեղին Բագրատունեանց եւ զայլոց այսպիսեաց։ Ընդ օրինակեալ այժմ 'ի Մելքոնեան Շահբազեանց Դանիէլ դպրէ 'ի վայելումն անձին իւրոյ, 'ի դաւրէժ քաղաքի 'ի վարժ(ար)անն, աշակերտութեամբ եւ յորդորանօք գերիմաստ Ղազարու վարժապետ վարդապետի. 'ի 1839 յունիս 29ին։ "Ասկէ ետք (էջ 2) սկսած է Յառաջաբանը եւ յետոյ Հայոց պատմութիւնը առանց գլխակարգութեան. յառաջաբանը բաժնուած է 5 հատուածի, իսկ պատմութիւնը 235 հատուածի, որոնք լուսանցքներուն վրայ արաբական թուանշանով նշանակուած են։

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆ է էջ 364—366. "Վախճանական ազգարարութիւն ընդ օրինակողիս։ Արարչապետն բնաւից ծոցածին բան հօր, անսահման որդին, որ իմաստութիւն Աստուծոյ ելով, եւ զխորս աստուածային անքննին հրաշիցն գիտելով, իջեալ 'ի պէտս փրկութեան մարդկան յերկնից ի յերկիր ի զմարդիկ զպատկերն իւրոյ աստուածութեան յիւրատիպ իմաստութիւն վարժել, երբեմն հրամայեալ վասն աստուածային գրոց ի քննութիւն զբաղիլ իբր թէ նոքօք զկորուսեալ կեանս ի դրախտին, որ առ ադամուն գտանել եւ երբեմն զաշակերտեալսն դպրութեան առն տանուտեառն նմանեցուցեալ, որ ի ներքին գրոց հանեալ ունիլ զգանձն հնութեան աստուածային զօրութեանցն ճոխութեան. եւ յարտաքնոցն զնորագոյն եղելութեանցն զգիտութիւն զցուցիչն վիճակի բարենախանձ կատարելութեանց։ Առ այս զի եւ մեր ըստ որում ծայրիւ մատին հաղորդելով իմաստիցն քաղցրութեան եւ իբրաջէկ լեալ շահիցն ընթերցանութեան ի յորդորանացն հոգեւոր տեառն իմոյ եւ բազմերախտ դաստիարակի Տեառն Ղազարու գերիմաստ վարժապետ վարդապետի, որ առեալ զհեղինակ գրոյս Տեառն յովհաննու գերիմաստ եւ երջանիկ հայոց կաթուղիկոսի ի գաղղիացի մերբօրէ անուանեալ յուսմմնէ եւ ետ ի ձեռնատուն աշակերտաց իւր. որպէս եւ յիս ի Մելքոնեան դանիէլ դպիրս յօրինակել զնոյն ի վայելումն անձին։ Ուստի եւ մեր ըստ նորուն տեառն բարեկամ; գ յառաջաւորութեան սկսեալ ի յունիս 29ին ի 1839 յամի մարդեղութեան տեառն մերոյ յիսուսի, եւ աւարտեցաք, 'ի 1840, ի մայիս ամսոյ 20ին, վասն որոյ խնդրեմ զի ըստ որում ինչք աշխարհի նախնթացքն յետնորդացն վաստակին, 'ի վայելելն կամ յանդիպելն այլոյ ումեք սմին գրութեանս ներելով պակասութեանցս, յիշել զմեղ 'ի միտս բարիս առաջի գաղտնատեսին բնաւից, որով եւ դուք յիշեալ լիջիք ի բարին, յայնմ ատենի, յոր հաւասարին վաստակք աշխատանաց համայնից։ Ամէն։"

Գրքին առաջին երեսին վրայ ալ կայ փոքր յիշատակութիւն մը, որմէ կ'երեւի թէ ձեռագրին գրիչը ծնած է 1820ին եւ մեռած 1900 հոկտ. 21ին։

## 63.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՎՆԱՆՈՒ

### ՌՄԼԴ = 1785։

*ԹՈՒՂԹՔ՝ 62. գրուած եւ նշանակուած են էջք 1—111: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×14×1 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ մանր նօտր, սկզբնատողերն ու վկայութիւնները միայն բոլորգիր. թանաք՝ սեւ. սկզբնատառերը երբեմն կարմիր կամ վարդագոյն. տող՝ 28: – ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ նոր ոճով: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ սկիզբէն մէկ թերթ, մէջերէն էջ 92, վերջէն էջ 112-122: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ կամ զարդագրեր չկան: – ԳՐԻՉ Հաննա Ամասիացի. տեղ՝ Սսոյ վանքը. տէր՝ գրիչը կամ Սսոյ միաբանութիւնը. թուական ՌՄԼԴ = 1785: — Ձեռագիրս այժմ կը պատկանի Նարիման Մելիք-Զոհրաբեանի:*

Մատեանս է.

1. Մեկնութիւն մարգարէութեանն Յովնանու արարեալ Տեառն Եփրեմի վարդապետի Սսեցւոյ յաշակերտէ եւ յեղբօրորդւոյ Տեառն Գաբրիէլի գերահանճար կաթուղիկոսի։ Ի խնդրոյ Տեառն Թէոդորոսի վարդապետին Սըսեցւոյ։ Ի թուին հայոց. 1218. էջ 1 – 88։

2. Գիրք մեկնութեան Յովնանու մարգարէին. Զոր արարեալ Գերիմաստ եւ Գերահրաշ Տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ ի փառս Աստուծոյ եւ ի յօգուտ մանկանց եկեղեցւոյ. էջ 89—107։

3. Յիշատակարանք երկու են, որոնցմէ առաջինը գրքին հեղինակ Եփրեմի գրութիւնն է եւ երկրորդը արտագրողին. երկուքն ալ պատմական կարեւոր նիւթեր պարունակելով՝ ամբողջովին կը դնենք վարը. էջք 108—111։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1 եւ 78 կնիք մը, որ նոյն է թիւ 10 մատենաւոր ձեռագրի կնիքին հետ։

Էջ 47. Ով սուրբ հոգի մտաց անհաս.
զգանձ շնորհաց քոց միշտ բանաս.
Առատաբար հայցողաց տաս.
անօթ ընտիր քեզ լատանաս.
Քեւ յաջողեալ կատար եհաս.
քառից գլխոց նախկինս այս.
Ձեռն արկանեմ մտօք տհաս.
երկրորդ գլխոյս առաջի կայս.
Արդ անթերի եւ անպակաս.
զիմաստ բանի տուր ով անհաս.
Որ շնորհել ոչ զլանաս.
այլ մերձ թիկունս ամենից կաս.

Երբ այն մատեանս մրձենաս.
 որ ընթեռնուս եւ խրախանաս.
Ամոխոյէ գովէր հաննաս.
 ծնողացս իմոյս ողորմի տաս։

Էջ 68. Քեւ սուրբ Հոգի սկիզբն առեալ.
 զոր ինչ յերրորդն բան ճառեալ.
Արդ՝ ձեռն առ իս լեր կարկառեալ.
 որով եղէց եւ ես վառեալ։
Դու տաս շնորհ առատայորդ.
 եւ յաջողէա՛ համապազորդ.
Ցաջողեցեր գլխոյն երկրորդ.
 արդ յաջողեա՛ եւ զայս երրորդ։
Քանզի թարց քո չէ երբէք մարթ.
 վերադրել մեկնութեան զարդ.
Զի շնորհիւ ըղհամըր մարդ.
 կարես առնել երջանկազարդ։

Գլխաւոր յիշատակարան. Ա. Հեղինակ Եփրեմ վարդապետի կողմէն՝ էջ 108—110.

Ցիշատակարան. Արդ՝ ընկալ զայս դուզնաքեայ աշխատութիւնս մեր եղբայր Թէոդորոս, եւ այցելու մեծին Անտիոքայ, որ 'ի յիղձ բաղձանաց քոց շարժեալ հանդիսացաք յերկս վաստակոյ բանիս մարգարէութեանն Ցօնանու. որ եւ ողն առեալ յԱստուծոյ կաբողացաք հասուցանել յանկ։ Բայց մինչ 'ի բարի նաւահանգիստն հասեալ կամէաք զու բախականն արձակել զհրոցան. անդէն աղէտ իմն անհնարին հասին 'ի վերայ մեր. յար եւ նման աղէտիցն որդւոյն Ամաթեայ. Զի զոր օրինակ 'ի ցամաքել դդմենւոյն քաղէին ողէք մարգարէին. եւ լաւ զմեռանիլն վարկանէր՝ քան անդուլ աշխատութեամբ զբանդագուշիլն կոչկոճմամբ. ոչ ընդհատ ինչ եւ մերս գիպուած յառբերեալ օրինակէս։ Զի զկնի բոսորաներկ մարմնով յեթեր կոյս թեւածելոյ Եռամեծի Հայրապետին. եւ Հօրեղբօր իմոյ ըստ՛մարմնոյ Տեառն Գաբրիէլի Աստուածարեալ Կաթուղիկոսին Ամենայն Հայոց. ժամանեցին 'ի վերայ դիպուածք անդոհականք. հէնք եւ ապստամբութիւնք 'ի քառից կուսից ազարկեալ (= Նեղը ձգելով) զմեզ։ Քանզի՝ յորժամ հատաւ մահուամբ գեղուղէշ ծառս այս բարեբեղուն տապար առ արմին եդեալ յանօրինաց անտի առ այս Նոմիկոսս օրինաց, որ զաստուածայինն բան նօթճէր միշտ բանական հօտին. Անդէն անդ անկաւ զգլխով մեր արեւ կիզանող. եւ քաղէին ողւք մեր 'ի տօռապանաց անտի. եւ լաւ զմեռանիլն համարէաք. վասն զի կարի տագնապէր զմեզ հողմ բքաբեր 'ի հիւսիսոյ իբրու առհնչեալ. եւ որպէս զտերեւ տարաբեր զմեզ անդուլ խռշտանկամամբ. Ցորժամ լինէր տիւ զցայգ խնդրէաք ախորժանօք. եւ յորժամ յայն ժամանէաք՝ զտիւ ունիլ բաղձայաք կարի։ Քանզի՝ չէր տեղի ինչ 'ի տունջեան ուր ղօղէաք. եւ ոչ գիշեր ինչ որում ննջել կարիցէաք. զի մի քան զմի յառաջ ճեպել փութային նեղառիթ դիպուածք. եւ ոչ սպասեալ միային իբերաց հոյլք վշտաց։ Չէր պահ որ ոչ բաղխէր հողմ զմեզ. եւ ո՛չ ժամ զոր ո՛չ ճնշէր զմեզ խորշակ տապախառն. Ո՞ր է երեմիայ՝ զի երկարաձիգս յօրինեսցէ 'ի վերայ մեր ողբս արտասուաց. Եւ եւայն զի նստեալ լացցէ զմեզ. եւ աշխարեսցէ։ Վասն զի մղազմ (= մարդադէմ) գազանքն այնպիսիք յետ ըմբռնելոյ զերկրորդն Աբէլ, եւ 'ի դաշտի անդ սպանելոյ զվկայն խաչակիր 'ի պահոց սուրբ խաչին. 'ի ռմէթ թուին հայոց. 'ի ծ երրորդումն սեպտեմբերի յաւուր ուրբաթու (հանգոյն կենարարին մերոյ՝ հանդիպելով նմա նահատակութեանն հանդէս) 'ի վաղիւն յորժամ զշաբաթացեալն 'ի կենաց հանգուցաք 'ի դիր հանգստեան յաւուր շաբաթու. դարձ առին նոյն արենաւուշտ գազանքն խիզախելով 'ի վերայ մեր. եւ զօրն ողջոյն խոշտանկելով զմեզ. զայս ինչ պահանջելով կամ զայն 'ի բաց առելն մեր՝ պատճառս յօդելով նեղութեսցեն զմեզ 'ի չարիս։ Եւ մինչ յայս վտանգ կայաք տագնապեալ եւ կոչկոճեալ՝ ոչ պակաս քան զաւուրս տասն՝ մահու ակնկալեալ քան կենաց։ Անդէն կրկին հէնք. եւ ապստամբութիւնք անդր առաւել քան զնախորդս պաշարումն նոցա՝ աւելի քան զքառերիւր արս ուրիկայս եւ արենածարաւս. Եւ առ այս 'ի ծուփս մեծ անկեալ. այնուհետեւ 'ի գերեզման վարկէաք զմեզ. քանզի ոչ զիս եւ եթ. Այլ ազգատ առնել զմեզ խորհէին։ Եւ մինչ այսպէս սպառեցան առ 'ի մէնջ զբաւրիքն. եւ հատաւ ազատութեանն վստահութիւն յայնժամ զզարմանալիս ներգործեաց. վասն զի սովոր է նա յանակնկալ 'ի ժամու ներգործել զհրաշալիս. եւ դարձուցանել յայգ զստուերս մահու։ որպէս եւ աստ շրջեաց զախտս նոցա 'ի քաղցրութիւն. եւ զխորհուրդս նոցա չարն՝ 'ի բարի։ Ո՛չ բոլորքն միանգամայն. այլ երեւելիք 'ի նոցանէ։ Եւ այսպէս ժամ գտեալ մեր հանդերձ հարբ իմով ըստ մարմնոյ մարկոս անուն Աջապահ քահանայիւն, որ է եղբայր Եռամեծի Հայրապետին Անկաք ի ճանապարհ որ առաջնորդեալ բերէր զմեզ յԱստուածապահ քաղաքն կոչեցեալ Ատանայ. բայց մնաց 'ի սիս հարազատ իմ ըստ մարմնոյ գրիգոր անուն դպիր հանդերձ եւ եւակ ստեղամբքն իւր. եւս եւ բոլոր աթոռայինքն մնացին անդ 'ի սուրբ աթոռն՝ իբրեւ որդիք զրկեալք 'ի հօրն տեսութենէ. իսկ յորժամ տեառն շնորհիւ հասաք ժամանեցաք. եւ իջեւօթս կալաք յԱստուածախնամ քաղաքն Ատանայ. Անդէն իբր շունչ առեալ հանդարտեցաք 'ի սրտատրոփ լինելոյ։ Եւ արք տեղւոյն մեծապէս մրմռքէին 'ի վերայ խղճալի կերպարանաց մերոց. եւ յաղագս աղետալիձ դիպուածոյն շնորհէին ոչ սակաւ մխիթարութիւն սիրելիքն մեր Աստուածասիրացն դասք. փարատելով դոյն ինչ զանփարատելի տրտմութիւնս սրտից մերոց։ Եւ ստիպեցին զմեզ լինիլ ժառանգ Հայրապետական Աթոռոյն. որ եւ փութացուցին զնախայիշեցեալ ծերունի քահանայն զհաւրազատն երից վեհապետաց. եւ զծնօղն իմոյ ըստ մարմնոյ 'ի կոստանդնուպօլիս՝ որ է քաղաքամայր եւ արքայանիստ՝ առ 'ի հրաման հանել յինքնակալէն սարակինացւոց ըստ բնաւորեալ ծիսի։ Եւ յայսպիսի դառն եւ 'ի բազմավրդով ժամանակի եղեւ աւարտումն սորա. որոյ զսկիզբն՝ եդաք 'ի բերիայ. եւ հասուցաք յանկ 'ի հայրենի գաւառս մեր 'ի սիս. 'ի մէջ Ագինաօարաս գեռամբիծ սրբոյ գահին կիւլիկիայոյ։ Ուստի աղաչեմ զքեզ սիրելիքդ իմ. ընկալարուք սիրով զաշխատութիւնս մեր. իբր 'ի տատակէ թուղ. եւ կամ 'ի մորենւոյ խաղողքաղելով, եւ Հայցեցէք 'ի քրիստոսէ չառնել զերկս

վտատակից իմոց. եւ արժանացուսցէ զմեզ անտրտում եւ յարագուարճ բերկրանօք փառաւորել զամենասուրբ անունն իւր. որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից Ամէն:

բ. յիշատակարանը՝ ընդօրինակող Ամասիացի դպիր Հաննային է՝ էջ 110—111:

Արդ՝ որովհետեւ 'ի բնութեանն բարւոյն պարգեւեալ 'ի մարդկայինս ազգ երեք օժիտս այսոքիկ հոգւոյ (այսինքն) բան. ցասումն. եւ ցանկութիւն: Քանզի՝ ցանկութիւնն պարգեւեալ յԱստուծոյ՝ առ 'ի ցանկալ 'ի բարին, եւ ոչ թէ առ չարն. Այա ուրեմն ցանկալով իմ 'ի նոյն բարութեան հետեւումն. յորժամ տեսանէի զգիրքս այս ցանկալի. որ է մեկնութիւն Յօհաննու որդւոյն Ամաթեայ՝ Արարեալ 'ի լուսահոգի Գ.երիմաստ Եփրեմ հանգուցեալ Վեհէ՝ որոյ տէր լուսաւորեսցէ զհոգին՝ գասելով 'ի կաճառս Հայրապետաց. Ուստի 'ի վաղուց իսկ հետէ կամ էր ինձ օրինակել. բայց ոչ առնուի յանձն իմ վասն աստանդական կենացս. զի ոչ ունելով անսլաւ կեանք. Այնր սակի եղեւ թոյլատրեցեալ. բայց սակայն՝ յորժամ խաղաղացեալ չու արար. Սրբազան Վեհն մեր Տէր Թէոդորոս Գերընտիր եւ երիցս երանեալ կաթողիկոսն հանդերձ սիրալուն միաբանիւք ուխտի 'ի միաբանութեանցն Կիւլիկիոյ՝ 'ի բերդն լէոնի մեծի. որ է Ղալա տէրէսի առ 'ի զբօսնուլ յեղանակի ամառան. Յայնժամ հրապուրմամբ ստիպեցին զիս՝ յարգելի եւ պատուական եղբարքն իմ. մանաւանդապէս քաղաքակիցն իմ անձկալի եղբայրն իմ ըստ աննիւթին՝ Տէր Կարապետ՝ շնորհապերճ եւ գերյարգոյ վարդապետն. որ եւ Եպիսկոպոս Մեծին Ատանայու. եւ 'ի գործակալութիւն Սրբոյ Աթոռոյն շնորհատուի. 'ի ձեռնարկութիւն այսորիկ ցանկալի գրքուկիս առ 'ի գաղափարել. որ եւ ոչ հանդուրժեալ իմ ստիպմանց նազելի եղբարցն իմոց մեծաւ սիրով ձեռնարկի 'ի գրել. սկսեալ 'ի ումգ թուին արամեանս շառաւիղի. եւ 'ի յեօթներորդ աւուրն յուլիսի մեծաւ տառապանօք աւարտեցի զսա շնորհալի գրքուկս՝ յուլիսի լ աւուրն:

Եւ արդ՝ որք հանդիպիք 'ի սմա (այսինքն) այսմիկ ցանկալի գրքուկիս. առ 'ի զբօսնուլ ընթերցմամբ՝ կերկերեալ սրտիւ ժտի կարի թախանձանօք 'ի հանդիպողացդ՝ անմեղադիր լինիլ սխալանաց գրագրիս մեղսամածի. վասն զի ըստ ասից ոմանց գիտնոյ (միտք մարդկային գոլով տկար ողալի. Առանց ողալման միւն միայն գտանի) որում փառք յաւիտեանս յաւիտենից Ամէն:

Հուսկ յետոյ յիշեսջիք զհոգեւոր ծնօղն իմ զՏէր Եփրեմ Սրբազնակատար հանգուցեալ կաթողիկոսն:

(Ըստ այս յիշատակարանի ձեռագիրս հեղինակի բնագրին ուղղակի առաջին օրինակութիւնն է, նահատակ Գաբրիէլ Աջպահեան կաթողիկոս Սսոյ նստաւ 1758—1770. որուն յաջորդեցին՝ Եփրեմ Աջպահեանց պատմագիր 1771—1785 (գրքիս հեղինակը), Թորոս կամ Թէոդորոս Աջպահեան՝ 1785—1796 (գրքիս խնդրողը):

# 64.

## ԱՒԵՏԱՐԱՆ

### ՌՃԿԲ = 1713:

*ԹՈՒՂԹՔ՝ 316: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 22×16×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 15×5 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ. վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր, ոսկեզօծ. կապոյտ կամ վարդագոյն. տող 20-22: – ՆԻՒԹ՝ հաստ եւ լաւ թուղթ: – ԿԱԶՄ՝ ըստ յիշատակարանին առաջ եղած է արծաթապատ, այժմ միայն կաշեպատ փայտ, բայց նոր ոճով: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ ընդ ամէնը 20 երես, մեծ մասը պատկերներուն ետեւի երեսը: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ եւ պատկերներ շատ կան. գրիչը յատկապէս ուշադրութիւն դարձուցեր է ըստ ամենայնի մաքուր գրութեամբ եւ պատկերներով ճոխ Աւետարան մը ընծայելու. ըստ այսմ ձեռագիրս զարդարուած է 18 մեծադիր պատկերներով, 14 խորաններով, 76 լուսանցազարդերով, 142 լուսանցքի փոքր պատկերներով եւ 208 թռչնագրերով, ընդ ամէնը 458 կտոր պատկեր կամ զարդ. առանցմէ մեծադիր պատկերները թէեւ այնչափ յաջող չեն, բայց միւսները՝ մանաւանդ փոքր լուսանցապատկերները բաւական յաջող ու նուրբ են: – ԳՐԻՉ՝ Եղիա մարզուանցի. տեղ՝ Եւդոկիա. թուական ՌՃԿԲ = 1713. տէր՝ Ոսկան աստապատցի: – Ձեռագիրս Թաւրիզի մէջ գնուած է բողոքականաց դպրոցի տեսուչ Dr. Wright. եւ յետոյ նուիրուած է նոյն դպրոցին գրադարանին. ասկէ ալ գնուած եւ այժմ ձեռագրիս սեպհական տէրն է նոյն դպրոցին ուսուցիչներէն Վահան Թամզարեան:*

**Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ.** էջ 2բ—15ա տնօրինական մեծադիր պատկերներ. էջ 16ա՝ իսկ Ժ խորանացն պատճառ նախ երկրէա յեգիպտոսի խնդրեաց յեւսեբէա... էջ 16բ—25ա՝ Եւսեբի Կարպիանոս, կանոններու մանրամասն բացատրութիւնը եւ խորաններու տակ կանոններ. էջ 26ա—27բ՝ նախադրութիւն եւ ցանկ Մատթէոսի. էջ 29ա—101բ Աւետարան Մատթէոսի. էջ 102ա - 103ա՝ նախադրութիւն եւ ցանկ Մարկոսի. էջ 104ա 158ա՝ Մարկոս. էջ 158բ—160ա՝ ցանկ Ղուկասու. էջ 161ա—248ա Ղուկաս. էջ 248ա—բ՝ ցանկ Յովհաննու. էջ 250ա—312բ Յովհաննէս. էջ 313ա—316ա՝ Յիշատակարան:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 1ա՝ 1860—67 թուերէն ընտանեկան յիշատակութիւններ քանի մը տղայոց ծննդեան: Էջ 1բ. Library of the boys Memorial School Tabriz from John N. Wright.

Գլխաւոր յիշատակարան (էջ 313ա 316ա). փառք եւ պատիւ անսկզբն եւ անկատարածն ած. անեղն եւ

անհասանելին. համագոյական երրորդութիւնն Հայր եւ որդին եւ սբ Հոգին մի կամք. մի տէրութիւն. մի իշխանութիւն եւ մի բնութիւն արարիչ բոլորից. որոյ բանիւ երկինք հաստատեցան Մշտնջենաբուղ աղբեր յերկրի բղխեալ, յորմէ բաժանեցան չորս առաջս յորդահոսան եւ առատաբուղխ վտակք չորից գետոց. արբուցանելով զեդեմեան զծառսն. զպարագուարճ զանմահական դրախտին տնկոցն զգեղեցկութիւն զուարճացուցանել զամենատեղծ մարդոյն զտեսարանսն ուրախ առնելով զքառանիւթ բնութիւնսն անուշահոտութիւն բազմածաղիկ քաղցրահամ գեղեցկատեսիլ պտղովքն անտեսանելից եւ անիմանալից հրեշտակաց զոր սերովբէքն եւ քերովբէք թեթեւածածուկ գիմօք: Նախիմաց եւ առաջատես մարգարէիցն գունդքն իբրեւ ընդ հայելի օրինակաւ տեսեալ գրեն ի վերայ չորեքկերպեան կենդանեացն մարգարէաբար գծելով ի մարդկային բնութիւնս. գալով ի մեր կերպաւորութիւնս բժշկելով զխեղաթիւր ազգս մարդկան. յզպարտեալս եւ զվիրաւորեալս զվեցերրորդի աւուրն ստեղծուածն. ի եօթնեկի իշխանական հրամանաւդ զկոյ ծանեալն կանգնեցեր բնտանի եւ մարդասիրական բժշկութեամբդ: Իսկ երանելի առաքելոյն գունդքն ականատեսք եւ սպասաւորք եղեն բանին կենաց, որպէս լուան նոյնպէս եւ տեսին զոր արդարքն եւ մարգարէքն ցանկացան տեսանել եւ ոչ տեսին իշխանութիւն առին բժշկելոյ զցաւս եւ հանելոյ զդեւս. լուսաւորեալ եօթնարփեան շնորհօք սբ աւազանին. զոմն տեղի առնելով այ. եւ զոմն տուն եւ զմիւսն յաթոռ:

Ով սքանչելի եւ անպատմելի ով խորք աստուածութեանն որ զձկնորսան քարոզս առնելով յառաստ յաղբիւրէն իւրմէ՝ աստուածութեանն բղխեալ բժան (= 12) ակունս երկոտասան ազգին արբումն բաժանելով զշնորհքեան վտակն՝ ըզչորեքեան աւետարանսն՝ արբուցանելով զնորատունկսն. զփշաբերսն պտղաբերս առնելով որպէս ասէ մեծն դաւիթ եւ բարձրն եսայիս. մինն եթէ արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին եւ ես որպէս ձիթենի պտղալից ի տանն այ յուսացայ ողորմութիւն նորա. եւ միւսն եթէ փոխանակ ցրտոյն նոճ բուսցի. եւ փոխանակ զժնկոյն մուրտ ելցէ:

Մարդասէրն աստուած զմաքսաւորն աւետարանիչ առնելով: զմատթէոսն զայն ասեմ. զմի ի գետոցն զփիսոնն զառաջին կողմն վերին աթոռոյն. մարդադէմ կերպարանօք ընդ քերովբէսն խառնեալ՝ եւ յերկիր վերստին արծարծէր զկենարարին վարդապետութիւնն: Ուսուցանէր զմարդիկ մի կալ հակառակ չարին զգուշանալ յարատ հայելոյ. մատուցանելոյ զծնօտսն հարկանողացն՝ ոչ առնել ողորմութիւն կեղծաւոր մի պահել ի ցոյց մարդկան ոչ խնդրել զերկրաւորս ի յաղօթս որպէս հեթանոսքն օրհնել զանիծիչսն. եւ ատելեացն մարդասիրութիւն ցուցանել. եւ թշնամեացն աղօթս առնել. եւ կուսանացն բարի եւ հաւատարիմ եւ ողորմած լինել բղխեցն ողորմութեան ի ճրագս ամբարել:

Զնոյն եւ որդին կեփայի ոչ ի մարմնոյ որդի. այլ յառաքինութենէ ծնեալ հաւատով. որպէս պօղոսի տիմոթէոսի. Մարկոսն այն յորդահոսան երկրորդ գեհոնն. զերկիր պտղաբեր էր. եւ երկրորդ կողմն աթոռոյն. առիւծադէմ քրովբէին նմանեալ ուժգին գոչէր. զոր եսայեայ տեսեալ. եւ հրաման առեալ գոչէր զօրութեամբ զձայն անապատին զամլորդին որ պատրաստէր տեառն ժողովուրդ. սեփական զճրագն առժամանակեա զբարեկամ փեսային բղխմ եւ զնորոյ միջնորդն զմարգարէիցն զկատարն մարգարէիցն եւ առաքելոյն սկիզբն զարեգականն արդարութեան զկարապետն որ խորտակէր զժանեթաց եւ զարիւնարբու դատարկանալ առիւծն. եւ փշրէր զգլուխ որովայնասող վիշապին. որ ի վերա կուրցն բունէր եւ ի ճանապարհի զգարշապար յերիվարին հարկանէր եւ յետս ընկենոյր զհեծեալն:

Իսկ երջանիկն ղուկաս երկրորդ լայնատարածն տիգրիս. անդընդախոր գնացիւք. զոր եղեկիէլն ետես զհրեշտակն որ չափէր եւ ի յորդութենէ ուխտիցն զքանիոնութիւն խորութեանն ոչ կարաց իմանալ արբուցանելով զերաշտացեալ անձինս աւետարանէր զքաղցր եղեալ մարդասիրութիւնն: Յերկրորդ կողմն յաթոռոյն եզնադէմ քրովբէին նմանեալ. զմարդասէրն զկենարարն զկորդապատառն եւ զակտածիզ ամոյն ածեալ ընդ լծով մովսիսական օրինացն. պտղաբեր առնել զգիշերային որոմնացան փշաբեր անդաստանս սրտից կոչելով առ ամենեսեան ընդ քաղցր լծովն եւ փոքրոգի բեռամբ հանգիստ շնորհելով մեղաւորաց: Եւ զբաժանեալն ի հայրական խնամոցն որդոյն եւ վատնեալ զուաղանին շնորհսն անառակութեամբ տարրաշխարհիկ լինելով ՚ի բազմափողոց քաղաքացին յարելով: Եւ նա յղէր զնա զմոյր ճանապարհն զդառնութիւնն իբրեւ զքաղցրութիւն ցուցանէր. եւ զխուլարն իբրեւ զլոյս. զկորստական ագարակն. զխոզսն արածելով եւ վատնելոյ ընչիցն հայրենի. եւ ի չքաւորութենէ իմաստուն ճարտարապետ շինողն զտունն ի պակասմանէ զենլեացն եւ ի գինւոյն խառնելոյ սովամահ կորնչէր: Դառնայր առ հայրն գթած եւ նախ քան զանկանելն եւ զթողութիւն հայցել. ոչ որդի արժանաւոր զոլ՝ այլ իբրեւ զմի ի վարձկանացն լինել եւ հօրն ընթացեալ ընդ առաջ ըզպարանոցաւն անկեալ ծառայիցն հրամայէր լզպատմուճանն զառաջին զգեցուցանել. զեզն պարարակ ածել ի զենումն եւ ուրախ լինել ի միասին վասն գիւտի որդւոյն կորուսելոյ:

Իսկ նեփթաղիմեանն այն չորրորդ եփրատէսն Յովհաննէս զոր սիրէրն յն պատմէր զկենարարին մարդասիրութիւնն ի կանա գալիլէացւոց պատուէր զամուսնութիւնն. ընծայէաւմատոյց լինէր ի հարսանիսն զջուրն զինի փոխելով: Զտէրութեան անդրանիկն կանգնելով եւ զառ ի ծնէ կոյրն լուսաւորելով. եւ զղազարոս չորեքօրեայ արտաքս ածելով: Իբրեւ զարծուի սլացեալ նորափետուր սրատեսս աչօք եւ օդապատառ թեւօք նմանեալ աթոռոյ չորրորդ քրովբէին. ըստ թեթեւ ամպոյ սրատալով զամ ծայրին ըզզգարունն տեսանելով զիջումն զօղոյն ի վերնատանն ի կոնքն եւ արկօղն զլոյս իբրեւ զօթոց կտաւ զփածանէր. լուանայր ըզգեղեցիկ աւետաբանչացն զխաղաղութեան զարշապարսն. բժշկելով զխածանող օձին զթոյնսն. երթալով անպատճառ թեւովք ընդ յառաջ տն յօդս վերին յերուսաղէմ: Որ եւ բազումք իսկ ընկալեալք զհուրն աստուածային սիրոյն զոր

ոգս մատուցակեցին եւ քաջապէս արիացեալ յաղթեցին սիրոյ կենցաղոյս եւ մարմնական հեշտութեանց եւ պատրանաց աշխարհիս եւ ընթացան զհետ կոչողին Քրիստոսի։ զանազան առաքինութեամբ ճգնեալք վասն զի ոմանք՝ Քարկոծեցան ոմանք ի հուր այրեցան. ոմանք ի անիւս եւ ի քարինս մաշեցան. ոմանք ի գազանահերձ եղեն. եւ այլք բազումք ի փորձ տանջանաց մտին կարծրագոյն չարչարեցան եւ նահատակեցան վասն Քրիստոսի սիրոյն եւ վասն արքայութեանն Եւ այլք բազումք ոմանք ի լերինս եւ անապատս գնացեալ ամարային եւ ձմերային անյարկ եւ անզգեստ արեւակէզ եւ անձրեւաթաթախ բքածեծ եւ ձիւնաթացք. եղեմնապատ եւ ցրտասառոյց պահօք եւ աղօթիւք ճգնեցան. ոմանք ողորմութեամբ եւ տրօք տնանկաց հաճոյացան. եւ այլ ոմանք եկեղեցի շինելով ի վերայ նշխարաց սրբոց գերարգեցան. եւ այլք բազումք առաքինի վարուք եւ արիութեամբ քաջայան եւ երկնից արքայութեան արժանացան։

Իսկ այս բարեմիտ աշտախառացի Ոսկանն վասն որոյ եւ իսկ է բանս երկիւղած գոլով յայս միշտ մտառոյզ լինէր թէ եւ ինքն որով բարեգործութեամբ մտցէ առ Տէրն իւր. զի մի յունայնաձեռն երեւեսցի առաջի տեառն արարչին իւրոյ։ Եւ ապա լուեալ զբանս ի մարգարէէն որ ասէ թէ. երանի որ ունիցի զաւակ ի սիոն եւ ընտանիս իւր յԵրուսաղէմ։ Վասն որոյ զայն զայս եւ զայլս սմին հանգոյնս զմտաւ ածեալ եւ մանաւանդ ըզբանն տէրունական զոր ասէ՝ մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի. ուր ցեց եւ ուտիճ ապականեն. եւ ուր գողք ական հատանեն եւ գողանան. այլ գանձեցէք ձեզ գանձս յերկինս ասէ եւ ոչ ուտիճ ապականեն. եւ ոչ գողք ական հատանեն եւ գողան(ան)։ Վասն որոյ ի միտ եդեալ ըշՈսկանն եւ ըղձափափաք սիրով ստացաւ զընսունակ եւ զպատուականագոյն գանձս եւ զհոգելի գանձարանս. այս ինքն զծաղկափթիթ եւ արծաթապատ աւետարանս տէրունական վայելելով զսա յեկեղեցին սբ. եւ ի գանձարանն տեառն զիւրն ի իւր նուիրելով առ ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ եւ ի խրախճանս ի ցնծութիւն մանկանց սիոնի։ Եւ առ ի յիշատակ հոգւոյ իւրոյ եւ մեղապարտ ոսկանին եւ ծնողացն իւրոց հօրն եւու. մին մօրն կուլումին եղբօրն վեհրատին եւ աւետիքին. Եւ իւր հանգուցեալ կենակցին (բառ մը քերուած) եւ իւր հանգուցեալ որդոցն Յովանէսին երիճանին. Եւ հանգուցեալ հօրեղբօրն երէճան եւ ամենայն արեան զարմին սոցա հոգին աստուած լուսաւորեսցէ։ Եւ եդ յիշատակ ի սուրբ Վարդան եկեղեցին. այս ինքն ի գիւղին ատապատոյ Եւ սոյնս այս տառս գրեալ ծաղկեցաւ եւ աւարտեցաւ ի քաղաքս յեւդոկիոյ որ եւ ասի թօխաթ. ի թվին հայոց, ՌՃԿԲ. ամին եւ փետրվարի Ժ. Ձեռամբ յոգնամեղ եւ բազմաղալ եղիայ անարհեստ գրչի մարզվանեցի։ Եւ միջնորդք սորին տիրացու աւետիքն. եւ արեւելցի բարեմիտ կուլնազարն ի խնդրոյ վերոյ գրեալ Ոսկանն որ ստացաւ զսա ի հալալ ընչից եւ արդեանցն իւրոց. Ննջեցելոց ամենայն արենամերձ ազգատոհմի նորին զամենայն միով հայր մեղայիւ յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր ամենայն դասք քահանայիւքդ ամէն։

## 65.

## Ն. ՇՆՈՐՀԱԼԻ

(1625-էն առաջ)։

*ԹՈՒՂԹՔ 213. – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 12×9×5 սմ.։ – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն։ – Գիր՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող՝ 16։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ։ – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն երկերկու թերթ, մնացորդ երկաթագիր աւետարանի մը։ – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ։ – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա-2բ, 205ա-207բ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ ու զարդագրեր չկան՝ բացի երկու շատ աննշան խորաններէ։ – ԳՐԻՉ՝ անծանօթ. ստացող՝ Աղէքսան կրօնաւոր. տեղ՝ անյայտ. թուական՝ 1625թուէն առաջ. այս թուականին նորոգուած է ձեռամբ Խաչատուրի՝ Եւստաթէի անապատի մէջ։ -- Ձեռագիրս այժմ կը պատկանի Տիգրան Թոսմաճեանի։*

Մատեանս կը պարունակէ Ն. Շնորհալւոյ քանի մը չափաբերական գրութիւնները եւ այլն. 1. Բան հաւատոյ. էջ 3ա—48բ։ 2. Յիսուս որդի. էջ 49ա—173բ։ 3. Գրիգորիսի հայոց կաթողիկոսի բանք. Ի յիս գիտութիւն բայց համբաւեալ է. էջ 173բ - 174բ։ 4. Տեառն Ներսեսի... յաղագս երկնի եւ զարդուց նորա. իմ եղական գոլով բնութիւն. էջ 175ա - 184ա։ 5. Նորին. Միշտ էիդ անեղ բնութիւն. էջ 184ա—186բ։ 6. Գլուխ երրորդ. եթէ բնութիւնն անմարմին առանց ենթակայի գոյութիւն ունի թէ ոչ. Գիտել պարտ է նախ եթէ ի քանիս բաժանի բնութիւն. էջ 186բ 189բ։ 7. Նուակատեացս խորհուրդ նախ ի դրախտին աւանդեցաւ մեզ. էջ 189բ – 204ա։ 8. Աղուէսք Եփրեմի խորին. Հայր սուրբ հայր մեծութեան որդւ քո՝ էջ 208ա—213ա։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. էջ 174բ. Աղաչեմք զհանդիպողքդ յայսմ տառի. յիշել ի տր. զմաքրամիտ. եւ զբարեխորհուրդ. սրբասնունդ կրաւնաւորն զաղեքսանն. զստացող սորա. եւ զծնողսն իւր. ընդ նուսին եւ զեղկելի գծողակս. եւ զծնողսն իմ։ եւ խոշորութեանն մի մեղադր զի դեղն վատ էր։

էջ 204բ. (Նօտրգրով, նօտր գրով.) Նորոգեցաւ յՌ որդիս. ը. Թվին ՌԾԸ մերում. Ոս. Հ. Գ. Թէւսին բաստձաթէի յանապատին. ձեռամբ սուտանուն (խաչատուրի) յիշատակ ի դուռն սբ (փակագծով գրուածը եւ հոս ալ երկու բառ քերուած)։

Էջ 213բ. (այլ գրչէ). ատամնացաւի դեղ ասոմ քահան յիշեցէք ի քս ած եւ ած: (այլ գրով) Ամփոփեալ նշան խաչին ի վասպուրական էր ի գեթեղան Նման քարի ի [illegible] լերին (տակը գրչափորձ):

Էջ 49ա. խորանին մէջ գրուած է "Ալէքսան ք. ծ." որ ստացողին անունն է:

# 66.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՌԺԸ = 1469:

*ԹՈՒՂԹՔ 252: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20×15,5×6,5 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 16×5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր, Թանաք՝ սեւ, գլուխներն ու սկզբնատառերը վարդագոյն եւ աղիւսագոյն, տող՝ 21: — ՆԻՒԹ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակէ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չունի: – ՀԱՆԳԱՄԱՆՔ լաւ. կազմը քիչ մը կտրտուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 1ա–բ, 68բ 113բ, 192բ եւ 251բ–252բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐԸ, զարդագրերը եւ չորս ճակատները լաւ են: – ԳՐԻՉ՝ Անանիա աբեղայ. տէր՝ Ստեփանոս քահանայ. տեղ՝ Հերմոնի վանքը. թուական՝ ՌԺԸ = 1469: – Ձեռագիրս այժմ սեփականութիւնն է Միսաք Տէր-Աբրահամեանի:*

**Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ.**
1. **Աւետարան ըստ Մատթէոսի** էջ 2ա—68ա. 2. **Մարկոս.** էջ 69ա—113ա. 3. **Նախադրութիւն Ղուկասու** էջ 113ա. 4. **Ղուկաս** էջ 114ա —191բ. 5. **Նախադրութիւն Յովհաննու** էջ 192ա. 6. **Յովհաննէս** էջ 193ա—249բ:

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ** կը բռնեն էջ 249բ —251ա.

Գլխաւոր յիշատակարան (էջ 249բ –250բ). **Փառք** անեղ բանին Աստուծոյ. Երիցն ի միում կատարեալ առանձնաւորութեամբ. եւ միաւորեալ ըստ աստուածութեան. եռահրաշ. անբաժանելի եւ անքակ տէրութեանն միանական սուրբ երրորդութեան կրկնեալ փառք ի գ–ից բնաւից. յիմանալեաց եւ ի զգալեաց: Գ. ծագրեցեալ վսեմական անբաղդատելի աստուածունակ արփիահրաշ. գերափայլ եւ տիեզերալոյր. չորեքծագեան կտակս որ հանապազ հնչէ ի լսելիս. քն հաւատացեալ ժողովրդեանդ յաղագս փրկութեան աշխարհի: եւ արբուցանէ եւ կերակրէ զջուրն կենդանական. եւ զհացն անմահական: յեդեմեան վտակացն. ընդ քառանկիւն ոլորտս տիեզերաց. ի զուարճութիւն եւ ի պարարումն զուարթութեան. պսակեալ եւ կարաւտեալ ժողովրդեան: Եւ է սա ուրախութիւն տրտմեցելոց: Բժիշկ հիւանդաց: քաւիչ մեղաւորաց լոյս խաւարելոց դաստիարակ մանկանց: սփոփանք երիտասարդաց: հաստատութիւն ծերոց: կենդանութիւն մահացելոց: սրբիչ ամենայն ախտից: սա–սափումն եւ հալածիչ դիւաց գնդին: եւ անմահութիւն կենդանութեան պարգեւեսցէ ամենեցուն որք հաւատով եւ յուսով դիմէին ի սա: եւ կատարեսցէ քն ի ձեռն հրամանիս իւրոյ. ամենեցուն. թէ որ խնդրէ առնու, եւ որ հայցէ գտանէ. եւ որ բախէ բացցի նմա: Եւ այգ գրեցաւ սա ի թուաբերութեանս հայոց: ՌԺԸ: Ի հայրապետութեանս տեառն Զաքարիա կաթողիկոսի: Գրեցաւ սուրբ աւետարանս ի վանքս Հերմոնի ընդ հովանեաւ սուրբ լուսաւորչիս եւ սուրբ յակոբիս եւ սուրբ ստեփանոսիս. եւ սուրբ վարդապետացս որ աստ կան հանգուցեալ. եւ ի յառաջնորդութեան սարգիս րաբունապետիս: Ձեռամբ սուտ յանուն անանիա–'ի գրչի. որ անուամբ միայն խաբեղայ եւ ոչ գործով: [Արդ ամենայն ոք բարոյ ցանկայ վասն սիրոյ արքայութեան. որպէս ասէ առաքեալն. թէ երանի որ ունիցի զաւակ ի սիոնի եւ ընդանի երմ: Ես ստեփանոս քհնյս. ստացայ զսբ աւետարանս. եւ ետու գրել զսայ յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց. հաւրն իմ' ամիրին. եւ մաւր իմ թաճիկին: եւ հաւրեղբաւրն իմ մկրտչի կուսակրաւն աբեղայի. եւ կողակցին իւր մարթին. եւ որդին իւր յակոբ. ալէքսանոս. գրիգոր. արիստակէսն: եւ զդուստրն իմ զմարգարիտն. նուրպարն. եւ զքոյրն իմ նուրմէլիք. զհառ–փսիմէ. եւ զամենայն արեան մերձաւորսն. զկենդանիսն եւ զհանգուցեալսն. եւ Աստուած որ առատն է ի տուրս ողորմութեան. ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելոցս ողորմեսցի իւր միւսանգամ գալստեամբն ամէն եւ եղիցի]: (Առաջին մասը բուն գրչէն, իսկ փակագծեալը ստացողէն):

Էջ 250բ. Դարձեալ յիրեսս անկեալ աղաչեմք զձեզ ով մանկունք սբ եկեղեցոյ որք կարդալով կամ աւրինակելով կամ տեսանելով զվերջն (= զվերջին) ստացող սբ աւետարանիս զաւստայ միրանն որ ստացաւ զսայ յիշատակ իւրն եւ ծընաւղացն իւրոց ուստայ յակոբին եւ կողակցին իւրոյ տայուսին եւ իւր զաւակին ճանփաշին նիկարին քն ած աւրհնէ զուստայ զմիրան եւ զիւր որդին զխուփի այր եւ զշահ կուլ որ եւ զմայրն սոցա զհոռոփսիմայն. յիշեցէք ի քն եւ ած զձեզ յիշէ ամէն.

Էջ 251ա. Դարձեալ վերջին ստացող սբ աւետարանիս ռըստակէս քհէս որ ստացայ. մեռովը եպկէ, զաւետարանս ի հալալ ընչից իմոց, առի, Ժ, Ռ. դահեկ. յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, հօրն իմ, խուպանին, մաւրն իմ, պէկի խաթունին, կողակիցն իմ, տիլպարին, որդոյն իմոյ ղաքարայ նորայ բողբոջ սարկաւագին, ադամին, առհասարակ ամենայն աշխատողացն սոցայ յիշեցէք զտէրն ամի ի թվ. ռժե. ի յառաջնորդութեան սբ աթոռոյս ստաթէի, ըստեփանոս. արհեպիսկոպոսի: ի թագաւորութեան շահ թահմազին. կաթողիկոսութիւն. էջմիածնին տր միքայէլին:

## 67.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**ՌՃԺԲ = 1663**

*ԹՈՒՂԹՔ՝ 153: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×11×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, սկզբնատողերը, վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր, վարդագոյն, լեղակ. տող՝ 25, իսկ սկսեալ 122 էջէն 17: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ հնցած, աղտոտած եւ պակասներով: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ գրեթէ չկայ, որովհետեւ եղածները նոր գրութիւններով եւ բազմաթիւ գրչափորձերով լցուած են: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ ու զարդագրեր խիստ քիչ եւ տգեղ: – ԳՐԻՉ՝ տէր եւ տեղ անյայտ: – ԹՈՒԱԿԱՆ՝ ՌՃԺԲ = 1663 թուէն յետոյ՝ որովհետեւ էջ 116ա կը դրուի այս թուականին օրացոյցը, եւ ՌՃԺԸ = 1669 թուէն առաջ որովհետեւ էջ 93բ այս թուէն յիշատակութիւն մը կայ. բայց հաւանաբար 1663 թուէն է, ենթադրելով թէ օրացոյցը ներկայ տարւոյն համար ըլլալ պէտք էր: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Միսաք Տէր-Աբրահամեանի:*

**Մատեանս է ժողովածու, որ կը պարունակէ. 1. Ժամագիրք. էջ 1ա – 115բ. 2. Տօմար. էջ 116ա – 118բ. 3. Ինքնատիպ արարեալ մարմնայ-խաղաց փորձիւ. Թէ գաղտն խաղայ, շահի եւ մեծութեան նշան է. էջ 122ա – 133ա (մարմնի զանազան մասերու խաղալու նշանակութիւնը). 4. Առաջնաճաշակ պտղուն մահուանն առաջին մարդուն (տաղ այլ գրչէ). էջ 133ա – բ. 5. Ամ-սուան 30 օրերուն բարի եւ չար լինելը (սկիզբէն մէկ թերթ կտրուած հանուած). էջ 134ա – 139ա. 6. Երազահան (այբուբենական կարգով). էջ 139ա – 152ա: Ձեռագիրս յայտնապէս երկու տարբեր գրքերու միացումն է. առաջինը կը պարունակէ թիւ 1 – 2, այն է էջ 1—121, իսկ երկրորդը՝ մնացեալը, այն է թիւ 3—6, կամ էջ 122—153:**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ** 10ա. *ես բենիամէն (իսկ էջ 119բ կ'աւելցնէ) գրեցի ամէն ծառայ ամէն:*

**Էջ** 20բ. *Հայոց թվինն ռճժդ առաքելի որդի մարգարիս բաֆողէ ամիսին ժը ծեռմեռնայմուան: (Անդ). Մարգարի որդի եղեայզարի ժամայ գիրքն է ի նուաստ քհ ծառայ որ այս գիրքս ով օր կանի կարնայ Ա Բ հոր մեղայ ասի ԱԲ ողջամ մարամ ասի մեղայոր եմ ես համայ ասի որ չի ասի եւ իմ հաւուր գատաս(տ)անին մեղքս վէզըն համայ ասի յաւ այ (նոյնը էջ 121բ):*

**Էջ** 29բ. *Հայոց թվինն ռճխաֆ մարգարի ժամայգիրք. (անդ). Ես կրէ էսիկ մսի ս[ա]յինայ Ա ման խաշիկի Ա ման Ա ման (երկիցս) կա կակօն Ա ման մուվել:*

**Էջ** 35բ. *անուն այ ած գթածին եւ ողորմածին:*

**Էջ** 40բ. *խամղարչի կոստա կիրգոր մելքոնի որդի եղիայզարի պապ:*

**Էջ** 45ա. *անանայ մելքոնի որդի մուրատի որդի կէգոր:*

**Էջ** 69ա. *ի նվաստ քհ ծառայ եղազարի էս....:*

**Էջ** 72բ. *էսիկ միսիային այ:*

**Էջ** 86բ. *ի նվաստ քհ ծառայ մարգարէս շատ պարով Ռ բարի պար (իսկ էջ 91ա կը գրուի նոյնը եւ կը շարունակուի) պըն ալահուն:*

**Էջ** 9?բ. *Ես նուրիջանի որդի կարապետ (որ էս?) գիրըս ասեցիմ գլա...ոխ ասեցի Բռայ Ա Գ հոր մեղայ ասեցի Ա Գ ողջում մարամ ասեցի լստուր (= սորա) գրողին ասեցի կամ ժամայգիրի տրօչըն ասեցի հայոց թվի ռճժը յունիսի Ի Թ օրըն Ե շաբաթ գէրեցի ամէն:*

**Էջ** 103բ. *մարգարի որդի եղազարի ժամայկէքն է ի նուաստ քհ ծառայ (նոյնը եւ էջ 119ա, 121ա, 124բ եւն):*

**Էջ** 116ա. *ես բէնիեաթս գէրեցի ծառայ աստծոյ ամէն թվին ռճկթ. ով որ կարդայ ասի շատ ապրի ողորմի յիսուս իւր ծընօղացըն Ամէն (նոյնը էջ 131բ):*

**Էջ** 120ա. *ծառայ թաթոս. թվն ռճիբ դէկտեմբերի Դ օր եշաֆարի որ կամրքըն այ կարկեցակ (= կարգուեցաք) ի հայոց հայրապետութնք. տր ակոբայ ի զգլբաշին թաքաւորութիւն շահ սլէմանի համայ թաքաւորութիւն սըլթան համադին: ի մնկովի թաքաւորըթանք մախայիլէվին ծար մի քիթայ. թվ ռճի զիմ ծնունդ թվին ռղբ ին. ինչ որ, տէրն պապ ս գրիգորն? գրած էր: ած ողորմի հոգուն:*

**Էջ** 120բ. *ես բենամի որդի: բենիեայթս .:. գիրեցի :. ծառայ :.. աստծոյ ամէն :. այս էն վախտին գէրեցավ հօրըս :. սուքըն եկաւ :. թվին ռճկթ:*

**Էջ** 121ա. *յիշատակըս այտիլի ոընի թաթոսին: (անդ.) ես տր գրիգոր գրեց ծառայ աստուծո թուին ռճիդ էի ես օրհուեցի. ձեռամբ ոհան վարդապետին ած իւրեան կեանք տայ. նորայ օրհնութիւնն մեզ վերայ պահի լինի ամէն:*

**Էջ** 12?բ. *Ես կրեցի եղազարի ոընի մարգարայ կրեց ամէն (գրեթէ նոյնը էջ 147ա):*

**Էջ** 125ա. *Հայոց թվին ռճկիա*

**Էջ** 152ա. *ես ծառայ ալմաստ գիրս գրեցաւ թվ ռճիդ:*

*(Անդ). քհս ծառայ պետրոս:*

**Էջ** 152բ. *Աւգնեայ մեզ մարդասէր տր հոգի եւ հաս ի թիկունս տկարութեան մերում. գրիծ փորձիլ այս է. Զգործս ձեռաց իմոց տր ած իմ առաջնորդեա. վայ է. ախմար գրչիս. 2. ես անարժան եւ անպիտան մեղաւոր ծառայ գասպարս գրեցի ի թաման քաղաքն չէրքէզնոց. թվ. ռճիբ. 3. ով եղբայրք եթէ հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ըզմեղաւոր եւ սուտանուն գասպարս եւ ած ըզձեզ յիշէ ի միւսանգամ իւր գալըստեանն ամէն:*

**Էջ** 153ա. *ես տէր գրիքորի որդի պետրոս ես գրեցի օհնեա տէր: 2. ես գրեցի մարտիրոս. 3. ես գրեցի տէր բարսեղի որդի բենիամէն ծառայ այ. 4. ես գրեցի*

մարտիրոս ծառայ ած բաւ է. թվն. ռճիէ. տարին կոյսն. նոյեմբերի ամսուն ժդ օրն ե շբթի:

Էջ 153բ. թվին ռճիէ. ես մինաս ակընցի ի գիւղէն կամարկապցի եկի շնորհիւն ած հետ մեր հոգեւոր հաւրն ղազար վարդապետ որ էր նէ–րակ Սբ էջ–միածնայ. ինքն գնաց կարասուն. ես մեղուցեալ մինաս երէցս եկի ի կէաչ. գաման եւ թէմրուկ. եւ կացի ձմեռն բոլոր. ի գամսն:

Այս բոլորը օտար գրիչներէ են– [illegible] շատ ետեւ գրութեամբ:

## 68.

## ԱՏԵՆԻ ՍԱՂՄՈՍ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 229. – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×7×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, միասիւն: – ԳԻՐ՝ նոտր. Թանաք՝ սեւ, սկզբնատառերը, վերնագրերը եւ սկզբնատողերն աղիւսագոյն կամ վարդագոյն. տող՝ 20: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ տախտակ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ մաքուր, բայց սկիզբէն ու մէջերէն թերթեր կորուած նանուած. կազմը քրքրուած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ, զարդագրեր հին քիչ եւ անարուեստ: – ԳՐԻՉ, տէր, տեղ եւ թուական՝ անծանօթ. որովհետեւ տող մ'անգամ յիշատակութիւն չկայ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Միսաք Տէր-Աբրահամեանի:*

## 69.

## ՃԱՇՈՑ

(1712էն առաջ։)

*ԹՈՒՂԹՔ 292 (Նշանակուած 288, բայց 5–7 եւ 183 bis): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 32×22×6 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր, երկսիւն, իւրաքանչիւրը 23×6,5 սմ.: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն եւ սկզբնատառերը աղեւսագոյն, տեղ տեղ ալ կանաչախառն կապոյտ եւ սեւախառն կարմիր: Տող՝ 31–33: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի. մնացած է միայն վերջին կողը, որ է կոտրտած, կաշեպատ փայտ: – ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ սկիզբէն, վերջէն եւ մէջերէն թերթեր պակաս. բայց գրութիւնը անաղարտ է: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 233բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՆԵՐՆ ու զարդագրերը՝ միջակ գործ: — ԳՐԻՉ՝ Առիստակէս քահանայ. տէր՝ Մարգարէ երէց. տեղ եւ թուական՝ անյայտ. Հնագոյն թուականը որ կը յիշուի յետին ստացողներէն՝ ՌՃԿԱ = 1712 թիւն է: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Միսաք Տէր-Աբրահամեանի:*

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 46. Քահանայք եւ ժողովուրդք յորժամ լսէք զաւետարանս, լի բերանով Ա՛ծ ողորմի ասացէք ծնաւղաց իմոց. եւ մեղապարտ գրչիս. առիստակէս քահանայիս (այս երկու բառերը քերուած եւ հազիւ թէ գուշակելի). յամենայն ժամ վա՛յ ինձ:

Էջ 172բ. Ջնորգեւեալս եւ զգածեալս. եւ զպարտաւեալս. զախմարս եւ զոչխմարս. ըզմեղօք լցեալս (երկու բառ բոլորովին քերուած. պէտք է հասկնալ "արիստակէս քահանայս") յիշեցէք ի քն. եւ ողորմի ասացէք ինձ եւ ծընաւղաց իմոց. եւ ած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն ամէն:

Էջ 172բ–173ա (օտար գրչէ). դարձեալ յիշեցէք ի քն եւ ած ողորմի ասացէք Նախչուանցի չիլինի հօրն խիմշուն եւ մօրն եւ ամենայն արեան առու մերձաւորաց իւրոց որ էառ զգիրքս ի ձեռաց այլազգեաց եւ ետ յիշատակ ի դուռն Սբ Նախավկային որք հանդիպիք հատուցէք աղօթիւք առ ած զի վարձն ի նմանէ առցէ Ռ ապատիկ եւ բիւրապատիկ ասա եւ ի հանդերձեալն ամէն (ամբողջը գրուած երկիցս):

Էջ 187ա. Ես առաքելս գեցի տր ղիլիպոսի որդի առաքելէն կլէնտէրէ (??) օվաննէսէն. գիւղըն մարինոսէն. խոսէրովէն տառըն:

Էջ 200ա 1832 Ներքոյ գրեալս ած…:

Էջ 204բ–205ա. Ես եաւրուն որդի մաղտիսի պետրոսն վախն յարէ թուխունուց Սբ սար-խաին. Ա սիռշար (շուրջառ). Ե շապիք: Ա գոտի. Ա աւետարան. Ա խուրուգայ. դեռն: Ա աղայաւփի. Ա մաշոց (= մաշտոց). Բ խաչի Բ շամոան: Ա ալթայ. Ա լական Ա խունայդուպ. պակղաղարի որդի մեղաւոր տէրիսուն (տիրացուն) օվանէսն գէրեցի. թվ. ռճկա: Ա շրակնոց. Ա շուշայ միռունաման. Ա շատոտու (?):

Էջ 214բ. Մեծայաղնիւ պրն. պաղտասար յակօբեան.

Էջ 284բ (բուն գրչէն). Արդ աղաչեմ զձեզ եղբարք յիշեցէք յաղօթս ձեր զստացող գրոցս. զմարգարէ երէց. եւ զայլ:

## 70.

## ԻԵՏԱՐԱՆ

**ՊԲ = 1453:**

*ԹՈՒՂԹՔ 328: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×14×6 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն, իւրաքանչիւրը 13,5×4 սմ.: — ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք սեւ, սկզբնատողերն եւ սկզբնատառերը կարմիր, վարդագոյն, կապտականաչ. տող՝ 21: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԿԱԶՄ՝ չունի: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գէշ, թուղթերը հնացած, սկիզբէն, վերջէն ու մէջերէն պակաս ու թափթփած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 99ա-բ, 161ա—բ, 262բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ եւն անարուեստ. պատկերներ չկան: – ԳՐԻՉ եւ տէր՝ Յակոբ քահանայ. տեղ՝ անծանօթ. Թուական՝ ՊԲ = 1453: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Յովսէփ Մովսիսեանի:*

**Մատեանս է Աւետարան, որ կը պարունակէ. էջ 1ա – 4բ՝ կանոններու խորաններն ու անոնց բացատրութիւնը. էջ 5ա – 97ա՝ Մատթէոս. էջ 97ա—98բ՝ Նախադրութիւն եւ ցանկ Մարկոսի. էջ 100ա—158ա՝ Մարկոս, էջ 158ա—160բ՝ Նախադրութիւն եւ ցանկ Ղուկասու: էջ 162ա – 259բ՝ Ղուկաս. էջ 260բ—261բ՝ Նախադրութիւն եւ ցանկ Յովհաննու. էջ 263ա –328բ՝ Յովհաննէս (վերջէն պակաս):**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. էջ 7բ. Զտարտամս ի բարիս, եւ զարատս ի չարիս, զմեղապարտ ծառայս. զյակոբ սուտանուն քահանայ, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, միով տէր ողորմայիւ, ով դասք լուսերամից. որ հանդիպիք, նք աւետարանիս: Ի թուականութեանս հայկազեան տամարիս. պՃ. յամսեանն յունիս. որ աւր էր. Ժ՟Ե. սկսայ գրել զսբ աւետարանս:**

**Էջ 9՟ա. Զմեղապարտ եւ զանարժան գրիչս զյակոբ, քհ՟, յիշեցէք ի տէր. միով տէր ողորմայիւ, եւ դուք յիշեալ լիջիք առաջի գենլոյն յի՟:**

**Անգ. Մեղայ տեառն Աստուծոյ յամենայն մտաց իմոց:**

**Էջ 98բ. Զեղկելի եւ զմեղապարտ գրիչ զյակոբ յիշեցէք ի տէր:**

**Էջ 160բ. Զյառածեալս մեղաւք զսուտանուն քահանայ, զյակոբ, որ փափաքանաւք սրտիս գրեցի զսբ աւետարանս ի ծերութեան ժամանակս. զի փատեալ էր աչքս. եղի աչք (= ակնոց) եւ բազում աշխատանաւք գրեցի վասն փափաքանաց սրտիս, աղաչեմ յիշել ի տէր սրտի մտաւք:**

**Էջ 259բ. Աղաչեմ յիշել ի տէր զզաւակն իմ զաւրէփս քահանայ եւ զմարտիրոսն, եւ զամուսինն զթամ տիկին, եւ զհ... մարեմ տիկին, եւ զայլ ամենայն ազգատոհմն:**

**Էջ 260ա. Ես ամենամեղս, եւ բազում քանարաց պարտականս, յակոբ գրիչս, սուտանուն քահանայ յերես անկեալ աղաչեմ զամենեսեան: Ով պատուական դասք լուսերամից որք հանդիպիք այսմ աստուածազարդ մատենիս: Եղեմաբուխ գետոյս, կամ կարդալով կամ գաղափարելով, սրտի մտաւք խնդրեցէք զթողութիւն յանցանաց իմոց, եւ իմոցն ամէն: Եւ ինքն որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ եւ մեզ ողորմեսցի, յաւտեան աշխարհի. եւ անվերջ: Այլ կրկին աղաչեմ խոնարհութեամբ եւ սխալմանց մի մեղադրել, զի բազում ժամանակ էր որ էր բաց էի թողել զգրելն, եւ վասն տգիտութեան եւ ձեռս բրտացեալ... աչք դրի ու աշխատանաւք գրեցի զի էի վաթսուն ամաց (թուղթին եզերքէն պատռած ըլլալով՝ պակաս մասերը դրի ենթադրութեամբ եւ նօտրագիր):**

**Էջ 26 ա (օտար գրչէ). Քն՟ ած՟ յորժամ գաս ի դատել: Ամ՟ արարածս. եւ յանուանէ կոչես. զարդարս. թէ եկայք առ իս ամ՟ աշխատեալ. եւ ես հանգուցից զձեզ: Հանգոյ ընդ նոսա. զբուէս բոլէն. եւ զկին իւր. զթիլիփաշէն: Եւ յանուանէ կոչէ. զպարոն ճապուկն. եւ կին իւր. զգուլըստանն թէ եկայք մտէք յուրախութիւն տեառն. ամէն: Դարձեալ յիշեցէք ի քն՟ զեղբայր բոլին. զհէրապետն. որ եդին նք աւետարանս. ի դուռն նք ստեփանոսին. ի գիւղս. նորշէն. եւ մի հեռացնեն սա ի դրանէ սորա. այլ մնա անջինջ յիշատակ ի դուռս նորա:**

## 71.

## ՄԱՇՏՈՑ

**ՊԺԳ = 1364:**

*ԹՈՒՂԹՔ 154: – ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 16×12×4 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր. տող 17: – ՆԻՒԹ՝ թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ վերջէն մէկ թերթ. միջին միարոպեան երկաթագրով հին աւետարանի մը մնացորդ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բաւական մաքուր. տեղ տեղ թերթ է ինկած: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ էջ 154բ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, զարդագիր եւն սակաւաթիւ եւ միջակ արուեստով. — ԳՐԻՉ՝ Ստեփանոս քահանայ, տէր՝ անանուն քահանայ մը. տեղ՝ Սմիթ. Թուական ՊԺԳ = 1364: – Ձեռագիրս այժմ կը պատկանի ամերիկացի միսիոնար Վիլսոնի:*

**Մատեանս է Փոքր Մաշտոց. սկիզբէն թերթ ինկած ըլլալով՝ չունի ցանկ. բնագրին մէջ գանձեր չկան:**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 95բ. Զմեղաւք ի լիս զտառապեալ եւ զանարժան փցուն գրիչ, աղաչեմ յիշել ի տր. զստեփաննոս. եւ ձն ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն:

Գ.լխ——ր ,ե,——լ—րան. Էջ 153բ. Փառք ճր երրորդութեն հաւր եւ որդւոյ եւ ճր հոգոյն: Գրեցաւ մաշտոցս ձեռամբ յոգնամեղ եւ անարհեստ գրչի ստեփաննոս սուտանուն քշհի. ի թվիս. ՊԺԳ.: ի քաղաքիս ամիթ ընդ հովանեաւ ճր ծածնի. ի խնդրոյ սրբասնեալ քշհին (անունը բաց թողած). յիշատակ հոգւոյ իւրոյ. որք աւկտիք ի սմանէ յիշեսջիք յաղաւթս. եւ ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս ողորմեսցի քն որդին (նօտրագիր կը շարունակուի) ձյ յաւիտեանս ամէն. եւ որ զամէնն ասէ ամէն:

Էջ 154ա. (վերջի նօտրագիր ձեռքով) Արդ վերըստին նորոգեցաւ գիրքս որ կոչի մաշտոց եւ կազմեցաւ ձեռամբ մեղսամած եւ անարժան մարտիրոս երիցու որ զանունս իմ ունիմ եւ զգործս ոչ. վայ զիս Ռ բերան. թվին. ՌՃԵ:

Գձլ ձծ ողորմի տէր եղիային զոր ետ զսա՛ նորոգել յիշատակ իւր:

Էջ 154բ. էշատակ է տր սուքիաս ոլ—ե:

# 72.

## ԱՂՕԹԱԳԻՐՔ

?

*ԹՈՒՂԹՔ՝ 147: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 10×7,5×3 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ, սկզբնատառերը կապոյտ, վերնագրերը կարմիր. տող՝ 11: – ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ, վրան քաշուած կանաչ Թուղթ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ: – ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ զոհացուցիչ: – ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ ընդ ամէնը 23 էջ, մեծ մասը պատկերներու ետեւի երեսը: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ ու զարդագրեր չկան. գիրքը կը զարդարեն 20 մեծադիր պատկերներ. որոնք կտրուած հանուած են լատինական կրօնական տպագրեալ գրքերէ (միայն մէկը հին ձեռագիր աւետարանէ մը) եւ ծայրատելով ներմուծուած են հոս: – ԳՐԻՉ՝ Մելքոն. տէր, տեղ եւ Թուական անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Նիկոլա Տէր-Օհանեանի:*

**Մատեանս է Աղօթագիրք, որ կը պարունակէ Պատարագի մատուցման ժամանակ հաւատացեալներու բսելիք աղօթքներր, սուրբերուն յանձնարարութեան, ճանապարհի, խոստովանութեան եւն աղօթքներ, վերջապէս Ընկալ քաղցրութեամբ, Որդի Աստուծոյ, Հաւատով խոստովանիմ: Սկսեալ էջ 130ա—146բ "Եղանակութիւնք զգեստուց եւ արարողութեանց պատարագի," ուր կը բացատրուի պատարագի զգեստներու եւ զանազան արարողութեանց նշանակութիւնը (վերջէն պակաս): Ձեռագրիս այս մասը թէեւ նոյն գրչէն, բայց նախորդէն տարբեր է եւ յետոյ կցուած է ձեռագրին՝ թղթերուն լուսանցքները ամբողջապէս կտրելով:**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 147ա յետին գրչէ. "որ կազմեաց թիւն ռմղ.":

Գրիչը յիշուած է աղօթքներու մէջ շատ անգամ, ինչ. օրինակ էջ 80, 124, 133 եւն. վերջին ստացող մը Տէր Օհան՝ բոլոր այս "Մելքում կամ Մելքոն" ձեւերը ջնջած եւ վրան իր անունն է աւելցուցած:

# 73.

## ԵՐԱԶԱՀԱՆ ՆԱԵՒ ՏՆՕՐԻՆԱԿԱՆՔ

ՌՃԻԸ = 1679:

*ԹՈՒՂԹՔ՝ 87: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 15×10×1 սմ.: – ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: – ԳԻՐ՝ նօտր. Թանաք՝ սեւ, վերնագրերը միայն կարմիր. տող 15: — ՆԻՒԹ՝ Թուղթ: – ԿԱԶՄ՝ չունի: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ չկայ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ եւ մաքուր: — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: – ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ, պատկեր կամ զարդագիր չունի: – ԳՐԻՉ՝ Յովհաննէս. Թուական ՌՃԻԸ = 1679. տէր եւ տեղ անծանօթ: – Ձեռագիրս այժմ կը պատկանի Ղազար Մելիք-Բաբաջանեանի:*

**Մատեանս է 1. "Երազահան զոր արարեալ է Դանիէլ մարգարէն" էջ 1ա—63ա: 2. Այս են ամենայն տնօրինականքն քի ոյ մերոյ, 'ի որ ածբնակ մայրաքաղաքն յէմ. 'ի մէջս եւ յարտաքոյ, որք կան հաւաքեալ աստ. 'ի թողութիւն մեղաց մերոց. հաւատով երկրպագողաց, ամենայն հաւատացելոց. էջ 63բ—83ա: 3. Տաղ ասացեալ յակոբ քահանայէ ի վերայ սբ քաղաքին Երուսաղէմի. Յաստուծոյ շինեալ քաղաք պատուական. էջ 83ա 86բ:**

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 4ա. 1669 յունվարի 1ին պատմայիրի թիւն է.

Էջ 17բ. պ'ւլպիւլըն գարրիէլ հրեշտակապետն է:

Էջ 18ա. ||| ||| ||| | |||| (այս ծածկագրութիւնը պիտի կարդացուի Ստեաս):

Էջ 18բ. յիշատակ է այս գիրս:

Էջ 32ա, 33բ, 38ա, 40բ եւ այլուր "տէր զաքարին է այս գիրքս":

Էջ 41բ. Ժ՟Ն չաշխուր Ե գոլամայ Ժ զաֆրան Բ բինիշ Բ չախչուր Ա մարգանա անթարի Ա զանանա զաֆրան Ա անգարի։

Էջ 57բ. սաֆար նավի գնայ Ա շահ խաչմայ զազրին ես մեղայոյն սէթաղի գրեց էս շատա մնայ։

Էջ 82բ. գանձատ ունիմ առել քեզ թաւաւոր իմ յն քրիստոս. ոսկի վարամ կամ թէ զարամ։

Էջ 86բ. Ա մաշաոց Ա աւետարն Ա կոնդակարան Ա ժմնիք Ա յն որդի Բ շարական Ա սաղմոս ձաղիկ զօրուց (= զօրութեանց) Ա աղէկսագիրք Ա գրօմի մաշտոց Ա քարոզգիրք Ա տօնացոյց Ա տաղարան Ա հարանց վարք Ա գալստեան գիրք Ա մասունքի զութի մոհրաց Ա տօնացոյց ճաշու գիրք ԺԷ։

Գլխագիր յիշատակարան. Էջ 87ա. Աւարտեցաւ երազահանս եւ որ եմք տնօրինականքս ՌՃԻԸ. մարտ ամսոյ ի տան եւ հինգ. Ով ընթերցողք եւ օրինակօղք սորա. յիշեցէք զգրօղ սորա տառապեալ յովհաննէսս. հանգերձ հայր մեղայիւ. եւ մեծ ողորմի ասացէք. եւ մեծն մի որ առատն է ի տուրս բարեաց, տացէ ձեզ յիշողացդ զերկնից արքայութիւնն որ է մեհեալ անզրաւ յաւիտենիւ. ամէն: Հայր մեր որ յեր։

Էջ 87բ. Թվին ՌՃԿԱ ամին յուլիսի ԻԷ որ էր վարդեվառի առաւօտուն երկրեկն աշխարս եկաւ. Թվին ՌՃՀԲ փետրվարի ԺԲ օր երեքշբթի. առաւօտու փանոս աշխար եկաւ մեծ երկար ումր տայ ամեն։

# 74.

## ԱՆԱՍՆԱԲՈՒԺՈՒԹԻՒՆ

1295—98։

*ԹՈՒՂԹՔ՝ 184: — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 26×18×5 սմ.: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն, խիստ գեղեցիկ եւ մաքուր: — ԳԻՐ՝ խոշոր բոլորգիր, շատ մաքուր գրութեամբ, թանաք՝ սեւ, վերնագրերը կարմիր. տող՝ 17-18: — ՆԻՒԹ՝ հաստ եւ ողորկ ընտիր թուղթ: — ԿԱԶՄ՝ կաշեպատ փայտէ: — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ՝ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ՝ մացորդ հին կտակարանի, երկաթագիր գրութեամբ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ լաւ: — ԴԱՑԱՐԿ ԹՈՒՂԹ՝ չկայ: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր՝ չկայ. պատկերներու մասին տես տակը: — ԳՐԻՉ՝ Թորոս քահանայ. տէր՝ Սմբատ Գ. Թագաւոր Կիլիկիոյ, այն է Հեթում Բ.ի եղբայրը, որ օրինաւոր թագաւորին բացակայութեան ժամանակ խլեց գահը եւ մի քանի տարի զահակալեց, մինչեւ որ Հեթում դառնալով Պոլսէն ետ առաւ իր աթոռը. տեղ՝ մայրաքաղաքն Սիս. թուականը պիտի ըլլայ 1295-98, որովհետեւ այս է Սմբատ Գ.ի թագաւորութեան թուականը: — Ձեռագիրս այժմ կը պատկանի դերձակ Շիրմազանի:*

Նիւթով եւ գրութեամբ պատուական այս ձեռագիրը, որ հայկական թագաւորական գրադարանին զարդերէն մէկը կը կազմէր, յատուկ խորագիր մը չունի, բայց կրնանք կոչել ըստ նիւթին Անասնաբուժութիւն կամ ինչպէս յիշատակարանին մէջ կ'ըսուի "բժշկարան ձիոյ եւ ռահուաարակ գրաստնոյ", Գրքիս հեղինակներն են սսորի ֆարած բժիշկը եւ կիլիկեցի Թորոս քահանան։ Ֆարաճ ասորի բժիշկը երկար տարիներ Պաղտատ մնացած ըլլալով՝ հմուտ էր արաբերէնի եւ արաբական բժշկութեան. երբ Կիլիկիա եկաւ, Սմբատ Գ. Թագաւորը գտնելով զինքը՝ հրամայեց կազմել ձիաբուժարմանական գիրք մը։ Ասորի բժիշկը, որ կ'երեւայ թէ հայերէնի մէջ յաջողակ չէր, մեծ աղաչանքով իրեն օգնութեան կանչեց կիլիկեցի Թորոս քահանան, որ թէ արաբերէնի տեղեակ էր եւ թէ հայերէն գրչութեան մէջ յոյժ յաջողակ։ Բժիշկ Ֆարաճ եւ Թորոս քահանայ միանալով իրարու հետ, պղպտեցին Ճընոյ, Ապի-Եուսուֆի, Ռաշիտի եւ այլ բազմաթիւ Հնդիկ ու Պաղտատցի նշանաւոր բժիշկներու գրուածները եւ կազմեցին վերոյիշեալ գիրքը։ Գիրքս 182 հատուածներու տակ կու տայ լիակատար ու մանրամասն տեղեկութիւններ՝ օրինակ ձի ճանչնալու միջոցները, անոնց գոյներու զանազանութիւնը, տեսակները, ձիերու հիւանդութիւնները եւ անոնց դարմանները, ձիերու զանազան մոլութիւններն ու պակասութիւնները եւ զանոնք վերջացնելու միջոցները եւն եւն։ Այն պատուական եւ խիստ հետաքրքիր գրուածքը ընտիր գանձարան մ'է հայերէն անասնաբուծական եւ անասնաբուժական բառերու, այնպէս որ գրքիս լիակատար ուսումնասիրութիւնը պիտի տայ թէ ընդարձակ տեղեկութիւններ գիտութեան մասին եւ թէ բազմաթիւ հայերէն նոր բառեր մեր բառարանի համար։

Էջ 33բ կայ ձիու մեծադիր պատկեր մը՝ որուն շուրջը գրուած են ձիու մարմնոյն վերաբերեալ բազմաթիւ բառեր. էջ 37բ—39բ կայ 108 պատկեր "յաղագս աղերոյն" (թրք. եալէր (թամբ), որ զանազան թամբերու ձեւերը կը ներկայացնէ։

Ձեռագիրս կը պարունակէ. էջ 1ա—6ա ցանկ, էջ 6բ "Ճնայ իմաստասէրո"ին պատկերը, որ նշանաւոր բժիշկ կամ անասնաբոյժ էր. էջ 7ա—183բ բուն գիրքն է, որուն կը յաջորդէ յիշատակարանը։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Էջ 7ա. երկու կնիք որոնց մակագրութիւնն է "Եփրեմ վարդապետ 1222" (հմմ 1773 թիւ)։

Էջ 19ա. ես տր Թաթէոսի որդի յօհնէսս գրեցի... (բառ մը անընթեռնլի ՌՃԽԴ օվգան Ի նուռն ամ։

Էջ 21ա. "գիր աղօ անից"ի տեղ եւ 22 տառէ բաղկացած գրութիւն մը որ կեղծ ըլլալու է, որովհետեւ

մեծագոյն մասը կը բաղկանայ 3-ի ձեւով տառէ մը (16 հատ իրար ետեւէ)։

Էջ 94ա. գոռքին վարդան գատու օհաննէս (իրր գրչափորձ)։

Այս բոլորը յետին գրիչներէ են։

Էջ 183բ—184բ (Գլխաւոր յիշատակարան). Գիրքս այս բժշկարան է ձիոյ եւ առհասարակ գրաստնոյ։ Ցաղագս դեղոց եւ նշանաց որ ճանչենան զաղէկն ու պիղծն։ փառք պատիւ եւ երկրպագութիւն հաւր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից Ամէն։ Արդ գրեցաւ բժշկարանս ձիոյ. եւ առհասարակ գրաստնոյ, որ ճանչենան զաղէկն եւ զպիղծն, հրանաւ (= հրամանաւ) քնայաէր արքային հայոց ամբաստայ իմաստնոյ եւ մտախոհի, եւ հանճարաշատին, եւ բարեպաշտի. որոյ աղն քի ծյ միշտ հովանացի նորա փառաց ի փառս բարձրանալ նմայ, երկար կենաւք ամէն։ Եւ ի հայրապետութեան տն Գրիգորիսի (այն է Գրիգոր Ե. անաւարզեցի, 1293—1307). Թարգմանեցաւ գիրքս այս ի յարապ գրէ, ի հայ բառ. որ է բժշկարան ձիոյ եւ այլ հասարակ գրաստնոյ. ի բազում իմաստասիրաց. եւ փիլիսոփայից, ճրնաց, եւ ապիուսւֆին, եւ բռայշիտայ, եւ այլ բազում հընդկաց. եւ պաղտըտայ իմաստասիրաց ասացեալ. որոց զանունսն չենք աստ գրել։ Եւ արդ ես նուաստ բժիշկս, փարսիհ հրամանաւ տն իմոյ ՚նր արքային. յանձն առի բազում աշխատանօք. եւ թարգմանեցի զսա. զորդ, եւ յստակ բառիւ. զի յոյժ հմուտ էի, եւ վարժեալ յարուեստ բժշկու՛ե, ի մեծ պաղտատ. բազում ամաւք. եւ եմ ազգաւ եւ հաւատով ասորի։ ամենապաշտութեամբ կատարեալ ուղղափառ. եւ աշխատեցայ թարգմանել զբժշկական եւ զիմաստասիրական գիրքս ի մայրաքաղաքս Սիս։ Արդ ես Թորոս տրուպ քահանայ, տեսեալ զիս փարած բժիշկս այս. եւ յոյժ աղաչեաց զիս. եւ շատ հարկեաց. եւ բազում խոստմունս խոստացաւ ինձ. եւ բազում երդմունս երդուեալ ինձ. կատարեալ ի ՚նր եւ յընտրեալ արքայէն։ Եւ ես յորժամ լուայ զփափաքումն ՚նր արքային։ Վասն սորին ես ապա յանձն առի. եւ գրեցի ի սոսն, եւ ապա վերստին նորոգեցի, եւ գրեցի մեծ գիր. ի յարապ գրէ ի հայ բառ. զորդ. եւ յստակ (յաջորդ թերթը ինկած է. վերջին նօտրագիր բառը թուի նշանակել սեւագրութիւն, իբր ի սեւսն, որմէ յետոյ նորէն մաքուրը գրեր է Թծ ֆէր)։

## 75

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

1817։

*ԹՈՒՂԹՔ՝ 260, էջք գրուած եւ նշանակուած 1–499։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,5×15,5×3 սմ.։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ մաքուր միասիւն. — ԳԻՐ՝ նօտր, սկզբնատողերը բոլորգիր. Թանաք՝ սեւ, վերնագրերը՝ վարդագոյն. տող՝ 28։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ — ԿԱԶՄ՝ կաշեպատ խաւաքարտէ։ — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿ չկայ։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ լաւ։ — ԴԱՏԱՐԿ ԹՈՒՂԹՔ սկիզբէն եւ վերջէն էջ 20՝ իբր պահպանակ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ եւ զարդագիր՝ քիչ եւ նոր ոճով։ — ԳՐԻՉ՝ Թովմաս Սարկաւագ. ծաղկող՝ Անդրէաս վարդապետ. տէր՝ Պօղոս վարդապետ Արեւելցի, որ անշուշտ յայտնի Ղարապաղցի Պօղոս վարդապետն է, ուսուցիչ Աբովեանի եւ Նազարեանի, տեղ՝ Պոլիս. Թուական՝ 1817։ — Ձեռագիրս այժմ կը պատկանի Տիգրան Մելիք-Զոհրաբեանի՝ որ նոյն Պօղոս վարդապետի ազգականներէն է։*

Մատեանս է. «Գիրք քարոզից արարեալ հեղինակութեամբ սուրբ գրոց եւ եկեղեցական մատենից. ի պետրոս վարդապետէ նախիջեւանցւոյ ադամալեան կոչեցեալ արքեպիսկոպոսէ ի փառս Այ եւ յօգուտ բանաւէր քարոզչաց ազգիս։ Ի հայրապետութեան սրբոյ էջմիածնի տեառն Սիմէօնի յոգնահանճար կաթուղիկոսի ամենայն Հայոց. յամի տեառն 1771։ Իսկ այժմ յընտիր օրինակէ գաղափարեալ ձեռամբ Թումաս սարկաւագի պօլսեցւոյ, եւ ծաղկագրեցաւ ձեռամբ Անդրէաս վարդապետ հոգեկիր եւ վայելչաբան եղբօր սիրելւոյ մերոյ (որք վառեալ գոլով մեր աննուաճելի սիրովն ոյ՝ ըստ արհատտելի իբր մի հոգի յերկուս մարմինս տաղաւարեալ, եւ մանաւանդ հետեւելով փրկչական երանելի ձայնին՝ որ ասէ թէ անաւ ծանիցեն մարդիկ թէ աշակերտ իմ էք եթէ սիրիցէք զմիմեանս) ի վայելումն Պօղոս Սեւակիրս Արեւելցւոյ (որ 'ի միաբանութենէ սուրթէի հրաշալի եւ հոյակապ վանից) եւ ապագայ բանաւէր եղբարց։ Ի Հայրապետութեան սրբոյ գահին էջմիածնի տեառն Եփրեմայ Քրիստոսատիպ կաթուղիկոսի ամենայն հայոց։ եւ ի պատրիարքութեան երկուց աթոռոց որ երուսաղէմի եւ պօլսոյ Թէոդորոս եւ պօղոս սատուածարեալ եւ ազգասէր արքեպիսկոպոսաց։ յամի տեառն 1817, յուլիս 20։ ի մեծն պօլիս։»



# ԱՅԲՈՒԲԵՆԱԿԱՆ ՑԱՆԿ

## ԱՆՈՒԱՆՑ ԵՒ ՆԻՒԹՈՑ ՁԵՌԱԳՐԱՑ

---

## Դ.



## Ե.

## Զ.



## Է.



## Ը.



## Թ.

## Ծ.



## Կ.



## Հ.

## Մ.

## Յ.

## Ն.

## Շ.



## Ո.

## Ձ.



## Պ.



## Ջ.



## Ռ.



## Ս.

## Վ.

## Տ.



## Ր.



## Փ.



## Ք.

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 2ա | 19 տ. | բարեխաւս | բարեխաւսս |
| — | 17 տ. | արմատոց | արմատոյ |
| 2բ | 9 տ. | Նորոգողին | Նորոգողին) |
| 3բ | 14 վ. | 'ի | 'ի Նախնում |
| — | 20 վ. | քառանիւթեայ | քառանիւթեա. |
| — | 17 տ. | խօչա | խօչայ |
| 5բ | 16 վ. | ու | եւ |
| — | 20 վ. | ե̃ | է̃ |
| — | — | եւ | եւ խոնարհուք, եւ |
| 6ա | 16 տ. | , | եւ |
| 7բ | 6 տ. | 1856 | 1656 |
| — | 5 տ. | երրորդ | երկրորդ |
| 8ա | 13 վ. | համար | կամար |
| 9բ | 24 տ. | ինչ | ինձ |
| 10ա | 7 տ. | համաչութեամբ | համաչափութեամբ |
| 11ա | 2 վ. | ողորմային | ողորմայիւ |
| 12բ | 3 տ. | տարանս | տարանիս |
| — | 31 տ. | առաքելոյ | առաքելոց |
| 13ա | 2 վ. | կարապետին | կարապետին եւ ա̃ծատրին |
| — | 6 տ. | մեռեալս | մեռեալ |
| — | 30 տ. | 21, 5 | 25, 5 |
| 13բ | 12 տ. | Հաշտ̃րխնեցի | Հաշտ̃րխնցի |
| — | 24 տ. | ն̃կւփի | ն̃կւփին |
| 14ա | 6 տ. | Աթենացւոյ | Աթենացւոց |
| 14բ | 23 վ. | սարսափիմ | սարսափեմ |
| 15ա | 20 վ. | ձեռամբն | ձեռամբ |
| — | 25 վ. | տեղի | դեղի |
| 16ա | 10 տ. | ինչ | ինձ |
| 16բ | 7 տ. | . . . պ | արապ |
| — | 13 տ. | զնա | զաս |
| — | 28 տ. | յովունէս | յովանէս |
| — | 31 տ. | Իս անի | Իս յանի |
| 17ա | 20 տ. | տեսական | տեսական |
| 17բ | 10 տ. | ա̃յ | այսինքն |
| — | 20 տ. | տարրէ չինաց | տարրեղինաց |
| 18ա | 8 վ. | ամեն | ամէն |
| 18բ | 15 վ. | սորին | սորին: |
| 20ա | 19 տ. | ՌՃՀԸ | ՌՃԼԸ |
| 20բ | 2 վ. | իմոյ | իմոց |
| 22ա | 23 տ. | Նարկեղին | Նարկիղին |
| 24բ | 21 վ. | Հոգւոյն | Հոգւոցն |
| 25ա | 17 տ. | սիզբնատողերը | սկզբնատողերը |
| 25բ | 18 վ. | լատինացոց | լա̃տինացոց |
| 26ա | 9 տ. | 1ա | 1բ |
| 26բ | 22 տ. | զահրաի | չահրաի |
| 28ա | 21 տ. | -ութեան | -ութեանն |
| — | 28 տ. | Ը | ՃԸ |
| 28բ | 18 տ. | եղբարքն | եղբայրքն |
| 30ա | 27 վ. | 47 | 47ա |
| — | 28 վ. | ման | մանն |
| 31ա | 22 տ. | զսեղացեալ) | զսեղաց(եալ) |
| 31բ | 9 վ. | քի̃ | քհ̃ |
| — | 10 տ. | իմ | եմ |
| — | 12, 14 տ. | չամալաւու | ջամալաւու |
| — | 22 տ. | գրչաէս | գրչակս |
| 32բ | 9 վ. | որդւոյն | որդւոյ |
| 33բ | 25 տ. | ձերով | ձերով |
| 34ա | 11 վ. | չհաճոյս | զհաճոյս |
| — | 27 վ. | հասկաւ | հասակաւ |
| 46բ | 20 տ. | արդեամք | արդեամբք |
| — | 15 տ. | ա̃ | տ̃ |
| 47բ | 5, 7 վ. | | |
| 49բ | 12 վ. | իմոց | իմոյ |
| 54ա | 24 վ. | դեւին | դիւին |
| 58ա | 10 տ. | մինչեւ | միջին |
| 59ա | 4 վ. | է գրեցաւ | է. գերեցաւ |
| 59բ | 8 վ. | դաւթի | դաւթի: |
| — | 3 տ. | պետրոնսիս | պետրոսիս |
| — | 10 տ. | աից | ամից |
| — | 13 տ. | բուրաստանին | բուրաստանիս |
| — | 17 տ. | յարութիդ | յարութ̃իդ |
| 60ա | 4 տ. | գիրքն | գիրքս |
| — | 7 տ. | երկու | երկուքը |
| 60բ | 4 վ. | մշակ | միշակ |
| — | 1 տ. | գրիչներէ | գրիչներէ. |
| 62ա | 6 վ. | ղեհեմ | լեհեմ |
| 62բ | 14 տ. | բնաւ | բնաւ. |

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 63բ | 7, 9վ. | ցուած | ցուածս |
| — | 9վ. | վրայ | վր̃ |
| 64ա | 22 | Աւետարան | Աւետարան. |
| 64բ | 10վ. | զհոգեւոշունչ | զհոգեւոշունչ |
| — | 1ա. | նաբաժանելի | անբաժանելի |
| 65ա | 9ա. | է. | էջ |
| 70ա | 19ա. | նուէրները | նուէրներն |
| 71ա | 21վ. | քո | քո̃ քո |
| 72բ | 6վ. | սիւնի | սիոնի |
| 81ա | 11ա. | ըստ ցօղոյն | այս ցօղոյն |
| 92ա | 13վ. | ցազելի | նազելի |
| — | 14վ. | ննձութեան | ցնծութեան |
| 93բ | 26վ. | չարնեաթի | չար նիաթի |
| 95ա | 27վ. | արհեստաւորեցաւ | արհեսփաւորեցաւ |
| 98ա | 7վ. | Ր. | Որ. |
| 99ա | 1վ. | մանիչակարին | մանիչակին |
| — | 16ա. | յորս | յոյս |
| — | 24ա. | դապետաց | դապետաց. |
| 100բ | 3վ. | էճանանու | եճանանու |
| 103ա | 15վ. | կրօնօրի | կրօնօորի |
| 103բ | 9ա. | զուառալխաթունն | զուառայխաթունն |
| — | 12ա. | զխդրչէն | զխդըրչէն |
| 105ա | 8, 11վ. | մերիջանին | միրիջանին |
| 113ա | 23վ. | մարգարէախօ՛ այս | մարգարէախօ՛ս այս |
| — | 31վ. | Անդ ընդապտոյտ | Անդընդապտոյտ |
| — | 37վ. | ժողել | ժող̃ել (= ժառանգել) |
| — | 40վ. | ըստ | Ըստ |
| — | 41վ. | Հի՛ւան | Հե՛ւան |
| — | 41վ. | ոչ | ո՛չ |
| — | 44վ. | եղէաւ | եղեաւ |
| 113բ | 10, 20, 29վ. | ̃ | ̃ |
| — | 18վ. | ̃այ: | ̃այ. |
| 113բ | 20վ. | տարաւնոյ. | տարաւնոյ: |
| — | 22վ. | աղուհայից | աղուհացից |
| — | 23վ. | եկեղեցւոյ | եկեղեցւոյ: |
| — | 26վ. | ընդ | Ընդ |
| — | 27վ. | յոհաննեսին | յոհաննիսին |
| — | — | աւետեսին | աւետիսին |
| — | 31վ. | իւրոց, | իւրոց. |
| — | 32վ. | սմա. | սմա, |
| — | 33վ. | Ցիշէցէք | Ցիշեցէք |
| — | 35վ. | զմիակից | զմիակեց |
| — | 36վ. | նա | Նա |
| 114ա | 8ա. | զթաւօէզ | զթաւրէ՛զ |
| 118ա | 22վ. | Ցովհաննէս | Ցովհաննէս |
| 118բ | 12վ. | չդարձուած | զդարձուած |
| 118բ | 1–2ա. | (բոլորովին | ջնջել պէտք է): |
| 119ա | 15վ. | տակտեր | պատկեր |
| — | 29վ. | փոյտ | փայտ |
| — | 4ա. | 1 | 15 |
| 120ա | 2ա. | ՊՂՁ | ՊՂՋ |
| — | 5ա. | Լուսանցէզարդերը | Լուսանցազարդերը |
| — | 6ա. | փաշուիր | հաշուեր |
| — | 7ա. | կացնելով | կպցնելով |
| — | 8ա. | իրարո- | իրարու |
| 120բ | 12վ. | բանսուչին | բանաւչին |
| — | 26վ. | արիտութեան | արքտութեան |
| — | 30վ. | յակոբին | յակոբին |
| — | 1ա. | նա ես | նաեւ |
| — | 12ա. | ժողըար | ժողըար |
| 121ա | 29ա. | բառերն | բաներն |
| 128բ | 4վ. | ծ̃ | ժ |
| 129բ | 8վ. | դհրել | դըրել |
| 132բ | 10ա. | եպկէ | ե̃պկէ |



